# ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

# Յ Ո Ւ Ն Ա Ց

# ՄԱՏԵՆԱԳՐԱՑ



## Ա

## ՔՍԵՆՈՓՈՆ

# ՔՍԵՆՈՓՈՆԵՏԵԱՑ

# ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ

ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱԼ Է

Հ. ՅՈՎՍԵՓԱՅ ԳԱԹԸՐՃԵԱՆՑ

ՃԱՌԱԿԵՐՏԱՑ ՄԵԾԻ ՀՕՐՆ

Մ՚ԽԻԹԱՐԱՅ

ԵՒ ԾԱԽԻՒՔ ԱԶՆՈՒԱԿԱՆ

ՏԵԱՌՆ ՍԵՐՈՎԲԷԻ ԳԱԹԸՐՃԵԱՆՑ

ԴՐՈՇՄԵԱԼ



Ի ՎԻԷՆՆԱ

Ի ՎԱՆՍ Պ. Մ. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1848 ՌՄՂԷ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ոչ ինչ յաճախեցից վասն մատենին Քսենոփոնեայ զի կարծեմ թէ գուցէ ի զարդախօս բանս ակամայ անկանիցիմ յորժամ զայն որ լոկն եւ առանց պաճուճանաց բանիւք Հոյակապ եւ զարմանալի եղեւ, կամիցիմ գովել։ Ոչ ինչ սխալեցին որ կոչեցինն զնա մեղու ատտիկեցի· եւ ոչ Կիկերոն առ Բրուտոս գրեալ, թէ Մուսայք իսկ իջեալ նորա բերանով բարբառեցան։ «Նա զոր զՆեստորէ Հոմերոս յառաջնում իլիականին պատմէ, ի սա եւս ի դէպ է առնուլ թէ

ԲԱՆՔ ԽՕՍ ՔԱՂՑՐԱԳՈՅՆ ՔԱՆ ԶՄԵՂՐ ԾՈՐԱԾՈՅ Ի ԼԵԶՈՒԷՆ ՀՈՍԷԻՆ։

Հասանէր նմա յերրորդում ամի ութսներորդ երկրորդ ողոմպիադին ծնանել յիշխանութեան Եւթիդեմայ աթենացւոց· յայտ անտի է զի ի դեղիական պատերազմին որ աթենացւոց ընդ բիովտացւոց էր յառաջնում ամի ութսնե-

րորդի իններորդի ողոմպիադին, զՔսե-
նոփոնեայ պատմեն ի ճակատուն լեալ,
հարկ է յանձն առնուլ թէ գոնէ քսան
ամաց էր յայնժամ Քսենոփոն քանզի
յաթենացւոց ուամկի անդ քսանամենի
զինուորէին մանկտին եւ երդմնի լինէին։

Էր նորա վարդապետ Սոկրատէս. եւ
այսպէս հաւանութեան թուի թէ յոր-
ժամ Սոկրատէս ի պեղոպոնեսացւոց
պատերազմն գնաց, չոգաւ եւ սա ընդ-
նմա։ Իսկ յամին ութերորդի կռուին
սկիզբն լինելոյ էր նա ի խառնուրդս
ճակատուցն ի դեղիացւոց քաղաքին։
Յայնմ մարտի իբրեւ յերիւարէ անտի
անկանէր Քսենոփոն, Սոկրատէս առ-
եալ բառնայր զնա ի վերայ ուսոց իւրոց
եւ այնպէս ի մահուանէ ապրեցուցանէր
որպէս Ստրաբոն պատմէ ի մատենին։
Յետ այնր մարտի եւ գնաց Սոկրատաւ
հանդերձ ի քաղաք անդր աթենացւոց,
անդ փիլիսոփայութեան մտադիր լինէր
որպէս յառաջն։

Ապա ի ժամանակի զի Կիւրոս ի մարտ
պատերազմի ընդ Արտաշիսի եղբօրն
դրդուէր, վարձկանութիւնս օգնակա-
նութեան բեւր մի ի Յունաց ընդ իւր
գումարէր. էր ի զօրու անդ Պրոքսենոս

բիովտացի, որոյ եկեալ հասեալ ի քա-
ղաքն սարդիացւոց առ Թագաւոր անդր
հինգարեւր զօրօք եւ հազար հինգհա-
րեւր սպառազէն զօրօք, կոչէր զՔսե-
նոփոն յիւրմէ աշխարհէն։ Նա տարաւ
ցոյց Սոկրատայ զԹուղԹն յորում գը-
րեալ էր Թէ գրեցիս երրորդ բարեկամ
արքայի, ապա հարցանէր երԹայց եԹէ
ոչ երԹայց. Նա տայր պատասխանի Թէ
Մեր խրատն որդեակ մարդկօրէն խրատ
է, իսկ զանյայտիցն ցԱպողոն պարտ է
հարցանել. քանզի երկեաւ Թէ գուցէ
ընդ ակամբ հայիցէն ի նա քաղաքա-
ցիքն վասն ընդ Կիւրոսի բարեկամու-
Թեանն, զի սրտի մտօք Թիկունք օգնա-
կանուԹեան լեալ էր Կիւրոսի ղակեդե-
մոնացւոց ընդ աԹենացւոց մարտու-
ցելոց. վասն այնորիկ խրատ տայ ի
Դեղփիս երԹեալ զԱպողոն հարցանել։
Նորա երԹեալ հարցանէր Թէ որում
դից զինչ նուէրս մատուցից զի աջողու-
Թեամբ երԹայցեմ զճանապարհն. ի-
բրեւ առ հրամանն պատասխանւոյ ի դիցն
շրջեցաւ եկն յԱԹէնս։ Աշտամբեաց
զնա Սոկրատէս Թէ հի՞մ նախ զայն
չհարցեր ցԱպողոն Թէ երԹա՞յց. այլ
Թէ զիա՞րդ երԹայց զայն հարցեր. բայց

որդ. քանզի զայն հարցեր պարտ եւ պատշաճ զոր ինչ քեզ դիցն հրաման տուեալ է, առնել:

Յետ այնորիկ զոհս մատուցանէր Քսենոփոն եւ ի նաւ ելեալ հասանէր առ Պրոքսենոս եւ առ Կիւրոս, եւ գտանէր նա զնոսա կազմեալ պատրաստեալ յասպատակ անդր: Ապա Կիւրոս ի պատերազմին անկանէր, եւ զզօրավարսն նենգ-գործեալ սպանին Թշնամիքն: Յայնմ վայրի խրատ տայր Քսենոփոն Յունացն վաղվաղակի զօրավարս փոխանակ սպանելոցն ընտրել. եւ ընտրեցան հազարապետք եւ Քսենոփոն այր ի Պրոքսենեայ տեղւոջ:

Բայց Թէ զինչ գործ յետ այնորիկ Յոյնք գործեցին, զոր վիշտս, քանի նեղութիւնս, որչափ աշխատութիւն եւ տառապանս կրեցին մինչեւ եկին հասին յաշխարհն Յունաց, վասն այսր ամենայնի գրեաց մի ըստ միոջէ Քսենոփոն եւթն գիրս, եւ գրոցն անուն կոչի Կիւրոսի ասպատակ: Պատմեն Թէ յորժամ Անտոնիոսն ընդ նոյն տեղիս զօրօք անցանէր եւ իբրեւ ի վայրացն եւ ի ծարաւոյ տագնապեալ կայր ի տարակուսի եւ բազումք սովամահ էին, բա-

զում անգամ բողոք բարձեալ աղաղակէր թէ Ա՜ բեւրք. յայտ իմն կամէր ասնել թէ բազմապատիկ գովութեան արժանի են Յոյնք որ Քսենոփոնտեայ զօրավարութեամբն ողջանդամք յայնմ ամենայնէ ապրեցան ։

Իբրեւ այն ասպատակ արշաւանի Թագաւորին այնպէս ի գլուխ ելանէր, յերկարեալ ամ մի եւ ամիսս երիս զզօրսն տայր Քսենոփոն Թիմբրոնեայ ղակեդեմոնացւոյ որ կազմ եւ պատրաստ լինէր տալ մարտ պատերազմի ընդ Տիսաբեռնեայ. եւ ինքն ընդ Ագեսիղայ ղակեդեմոնացւոց Թագաւորի երթայր ի կողմանս ասիացւոցն ։

Ապա պատիժս ի վերայ հասուցանէին Նորա աթենացիքն յաշխարհէն ի բաց անկանել, զի չոգաւ զհետ Կիւրոսի ի ճակատս ի վերայ Արտաշիսի. քանզի զօրաւիգն օգնականութեան էին Արտաշիսի աթենացիքն եւ զԿիւրոս թշնամի հակառակորդ համարէին, որպէս կանխագոյն ասացաք ։

Նա մերժեալ գնայր ի Սկիղունտացւոց քաղաքն. իսկ ղակեդեմոնացւոց յեղիացւոց հանեալ այնու հետեւ ի բաց զաշխարհն տային նմա պարգեւ. եր-

Թայլին ընդ նմա եւ կին նորա Փիղեսիա անուն, եւ երկու որդիք Գրիւղոս եւ Գիոդորոս որք եւ դիոսկուրացիք կոչեցան։ Իսկ Սկիղունան քաղաք էր ոչ ինչ կարի հեռի յՈղոմպիայ։ Ընդր դայր Մեգաբիւզոս որ էր մեհենին Անահտայ եփեսացւոց սպասիկ, տեսանել զհանդէս խաղալկացն, տայր Քսենոփոնեայ զարծաթն զոր առն իսկ ի նմանէ յորժամ երթայր նա ընդ Ագեսիղայ ի կողմանցն ասիացւոց ի բիովտացւոց աշխարհն։ Զայն գանձ առեալ Քսենոփոն գնէր ագարակիկ մի, եւ ի նմին մեհեան եւ բագին կանգնէր, զմեհենին շուրջ անտառախիտ մայրիք մատաղատունկ ծառովք, եւ Սեղենոս գետ առ նմին հոսէր, գեղեցիկ ամենայնից եւ բազում մրգաբերովք եւ ընտիր ընտիր երէոց ի նմա, եւ ի մեհենին էր արձան յորոյ վերայ գրեալ կայր այսպէս.

«Նուիրեալ սուրբ է տեղիս Արտեմեայ. որ ոք ունիցի զտեղիս զայս եւ առնուցու ի սմանէ շահս, զտասանորդան ամ ըստ ամէ զոհս մատուցանիցէ, եւ ի յաւելուածոյ անտի յօրինեալ առնիցէ կազմածս մեհենին։ Ապ-

եթէ ոչ այսպէս ըզ առնիցէ, այնու-
հետեւ դիցն իսկ փոյթ լիցի։

Մինչ դեռ ի քաղաքի անդ էր Քսենոփոն փիղիսոփայութեան եւ պատմութեան գիրս մատենագրէր։ Բայց ոչ թէ այնչափ ինչ զնդօք էր մինչ զիւրն մոռանալ եւ զառողջութեան կենաց անփոյթ առնել, քանզի եւ յորս զբօսնոյր եւ երթայր յամենաժողով տօնս եւ ի կացուրդս դիցն անահականաց։ Բայց իբրեւ պատերազմ ընդ եղիացիս եւ ընդ ղակեդեմոնացիս գըրգռեր, եղիացիքն զՍկիլղուս առեալ կապուտ կողոպուտ առնէին. քանզի չժամանեցին հասանել ի թիկունս աթենացիքն։ Ընդ որդիքն նորա հանդերձ ուսկաւ ծառայիւք պրծեալ զանձինս ապրեցուցանէին եւ անկանէին ի քաղաքն ղեպրացւոց. ապա անտի փախըստեայ եղանէր Քսենոփոն, յետ այնորիկ նոքօք հանդերձ ի Կորընթոս չոգաւ եւ անդ կայր մինչեւ ցվախճան կենաց իւրոց։

Բայց յորժամ կամք եղեն աթենացւոցն ղակեդեմոնացւոց զօրաւիգն օգնականութեան լինել, քանզի աքայեցիք եւ արկադացիք եւ թեբացիք

խումբ գործեալ տայրին մարտ պատերազմի ընդ ղակեդեմոնացւոց։ Առաքեաց Քսենոփոն զորդին իւր յԱթենաստան մարտընչել ի բանակին։ Իբրեւ խառնուրդք առ Մանտինեաւ լինէին, ի պարտութիւն մատնեցան ղակեդեմոնացիքն. Դիոդորոս ողջանդամ ի ճակատուէ ելանէր ոչ ինչ արժանի յիշատակի գործ գործեալ. բայց Գրիւղոս արժանի ըստ հօրն քաջութեան գտանէր եւ զԷպամինոնդաս սպանեալ պատեալ ի բազմամբոխ թշնամեացն քաջութեամբ մեռանէր։ Գուժկան հասանէր առ Քսենոփոն յորժամ զոհս ի մեհենին առաջի ամբոխին մատուցանէր թէ երէց որդին առ Մանտինեաւ ի ճակատու անկաւ։ Իբրեւ զայն բան լուաւ, չեթող զպսան, այլ զպսակն միայն ի գլխոյն ի բաց դնէր, քանզի պատմեն թէ պսակ ի գլուխ զոհս մատուցանէր։ Բայց իբրեւ եհարց թէ որդունակ անկաւ եւ լուաւ թէ ի պատերազմելն սպանաւ, առ եդ միւսանգամ զպսակն ի գլուխ իւր։ Այլք ասեն թէ եւ արտասուեաց իսկ ոչ ընդ օրհասն նորա, այլ այսպիսի ինչ եւեթ արժանի ըստ առնն առաքինութեան բարբառ արձա-

կեալ թէ Յորժամ ծնայ ես զնա գի-
տէի թէ մեռանելոց էր:

Բայց զի՞ իսկ երկայնիցեմք զբանս, քանզի մատեանս իսկ նորա, զնորա մտացն առաքինութեանէ յայտ առնի-
ցէ: Քանզի գոյ իսկ ի նմին բազում առաքինութեանց հրահանգք որ ամե-
նեւին քրիստոնէից վայել իցեն. զի զամենայն առաքինութեան որ առ ծա-
ռայս է, զհանգամանս ի նմին գտանէ տէր այր, մանաւանդ զբարս քաղցունս առ ծառայս. վասն որոյ յիրաւի եւ յարժանի կշտամբիցէ Կիկերոն զիւր զեղ-
բայրն թէ յետ զՔսենոփոնեայ Կիւրոսի խրատու գիրսն ընթեռնլոյ, տակաւին ոչ ուսաւ թէ որպէս մարթիցի զանձն սիրելի իշխանաւորացն առնել:

# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՎԱՍՆ ԱՄԵՆԱՅՆԻ ԶՈՐ ԶԿԻՒՐՈՍԷ ԳՐԵԱՑ ՔՍԵՆՈՓՈՆ

Վասն Քսենոփոնտեայ կենաց բաւական են որ ասացանս։ Այժմիկ եկեսցուք ի խնդիր ճշմարտութեան գրոց Կիւրոսի խրատու, քանզի վասն նորա բազում հակառակութիւն կայ։ Որք զԿիւրոսի պատմութիւնն գրեցին սոքա են Հերոդոտոս, Կտեսիէս, եւ Քսենոփոն. կէսք զառաջինսն արժանի հաւատարմութեան համարին, եւ կէսք զՔսենոփոն։ Մեք զերկոցունց կողմանց զպատասխանիս մի ըստ միոջէ կարգեսցուք, քանզի այս իսկ ճշմարտասէր մտաց է մի զհակառակորդաց կարծիս նուազեցուցանել։

Հին իմն կարծիք են անդրբատին ի [1] Պղատոնի ժամանակաց թէ որ ինչ յայսմ մատենի պատմի Քսենոփոն առասպելք են։ Յիշատակէ եւ [2] Աթենէոս զՊղատոնի բանս յորժամ զթշնամութենէն որ էր Քսենոփոնտեայ ընդ Պղատոնի, պատմիցէ։ Մեւս եւս վկայութիւն ի [3] Կիկերոնեայ բանից, որ թէրեւս ըզՊղատոնի կարծեաց զհետ երթեալ ասէ. Կիւրոս ի Քսենոփոնտեայ ոչ եթէ առ հաւատ պատմութեան գրեցաւ, այլ ի կերպարանս արդարակորով տէրութեան, զոր ցածութիւնն խառն ընդ ընկերասէր բարոյից փիլիսոփան ցուցանէ։ Նմին հանգոյն եւ [4] Աւսոնիոս. կամէի, ասէ, թէ ի մեր իսկ ժամանակս գայիր, Քսենոփոն ատտիկեցի, եթէ առնոյր յանձն իրացս բնութիւն. որ ի պատմելն քում զԿիւրոսի առաքինութիւնս ըստ ըղձանալոյ եւ ոչ եթէ ըստ պատմութեան յօրինեցեր. յորժամ ասիցես ոչ որպիսի ոք նայն

էր, այլ որպիսի ինչ ազ պարտէրն լինել։ Իցէն ոմանք որ ի նոցա բանս հայեցեալ զնոյն կարծիս կարծեն որպէս [5] Ցովսեփոս Սկաղիգեր, եւ Դի. Պետաւիոս, եւ [6] Սեթոս Կաղուիսիոս, եւ [7] Գերարդ Վոսիոս եւ այլ բազումք։ Բայց զի տոքա ոչ ինչ կասկած ստութեան ի կարգէ պատմութեան Քսենոփոնեայ մարթեն ցուցանել, զայն յայտ յապա արասցուք։

Արդ վասն Պղատոնի տացուք պատասխանի թէ ըստ բազմացն կարծեաց թշնամութեամբ էր նա ընդ կողմն Քսենոփոնեայ. Երկրորդ անգամ թէ ինքն իսկ Պղատոն կարծեօք եւ կասկածանօք բարբառի որպէս յայտ իսկ ի բանիցն է. Երրորդ անգամ զի թէպէտ եւ ոչ կարծեօք այլ հաստատութեամբ բարբառէր, սակայն տակաւին ի դէպ էր թերահաւատ ի նմանէ լինել յորժամ զՔսենոփոնեայ կամէր խօսել։ Քանզի [8] նա առ սոկրատեանսն բազում անհաւատ կարծեօք ախտանայր. եւ ոչ Քսենոփոն միայն այլ եւ [9] Սոկրատէս զայն ի բիծ տանէր նմա զի բազում ինչ խառնիխուռն խօսէր եւ ըստ իւրոց կամացն յօդէր. վասն այնորիկ չեն ինչ զարմանք թէ [10] զՔսենոփոնեայ գովութիւնն անարժան կարծեօք ջանայր նուազել։

Նա աւանիկ ի Պղատոնի բանիցն այաչափ ինչ մարթի ի միտ առնուլ, թէ նա ոչ իբրեւ զՔսենոփոնն այլ այլ՝ իմն ազգ ածէր զմտաւ վասն խրատու եւ կրթութեան Կիւրոսի. եւ այնպէս մեծ իմն եւ այս հաստատութիւն է հաւատարիմ զհիմն պատմութեանն համարելոյ, զի եւ ոչ կասկածանօք եւ կարծեօք կարաց այրն հաստատութեամբ վճիռ բերել, թէպէտ եւ մէտ ի խարբէութիւն էր եւ ի յանդիմանութիւն։

Իսկ զԿիկերոնեայ վասն այսց գրոց բանս զոր իւր ամրութիւն համարի ընդդիմակաց

կողմն, պարտ էր նոցին քաջ յուզել, զի ոչ եթէ զպատմութենէն ինչ գլխովին առիցէ Կիկերոն այլ զվարուց եւ զբարուց զոր Կիւրոսի գրիցէ Քսենոփոն. եւ եթէ մանր ազ միաբանիցն գնիցէ, վաղվաղակի առնու ի միտ։ Եւ զԱւտոնեայ նոյն բանք են։

Բազումք են եւ յարանց իմաստնոց որ զնոցին կարծեաց զհետ գնացին, որոց առկի են [11] Ռոլբրիոս, [12] Դուպլինոս, [13] Բոսուետոս, [14] Պրիդէաւքսիոս, յորս պարտ է եւ [15] զԿղ. Քարպենտերիոս համարել։ Զայլոց եւս բազմաց անուանս զանդաղիմ հարկանել ի նամակի. քանզի ոչ այնր է որ զճշմարտութիւն սիրիցէ խառնիխուռն զանձն յուրոք վկայութիւն տապաստան առնել. զվկայութիւնսն եւ արժան համարիմ կշռել եւ ոչ թուել։ Արդ այսուհետեւ ընդ ուղղորդ ճանապարհն եկեսցուք, տեսցուք թէ զինչ Քսենոփոն պատմիցէ եւ զինչ Երոդոտոս կամ զինչ Կտեսիէս. զի ի պատմութեանն համեմատութենէ ի մէջ դիցցէ ճշմարտութեան ընծայութիւն։

Արդ աշխատութիւն յանձն առից վասն ճշմարտութեանն, մանաւանդ վասն այնորիկ զի անկ եւ ի գրոց սրբոց պատմութիւնն է. եւ թարգմանեալ բերից ի մէջ զԵրոդոտոս վասն Կիւրոսի բանս, եւ է այսպիսի ինչ։

ԿԻԱՔՍԱՐԷՍ, ասէ, թագաւորեալ ամս քառասուն խառն ընդ ամացն զորս Սկիւթացւոց տիրէր, վախճանի։ Զթագաւորութիւնն պայազատէր Աժդահակ Կիաքսարեայ որդի. որում լեալ, ասէ, դուստր մի որում անուն կոչէին Մանդանէ. եւ երազ եւս պատմէ զնմանէ տեսեալ, եւ զահի հարեալ նորա յարհաւրայ անտի չտայ զդուստրն՝ Մարաց կնութեան, այլ առն ումեմն պարսկի որում Կամբիւսէս անուն էր։ Եւ յետ սակաւ բանից զնովիմք

աճեալ յարէն[16] թէ եւ մեւս եւս աւերիլ աւերա-նէր Աժդահակ եւ զահի հարեալ երկընչէր. պատմէր, ասէ, զիրսն երազագիտացն, ան-դէն առաքեալ կոչէր ի Պարսից աշխարհէն զդուստրն մինչդեռ յղի էր, եւ իբրեւ եհաս, ունէր զնա ի պահեստի, զի կամէր զմանուկն որ ի նմանէ ծնանիցի, սատակել. քանզի ի տեսլենէ անտի երազոյն մոգուց երազագէտքն գուշակէին, թէ որ ի դստերէ անտի որդի լինիցի փոխանակ նորա թագաւորելոց է։ Քանզի այսմ ամենայնի զգոյշ լինէր Աժդա-հակ, իբրեւ ծնաւ Կիւրոս կոչէր զԱրպագոս զայր ընտանի եւ հաւատարիմ քան զամենայն Մարս եւ զանդերձապետ իւր եւ խօսէր ընդ նմա ըստ այնն բանից այսպէս. Արպագէ, գործ ի ձեռն տամ ես քեզ, մի իցէ եթէ անփոյթ առնիցես. մի զիս տարագիր հանի-ցես եւ այլոց ցանկացեալ, ապա յետոյ դու քեզէն քոյին ընդ անձին մնանիցես։ Առ զոր Մանդանէն ծնանիցի զմանուկն եւ տար ընդ քեզ եւ ապա սպան, եւ թաղեա զայն դոյն օրինակի որպէս դու կամիցիս։ Բայց Ար-պագոս, ասէ, իբրեւ ետես զմանկիկն զարդա-րեալ ի զարդ մահու, գնաց լալով յապա-րանսն, եւ երթեալ խօսէր ընդ իւրում ուրոյն կնոջն զամենայն բանսն զոր խօսեցաւ Աժդա-հակ։ Ասէ կինն ցնա. զինչ խորհիցիդ առ-նել ի ժամանակի աստ յայսմիկ։ Նա տայր պատասխանի, թէ ոչ որպէս Աժդահակն թէ-պէտ եւ յանմտութիւն հատանիցի եւ եւս չար մոլիցի քան որչափ այժմ մոլի կողի, սակայն չառից յանձն հնազանդել կամաց նորա եւ ոչ այնպիսում սպանութեան սպասաւոր լի-նիցիմ. եւ բազում պատճառք են չսպանա-նելոյ իմ զնա. քանզի իմ իսկ ազգակից է մանուկն, եւ Աժդահակ ծերացեալ է եւ ան-ժառանգ յարու մանկանէ։ Իսկ եթէ յետ

նորա վախճանելոյ, Հարստութիւնն ի դստերըն անցանիցէ, զորս այժմ՝ զորդին յիմ ձեռն ապանանէ, զինչ այլ ինչ քան զայն ինձ չար տագնապ կայցէ. բայց վասն ինձ ի զգուշութեան լինելոյ, պարտ է մանկանն մեռանել. պարտ եւ պատշաճ է միում ումեք յարանց անտի Աժդահակայ սպանող լինել մանկանն եւ ոչ յիմոց ստաի: Զայս ինչ խօսեցաւ եւ անդէն առաքէր պատգամաւոր առ մի ոք յանդիորդացն Աժդահակայ որ զընտիր ընտիր ճարակաց ունէր եւ լերինս երէովք, եւ անուն էր նորա Միտրադատէս, բնակէր նա ընդ իւրում ծառայակցին, եւ կնոջն անուն կոչէր Կիւնով ըստ յոյն լեզուի, իսկ ի Մարաց լեզուն Սպակոյ, քանզի զշունն Մարք սպակ անուանեն: Իսկ լերանցն ստորոտքն յորում վայրի արօտքն էին անդւոց անդիորդին ի հարաւակողմն կողմանէ էին Ագբատանացւոց աշխարհին եւ Եւքսինեա ծովու: Զի Մարաց աշխարհն առ Սասպիրացւոց կողմամբն լեռնային է կարի յոյժ, բարձրաւանդակ եւ անտառախիտ, իսկ այլ եւս Մարաստան ամենեւին դաշտային է: Իբրեւ եկեալ հասանէր անդիորդն մեծաւ տագնապաւ, խօսէր Արպագես այսպէս. Հրաման տայ քեզ Աժդահակ զմանուկդ զայդ առնուլ եւ դնել զնա յանապատի լերանց, զի վաղվաղակի սատակիցի. եւ պատուիրեաց այսպիսի ինչ ասել քեզ, եթէ ոչ սպանանիցես զնա, այլ որդունակ ապրեցուցանիցես զնա, չարաչար սատակումն ընդունիցիս. եւ իմ հրաման տուեալ է դիտել զիրան: Զայն լուեալ անդիորդին առ զմանուկն եւ դարձաւ յետս ընդ նոյն ճանապարհ եւ երթեալ հասանէր ի հանդրուանսն: Ապա դէպ լինէր զի կին նորա ի նմին աւուր որդի ծնանէր մինչ անդիորդն երթեալ ի քաղաքն: Եւ էին երկոքեան ի հոգս եւ ի սա-

տամնութեան վասն միմեանց. նա երկընչէր վասն կնոջն ծնընդեան. իսկ կինն զի չէր սովոր Արպագէտ կոչել զայրն նորա. եւ իբրեւ եկեալ անդէն եկաց առ նմա, յորժամ առանց ակնկալութեան ետես զնա կինն, հարցանէր թէ զի՞ է զի կոչեաց զնա վաղվաղակի Արպագոս: Եւ նա ասէ. Կին դու ի քաղաք երթեալ տեսի եւ լուայ զոր չէր իսկ պարտ տեսանել եւ ոչ լինել ի մեր տեարս: Համօրէն տուն Արպագայ լի էր ողբովք. եւ ես զքանչացեալ մտի ի ներքս. եւ իբրեւ մտի ի ներքս, ապա հայեցեալ տեսի զմանուկն զի անկեալ գնէր եւ ճչէր զարդարեալ ոսկւովք զարդուք եւ հանդերձիւք պէսպէս նարաւտաւց: Իսկ Արպագոս իբրեւ ետես զիս, հրաման ետ փութանակի առնուլ զմանուկն եւ երթալ դնել ի լերինսն ի մէջ գազանաց: Ասէր թէ Աժդահակ է որ զայս հրաման ետ ինձ, եւ բազում ինչ սպառնայր եթէ ոչ առնիցեմ. եւ իմ առեալ բերի, կարծեալ այսպէս թէ միոյ ուրուք յընտանեաց անդի որդի է, քանզի չառի իսկ ի միտ թէ ուստի էր: Բայց ի զարմացման լինէի տեսեալ ոսկւովք հանդերձիւք զարդարեալ. լուեալ զձայն աշխարանացն. եւ անդէն զճանապարհայն հարցանէի ցպատասաւորն զամենայն բանն, որ յուղարկէրն իսկ զիս արտաքս քան զքաղաքն, եւ ետ ցիս զմանուկն. եթէ Մանդանեայ որդի է Աժդահակայ դստեր եւ Կամբիւսեայ պարսկի, եւ Աժդահակ պատուէր ետ սպանանել. արդ սա նա է: Իբրեւ զայս ասէր անդիորդն, բացեալ ցուցանէր: Իսկ կինն իբրեւ ետես զմանուկն յաղթ եւ բարենշան եւ գեղեցիկ, զարտասուս հարաւ, եւ բուռն հարեալ զծընգաց առն իւրոյ, աղաչէր մի յայնպիսի տագնապ զմանուկն հասուցանել. եւ նա բայ ասէ չէ մարթ չիք հնար այլազգագոյն ինչ առնել.

քանզի եկեսցեն հասցեն դէտք յԱրտաշատոյ դիտել զիրսն, եւ չարաւ կորընչիցիմ եթէ զայն ոչ առնիցեմ։ Իբրեւ չկարաց զմիտս հաճել զառնն երկրորդ անգամ խօսէր կինն այսպէս զայն ձեւ։ Որովհետեւ չկարեմ ածել զքեզ ի հաւան չառնել ընկեցիկ, դու զայս ինչ արա՝ եթէ ամենեւին հարկ լիցի երեւել մանկանն ընկեցիկ եղելոյ. քանզի ծնայ եւ ես, եւ ծնայ մեռեալ. զնա առ տար, եւ զԱժդահակայ դըստեր զորդին իբրեւ զմեր ծնունդ սնուցանիցեմք. եւ այսպէս ոչ դու անիրաւ գտանիցիս ի տեարս քո եւ ոչ մեք անձանց խորհուրդ չարութեան խորհիցիմք. զի մեռեալն արքունական պատուանաց արժանի լինիցի եւ մի մանուկն յարեւէն անկանիցի։ Զմտաւ ած անդիորդն, թէ առ այն որ առաջի կայր բարուք խօսեցաւ կինն, եւ առնէր անդէն այնպէս. զմանուկն զոր ած սպանանել, զնա ձեռն ի ձեռն տայր ցկինն, եւ զիւրն զդիակնն առեալ արկանէր յանօթ անդր յորում զմիւսն տանէր, զարդարէր ամենեւին ի զարդ միւսոյ մանկանն եւ տարեալ յանապատ տեղի լերանցն դնէր։ Իբրեւ օր երրորդ հասանէր մանկանն ընկեցիկ եղելոյ, չոգաւ ի քաղաք անդր անդիորդն թողեալ զմի ոք պահապան ի խաշնարածաց անտի, եւ երթեալ առ Արպագոս, պատրաստ եմ ասէ ցուցանել զմանկան դին։ Իսկ Արպագոս առաքէր հաւատարիմս իսպասաւորաց իւրոց եւ նոքօք տեսանէր եւ թաղէր զորդի անդիորդին։ Նա թաղեցաւ, իսկ զայն որ յետ այնորիկ Կիւրոս կոչեցաւ, առեալ սնուցանէր կին անդիորդին, եւ այլ ինն անուն եդեալ կարդայր զնա եւ ոչ Կիւրոս։

Յորժամ տասնամեայ էր մանուկն, այսպիսի ինչ գործ ի գլուխ ելեալ նմին դուշակ լինէր։ Խաղայր ի գեղջն յորում եւ անդւացն պատանեկքն էին, եւ խաղայր ընդ այլոց եւս հա-

սակակցացն յանցս ճանապարհացն, եւ մա-
նըկտին որ խաղային, ընտրէին զնա իւրեանց
թագաւոր զոր անուանեալ կոչէին անդիորդի
որդի. եւ նա կարգէր ի նոցանէ զոմանս ճար-
տարապետս շինուածոց ապարանիցն, եւ զո-
մանս սպասաւորս, եւ զմի ոմն ի նոցանէ ակն
արքայի. եւ միւսումն գործ ի ձեռն տայր ըզ-
զրոյցն բերել. զի իւրաքանչիւր մի մի գործ
հրամայէր: Մի ոմն ի մանկտւոյ որ խաղային,
որ Արտեմբարեայ ուստր էր առն աւագի ի
Մարաց աշխարհին, քանզի չարար զայն որ ի
Կիւրոսէ հրամայեցաւ, հրաման տայր անդէն
այլոց մանկտւոյ զնա ձերբակալ կապեալ ու-
նել: Ի մանկանցն անսալ, խստիւ գանալից
առնէր զմանուկն: Եւ նա վաղվաղակի իբրեւ
փոխեցաւ, որպէս թէ անարժանս ինչ անձինն
կրեալ. եւ երթեալ ի քաղաքն եւ զԿիւրոսէ
ասէր, քանզի չեւ եւս էր այն անուն, այլ
յորդւոյ Աժդահակայ անդիորդին: Իսկ Ար-
տեմբարէս մեծաւ ցասմամբ առ Աժդահակ
հասանէր մանկամբն եւ անարժան իրս կրեալ
պատմէր, ասէ. Արքայ ի ծառայէ քումմէ յան-
դիորդի որդւոյ այսպէս թշնամանեալ նախատ
եղէ. եւ զսուս մանկանն ցուցանէր: Իբրեւ
լսէր եւ տեսանէր Աժդահակ, կամէր իմն պա-
տուհասակած զմանուկն առնել վասն Արտեմ-
բարեայ մեծարանս դնելոյ, առաքեալ կոչէր
զանդիորդն եւ զմանուկն. իբրեւ եկին հասին
երկոքեան, հայեցեալ Աժդահակայ ընդ Կիւ-
րոս, ասէ. Դու որ այնպիսւոյ մանուկդ էիր
իշխեցեր ժպրհութեամբ զմանուկն զորա որ
առաջին բարեկամ է իմ, այնպէս թշնամա-
նել: Եւ նա տայր պատասխանի այսպէս.
Տէր ես զայդ ամենայն յիրաւի գործեցի. զի
մանկտին որ ի գեղջէ անտի էին խաղս խա-
ղային, ի նոցանէ մի ոմն եւ սա էր եւ զիս ա-
ռին կացուցին իւրեանց թագաւոր, քանզի ի

թագաւորութիւն պիտանացու թուեցաւ Նոցա։ Արդ այլ մանկտին զՀրամայեալն ի գլուխ Հանէին, բայց նա ստունգանէր եւ առ ոչ ինչ գրէր, եւ վասն այնորիկ ընկալաւ ըզպատիժ պատուհասին։ Թէ վասն այսր արժանի ինչ տանջանաց իցեմ, աւասիկ Հասեալ կամ։ Իբրեւ զայն խօսէր մանուկն, ծանեաւ զնա Աժդահակ. եւ նշանակ երեսացն Հանգոյն թուէր եւ ազատագոյն պատասխանին եւ ժամանակ ընկեցիկն լինելոյ մանկան տիոցն միաբան թուէր։ Զարմացեալ սխրացեալ կայր, ցժամանակ մի անշշունչ կայր անբարբառ. Հազիւ ուրեմն ի միտս լինէր. քանզի կամէր զԱրտեմբարէս արձակել զի զանդիորդն միայն առեալ Հարցանիցէ. ասէ, Ես, Արտեմբարէս, զայս արարից, զի դու եւ որդեակն քո չիցէք ամբաստան զինէքէ։ ԶԱրտեմբարէս արձակէ, իսկ զԿիւրոս ածին սպասաւորքն ի ներքս ի սենեակն Հրամանաւ Աժդահակայ։ Իբրեւ անդիորդն միայն մնաց, միայն ցմիայն Հարցանէր Աժդահակ, ուստի՞ առեալ իցէ քո զմանուկդ կամ ո՞յր իսկ տուեալ իցէ։ Ցինէն, ասէ, ծնաւ, եւ կինն որ զնա ծնաւ առ իս է։ Իսկ Աժդահակ. Չէ քաջ խորհուրդդ, ասէ, ի մեծ տագնապս Հասանել վասն խոստովանութեան. իբրեւ զայս ասէր, սպասաւորացն նշանակէր ձերբակալ առնել. նա իբրեւ տագնապեցաւ, ապա զբանն որ ինչ էր զայն Հան ի վեր. իսկզբանէ սկիզբն արարեալ մի ըստ միոջէ պատմէր ճշմարիտ, ապա յաղօք անկեալ աղերսէր եւ խնդրէր ներել թողութեան։ Բայց Աժդահակ յետ անդիորդին յայտ զճշմարտութիւնն առնելոյ, զայն փոքր ինչ Համարէր։ Առաւելագոյն Արպագայ մեղ դնէր, եւ Հրաման տայր սպասաւորացն զԱրպագէս կոչել։ Արպագէս իբրեւ եկեալ Հասանէր, Հարցանէր Աժդահակ. Արպագ

տրով օրհասիւ տղանէր զմանուկն զոր քեզ ետու, զայն որ յիմէ դստերէ ծնաւ։ Արպագէս իբրեւ ետես ի ներքս զանդիորդն ոչ շրջեցաւ ընդ սուտ ճանապարհն զի մի յանդիմանեալ եւ ըմբռնիցի, այլ առէր այսպիսի ինչ օրինակ. Ցորժամ զմանուկն առի արքայ, խորհեցայ ի միտ իմում զմտաւ ածի թէ զինչ օրինակ արարից քեզ ըստ միտս, եւ ես լինիցիմ առաջի քո առանց յանցանաց, մի դըստերն քում եւ քեզ լինիցիմ դահիճ. արդ այսպէս խորհեցայ առնել. կոչեցի զանդիորդդ զայդ, ետու զմանուկն ի ձեռս, եւ ասեմ թէ քո իսկ հրամանն տուեալ է զմանուկն սպանանել. եւ զի զայդ առէի ոչ ինչ սուտ խօսէի, քանզի դու իսկ այսպէս հրամայեցեր։ Բայց ետու զնա նմա, այսպէս պատուէր տուեալ ընկենուլ ի լեառն մի յանապատ եւ կալ պահել մինչեւ վախճանիցի. բազում ինչ սպառնալիս յանձնեցի դմա եթէ զայն ամենայն ի գլուխ հանիցէ։ Իսկ իբրեւ յետ կատարելոյ նորա զհրամանսն, մանուկն վախճանեցաւ, յղեցի զհաւատարիմս ի ներքինեացն եւ տեսի ի ձեռն նոցա եւ թաղեցի։ Արդ որ ինչ վասն իրացս այսոցիկ այս ինչ է, արքայ, եւ այսպիսի մահու մանուկն վախճանեցաւ։

Արպագոս ճշմարտիւ հան զբանն ի վեր։ Իսկ Աժդահակայ թագուցեալ զայն որ ի ներքս ցասումն էր վասն իրացն եղելոց, նախ որպէս յանդիորդէն ինքն զիրան լուաւ միւսանգամ պատմեաց Արպագայ. եւ յետ այնորիկ իբրեւ զայն պատմեաց, զիջաւ եւ ասէ. թէ մանուկն տակաւին կենդանի է, եւ իրքն որ եղեն բարւոք են։ Զի ընդ այն որ ի մանուկ անդր գործեցաւ ծիւրեալ ծնգէի, եւ յիմէ դստերէն կշտամբէի։ Բայց արդ քանզի շրջեցաւ պատահարն, դու զքո որդիդ յղեա այսր առ մանուկն նոր. եւ զի վասն մանկանն

փրկութեան զոհս կամիմ մատուցանել քան-
զի նոցա իսկ վայելէ այն պատիւ, եկ տու ի
յընտիրս։ Արպաղոս իբրեւ զայն բան լուաւ՝
երկիր եպագ եւ յանձն իւր տուաւել զուար-
ճացեալ լինէր զի ոչ ինչ յանցեաւ ի պատ-
շաճիցն եւ յընտիրս եւս կոչեցաւ։ Յարու-
ցեալ չոգաւ յապարանսն. իբրեւ եմուտ վաղ-
վաղակի, քանզի որդի մի է նորա միամօր
լեալ ամաց երեքտասանից ուրեմն, զնա ա-
ռաքէ հրամանն տուեալ երթալ առ Աժդա-
հակ եւ առնել զոր ինչ նայն հրամայիցէ. եւ
ինքն երթեալ պատմէր ուրախութեամբ կնոջն
որ ինչ եղեւն։ Իսկ Աժդահակ, իբրեւ եհաս
առ նա Արպաղայ որդին, սպան զնա եւ ան-
դամ անդամ յօշէր, զկէսն արկանէր ի խո-
րովս եւ զկէսն եփէր. եւ իբրեւ յօրինեաց,
պատրաստեալ պահէր։ Իբրեւ ընթրեացն
ժամն էր, եկին կացին այլ եւս կոչնականք
եւ Արպաղոս, այլոցն եւ Աժդահակայ գլխո-
վին սեղանք առաջի յօրինէին լցեալ գառանց
մսովք. իսկ Արպաղայ խուրդուրոյն որդւոյ
միս բաց միայն ի գլխոյն եւ ի ծայրից ձե-
ռացն եւ ոտից, քանզի զայն ամենայն ի ծա-
ծուկ թաքուցեալ եդին. իբրեւ յագեցաւ Ար-
պաղոս ի կերակրոյ անտի, հարցանէր Աժդա-
հակ թէ եղե՞ր ուրախ սեղանովս, եւ յասել
Արպաղայ թէ յոյժ ուրախ եղէ, բերին ա-
ռաջի որոց հրաման իսկ առեալ էր, զգլուխ
մանկանն ծածկեալ, եւ զձեռս եւ զոտս։ Եւ
որ մերձն կային ասէին թէ բա՛ց առ զինչ կա-
միցիս ի նոցանէ. իբրեւ յանձն առ Արպա-
ղոս եւ բացեալ ետես զմանկանն նշխարս
թէպէտ եւ ետես ոչ ինչ սքանչացեալ սխրա-
ցաւ, այլ համբեր յանձն իւր։ Հարցանէր
զնա Աժդահակ թէ գիտիցե՞ս թէ զորոյ գա-
զանի միս կերար. եւ նա, ասէ, գիտեմ, եւ
պարտ եւ պատշաճ է թէ ամենայն ինչ զոր

արքայ կամիցի հաճոյ լինիցի ։ Յորժամ զայս խօսեցաւ առ զնշխարս մտոյն եւ չոգաւ անդրէն յապարանսն․ որպէս ինձ թուի կամէր իմն անդէն թաղել ։

ՅԱրպագայ այսպէս վրէժ առ Աժդահակ ։ Բայց զԿիւրոսէ զմտաւ ածեալ կոչէր զնոյն կախարդս ի կախարդացն, որ զերազն նորա այնպէս ընտրեցին․ իբրեւ հասին, հարցանէր զնոսա Աժդահակ թէ զիարդ ընտրեցին զանսիլն․ եւ նոքա ըստ նմին բանից բարբառեցան, ասեն, թէ պարտ է մանկանն թագաւորել եթէ կենդանի կայցէ եւ ոչ վաղ մեռանիցի ։ Եւ նա տայր նոցա պատասխանի զայս դոյն օրինակ․ Է մանուկն եւ կայ իսկ կենդանի, եւ յորժամ յանդի էր որ ի գեղջէ անտի մանկտին էին, թագաւոր կացուցին․ եւ նա զամենայն զոր ճշմարիտ թագաւորքն առնեն, արար եւ վճարեաց, քանզի սպասաւորս եւ բարապանս եւ համբաւաբերս եւ զայլն ամենայն յարդարեալ յօրինէր․ բայց արդ ձեզ զի՞նչ թուիցի, ցո՞ր վայր իրքն հասանիցեն ։ Ասեն մոգքն․ Եթէ կենդանի է մանուկն եւ թագաւորեաց ոչ ի տեսչութենէ իմիքէ, վասն գործին իսկ քաջալերեաց եւ քաջ լեր, քանզի ոչ եթէ այսուհետեւ երկիցս անգամ թագաւորեսցէ․ քանզի եւ ի մանուանոն բազում անգամ ի գլուխ ելեն պատգամք ինչ ի պատգամաց, եւ որ յերազոց անտի են, ի սակաւ ինչ վճարին ։ Տայր նոցա Աժդահակ պատասխանի․ Եւ ես ինքնին զնոյն ածեմ զմտաւ թէ քանզի թագաւոր անուանեցաւ մանուկն, ել ի գլուխ երազն, եւ չէ ինչ այսուհետեւ ահա մանուկն․ բայց սակայն դիտեցէք տեսէք եւ տուք ինձ խրատ թէ որ զգուշաւոր իցէ եւ իմում տանս եւ ձեզ ։ Ասեն մոգքն․ Եւ մեզ արքայ օգուտ է թէ կայ ի հաստի քո իշխանութիւնդ․ քանզի այնպէս

օտարանայ տէրութիւն եթէ ի մանուկդ անցանէ որ պարսիկ իսկ է. եւ մեք քանզի մարք իցեմք ի ծառայութիւն վտարանդիմք եւ չհամարիցիմք ինչ առաջի Պարսից, քանզի օտարք եւ պանդուխտք իցեմք: Բայց եթէ դու կայցես մնայցես ի թագաւորութեան քում, քանզի մեր իսկ քաղաքացի ես, եւ իշխեմք ի կողմն մի եւ մեծամեծ եւս պատիւս ի քէն ունիմք. այսպէս ամենեւին իսկ քեզ եւ քում իշխանութեանդ մեզ պարտ է զգոյշ լինել: Եւ այժմ եթէ ահագին ինչ տեսանէաք զնա, պատմէաք քեզ. բայց արդ զի ի թեթեւ ինչ եւ երազն, մեք համարձակիմք, եւ քեզ եւս զգոյն տամք հրաման. բայց զմանուկն յաչաց քոց ի բաց ի Պարսս յղեա առ ծնանելին: Զայն լուեալ Աժդահակայ զուարճանայր զուարթանայր, զԿիւրոս կոչէր եւ խօսէր զայս ձեւ զայն գոյն. Մանուկ դու ես զքեզ վասն տարապարտ անօլեան երազոց զրկեալ զլացայ, այլ քոյովք հրամանօք գերիվերոյ եղեր. այժմիկ երթ դու ի Պարսըս, յուղարկաւորս եւս միանգամայն արձակեցից. անդր երթեալ զհայր եւ զմայր գտանիցես, ոչ ըստ Միտրադատայ անդիորդի եւ ըստ կնոջ նորա:

Զայս իբրեւ խօսեցաւ Աժդահակ արձակեաց զԿիւրոս. ի հասանել նորա յապարանս Կամբիւսեայ, ընկալան զնա հայրն եւ մայրն եւ իբրեւ ընկալանն եւ իմացան, գիրկս արկին, քանզի այսպէս գիտէին թէ յայնժամ իսկ եւ իսկ վախճանեցաւ. հարցանէին թէ որպէս որդունակ գերիվերոյ եղեւ: Նա պատմէր նոցա եւ ասէր թէ յառաջն ոչ ինչ գիտէի այլ բազում իւիք սխալեալ էի, բայց ի ճանապարհին ազդ եղեն ինձ ամենայն որ ինչ անցք անցին ընդ իս. քանզի համարէի թէ որդի իցեմ անդիորդին Աժդահակայ, եւ

ի ճանապարհի զամենայն յուղեկցացն տուի ի միտ. եւ անանէի, ասէ, յանդիւորդի կնոջէն. եւ զնա համակ գովէր, եւ էր նորա ամենայն բանից նշանակ Կիւնոսն։ Իսկ հօրն եւ մօրն, առեալ զանուանն զայն, զի յաստուածակոյս կողմանէ համարեցաւ Պարսից թէ կենդանի մնացեալ իցէ մանուկն, հանին համբաւ թէ զԿիւրոս, յորժամ ընկեցիկն եղեւ, շուն սնոյց։ Եւ յայնմ հետէ համբաւն տարածանէր։ Իբրեւ յարուլթիւն հասանէր Կիւրոս եւ քան զհասակակիցսն ազնուագոյն երեւէր եւ սիրուն, առաքէր պատարագս Արպագոս եւ գրգռէր, քանզի ցանկայր յԱժդահակայ վըրէժ խնդրել. զի տեսանէր իսկ թէ յանձնէ, քանզի ինքն շինական էր չկարէր վրէժ առնուլ։ Իբրեւ ետես նա զԿիւրոս աճեցեալ եւ զարգացեալ, առնէր զնա զօրաւիգն օգնականութեան, զԿիւրոսի վիշտսն իւրոց վըշտացն համեմատէր. բայց յառաջ իսկ քան զայն նա զայն յարդարէր զի դառնագոյն էր Աժդահակ ի վերայ Մարացն, ի բանի առնէր Արպագոս զմի մի իւրաքանչիւր յաւագացն Մարաց, հաճէր հաւանեցուցանէր թէ պարտ է զԿիւրոս կացուցանել թագաւոր եւ զԱժդահակ հանել ի տէրութենէ։ Իբրեւ զայս ամենայն վճարէր եւ պատրաստ լինէր, ապա Կիւրոսի որ անդէն ի Պարսս էր, կամէր Արպագոս զխորհուրդսն ի վեր հանել, եւ այլազգ ինչ չմարթէր յայտ առնել, քանզի էր պահ զգուշութեան պահապանացն, եւ նա հնարէր այնպիսի ինչ։ Հնարէր նապաստակ մի եւ զփորոտն հերձոյր եւ ապա դնէր անդէն ի նմին գիր գրեալ որ ինչ հաճոյ թուէր, եւ միւսանգամ ի միմեանս կարեալ զփորոտ նապաստակին եւ վարմս եւս տուեալ իբրեւ որսորդի միում ումեք ի հաւատարիմս ծառայից արձակէր ի Պարսս. եւ իւրով իսկ լեզուաւ

պատուէր տայր թէ ի տալն քում Կիւրոսի զնապաստակն, ասա, թէ ինքնին իսկ իւրով ձեռամբք յաւշեացէ, եւ մի որ մօտ իցէ յորժամ զայս ասիցէ։ Իբրեւ այն ի գլուխ ելանէր, եւ Կիւրոս զնապաստակն ի ձեռն առեալ ընդ մէջ հերձանէր. եւ պատեալ ի նմին մատեան, առեալ ընթեռնոյր եւ գիրն ասէր այսպիսի ինչ. Ով մանուկդ Կամբիւսեայ, քեզ դիքն տեսուչ լինին, քանզի եւ ոչ յայնպիսի ինչ պատահար հասանէիր. արդ յԱժդահակայ ի քումմէ սպանողէ առ վրէժս, քանզի ըստ ցանկութեան իւրոյ իսկ նորա դու մեռեալ էիր, բայց ի դիցն եւ յինէն կացեր կենդանի։ Զայս ամենայն կարծեմ թէ վաղ իսկ գիտես, եւ զոր դուն կրեցեր եւ որովք եսն վշտացայ յԱժդահակայ, զի զքեզ ոչ սպանի այլ ետու զքեզ անդիւորդին։ Դու այժմիկ եթէ կամիցիս իմոյ խորհրդոյս անսալ. ամենայն աշխարհին որում Աժդահակն տիրէ, դու իշխեսցես։ Հաւանեցո դու զՊարսիկսն զի եկեսցեն ի մարտ պատերազմի ընդ Մարաց. եւ եթէ ես յԱժդահակայ կացից զօրավար հակառակ քո կամ եթէ այլ ոմն ի պատուականացն Մարաց, եղիցի որ ինչ դու կամիցիս։ Քանզի նախ նոքա ապստամբեն ի նմանէ եւ ընդ քեզ միաբանեն եւ ջանայցեն զԱժդահակ սատակել։ Արդ քանզի աստ պատրաստ է ամենայն, արա դու զայդ եւ վաղվաղակի առնիցես։

Զայս լուեալ Կիւրոսի, խորհէր թէ որպէս իմաստութեան հնարիւք ածիցէ ի հաւանս զՊարսիկսն ապստամբել։ Եւ զմտաւ ածեալ, զայս ինչ դիպօղ գտանէր, եւ առնէր այսպէս գրեալ ի գրի զոր ինչ կամէրն, ժողովեաց ի մի վայր զՊարսիկսն, եւ առաջ տարածեալ զգիրն ընթեռնոյր եւ ասէր թէ Աժդահակ զիս Պարսից սպարապետ կացոյց. եւ արդ, ասէ, ով Պարսիկք, հրամանս տամ ձե-

րաքանչիւր ումեք մանգաղ առնուլ եւ գալ։ Կիւրոս զայս ինչ պատուիրեաց։ Բազում ազգք են Պարսից, եւ զոմանս ի նոցանէ կոչեաց Կիւրոս եւ հաւանեցոյց ի բաց կալ ի Մարաց. եւ այնոքիկ իսկ են յորոց այլ եւս Պարսիկքն ամենայն կախեալ կան. Պասարգադացիք, Մարափիացիք, Մասպիացիք. ի սոցանէ Պասարգադացիքն ազնուագոյնք են, յորս եւ Աքեմենիդեանքն տոհմ է, անդի պերսիդեան թագաւորքն ծնան. իսկ այլ Պարսիկք սոքա են. Պանթիաղեացիք, Դերուսիացիք Գերմանիացիքն. սոքա ամենեքին արօրադիր առնեն, իսկ այլքն արօտականք են, Դայքն Մարդացիքն, Դրոպիկացիքն, Սագարտիացիքն։ Իբրեւ եկին հասին ամենեքին առեալ որ ինչ հրամայեալն էր, յայնժամ վայրի Կիւրոս, զի էին վայրք ինչ ի Պարսից աշխարհին փշալից տատասկաբեր որչափ թէ ութեւտասան վտաւան կամ ընաւ քաջ քսան, զայն տեղի հրամայէր հատանել յաւուր յայնմիկ։ Զայն գործ ի գլուխ հանեալ Պարսից, երկրորդ գործ հրամայէր նոցա ի վաղիւ անդր լուանալ եւ գալ։ Յայնմ ժամանակի զամենայն զայծիս եւ զհօտս եւ զանդեայս հօրն ժողովէր Կիւրոս եւ զենոյր եւ կարգեալ կազմեալ յօրինէր՝ զի ընդունիցի զզօրան Պարսից. եւ յայնր վերայ գինով եւ ազնիւ հացիւ։ Ի վաղիւ անդր ի գալ հասանել Պարսից հրամայեա՛ց բազմել ի մարգին ուրախ առնէր։ Իբրեւ ընթրիքն կատարէին, հարցանէր զնոսա Կիւրոս. թէ ո՛ր լաւ եւ ցանկալի իցէ ձեզ որ ինչ երէկն էր եթէ որ ինչ այսօր. նոքա ասեն թէ բազում կշիռ ի մէջն է, զի երէկ ամենայն ինչ չար էր, իսկ որ այժմս են բնաւ բարի։ Զայն բան ի մէջ առեալ Կիւրոսի, զամենայն բանն ի վեր հանէր եւ ասէր. Արք պարսիկք, այս ձեզ այսպէս է. եթէ ինձ

կամեցիք առնուլ եղէցին այսպիսի եւ այլ եւս բիւրուց բեւր բարութիւնք եւ ոչ ի վասատակս ծառայութեան կայցեն. իսկ արդ ոչն հնազանդին անհամար աշխատութիւնք հանդերձ երեկի համանիցեն ։ Արդ անսացէք ինձ եւ եղիջիք ապաստացեալք ։ Քանզի եւ ինձ իսկ թուի թէ ծնեալ եմ ի դիւցն պատահարաց զայս ամենայն ձեզ հասուցանել ի ձեռն, եւ զձեզ քան զայս Մարացն ոչ ինչ ապաժաման համարիմ ոչ ի պատերազմի եւ ոչ յայլ եւս իրս ։ Եւ զի այս այսպէս է, ապաստամբեցարուք վաղվաղակի յԱժդահակայ ։

Արդ զտեալ նոցա վերակացու յօժարէին յազատութիւն եկանել յառաջնագոյն իսկ դժկամակ լեալ ընդ Մարաց իշխանութեանն ։ Իբրեւ ազդ լինէր Աժդահակայ զԿիւրոսէ թէ զայս արար, հրեշտակ առաքեալ կոչէր զնա ։ Իսկ Կիւրոս հրաման տայր հրեշտակին պատմել եթէ վաղ հասանիցէ առ նա, քան ինքն Աժդահակ կամիցի ։ Զայն լուեալ Աժդահակայ, վառեցոյց զամենայն Մարս եւս նոցին զօրավար իբրեւ ի գլեց անտի զհատեալ զԱրպագոս կացուցանէր, քանզի մոռացօն առար զամենայնի զոր գործեացն ։ Իբրեւ Մարք խումբ գործեցին եկին խառնեցան ի մարտ պատերազմի ընդ Պարսից, ոմանք ի նոցանէ որ չէին ընդ նմա ի բանի կռուէին, եւ կէսք միաբանէին ընդ Պարսից. եւ բազմագոյնք վատթարեալ փախստեայ ապրեալ երթային ։ Յորժամ քակէր ամօթալից մարական բանակն եւ ազդ լինէր վաղվաղակի Աժդահակայ առէր սպառնացեալ Կիւրոսի. Սակայն եւ ոչ այնպէս ուրախ լեցի Կիւրոս ։ Զայս իբրեւ առէր զմոգուցն երազագէտս որ խրատն ետուն արձակել զԿիւրոս, զնոսա զփայտէ կախէր. յետ այնորիկ զօրս ի քաղաքի անդ մնացեալ Մարքն էին վառեաց զծեր եւ զմանկտի. եւ

հանեալ զնոսա եւ Պարսից ի դիմի հարեալ ի պարտութիւն մատնեցաւ. եւ ինքնին իսկ Աժդահակ կենդանոյն անկաւ ի բուռն, եւ զայնոսիկ ի Մարաց զօր ընդ իւրն եհան, կորոյս։ Իբրեւ երթայր ի պերութեան Աժդահակ, եկեալ կայր առ Նմին Արպագոս, ծափ զծափի հարկանէր եւ ատնհար լինէր եւ այլ եւս բանս կսկծելիս Թշնամանաց ի նա խօսէր, եւ հարցանէր եւս Նմա ըստ իւրոց ընթրեացն, յորժամ ետ նա զմարմին որդւոյն ուտել, թէ հաճոյ թուիցի՞ քեզ ծառայութիւն ընդ թագաւորութեանն։ Եւ նորա հայեցեալ հարցանէր եթէ իւր անիցէ զԿիւրոսի գործս։ Իսկ Արպագոս ասէ. Ես իսկ գրեցի, եւ յիրաւի ինձ զիրսն համարիմ։ Տայր Աժդահակ բանիցն պատասխանի թէ անպիտան քան զամենայն մարդիկ եւ ապաժաման ես. անպիտան՝ զի մարթ էր քեզ իսկ թագաւորել, եթէ ի ձեռն քո գործեցաւ ամենայն, եւ այլում ետուր զտէրութիւնն. անիրաւ ես, զի վասն ընթրեացն զՄարս ի ծառայութիւն վտարանդեցեր։ Զի եթէ պարտ ինչ էր բնաւ այլում ումեք զթագաւորութիւնն տալ եւ մի ինձ ունել, իրաւամբք այն էր եթէ միում ումեք ի Մարացն տուեալ էր եւ ոչ ի Պարսից. բայց այժմ Մարքն որ չիցենն այնց յանցանաց յանցաւորք, ծառայս փոխանակ տերանցն լինիցին։

Արդ թագաւորեալ Աժդահակայ ամս երեսուն եւ երիս, ապա յարքայութենէ անտի ի բաց քակէր։ Եւ Մարք ընդ Պարսից իշխանութեան նուաճեցան, իշխեալ ի վերոյ քան զԱղիւս գետ ասիացւոց աշխարհին ամս հարեւր եւ երկուք սխալ յերեանէ, բայց յայնց զօրս Սկիւթացիքն տիրեցին։ Բայց ի ժամանակին յետինս ատրջացան զի զայս աբարին եւ ապստամբեցին ի Դարեհէ, եւ յետ

ապստամբութեանն վանեալ վկանդեալ կըռուով ի պարտութիւն մատնեցան։ Յայնմ ժամանակի յետ Աժդահակայ Պարսիկքն եւ Կիւրոս յարուցեալ ի մարտ պատերազմի ի վերայ Մարաց, յետ այնորիկ Ասիացւոց տիրեցին։ Իսկ զԱժդահակ Կիւրոս ոչ ինչ այնուհետեւ լլկեալ, այլ իւր ունէր մինչեւ վախճանեցաւ։ Այսպէս ծնեալ եւ սնեալ Կիւրոսի թագաւորեաց. եւ յետ այսր ամենայնի զԿրիսոսս որ անիրաւութեան առնէր սկիզբն վանեաց, որպէս լինէին յառաջագոյն պատմեցաւ[17]. եւ զնա վկանդեալ ամենայն ասիացւոց աշխարհին իշխեաց։

Այլ եւ զմահուանէն Կիւրոսի ի նմին մատենի պատմէ թէ զայրացեալ ընդ նա Տօմիւրեայ Մասսագետացւոց բամբըշան, զզօրսն միանգամայն գումարէր եւ Կիւրոսի ի վերայ դիմէր. յաղթէին Մասսագետացիքն եւ Կիւրոս ի ճակատուն անկանէր։ Յետ պատերազմին իբրեւ յուզեաց եգիտ Տոմիւրիս զդիակնն Կիւրոսի, զկառափն հրամայէր հատանել եւ ի տիկ լի մարդկեղէն արեամբ արկեալ ասէ. Ես զքեզ արեամբ զմայլեցուցից։ Բայց այլք, ասէ, այլազգագոյն իմն զմահուանէն պատմեն, եւ ասէ, զոր արժանի հաւատարմութեան համարեցայ զայն յիշեցի։

Այս պատմութիւն է Երոդոտեայ, եթէ պատմութիւն եւս արժանի իցէ կոչել։ Օն առ այժմ առ ընթեր դնիցեմք եւ զԿտեսիայ բանս զորոյ եւ Յուստինոս զհետ երթայ։ Այս Կտեսիէս գրեաց գիրս զՊարսից իրաց բայց այժմ մատեանն չէք ի միջի. այլ[18] Փոտիոս որ ի նմին մատենէ համառօտեաց, այն կայ։

Կիւրոսի, ասէ, չէք իսկ ամենեւին ընդ Աժդահակայ ազգականութիւն։ Յորժամ երթեալ անկաւ Աժդահակ յԵկբատանս զի ապրեսցի ի ձեռանէ Կիւրոսի, անդ կալեալ

արկաւ յատենակապս. յորոց զերծոյց զնա Կիւ-
րոս յետ ոչ բազում ժամանակի. եւ յետ այ-
նորիկ իբրեւ հայր զգուշանայր նմա։ Էր
դուստր մի Աժդահակայ որոյ անուն կոչէր Ա-
միտիս, զոր առ ի կնութեան Սպիտամաս ոմն
անուանի։ Զսա զառաջինն իբրեւ մայր մեծա-
րէր. ապա իբրեւ զՍպիտամաս սպան զնա ա-
ռար կին։

Յետ այնորիկ ի պատերազմ ի վերայ Բակ-
տրիացւոց գումարէր, եւ նոքա անձնատուր
եղեն. ընդ Շակաց եւս ետ պատերազմ եւ
ձերբակալ զթագաւորն նոցա զԱմորգէս ա-
նէր։ Նորին կին Սպարեթրա անուն, իբրեւ
ազդն եղեւ թէ ամուսինն անկաւ ի բուռն,
երեքարիւր հազար արանց եւ երկերիւր հա-
զարս կանանց զինուորեալ գումարէր, հասանէր
անկանէր անդէն ի վերայ Կիւրոսի, եւ կեն-
դանւոյն ձերբակալ կալեալ կապեալ ունէր
հանդերձ բազում զօրավարօք։ Ապա արձա-
կեաց զնոսա կինն զի զայրն յաղթութիւն
հանիցէ։ Յետ այնորիկ Կիւրոս զՍարդս առ
եւ զԿրիսոս կալաւ։

Իբրեւ ամք քանի մի ի վերայ անցանէին,
Կիւրոս եւ Ամիտիս նորին կին զԱժդահակ՝
որ ի Բարկանիացւոց աշխարհին էր ցանկա-
ցան տեսանել։ Կիւրոս զՊետիսակաս զիւր
մտերիմ առաքէր երթալ բերել զնա։ Պե-
տիսակաս Իբարեայ խրատու զԱժդահակ թող
լքք յանապատ տեղիս աշխարհին եւ անդ ի
սովոյն եւ ի ծարաւոյն սատակէր։ Իսկ ի դէմ
նորա չեւ էր հուպ լեալ գազանաց, զի առ-
իւծք պահ ունէին մինչեւ դարձաւ անդրէն
Պետիսակաս եւ եբարձ. ապա թաղեցաւ մե-
ծաշուք փառաւորութեամբ։

Յետոյ ի մարտ պատերազմի ընդ Դեր-
բիկացիս դրդուէր։ Թէպէտ եւ առ ժամանակ
մի զդէմ կալան Դերբիկացիքն, ապա նուա-

ճէին ընդ իշխանութեամբ Կիւրոսի. բայց է նմին աւուր յերիվարէն անկանէր Կիւրոս, եւ վէրս առեալ յոտս երից աւուրց մեռանէր. առեալ զթագաւորութիւնն որդւոյ իւրում անդրանկան Կամբիւսեայ, եւ Տանիոքսարկեայ զիշխանութիւն Բակտրիացւոց աշխարհին եւ զՊարթեւաց եւ զԿրմանից եւ զՔորասմիա-ցւոց. եւ խրատեաց եւս զնոսա լինել միմեանց բարեկամս. եւ թագաւորեաց նա ամս քսան:

Արդ կարգեցաք եդաք առաջի զամենայն, արդ ո՞ւմ յերկոցունց պարտ իցէ աւատալ մտա-ցեացն. եթէ քաջ ոք միտ դնիցէ Երոդոտոսայ եւ Կտեսեայ բանիցն, անդէն ի կարգի պա-տմութեանն ոչ ինչ միաբան բարբառին, այլ ընդ միմեանս բանքն հակառակեալ եւ սքան-չելի իրս յաճախեն պատմել եւ արտաքոյ քան զհասարակաց կարգ բնութեան. ուր ի Քսենոփոնեայ պատմութեանն ամենեւին չէք իսկ այնպիսի իրաց նշանակ: Եթէ տակաւին թերահաւատ ոք իցէ ի բանիցն ասացելոց, ահա այսր ճշդիւ հանդէս արարեալ ցուցա-նիցեմք զերոցն ընծայութիւնն:

Ասէ Երոդոտոս. Երազ, պատմէ, ընդ քուն երեւեալ Աժդահակայ եւ զահի հարեալ խուճապել վասն մանկանն որ ի դստերէն ծնանիցի, եւ վասն ահին եւ խուճապանացն փոխանակ առն մարի տալոյ զդուստրն կնու-թեան, որպէս ի դէպ իսկ էր, տալ առն ա-նշմն աւագի ի Պարսից ազգէն: Գեղեցի՛կ սկիզբն պատմութեանն: Երկեաւ Աժդահակ վասն մանկանն, բայց սակայն յայնչափ ապ-շութիւն կարծանեցաւ զի փոխանակ զահա-գին ծնունդն խափանելոյ, հարսանիս եւս ան-դէն իսկ ճեպէր պատրաստել: Այդ պարզկի, ասեն, եւ ոչ մարի տալ զնա կնութեան: Բայց եւ քան զայն չէր ինչ փոքր երկեւղ վասն թոռինն զոր յիւրմէ իսկ դստերէն ծնա-

նելոց էր այրն առհմական յայլմէ ազգէ [19] որ
յառաջագոյնն իսկ ակամայ կամօք նուաճեալ
էին ընդ Մարացն իշխանութեամբ, եւ ոչ
այն երկեւղ յաճախագոյն էր որ վասն ի մար
հօրէ եւ ի մօրէ ծնելոյ մանկանն էր։ Բայց
աղէ զայն իսկ տեսցուք թէ զինչ վիշտք ի
վերայ հասեալ կային կամ զինչ ահ շուրջ
մածեալ շտապէր. այս իսկ թէ իւր թոռն
ամենայն ասիայցւոց աշխարհին տիրելոց էր,
եւ զնորա թագաւորութիւնն պայազատելոց։
Ո՜հ տեսիլ ահագին, ո՜ հող ծանրատաղտուկ։
Տեսէք որպիսի՞ իրս մատենագրիցէ որ [20] հայրն
կոչէցի պատմութեան։ Ինձ ոչ փոքր հաւա-
նութեան թուի թէ հեշտականութիւն եւս
քաջ եւ խնդութիւն երազքն բերելոց էին
Աժդահակայ, որ ոչ նմին չար ինչ եւ ոչ տէ-
րութեանն վնաս ինչ էին, այլ այնմ իմն
գուշակ լինէին թէ թոռնն զթագաւորութիւնն
առնլոց է եւ մեծացուցանելոց։

Ապա իբրեւ զմանկանն ծնընդենէ, ասէ,
լսէր, յերկեղէն ի տմարդիկ անագորունու-
թիւն հասանէր։ Վասն այնորիկ Արպագայ
լինի յետ այնորիկ տալ զնա Արպագոս անդի-
որդի ընկենուլ։ Իսկ եւ իսկ վաղվաղակի
ի տագնապէն փութայ զմանուկն թաղել
քանզի բազում գործ ի ձեռն նորա վճարելոց
էին։ Վաղվաղակի ածէ կացուցանէ զնա
առաջի հաւուն։ Ուղի՞ղ։ Բայց զիարդ կամ
որով օրինակաւ, տես։ Մանուկն մինչ դեռ
տասն ամաց էր եկաց թագաւոր ի մէջ հա-
սակակից մանկտւոյն եւ քանզի զինաւ ըստ
տէրութեանն կարգէր, զորդի մարի ուրումն
քանզի անսաստէր, եւ գան հարկանել։ Որ
գանն յարբ երթ պատմեաց հօրն եւ հայրն
թագաւորին։ Արդ մի թէ այնչափ մեծ ինչ
աք էր Կիւրոս յայնպիսում տիս մանաւանդ
յորժամ անդխորդի եւս որդի կարծէր, զի

չէր ձեռնհաս մտօք ոք ասել առնուլ զվրէժ մանկութեան խակութեանն. մինթէ այնչափ ինչ մեծ ոճիրս գործեալ էր Նորա մինչեւ պարտ էր ի Թագաւոր անդր հասուցանել։ Երադոտոս այսպէս կամեցաւ, քանզի յօժարեաց զմանուկն անդէն ի մանկութեան հաւուն եւ հօրն եւ մօրն յայտ եւ ծանօթագոյն գործել։ Այնուհետեւ ի Թագաւոր անդր կոչէր Թագաւորազնն որ զխաղ հասակակիցն յանդգնեալ զան եհար։ Ծաղրալից ասեան յօրինէր, ի մէջ անցեալ կայր Թագաւորին Մարաց, որ ոչն ուրեք յայնպիսի անարգութիւն զանձն իջուցանէր, եւ անդէն վասն տասն ամաց մանկան Թեթեւագոյն վճասու առնէր հարցափորձ քննութեան։ Այլ մի ըստ միաջէ ծաղրալից պատմութիւնք սողին, ի միջէ մեւս եւս ծաղրալից պատմութիւն ծնանի. զի որ մանկանցն խրատաւորարն է նայեցեալ ի մանուկ անդր, յանկարծակի զերեսացն նշանակս ճանաչէր զտասն ամաց մանկան զոր յառաջին յարժամ այն ինչ ծնեալ էր, եսես ի հարեւանցի։ Ցեառ ի միտ առնլոյ թէ Մանդանեայ որդին է, զի՞նչ գործիցէ Թագաւորն. ո՞չ տպաքէն միւսանգամ ի կարծիս եւ ի հոգս անկանիցի ծանրացեալ նեղեալ։ Ոչ ուրեք. ուրախ եւս լինի ընդ այրել մանկանն. եւ վասն որոյ ուրախն լինի, վրէժ առնու։ Ընդբարբարիկ անտագորոնութի՞ւնն զարմացայց եթէ ընդ անպատեհ պատմութիւնն ։ Բայց զինչ յետ այնորիկ ընդ Կիւրոս առնիցէ Աժդահակ. Ցկախարդան հարցանէ թէ զինչ իրք լինիցին. Նոքա խորամանգ մտօք ճարտարեն թէ ելին, իսկ իրքն ի գլուխ յարժամ ի մանրկաւոյ մէջ եկաց Թագաւոր։ Ցեսեր զհանդարտ եւ զմեղմական միտս Աժդահակայ. եւ զի իմացցիս թէ մեղմական միտք էին առնն հայեաց ի կոչունսն զոր Արպագայ առաջի

յօրինէր ։ Ցանկարծակի վաղվաղակի ամենայ-
նի եւ բնաւի մոռացօնս առնէ եւ զայն թէ ա-
մենայն աշխարհին ասիացւոց թագաւորելոց
է մանուկն, զԿիւրոս խրադէտ անցիցն որ ընդ
նմա անցին, ի Պարսից աշխարհն արձակէր ։
Դարձեալ մեւս եւս անհանճար պատմութիւն ։
Լուեալ Աժդահակայ թէ Կիւրոս ապստամ-
բեցոյց զազգն, զօրաժողով լինէր գունդ վա-
ռէր եւ զԱրպագոս կացուցանէր զօրավար ։
Ո՜հ անմիտ մորոսութիւն. մի՞թէ այնչափ ան-
միտ ոք էր Աժդահակ զի որում սակաւ մի
յառաջ ցասուցեալ վրէժ առ, զնա անդէն
սպարապետ զօրացն առեալ կացուցանէր ։ Թէ
զի՞նչ զլրաւ մարտին իցէ, զայն թէպէտ եւ ես
լռեցից, մարթի որ ընթեռնուն առնուլ ի
միտ ։ Ի պարտութիւն մատնեցան Մարքն՝
եւ Աժդահակ ի բուռն անկաւ, եւ յետ այնո-
րիկ Կիւրոս.[21] զԿրիւսոս կալաւ ։ Արդ նախ
զՄարաց իշխանութիւն առ, եւ ապա ի Լիւ-
դացւոց դիմեաց, ուստ որչափ խառն ի խուռն եւ
անկարգ զՊարսից իւս մատենագրեաց Երո-
դոտոս. կանխագոյն ասացեալ է նորա ի նմին
մատենի[22] թէ Պարսիկքն տկարք եւ անզօրք
էին յորժամ կալան զԼիւդացւոց թագաւորն,
եւ կապուտ կողոպուտ զՍարդիացւոց քա-
ղաքն արարին եւ ոչ ընդ[23] փափկութիւն եւ
բարեկեցութիւն ընդելեալք եւ աղքատք եւս
եւ տնանկք էին մինչ չեւ զԼիւդացիս վանեալ ։
Եւ արդ զիա՞րդ տկարք ոք եւ անզօրք եւ
աղքատք էին որոց յաղթեալ ի ճակատու
զամենայն մեծութիւն եւ զարարս Պարսից
աշխարհին յափշտակեցին ։ Դանդաղեմ զա-
մենայն ի մէջ բերել որ անհաւատ խակ են եւ
անդէն ընդ միմեանս մարտ եղեալ կռուին ։
Բայց աղէ դու եկ լուր զի՞նչ զԿիւրոսէ պա-
տմիցէ մատենագիրն. այն որ ցայժմ զամենայն
իմաստութեան խորհրդով վճարէր[24] Կիւրոսի

տապատակ եդեալ ի կողմանս բաբելոնացւոց աշխարհին, առ Գիւնդոս գետ հասանէր, երբեմն մինչ անցանելն ի գետ անդր խաղանէր, երիվար մի ի մեհենական սպիտակ ձիոցն անդէն իջեալ մխրճեալ ի գրգանան սաստկէր: Զայրացաւ զժգմեցաւ Թագաւորն, վաղվաղակի բարկութեամբ ի գետ անդր դիմէր եւ անդէն թողեալ զարշաւանն՝ զգետն տանջէր, եւ զամենայն ամառն ընդ տանջելն հանէր:

Ինձ այսպէս թուի թէ յորժամ ճշդիւք զդժուարութեամբ խորհիցի, ոչ ինչ մեղ մեղ դնիցի որպէս թէ զուր պարսաւիցեմք զՀերոդոտոս: Մարթի այնպիսին եւ զայն ի միտ ածանել թէ ոչ տարապարտ ասիցէ [25] Կիկերոն զնմանէ, թէ անթիւ առասպելս տողէ. զի եւ այլք ի [26] մատենագրաց առասպելական զմատեանն համարին:

Բերաք ի մէջ եւ մեւս եւս պատմագիր իրացն Պարսից զԿտեսիաս Կնիդացի. բայց քանզի ի քսան եւ երեք գրոց անտի հատուածոտոր ինձ կայ, ոչ ինչ մարթեմք ճշդիւ վասն նորին վճիռ բերել: Այլ եթէ հաւանեալ անսայցեմք բանից բազմաց ի հնոցն եւ ի նորոց, չէ զդժուարութեան առաւել Կտեսիայ. [27] Արիստոտելէս. ասէ, թէ չէ արժանի հաւատարմութեան. եւ [28] Ստրաբոն վճիռ բերէ, թէ եւս դիւրագոյն իցէ ումեք պետեսայց առասպելաբանութեանց հաւատալ, քան Երոդոտոսի եւ Կտեսիայ. իսկ [29] Անտիգոնոս յայտնապէս խօսի, ասէ, թէ նա բազում ինչ ստէ. եւ [30] Պղուտարքոս՝ թէ ի ճշմարտութենէ յառասպելս կործանի:

Բայց զի Քսենոփոն արդարեւ ճշմարիտ պատմութեամբ ի հնոցն յիշատակարանաց առեալ մատենագրեաց, եւ զի հաւատարիմ քան զամենայն պատմագիրս որ վասն ազգին իրաց գրեցին Քսենոփոն է՝ ինձ ամենեւին

Հինգերորդ անգամ զի Քսենոփոնեայ պատմութիւնն ի միաբանութեան ընդ գրոց սրբոց բարձեալ բերէ՛ զյաղթութիւնն : Եւ զի այս այսպէս է, իսկզբանէ իսկ արասցուք ակներեւ ցուցանել :

Քսենոփոն ասէ . Աժդահակ զիւր դուստր Մանդանէ ետ կնութեան դրացի թագաւորին . այս արժանի հաւատարմութեան է, բայց ժամանակագրացն մատենից հակառակ կայ, որ ասենն թէ ի Մարաց թագաւորութեան չգտեր Պարսից թագաւոր : Այլ զայնմանէ մեզ չէ փոյթ, նոքին տեսցեն որ այլոց դպրագրաց Հաստագոյն մտանիցեն . քանզի ճշմարտութիւն գրոց սրբոց՝ վկայութիւն թուի մատուցանել Քսենոփոնեայ բանիցն : Զի Եսայեայ զԲաբելոնացւոց քաղաքեն մարգարէացեալ թէ ընդ հուպ առցի . ասէ բայ . [31] Ձայն, ասէ, ազգաց բազմաց ի վերայ լերանց ի նմանութիւն ազգաց բազմաց . ձայն ԹԱԳԱՒՈՐԱՑ եւ ազգանց միահամուռ ժողովելոց : Թագաւորօքն զՄարաց եւ զՊարսից թագաւորացն յայտ կամի առնել : Ի նմին վայրի եւ զՄԱՐՍ [32] յականէ կարդայ մարգարէն, եւ առ նովին ի նոյնս վաղվաղակի [33] զԵՂԻՄԱՑԻՄՆ յարեալ յաւելու, զոր եւ Պարսիկս ի նմին վայրի կոչեցէ : Քանզի որ զգրոց սրբոց գիրսն գրեցին, ոչ զԵղիմացիսն միայն, այլ զնոցին առհմանորդս զՊարսիկս Եղամ գիտեն անուանել :

Դարձեալ պատմէ Քսենոփոն զԿիւրոսէ, թէ ի մանկութենէ համակ ընդ պատերազմս հրահանգս ելանէր, եւ զի աշխատասէր եւ վշտասէր եւ մարդասէր բարք էին նորա : Եւ զի այս ճշմարիտ է, բազումք են յարտաքնոցն մատենագրաց որ նմին վկայք լինիցին, որոց ասկի [34] Նիկողաւոս սիրակուսացի է, եւ [35] Իմերիոս եւ Պղուտարքոս եւ [36] Ափիանոս :

Արդ զայսոսիկ* թողեալ եկեսցուք ի գրոց սրբոց ճոխութիւն։ Եւ արդ զի՞նչ զարմանք իցեն թէ զնա այնպէս առաքինի քարոզիցէ Քսենոփոն, զայն զորմէ ³⁷ Նուիրական մարգարէն ասիցէ Աստուծոյ իսկ բանիւ. Կալեալ զաջոյ ձեռանէ նորա հնազանդեցուցանել առաջի նորա զազգս. եւ զորմէ Աստուածն ասէ ի նմին մարգարէի թէ ³⁸ Ես յարուցի զնա ԱՐԴԱՐՈՒԹԵԱՄԲ թագաւոր, եւ ամենայն ճանապարհք նորա ուղիղ են։ Եւ միւսանգամ թէ ³⁹ Ո՞ զարթոյց յարեւելից զԱրդարութիւն եւ կոչեաց զնա զհետ իւր։ Ո՞չ ապաքէն այս բանք զարութիւն քաջութեանն Կիւրոսի եւ զմիտսն արդարակորովս եւ զմարդասիրութիւն միաբան ընդ Քսենոփոնեայ պատմութեանն յայտ առնիցեն։

Դարձեալ յորժամ ասիցէ տէր Նովին մարգարէիւ թէ ⁴⁰ Ես զարթուցից զհիւսիսայինն եւ զարեւելեայն, որ կարդասցէ զանուն իմ. այս ինքն՝ զԿիւրոս, զի ի հիւսիսակողմն կուսէ զօրաժողով վառեալ խաղացեալ գայր ի մարաստան աշխարհէն առ հիւսիսով բաբելացւոց եւ Հրէաստանեայց աշխարհին։ Իսկ այն՝ զոր ասէ թէ Արեւելեայն, յայտ առնէ թէ ի Պարսից աշխարհէն գայր, քանզի Պարսից աշխարհն յարեւելից Բաբելոնի եւ Հրէաստանի կայ։ Բայց զի կարդաց Կիւրոս զԱստուած, այս ինքն զի ** ծանեաւ նա ըզ-

* Իսկ Երոդոտոս եւ Ցրոփոս բռնաւոր ինչ յաստուածեան փորձս խառնեն։ Այլ Աքենոփոն եւ Իսոկրատէս բռնաւոր չարեաց եւ սպանութեան ետ եւրոյ հանոյն պարտ առնեն։

** Հաստատութեան ի ԻԲԻ Իհայ Կիւրոս յաստուածածանօթ գիտութեան խորատ Դանիէղի եւ Հրէից աստուածապաշտաց որ էին յարքունեան Կիւրոսի. որպէս է Դանիէղի

եւ զԳամրաց եւ զԱրաբացւոց թագաւորան. այլուստ եւս Պարսիցն կացուցանէր. եկին յարեցան ի Նոր Գորդիոս եւ Գողաստաս եւ Աբրագաստաս, խաղացեալ երթայ զօրօք հանդերձ ի Ղիւդաստան եւ զՄարդիացւոց քաղաքն առնու. եւ զԿարիա եւ զՓռիւգիա նուաճէ. զԲաբիղոն յարգել արկեալ պաշարեալ առնու: Բայց զայս ամենայն Կիաքսարայ Մարաց թագաւորի իշխանութեամբն վճարէր: Այլ մի ոք զարմասցի, եթէ զայնչափ անչափ ազգս նուաճեաց, զորմէ Աստուածն [46] ասաց, թէ Երթիցէ եւ տացէ հաստուցումն յանդիման հեթանոսաց, զարհուրեցուսցէ զթագաւորս: Եւ զի դողացին եւ զահի հարան Ասորեստանեայքն եւ նոցին թիկունք օգնականութեանն վկայեսցէ ի մօտոյ նոյն մարգարէ թէ, Տեսին կղզիք եւ երկեան, եւ սարսեցին ամենայն ծագք երկրի. ուր կըղզին բան ոչ եթէ զկղզիս կամ զկղզեացն բնակչաց յայս առնիցէ, այլ այս առանձինն բարբառ է մարգարէական ճառից, որ զամենայն ծովու բնակչաց եւ զծովեզերեայցն, այս ինքն զփոքր աշխարհէն Ասիացւոց դաշակէ:

Իսկ զարագ արագ հասանելն Կիւրոսի, զվաղվաղակի հարկանել կատարել որպէս Քսենոփոն աւանդէ, ոչ ինչ անհաւատ համարիմ, ուր Եսայի ի Հոգւոյ անտի կրեալ ասիցէ. Տացէ իբրեւ փոշի զսուրս նոցա եւ իբրեւ ըղխախ մերժեսցէ զնետս նոցա. այն իսկ է զի այնչափ արագունք իցեն սոքա յաղեղն եւ ի սուսեր եւ այնչափ երագունք զհետ մտանիցեն, զի զէնք նոցա իբրեւ փոշի ի մրրկէ կուտիցին եւ իբրեւ խախ ի բանութենէ բանաշունչ ոքոց չեղջաչեղջ վարեսցին: Զնոյն առակաւ ակնարկէ մարգարէն յորժամ նուադեալ հնչիցէ, կոչել յարեւելից զթռչունն

րէ թէ 49 Պատուէր տուք յինէն այրարա-
տեան թագաւորութեանցն եւ ազքանազեան
գնդին : Եւ զայլոց ազգաց տուէ . 50 Հրաւիրե-
ցէք ի վերայ նորա զազգս եւ զթագաւորն
Մարաց : Եւ դարձեալ ասէ իսկ տէր . 51 Ես
յարուցանեմ ի վերայ ձեր զՄարս որ ոչ ինչ
համարին զարծաթ եւ զոսկի : Գրեթէ զնոյն
բանս ասիցէ զնոցանէ Քսենոփոն, յորժամ
խօսիցի ընդ նոսա Կիւրոս թէ 52 Արք պար-
սիկք եւ ամենեքին որ աստ կայք, ես ճար-
տար գիտեմ եթէ չէք դուք ընչիւք կարօտ :
Յիշէ եւ Եսայի 53 զթագաւորութեանց միա-
համուռ գումարելոց : Այս ուրեմն ճշմարիտ է
զոր Քսենոփոն պատմէ, թէ ազգք եւ արքու-
նականք եւ շահապք եկին ի դաշն միոյն ընդ
նմա երթալ ի մարտ պատերազմի ի վերայ
Ասորեստանեայցն : Նոյնպէս ճշմարիտ են
բանք նորա վասն արշաւանին ի գլուխ եղա-
նելոյ . յորժամ ասիցէ թէ զջուրն Արածա-
նւոյ ի փոս անդր զոր զպարսպօքն խորացու-
ցեալ էր, դարձոյց, եւ հանդերձ իւրովք
զօրականօք մտեալ ընդ գետն ցամաքեալ ի
Բաբելոն մտանէր եւ անդր իսկ յաղթութիւն
յաւուր տօնին յորժամ արբեալք եւ զեղխեալ
էին մարդիկն, եւ անդէն թագաւորն եւ որ
զնովաւն կային սատակէին . զի յայսմ ամե-
նայնի ճշմարիտ մատենագիրն է նաւիրական
մատեանք վկայեսցեն : Իսկ իբրեւ առ Կիւրոս
զքաղաքն եւ զտէրութիւն բաբելոնացւոցն

Լեռն ընդ սա եւ ընդ նա է մէջէ կայ : Նա
տառանէլ եւ Արտաշէս մեր Յովհաննու հայերա-
տառ ամէ տուն զՔրիստոսո զոր Կիւրոս կա-
լաւ, երանը է ժամանակաւ : Բայց զայսէն ե-
րայ յայլաւ մասինն երկայնութեան անկանիցէ
ծառայ :

զիշխանացն վանան իւրոց նիզակակցացն բաժանէր տայր. թուի թէ զայնմանէ ակնարկիցէ Յոայի, մինչ ասէն բայ * Կոչեցէք ձեռամբ, բացէք իշխանք:

Վասն Կիւրոսի եւ վասն արութեանց եւ քաջութեանց որ ի նմանէ գործեցան բաւական է այսչափ. եւ վասն Կիաքսարայ խօսեցուք կարճառօտ, քանզի ակամայ երկայնեցաք զճառս:

Կիաքսարէս այս ըստ Քսենոփոնեայ պատմութեանն յետ Աժդահակայ իւր իսկ հօրն մեռանելոյ, Մարաց կայր թագաւոր, եւ ընկերոս ունէր Կամբիւսեայ Պարսից թագաւորի եւ զՄանդանեայ զիւրոյ քեռն, զօրավար զօրացն զոր ի վերայ Ասորեստանեայցն գումարեաց կացուցանէր: Իսկ ինքն յառաջին արշաւանսն ոչ միայն ի գնդի անդ էր այլ եւ զիշխանութիւն պատերազմին ինքն ունէր: Այս պատմութիւն ամենեւին իսկ փարատ է գրոց սրբոց, զի յորժամ զԲաբելոցւոց քաղաքին կործանմանէ ճառիցէ մերթ զՄարաց մերթ զՊարսից բանք ճառին, եւ երբեմն Եղիմացւոցն եւ ** Մարացն անուամբք զՊարսից եւս ակնարկէ, քանզի չեւ եւս էր ընդելական պարսկական անունն յաւուրսն Եսայեայ եւ Երեմիայ, եւ Մարք քան զՊարսիկսն ազնուագոյնք էին եւ ազգս ընդ նոքօք, մա-

* Գծ. Ձ. Որ այլ նորեձան ասի. Ղարձիւ զինուն զի ըմպիցէ մաւ տրանց իշխանացն:

** Վասն այսորիկ եւ Երեմիա ի ԾԱ, 11, 28. յայտնապէս ասէ ընդ Թագաւորս Մարաց. զի Կիաքսարէս յանուն Մարաց թագաւոր էր, եւ Կիւրոս Պարսից, եւյց մարզպանին Մարաց անուամբն շնորհայնց փանդամայն յայտ առնէ:

է Դարեհն մար, քանզի ըստ Երոդոտոսի եւ Կտեսեայ Աժդահակ է հաւսկ վերջին թագաւոր Մարաց․ բայց զի որչափ անհաւատ են պատմութիւնք նոցա զայն վերագոյն յայս տարարք․ այս թէ տակաւին ի նոյն միտս պնդեալ որք կային, ցուցից զանպատեհութիւնն։ Կիւրոս ըստ նոցա բանիցն մերժեաց զԱժդահակ ի Մարաց թագաւորութենէն, եւ իբրեւ ոչ բազում ամք ի վերայ անցանէին, զԲաբեղացիս նուաճէր, եւ զնոցա թագաւորութիւնն ևս Աժդահակ․ ո՞հ անհանճար ճառք։ Կարծեմ թէ սորքլացաւ Կիւրոս զի զԱժդահակ հան ի թագաւորութենէ․ եւ այն այնպէս զի փոխանակ առաջնոյ թագաւորութեանն զոր հան, այլ ևս։ Ահա յետ անոյս, ասեն, Բաբելոն քաղաքի հան Կիւրոս զԱժդահակ ի թագաւորութենէ։ Նա եւ ոչ այնպէս հաւանութեան բանքն թուին։ Նախ յայն սակս իսկ զի չիցէ հաւանութեան թէ ի ժամանակի զի Բաբելոն առաւ, տակաւին կենդանի էր Աժդահակ որ հան էր Կիւրոսի, մանաւանդ զի թէ կենդանի եւս էր, սակայն չէր մարթ չէր հնար վաթսուն եւ երկուց ամաց յայնժամ լինել, քանզի ասէ իսկ Դանիէլ թէ [56] այնչափ ամաց էր Դարեհ յորժամ զթագաւորութիւն Բաբելացւոց աշխարհին առ։ Դարձեալ ոչ ինչ ակնարկէ մարգարէն թէ հան զնա Կիւրոս յարքայութենէ, յորժամ ապստամբութիւն ի Դարեհէ վերայ գրգռէր, այլ մանաւանդ յայտ է բանիցն լինէր եթէ ամենեւին հաւանք եւ միաբանք ընդ միմեանս էին․ քանզի Կիաքսարէս

լորմէ պէտերմիրոյեան չնենքն յեշտագայքէ․ լորոյ դաննդաշոնեո Ծոպսամէ մկրճեցէն յաբոյ մէ աշն ենա Պրէտփրատաբեոս է։

ըստ երկոցունց օրինացն զՄարացն առեալ եւ զՊարսից զթագաւորութիւնն ի Բաբելոնի վարէր, եւ Դանիէլ յերկոցունց թագաւորացն արքունիւն մեծաւ փառաւորութեամբ շրջէր:

Արդ քանզի նոցա կարծիք քակեցան, ան աս այսուհետեւ զայն որ մեզ հաւանութեան թուիցի, ասասցուք. Նախ դիտեսցուք տեսցուք թէ զի՞նչ զնմանէ գրիցէ Դանիէլ, եւ յետ այնորիկ թէ արդեւք ճշմարտիւ ի դէպ իցեն բանք մարգարէին Կիաքսարեայ որ ի Քսենոփոնեայ պատմութեանն կայ, տեսցուք:

Ա. Ցայտ իմն առնի ի Դանիէլի մատենէն թէ Դարեհ մար վաղվաղակի յետ Բաղտասարայ մեռանելոյ զթագաւորութիւնն առ: Բ. Ցայտ առնէ մարգարէն թէ ամաց վաթսուն եւ երկուց էր նա ի ժամանակին: Գ. Թէ մար յազգէ էր: Դ. Եւ Կիւրոսի առէ փոխանակել զթագաւորութիւն նորա:

Զայս ամենայն վասն Դարեհի մարի մարթի ումեք դիւրաւ ի Դանիէլի գրոցն ժողովել: Իսկ զԿիաքսարեայ եթէ զնոյնս ոչ, սակայն զնմանագոյնն աւանդէ Քսենոփոն: Ա. Զի յառաջնում նուագին յորժամ յօրինեալ կարգեալ զամենայն դարձաւ անդէն ի Մարաստան առէր ցԿիաքսարէս եթէ ապարանք ընտրեալ են քեզ ի Բաբելոնի եւ իշխանաց վանս, զի ունիցիս եւ յորժամ անդր երթայցես իբրեւ ի տան ագանիցիս: Քանզի Կիւրոս որպէս յառաջն նոյնպէս եւ յետոյ զգլխաւոր իշխանութիւն ի նա առնէր ապատան եւ ինքն զերկրորդական պատիւն առ նորա կենդանութեամբն ունէր: Եւ ընդ այնր չեն ինչ զարմանք, քանզի Կիաքսարէս անժառանգ էր յարու մանկանէ եւ զդուստրն եւս Կիւրոսի կնութեան տուեալ ի թախանձան զՄարաստան:

Զայն պատմութիւն վկայութեամբ հաւատարիմ առնէ [56] մարգարէն, քանզի ասէ իսկ ցԲաղտասար բայ Բաժանեցաւ թագաւորութիւն քո․ եւ զնովիմբ ածեալ յարէ, թէ տուաւ Մարաց եւ Պարսից։ Նա անդէն ի հինգերորդում գլուխն պատմէ Դարեհի առաջնորդել թագաւորութեանն ըստ օրինաց Մարաց եւ Պարսից։ Զի՞նչ հարկ էր արդեօք երկոցունց ազգաց օրինացն զգուշանալ, յայտ ուրեմն է թէ՝ մասն մի թագաւորութեանն Մարացն էր եւ մասն մի Պարսից, այն իսկ է զի զառաջին պատիւն նա ունէր եւ զերկրորդականն սա․ եւ այս անտի յայտ է, զի ամենայն ուրեք նախ զՄարսն քան զՊարսիկս անուանէ։ Իսկ յայլ եւս տեղիս գրոց սրբոց պատմութեան [57] ոչ նոյնպէս, զի յետ Դարեհի վախճանելոյ եւ Կիւրոսի զգլխաւոր իշխանութիւնն առնլոյ նախամեծար քան ըզՄարս Պարսիկքն լինին։

Վկայէ եւ Յովսեպոս ի Հրէից նախնեաց պատմութեան [58], զի ասէ իսկ այսպէս․ Դարեհի որ զԲաբիլոնացւոց հարստութիւնն Կիւրոսիւ հանդերձ քակեաց, վաթսներորդ երկրորդ ամն էր յորժամ զԲաբելոն առ․ որ Աժդահակայ ուստր էր, եւ այլ ինն ի Յունաց նմին անուն կոչեցաւ․ այս ինքն Կիաքսարէս։

Ընդ այս ամենայն հայեցեալ բազմաց ի քաջացն մատենագրաց* յանձն առին թէ Դարեհ Մար որ ի Դանիէլի գիրսն կայ, Կիաքսարէս է զորմէ Քսենոփոնն պատմէ։ Իսկ որ զայս մերժեցին յանձանց որոց սակի Սկալիգեր եւ Պետաւիոս եւ Մարսամոս են, զամենայն կարգ պատմութեանն խանգարեցին։

* Ուսերիոս, Պրիդէոստոսիոս, Ակուրինդոս, Կալմէտոս եւ այլք։

Իսկ վասն մահուն Կիւրոսի գործեալ բազում չմիաբանութիւն ի մէջ պատմագրացն կրի. Երոդոտոս եւ Տրոգոս թէ ի ճակատուն որ ընդ Մասսագետացն՝ անկաւ, բայց[59] Երոդոտոս ասէ, թէ բազում եւ այլ ինչ համբաւ է. իսկ Կտեսիաս՝ ի վէրացն, ասէ, մեռաւ զոր ի Դերբիկեցւոց մարտին առ. [60] Դիոդորոս սիկեղացի ասէ, ի խաչ բեւեռեալ. Յովհան Մաղաղա, ասէ, բայց ի նաւամարտիկ կռուէ ընդ Սամիացւոց զուամարելոյ մազապուր փախուցեալ ելեալ յիւր երկիրն դառնայր եւ անդէն սատակէր. Նոյն անտիոքացի զՊիւթագորայ սամիացւոյ վկայէ գրեալ թէ Կիւրոս ի նմին պատերազմի անկաւ. Իսկ զՂուկիանեայ բանն ընաւ չհամարիմ իսկ ինչ, քանզի ոչ իմաստութեան խորհրդով գրէ ինչ նա զպատմութիւնն, եւ ինքն ընդ ինքն մարտ եդեալ կռուի. Քսենոփոն պատմէ յապարանսն խաղաղիկ յախտէ վախճանել. Եւ Քսենոփոնեայ լաւ համարիմ հաւատալ քան եթէ այլոց. քանզի նախ այն իսկ չէ հաւանութեան թէ որ եւթանասնամենի էր ի ճակատ մտանէր*. Երկրորդ անգամ վկայ իսկ Առիանոս եւ Կուրտիոս են զի Աղէքսանդրոս արքայ Մակեդոնացւոց ի Պարսագադացւոց աշխարհին զԿիւրոսի շիրիմն եգիտ յորում Կիւրոսի դիակնն կայր. արդ եթէ Մասսագետաց անագորոյն տիկնոջն ըմբռնեալ էր զնա, ոչ այնպէս մեծապայծառ շիրիմ կանգնեալ թաղէր.

* Կիկերոն (Վասն ծերութ. գլու. Ա) եւ Ղուկիանոս ի Մակրոբիոսին ասեն զնա ի հարիւրորդ ամն եհաս.

# ՎԿԱՅՈՒԹԻՒՆՔ

1. Գիրք Գ վասն օրի։ 2. Ամ. դպր. Աժ։ 3. Ա. Թուղթ առ Կուրինոսս եղբայրն։ 4. Անաժողով տօնից ճառք առ Գրատիանոս։ 5. Բանք վասն Եւսեբ. եւ յառաջին ճառս գրոց գժամանականին ուղղելոյ։ 6. Ընծայ. ժամանակագր. Գլ. ԻՁ։ 7. Վասն յունակ. պատմ։ 8. Քսենոփոն. Թուղթ առ Եպքինէս. Աթենէսս դպր. Աժ. Գլ. ԽԺ. 9. Ղայերտիոս, Գ. 35։ 10. Գեղղ. Դժ, գ։ 11. Ի մատեանս յիշատ։ 12. Տիեզերական մատենս։ 13. Տիեզերական պատմ։ 14. Բիաբանու Հնոց եւ Նորոց կտակարանաց. 15. Որոյ խոստացեալ եւս էր ի գաղղիական Թարգմանութեան գրոցն գրել վասն առցին իրաց մաքառումն. բայց մահու ի վերայ հասեալ գործն խափանեցաւ։ 16. Կղ. ՃԸ. 17. Կղ. ՁԴ. եւ ՃՂԱ։ 18. Ի պատմական գաանին։ 19. Երոդ. դպր. Ա. Գլ. 187։ 20. Կիկեր. վասն օրէն. Գիր. Ա. Գլ. Ա։ 21. Երոդ. դպր. Ա. Գլ. ՃԸԺ։ 22. Գլ. ՃԼ։ 23. Գլ. ՁԹ։ 24. Գլ. ՀԱ։ 25. Վասն օրի. դպր. Ա. Գլ. Ա։ 26. Դիոն Քրիւսոստոմոս, ճառ ԸԺ. Մարաթոն դպր. Ա. եւ այլք։ 27. Ոգ. պատմ. դպր. Ը. Գլ. ԻԸ։ 28. Դպրու. Աժ եւ Ա։ 29. Ի պատմ. աքանչ. ՁԺ։ 30. Ի կեանս Արտաշիսի։ 31. Գլ. Գժ. 4։ 32. Գլ. Գի. 14։ 33. Գլ. ԻԱ. 2։ 34. Դիոդ. սիկ. դպր. Գժ։

35. Ի Փոտայ գիրան : 36. Գիրք ԻԲ : 37. Եսայի ԽԵ, 1 : 38. ԽԵ, 13 : 39. ԽԱ, 2 : 40. ԽԱ. 25 : 41. ԽԵ, 1 : 42. ԽԸ. 14 : 43. Ծ, 44 : 44. ԽԶ. 11 : 45. ԽԵ, 13 : 46. ԻԲ, 2 : 47. Երեմիա ԾԱ, 11. 48. ԾԱ, 27 : 49. ԾԱ, 28 : 50. Եսայի ԳԺ, 17 : 51. Էջ 265 : 52. Եսայի ԳԺ, 4 : 53. Դանիէլ Ե, 30 : 54. Ի նմին վայրի Ե, 31 : 55. Ի նմին վայրի : 56. Նոյն Դանիէլ Ե, 28 : 57. Ի գիրս Եսթերայ ուրեք ուրեք : 58. Յովսեպոս Գիրք Ժ, ԳԼ. ԱԺ : 59. Երոդ. դպր. Ա : 60. Դիոդորոս սիկեղացի դպր. Բ :

# ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ
# ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ
## ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ
## Ը ԴՊՐՈՒԹԻՒՆ

---

### ԳԼՈՒԽ Ա

ԵՐԲԵՄՆ *խորհուրդ ի մտի եղեւ մեր թէ որչափ ընկերհաշտութիւնք քակեցան յայնցանէ՝ որ այլազգ ինչ կամէին մանաւանդ առաքինանալ. եւ ոչ յընկերհաշտութեան, եւ որչափ դարձեալ միահեծան իշխանութիւնք եւ քանի՛ սակաւ հարստութիւնք ի բաց քակեցան ի խառնիճաղանճ ռամկէ. եւ եթէ քանի՛ք իսկ իցեն որոց ձեռն արկեալ ժպրհել բռնանալ, կէսք ի նոցանէ վաղվաղակի ամենեւին իսկ ի միջոյ բարձան, եւ կէսք թէպէտ եւ սակաւիկ ինչ ժամանակ յիշխանութեան կացեալ բաւեցին, զարմանալի եղեն, որպէս թէ իմաստունք իցեն եւ արք փառաւորք։ Եւ զբազմաց զմտաւ ածաք թէ յիւրաքանչիւր իսկ տունս իցեն, որոց բազում գերդաստանիկք իցեն, եւ իցեն որոց բնաւ սակաւք իսկ,*

սակայն եւ զսակաւաւորսն եւս զայնոսիկ չկարիցեն ի կիր արկանել ի հնազանդութիւն տեարքն։

Հանդերձ նոքիմբք զմտաւ ածաք թէ եւ անդեորդքն անդւոցն իշխանք են, եւ որք զերիւարս ասպաստանացն բուծանիցեն, եւ ամենեքին որ հովիւքն կոչիցին, որոց անասնոց տիրիցեն, նմանապէս նոցին իշխանք կարծիցին։ Նա աւանիկ զդասականս զայնոսիկ համարեաք աւելագոյն յօժարեալս տեսանել հնազանդել հովուացն, քան զմարդիկ՝ իշխանաց։ Զի գնայցեն երամակքն յո ուրեք գնացուցանեն զնոսա հովիւքն եւ ճարակիցին զարօտս վայրացն յորոց վերայ արձակիցեն զնոսա, եւ մերժիցին ուստի արգելուցումն զնոսա։ Նա եւ զշահսն եւս որ ի նոցանէն առնիցին, այնպէս ինչ հովիւքն ի կիր արկանեն որպէս զիարդ ինքեանք կամիցին։

Արդ եւ ոչ զմիոջէ իսկ երբեք զդատուէ լուաք ուրեք եթէ ընդ հակառակս ինչ ելեալ կայցեն հովուին, ոչ առ անասատելոյ եւ ոչ առ չհամարձակելոյ զպտուղսն ի կիր արկեալ վարել։ Այլ հօտքն եւս դժընդակագոյնք այլոցն ամենեցուն են, քան որոց իշխիցենն նոցա եւ օգտիցին ի նոցանէ։ Իսկ մարդիկ ոչ ընդ ումեք առաւել ի վէգ եկեալ խռովիցեն քան զորոց ազդն լինիցի նոցա եթէ իշխել մտաբերեն։

Յորժամ զայս ամենայն զմտաւ ա-
ծեմք, ապա նոքիմբք լինեմք խելա-
մուտ թէ դիւրագոյն իցէ մարդոյ ա-
մենեցուն այլոց անասնոց իշխել քան
եթէ մարդկան։ Բայց քանզի զմտաւ
ածեմք եթէ եղեւ իսկ Կիւրոս պարսիկ
որ զբազում մարդիկ արար իւր հնա-
զանդեալս, եւ զբազում քաղաքս եւ
զբազում ազգս, անտի այնուհետեւ
տագնապեցաք ի հարկէ իսկ առնուլ
ի միտ, եթէ ոչ անհնարին եւ դժուա-
րին ինչ գործ իցէ մարդկանն տիրել,
թէ իմաստութեամբ եւ խելամտու-
թեամբ զայն ոք վճարիցէ։ Եւ արդ
գիտեմք եթէ յօժարեցին հաւանել
հնազանդ լինել Կիւրոսի ոմանք որ ի
բացեայ էին բազում աւուրց գնաց
ճանապարհի, եւ կէսք՝ ամսոց. եւ այլք
որոց եւ տեսեալ իսկ երբեք չէր զնա,
եւ ոմանք որ գիտէինն քաջ թէ տե-
սանիցեն իսկ ոչ, սակայն կամէին նմին
հնազանդ լինել։

Զի այսչափ ինչ լաւ քան զայլ
թագաւորսն էր եւ որ զհայրենիս իշխա-
նութիւնսն առին եւ որ յանձանց իսկ
ստացան. զի սկիւթացին թէպէտ եւ
բազում Սկիւթացիք են, այլում ազգի
չկարէ տիրել եւ սիրելի լինել, եւ զայն
եւեթ սիրիցէ թէ իւրում ազգին կայ-
ցէ մնայցէ իշխան. եւ թրակացին Թրա-
կացւոց, եւ զիւրիկեցին Իլիւրիկեց-

ւոց. եւ զայլոց եւս ազգաց նոյնգունակ լսեմք: Արդ յԵւրոպն եւ այժմիկ եւս ինքնաւրէնս աղիկամբ ասեն լինել եւ յիրերաց քակել եւ ի միմեանց պառակտել:

Բայց Կիւրոս առ ընդ իւր զազգսն որ յԱսիացւոց աշխարհին էին ինքնաւրէնս աղիկամբ, եւ երթեալ հասեալ սակաւ ինչ պարսիկ զօրու իշխեաց Մարաց եւ Վրկանացւոց նոցա իսկ կամաւ: Նա վանեալ վկանդէր զԱսորիս, զԱսորեստանեայս, զԱրաբացիս, զԳամիրս, զերկոսին զՓռիւգացիսն, զԼիւդացիս, զԿարիացիս, զՓիւնիկեցիս, զԲաբելացիս: Իշխէր եւ Բակտրիացւոց եւ Հնդկաց եւ Կիլիկեցւոց. ապա եւ Շակաց եւ Պափղագոնացւոց եւ Մեգադիդնացւոց եւ այլոց եւս բազում ազգաց զորոց եւ ոչ զանուանսն ոք կարիցէ ասել: Իշխէր եւ Յունաց որ յԱսիացւոց աշխարհին էին. եւ իջեալ ի ծովակողմն տիրէր Կիպրացւոց եւ Եգիպտացւոց:

Արդ այսոց ամենայն ազգաց տիրեաց, որ ոչ իւր միաշուրթն համալեզուք էին, եւ ոչ միմեանց իսկ: Բայց սակայն կարաց յայնչափ աշխարհ ահիւն հասանել, մինչեւ ամենեցուն իսկ երկընչել եւ ի նա ձեռն ումեք չմխել: Կարաց եւ այնպիսի ինչ յօժարութիւն արկանել ամենեցուն նմա պաշտօն առնելոյ,

որպէս զի միշտ իսկ եւ հանապազ նո-
րա կամօք արժան համարէին վարել։
Զայնչափ անչափ ազգս նուաճեաց ընդ
որս դժուարին է անցանել, ընդ որ կոյս
ոք եւ սկսանիցի գնալ յարքունեացն,
թէպէտ ընդ արեւելս ոք գնասցէ թէ-
պէտ ընդ արեւմուտս, եթէ ընդ հա-
րաւ եթէ ընդ հիւսիւս։

Բայց մեք, քանզի արժանի զարմա-
նալոյ այր է, դիտեսցուք տեսցուք թէ
ո՛ ոք երբեք էր ազգաւ, եւ զի՞նչ բարք
էին նորա, եւ որպիսի՛ ինչ խրատու
խրատեալ եւ այնպէս ընտիր եւ ազ-
նուագոյն գտաւ յիշխել անդ մար-
դկան։ Եւ արդ զոր հարցաք ինչ եւ զոր
կարծեմք թէ ազդ եղեւ մեզ, զայն
ջանասցուք պատմել։

## ԳԼՈՒԽ Բ

ԿԻՒՐՈՍԻ ասեն ի Կամբիւսեայ ծնանել
ի Պարսից թագաւորէ. Կամբիւսէս այս
ի Պարսից ազգէ էր, եւ Պարսիկքն ի
Պերսեայ անուանեալ կոչէին. եւ մայր
ասեն լեալ զՄանդանէ. իսկ Մանդա-
նէ ինքն դուստր էր Աժդահակայ Մա-
րաց եղելոյ թագաւորի։ ԶԿիւրոսէ
պատմեն եւ նուագեալ եւս հնչի ցայժմ
ի բարբարոսաց անտի թէ բարենշան
եւ գեղեցիկ էր տեսլեամբ, եւ մար-
դասէր անձամբ, եւ ուսումնասէր, եւ

առատ. որպէս զի զամենայն իսկ աշխատութիւն յանձին ունել եւ ի բնաւ վիշտս մխել վասն յարգանացն գովութեան։

Այսպիսի ինչ շունչ եւ ոգի եւ կերպարանս յիշատակեն թէ ունէր։ Խրատեցաւ ի Պարսից օրէնս. այս օրէնք ի հասարակաց բարութեանցն առնեն սկիզբն, քանզի ոչ եթէ անտի առնիցեն սկիզբն, ուստի ի բազում քաղաքս սկսանիցին. զի կէսք ի քաղաքաց թողուն զիւրեանց մանկտին որպէս զիարդ ոք ինչ կամիցի՝ խրատել, եւ զնոսին իսկ զերիցագոյնսն զիարդ ուպէտ ըստ իւրեանց իսկ հեշտի գնալ։ Ապա յետոյ դնել եւ պատուէր տան մի գողանալ, մի յափշտակել, մի բռնութեամբ յուրուք տուն հատանել, մի հարկանել զուր յանիրաւի, մի շնալ, մի անսաստել իշխանին, եւ այլ եւս ինչ նոյնպիսիս նոյնգունակ. ապա թէ յանցեալ ինչ ուրուք ի նոցանէ իցէ, պատիժս պատուհասից ի վերայ դնիցեն։

Իսկ Պարսից օրէնք կանխեալ իբրեւ զսկզբանէն փոյթ յանձին ունին, զի մի այնպիսիք ոք քաղաքացիքն իցեն, զի զյոռութեան իրիք գործոյ կամ զծանակութեան զհետ իցեն. եւ հոգան այսպէս զայն ձեւ։ Գոյ նոցա հրապարակ, որում անուն կոչէցի եղեւթերա, որ թարգմանի ազատ, անդ են եւ

տրքունիքն եւ այլ եւս վանք. անտի գինք եւ վաճառք եւ վաճառորդք եւ նոցին բարբառքն եւ աղմուկք մեկնեալ որոշեալ են յայլ ինչ տեղի, զի մի իցէ թէ նոցին ամբոխն եւ ժխորն ի խրատելոյն պարկեշտութիւն խառնիցի։

Բայց հրապարակն որ շուրջ զպապարանօք իշխանացն իցէ, ի չորս բաժինս բաժանիցի. մի մասն ի նոցանէ մանկտւոյ է, եւ միւն երիտասարդացն, միւս եւս արանց կատարելոց, եւ չորրորդն այնոցիկ որ արտաքոյ քան զզինուորութեան ամսն իցեն։ Եւ օրինօք իւրաքանչիւր ի նոցանէ գան հասանեն յիւրեանց տեղիս. մանկտին ընդ այգն, եւ արքն կատարեալք. բայց ծերագոյնքն երբ նոցա հաճոյ թուիցի, բայց եթէ յաւուրսն կարգեալս յորս պարտ իցէ նոցա անդէն իսկ գտանել։ Իսկ երիտասարդքն ննջեն զպարանօքն հանդերձ հանդիւիւն զինուք բայց միայն յամուսնացելոցն. եւ պահանջին իսկ ոչ ողքա, թէ ոչ կանխագոյն պատուէր տուեալ իցէ նոցա գալ. բայց չէ իսկ վայելուչ նոցա բազում անգամ ի բացեայ գտանել։

Ի վերայ իւրաքանչիւր բաժնից երկոտասան իշխանք կան, քանզի եւ երկոտասան տոհմք զատանին Պարսից, եւ ի վերայ մանկտւոյն ի ծերագունացն ընտրեալ կան, որք թուին եթէ

մարթեն զմանկունս ազնուազգիս ի հանդիսի ցուցանել. եւ ի վերայ պատանեկացն յարանց անտի կարգելոց որ զնոսին իսկ զպատանեկան թուո-ցին լաւագոյնս ընծայեցուցանել. իսկ ի վերայ արանցն կատարելոց նոքա որ աւաւել անձնելիս կատարիցեն զնոսա հրամանացն աւագ իշխանութեանցն: Գոն եւ ծերոցն վերակացուք ընտրանաւ, որք վերակացու լինիցին զի եւ նոքին զպատուհասն ի գլուխ հանիցեն:

Զոր ինչ իւրաքանչիւր հասակի հրամայեալ իցէ գործել, պատմեսցուք, զի յայտ առաւել լինիցի թէ որպիսի՞ ինչ փոյթ յանձին ունիցին զի ազնուագոյնք քաղաքացիքն իցեն. մանկունք ի վարդապետանոցսն յաճախեալք զարդարութիւն ուսանին զիրաւն եւ զարժանն կորովել, եւ ասեն՝ թէ ի դոյն իսկ գնան, զոր օրինակ առ մեզ իսկ որ դպրութիւնսն ուսանիցին: Եւ նոցին իշխանքն զմեծ մասն աւուրն ծախեն եղեալ նոցա դատաւորս: Քանզի առանցին իմն եւ մանկունս առ միմեանս որպէս եւ արանց՝ գողութեան եւ յափշտակութեան եւ բռնութեան եւ խաբէութեան եւ չարախօսութեան բամբասանք, եւ այլոց եւս նոյնպիսեաց մեղադրութիւնք. որոց եթէ անիրաւեալ ինչ իցէ յայտնացանէ եւ հասանիցեն ի վերայ, պատիժս ի վերայ ածեն:

Տանջեն եւ զորս գտանեն զի զուր բամբասոսիցէ տարապարտուց ձգձգիցէ։ Գտանին եւ զապախտաւորութեան մեղադրութիւն, վասն որոյ տաւանել զմիմեանս ատեան մարդիկ, բայց գտանին ոչ. եւ զուամէ դիտիցեն թէ մարթի զձիրն հատուցանել եւ չհատուցանէ, ըկեն եւ զնա ատատիկ։ Զի զապախտաւորացն այսպէս անծեն զմաաւ թէ եւս տաաւել զդից եւ զհարց եւ զմարց եւ զազգէ եւ զատհամէ անփոյթ առնիցեն։ Եւ այսպէս թուի թէ զապախտաաւորութեան՝ լղրշութիւն եւ անամօթութիւն զհետ գնայցէ. քանզի այն իսկ է որ ամենեւին իսկ ի բնաւ քարուակաման լինիցի առաջնորդ։

Ուսուցանեն մանկաւայ եւ ցածութիւն, եւ մեծ իմն նպաստ լինիցի նոցա առ ուսանել զգաստանալ, զի եւ զերիցագոյնսն տեսանիցեն զօրն ողջոյն ցածութեամբ կեցեալ։ Ուսուցանեն նոցա եւ իշխանաց հնազանդ լինել. եւ ի դոյն յաճախագոյն այն նպաստ լինի, զի եւ զերիցագոյնսն տեսանեն հնազանդեալս յոյժ իշխանացն։ Ուսուցանեն եւ ժուժկալս լինել պորտոյ եւ ըմպելւոյ. լինի եւ ի նոյն բազում օգնականութիւն, զի տեսանենն եւ զծերսն զի ոչ յառաջագոյն երթան վասն պորտոյ մինչ չեւ իշխանացն արձակեալ։ Զի ոչ եթէ առ մարցն ու-

տեն մանկտւոյն, այլ առ վարդապետին, յորժամ իշխանքն նշանակիցեն։ Բերեն եւ ի տանէ ուծիկ՝ հաց, եւ խորտիկ՝ կոտիմն. իսկ վասն ըմպելոյ՝ բաժակ, զի եթէ ծարաւիցէ ոք հանցէ ի գետոյ անտի։ Յանդերձ տղքումբք ուսանին եւ ընդ գիրկս մտանել եւ նետաձիգ լինել. մինչեւ ցվեշտասան եւ ցեւթնուտասան ամն ի ծնընդենէ զայս ինչ մանկտւոյն ուսանեն. եւ այնուհետեւ անցանեն ի պատանեականն։

Սոքին իսկ պատանեակքն դարձեալ ընդ հրահանգս եղանեն այսպէս։ Զտասըն ամ յորմէ հետէ ի մանկանցն ելեալ իցեն, զիշխանացն ապարանօքն ննջեն, զոր օրինակ կանխագոյն ճառեցաւ, եւ պահպանութեան աղագաւ քաղաքին եւ վասն ցածութեան։ Զի թուի իսկ այսպէս թէ այն հասակ մանաւանդ խնամակալութեամբ կարօտանայցէ։ Մատուցանեն եւ զցերեկ զանձինս իշխանացն՝ ի կիր արկանել, եթէ պէտք ինչ հասարակաց իցեն. եւ յորժամ պարտ եւ պատշաճ իցէ, ամենեքին զապարանօքն մնան։ Եւ յորժամ թագաւորն յորս ելանիցէ, առեալ տանի զկէս պահապանացն. զայդ առնէ բազում անգամ ի միում ամսեան։ Պարտ է այնոցիկ որ ելանեն, նետս ի կապարճսն ունել, եւ սուսեր ի պատենի, եւ թուր զգօտւոյ, եւ

տապար եւս եւ նիզակս երկու, զմին առ արձակելոյ եւ զմիւսն եւս թէ պիտոյ լինիցի, ձեռամբ ի գործ արկանելոյ:

Նմին իրի իսկ հրապարակաւ փոյթ յանձին ունին զորսոյ երէոց, եւ թագաւորն իբրեւ ի պատերազմի զօրավար է նոցա, եւ ինքնին իսկ գլխովին որս առնէ եւ զայլոց հոգայ թէ զիարդ արդեւք որսայցեն, զի ճշմարիտ իսկ կըրթութիւն թուին իւրն ամենայնի որ ինչ ի պատերազմի լինիցի, քանզի ընդելուցանէ իմն այգունն յառնել եւ ցօղահար եւ ցրտաբեկ եւ խորշակաւ լինել, կրթէ եւ ի ճանապարհ երթալ եւ արշաւել: Հարկ է եւ ի գազան աղեղամբ նետաձիգ լինել յոր վայր հասեալ ամբառնայցէ. հարկ է բազում անգամ եւ ժրանալ եւս յորսն, յորժամ գազան ինչ յուժգնագոյն գազանաց ի դիմի հարկանիցի. քանզի պարտ եւ արժան է զայն որ մօտ հասանիցէ հարկանել եւ զգոյշ լինել եթէ ի վերայ դիմեալ խաղայցէ. որպէս զի չէ ինչ դիւրին գտանել թէ զինչ այն ինչ իցէ որ յորսն չիցէ, յամենայնէ որ ի պատերազմի գտանիցի:

Յորժամ յորսն ելանիցեն ունին ճաշ ուտելի քան զմանկտւոյ, որպէս ի դէպ է. բայց զայլն ամենայն հանգոյն նոցին. եւ յորժամ որս առնիցեն, չուտեն

ճաշ։ Ապա թէ պէտք ինչ լինիցին վասն երէոցն տեւել յամել, կամ այլազգ ինչ կամիցին դեգերել վասն որսոյն, զճաշն ընթրիս առնիցեն, եւ ի վաղիւ անդր միւսանգամ որսայցեն մինչեւ ցընթրիսն, եւ մի օր զերկոսին աւուրսն հաշուիցին, քանզի միոյ աւուր ռոճիկ ծախեն։ Զայս առնեն վասն ընդելանելոյ, զի թէ եւ ի պատերազմի պիտոյ ինչ լինիցի, կարիցեն զնոյն գործել. եւ խորտիկ զայն ունին այնպիսիքն, զոր որսայցեն ինչ, ապա թէ ոչ՝ զկոտիմն։ Իսկ եթէ կարծիցէ ոք ինչ զնոցանէ եթէ չախորժելով ուտիցեն, քանզի կոտիմն եւեթ ունիցին ընդ ռոճկի, կամ չախորժութեամբ ըմպիցեն, յորժամ ջուր ըմպիցեն, զմտաւ ածիցէ թէ զիարդ հեշտական իցէ քաղցելոյ փոխինդ եւ հաց ուտել, եւ որպէս քաղցր ծարաւելոյ ջուր ըմպել։

Իսկ տոհմք որ մնայցեն, դարձեալ ընդ այլ հրահանգս ելանեն, զոր մինչ դեռ մանկտին էին, ուսան, աղեղն առնուլ եւ նետ ձգել. եւ վասն նոցին ընդ միմեանս ոգորին. են եւ ի հրապարակի մրցութեան հրահանգք, զոր եւ ընդ նահատակութեանն վարձք։ Եթէ ի միում ի ցեղիցն բազումք իցեն խելամտագոյնք եւ առաքինիք եւ հաւատարիմք, յարգեն եւ գովեն զնոսա քաղաքացիքն, եւ մեծարանս դնեն ոչ միայն

եւեթ որ ի ժամուն իշխիցէ նոցա, այլ եւ որ զնոսա ողջ մինչ մանկտին էին, խրատեաց: Իսկ իշխանքն ի կիր արկանեն եւ զմնացեալ պատանեակսն, եթէ պէտք ինչ լինիցին կամ պահպանել կամ զխաստակարան խուզել կամ զաւազակաց զհետ արշաւել, եւ կամ այլ ինչ որ պնդութեան եւ երագութեան պէտք իցեն: Պատանեակքն զայս ինչ վճարեն. իսկ յորժամ զտասն ամս ի գլուխ հանիցեն, ի կատարեալ արսն ելանեն:

Ի ժամանակէ յորմէ հետէ ի պատանեկացն ելանիցեն, նոքին դարձեալ զքսան եւ զհինգ տարիսն այսպէս անցուցանեն: Զառաջինն, որպէս զպատանեակսն զանձինս իշխանացն մատուցանեն ի գործ արկեալ վարել թէ պէտք ինչ հասարակաց լինիցին, որք ցածնոց իսկ գործք իցեն եւ կարողաց: Եւ եթէ զօրաժողով ի մարտ պատերազմի ուրեք հասանիցէ երթալ, որ այնպէսն խրատեալ իցեն, չունին աղեղունս եւ զեղարդունս յորժամ երթայցեն ի ճակատն, այլ զզէնսն որ անքեմաքայն կոչեցին, պատենազէնք զբահապատք զլանջօքն, մկնդասուրք որպէս ինչ Պարսիկքն նկարին եւ յաջում ձեռին սուսեր պղնձատիկ կամ թուր: Նմանայն իշխանք ի նոցանէ կան, բայց միայն մանկանց վար-

դասապետքն : Իսկ իբրեւ զքսան եւ զհինգ ամսն կատարիցեն, արձակիցին եւ սոքա որ աւելի քան զյիսուն ամաց իցեն ի ծնընդենէ իւրեանց. եւ ապա ի ծերագոյնսն անցանեն որք եւ ծերագոյնք իսկ կոչին :

Բայց եւ ծերքն դարձեալ ոչ արտաքս քան զիւրեանց աշխարհն ի պատերազմ երթան, այլ անդէն կան, դատին զհասարակաց ինչ դատաստան կամ զառանձինն ինչ ուրուք. նա եւ զմահու դատաստան նոքին դատին, եւ զբնաւ իսկ զիշխանսն նոյնք ընտրեն : Եւ եթէ ոք ի պատանեկաց անտի կամ յարանց կատարելոց յանցանիցէ ինչ յօրինացն, գուշակեն իւրաքանչիւր նահապետք ցեղիցն, եւ յայլոց անտի՝ որ կամիցին : Իսկ ծերոցն լուեալ տարադիր հանեն, եւ որ տարադիրն ելանէ, անարգ եւ արհամարհ այնուհետեւ ըզկեանսն վախճանէ :

Արդ զի հաւաստեաւ յայտ լինիցի ամենեւին Պարսից առաքինութիւնն, սակաւիկ ինչ ընդ նոյնս եկից այսրէն. զի այժմիկ համառօտիւք կարճառօտ ցուցցի վասն բանիցն ասացելոց յառաջագոյն : Քանզի պատմեն իմն զՊարսից այսպէս թէ իբրեւ երկոտասան բեւրք են. եւ ոչ ոք ի նոցանէ արգելեալ է օրինօք ի պատուոց եւ յաւագ իշխանութեանց. այլ իշխանութիւն

է ամենայն Պարսից զիւրեանց որդեանս ի հասարակաց արդարութեան հրահանգս յղել: Նոյն որ կարօղքն իցեն սնուցանել զորդիսն զպարապորդս, առաքեն, իսկ որ չիցեն ձեռնհաս, ոչ յղեն. բայց որ յարքունական վարդապետացն խրատիցին, համարձակ է նոցա ի պատանեկաց միջի յերիտասարդութիւն հասանել, իսկ որ ոչ այնպէսն խրատիցին, չիք հնար: Իսկ ի պատանեկան որք վճարիցեն առնել զօրինականսն, մարթ է նոցա յարս կատարեալս խառնել եւ յիշխանութիւնս եւ ի պատիւս վայելել: Դարձեալ եթէ ի մանկանցն չվճարիցին կամ ի պատանեկացն, ի կատարեալսն չմտանեն. եւ ի կատարելոց անտի որ առանց յանցանաց անարատ կեցցեն, նոքա ի ծերակոյտ անդր խառնին: Նոյնպէս ծերքն ընդ ամենայն լաւութիւնսն անցեալ կան ի կարգին: Այս է առաքինութիւն նոցա, որով թէ վարիցին, համարին ազնուագոյնք իսկ լինել:

Նա ցայժմ եւս կայ մնայ վկայութիւն չափաւոր կերակրոյ նոցա եւ վաստակելոյ նոցա ի կերակուրսն նշանակ: Քանզի եւ այժմ առականք են Պարսից թքանելն եւ գայռութիւնքն եւ շուայտութիւն, ամօթ է յայտ երթալ ուրեք վասն միզելոյ կամ վասն այլոց ինչ այնպիսի իրաց: Զայդ չկարէին

տանել թէ ոչ եւ չափ ինչ կերակուր կերակրէին եւ զխոնաւութիւնն՝ ապառէին ճգամբքն եւ աշխատութեամբք։

## ԳԼՈՒԽ Գ

ԶԱՅՍ վասն ամենայն Պարսից պատմեցաք. իսկ այժմ վասն որոյ բուռն հարեալ իցէ բանս, զիրաց եւ զարիութեանց Կիւրոսի ճառեսցուք, եւ ի մանկութենէ իսկ առնիցեմք սկիզբն։ Քանզի Կիւրոս մինչեւ ցերկոտասան ամն կամ թէ սակաւ ինչ աւելի, նովին խրատու եւ իմաստութեամբ խրատեցաւ, եւ քան զընաւ իսկ զհասակակիցսն ընտիր երեւէր, եւ այնու՝ զի արագ արագ ուսանէր զայն որ արժանն ինչ էր, եւ բարւոք եւ առաքինութեամբ զիւրաքանչիւր պատշաճն գործէր։

Յայնմ ժամանակէ հետէ կոչեաց Աժդահակ զիւրուրոյն դուստր եւ զնորին որդի. զի ցանկացաւ տեսանել, քանզի լսէր իսկ զնմանէ թէ բարւոք եւ գեղեցիկ է։ Եւ Մանդանէ ինքնին եւ չոգաւ առ հայր իւր եւ ունէր զԿիւրոս զորդի իւր ընդ իւր։ Իբրեւ փութանակի երթեալ հասանէր, եւ ի միտ առնոյր Կիւրոս եթէ մօրն հայր է Աժդահակ, իսկ եւ իսկ վաղվաղակի քանզի իբրեւ որդի յաճախագութ էր ի բնէ, ողջոյն ետ նմա, զոր օրինակ յառաջա-

դոյն անընդունելից ոք կամ բարեկամ ողջունիցի :

Նաեւ տեսեալ զնա ընդ զարդ եկեալ եւ ամացեալ ծաղիր յաչս եւ երփն երփն գունակաց եւ զգեստն յօրինեալ եւ զզարդուրան, որպէս օրէնք էին Մարացն. քանզի այս ամենայն մարական է, եւ ծիրանի պարեգօտակունքն եւ գրտաքն եւ քայլքն ի պարանոցի եւ ապարանջանք ի ձեռս եւ պախճանանքն եւ լանջազեղ`կամարք. իսկ Պարսից եւ այժմ իսկ ի տունս ձորձք յուլիք են եւ կերպակուրք խոտանք: Արդ տեսեալ զզարդ Հաւուն, Հայեցեալ ընդ նա ասէր. Մա՛յր իբրեւ զի գեղեցիկ է Հաւս: Նաեւ մօրն Հարցեալ զնա թէ ո՛ քան զո գեղեցիկ թուիցի, Հա՛յրդ եթէ սա: Պատասխանի տայր Կիւրոս թէ Մա՛յր` քան զամենայն Պարսիկս` իմ Հայրն վայելուչ եւ գեղեցիկ է, բայց քան զամենայն Մարս որչափ ես տեսի ի ճանապարհս եւ ի դրունս, կարի Հաւս իմ գեղեցկագոյն է:

Ողջոյն տայր նմա Աժդահակ եւ ազուցանէր պատմուճան գեղեցիկ, եւ քայլամանեկօք եւ ապարանջանօք մեծարէր զարդարէր. եւ եթէ ուրեք Հասանէր գնալ յուկեսանձ երիվարի վերայ շրջեցուցանէր ոսկեօվք զարդուք ականակապ աճառօք, որպէս եւ ինքն իսկ սովոր էր երթալ: Նաեւ Կիւրոս քան-

զի մանուկ էր եւ ընդ զարդ կամէր, ուրախ լինէր ընդ պատմուճանն եւ խնդայր յորժամ ուսանէր յերիվար հեծանել. քանզի ի Պարսից աշխարհին վասն դժուարին լինելոյ եւ զերիվարսն բուծանել եւ ձի վարել, քանզի լեռնային է աշխարհն, եւ երիվար անգամ տեսանել անհնար էր։

Յորժամ ընթրիս ուտէր Աժդահակ հանդերձ դստերաւն եւ Կիւրոսիւ, իբրեւ կամէր թէ ախորժելով կերիցէ զընթրիսն մանուկն, զի մի տան խորտկացն տենչանայցէ, ած առաջի նորա սկաւառակս եւ պէսպէս ազգի ազգի համեմանս եւ խորտիկս։ Իսկ զԿիւրոսէ պատմեն ասել այսպէս. Թէ Ով հաւ, քանի՛ աշխատութիւն է քեզ յընթրիսն քում, թէ հարկ իցէ քեզ ի բնաւ իսկ իսկաւառակսն ձգել զձեռս եւ ճաշակել յազգի ազգի խորտկաց այտի։ Ասէ Աժդահակ. Իսկ արդ զի՞արդ, ո՞չ քան զՊարսից ընթրիսն բարւոք թուիցին քեզ ընթրիքս։ Եւ Կիւրոսի ասեն տալ առ այն պատասխանի, թէ Ո՛չ հաւ. այլ յոյժ իսկ լոկ եւ վարկպարազի առ մեզ ճանապարհ է առ յագենալ, քան առ ձեզ։ Քանզի զմեզ հացիկն եւ միսն յագեցուցանէ, եւ դուք ի նոյն փութայք ընդ մեզ, եւ ընդ բազում իմն արահետս ի վեր եւ ի խոնարհ յածիք շրջիք մոլորեալք թափառական

եւ հազիւ եկեալ հասանէք յոր մեք վաղագոյնն հասաք։

Աժդահակ ասէ. Մանուկ դու ոչ ինչ ծանրացեալ նեղիմք յորժամ յածիցիմքն եւ շրջիցիմք. եւ դու, ասէ, թէ ճաշակիցես ապա ի միտ առցես եթէ հեշտական է այն։ Ասէ Կիւրոս. Նա եւ քեզ աւանիկ հաւ, տեսանեմ զի ատելի եւ գարշելի են խորտիկքս։ Եհարց ցնա Աժդահակ, թէ Ի՞ւ իմացեալ մանուկ դու ասես. Զի տեսանեմ, ասէ, զքեզ, զի յորժամ ի հաց հուպ լինիցիս, ոչ ուրեք զձեռսդ սրբես, իսկ յորժամ մխիցիս ի մի ինչ ի նոցանէ, վաղվաղակի զձեռսդ ի դաստառակսն սրբես, որպէս զի բնաւ տաղտկաս իսկ լի լինել նոքօք։

Ասէ Աժդահակ. Այսուհետեւ եթէ այդպէս գիտես ով մանուկ դու, գոնէ միս կեր զի զօրագոյն երթայցես ի տուն. իբրեւ զայս ասէր, բազում պատրուճակս երէոց եւ զգօն անասնոց բերէր առաջի. եւ Կիւրոս իբրեւ ետես շաղիղ բազում. Տա՞ս ինձ ասէ, ով հաւ, զայս ամենայն միս որպէս ինչ ինձ կամ իցէ, արկանել զնոսա ի կիր։ Ասէ. Երդուեալ իցէ իմ յԱրամազդ, յինէն տուեալ քեզ մանուկ դու։ Յայնմ վայրի առեալ Կիւրոսի զմիսն տայր ասեն ցայնոսիկ որ շուրջ զհաւուն իսպասու կային. եւ ցիւրաքանչիւր

ղջ ասէր թէ քեզ այդ, քանզի մտադիւրութեամբ ուսուցանես ինձ յերիւար հեծանել. եւ քեզ, զի սուսեր ետուր ինձ. քանզի այժմ զայս ինչ ունիմ. իսկ քեզ, զի հաւուս քաջ դարման տանիս, եւ քեզ, զի մեծարանս դնես մօրն իմում. զայս առնէր մինչեւ ետ զամենայն զմիսն զոր առ:

Ասէ Աժդահակ. Շակայ մատռուակի զոր ես առաւել մեծարեմ, չտա՞ս ինչ: Եւ Շակաան գեղեցիկ էր եւ ունէր պատիւ մուծանել զաղաչելիսն առ Աժդահակ, եւ արգելուլ եթէ չթուէր նմա ժամ մուծանելոյ զնոսա: Եւ Կիւրոս եհարց համարձակութեամբ իբրեւ մանուկ զի ոչ ինչ կասկած կամ կարծիս ի մտի ունէր, թէ զմէ՞ կամ ընդէ՞ր հաւ, դմա այդպէս շուք դնիցես: Աժդահակ խաղալով ասէ. Տեսանիցե՞ս ասէ, զիարդ գեղեցիկս մատռուակիցէ եւ պատշաճ կերպարանօք: Իսկ թագաւորացն մատռուակքն շքով մատռուակեն եւ ջինջ խառնեն եւ զտաշտըն յերիս մատուցանեն յօրինեալ մատուցանեն զի լինիցի դիւրին առ առնուլ բաժակն այնմ որ կամիցին ըմպել:

Հրաման տուր, ասէ, Շակայ, եւ ինձ տալ զբաժակն, զի եւ ես բարւոք խառնեցից քեզ ըմպելի, եւ զմիտսդ հաճեցից, եթէ կարիցեմ: Եւ հրամայեցաւ տալ: Իսկ Կիւրոսի ի ձեռն

առեալ զբաժակն ազնուագոյն ողողէր, զոր օրինակ առեալ էր նորա զՍակաս, եւ այնպէս յօրինեալ զկերպարանսն փութով եւ պատշաճութեամբ մատուցեալ տայր զտաշտն հաւուն, մինչեւ մօրն եւ Աժդահակայ ի ծաղուէն թալանալ: Եւ Կիւրոսի իսկ ծաղու ընթացեալ առ հաւն, եւ միանգամայն ընդ համբուրելն ասէր. Ով Սակա, կորեար մերժեցար, արկանեմ զքեզ ի պատուոյ այտի քումէ, զի այլովք բազմօք քան զքեզ ազնուագոյն մատռուակիցեմ եւ զգինին ոչ ըմպիցեմ: Զի թագաւորաց մատռուակք յորժամ զտաշտն մատուցանիցեն, հանեալ ի նմանէ ի ճաշակ անդր յահեակ ձեռն հեղեալ ըմպեն զի մի աջողեսցի նոցա եթէ դեղ խառնիցեն:

Յետ այնորիկ ասէ ընդ խաղ Աժդահակ. Զի՞ է Կիւրոս զի այլով ամենայնիւ նմանեցեր Սակայ, բայց զգինիդ չարբեր: Զի երկեայ ասէ, թէ գուցէ դեղ իսկ խառնեալ իցէ ի խառնելիսն. զի յորժամ հացկերոյթն առնէիր բարեկամաց յաւուր ծննդոց, ստոյգ ի վերայ հասի եթէ սա ձեզ դեղ խառնէ: Եւ ե՞րբ ասէ, գիտացեր զայդ մանուկդ: Քանզի տեսի ասէ, զձեզ զի եւ մտօք եւ մարմնովք ձեռովք սխաղակեալ էիք. զի նախ զոր չտայք մեզ մանկտւոյ գործել, զայն դուք ա-

նէիք. քանզի ամենեքին իսկ միանգամայն ճչէիք գոչէիք, եւ իմանայիք ոչ զմիմեանս, եւ երգէիք եւս յաճախ ծաղրալից կերպարանօք. այնմ որ երգէրն չլսէիք, բայց երդնուիք եթէ քաջ նուագիցէ։ Պատմէր իւրաքանչիւր ոք ի ձէնջ զիւրոյ անձինն զօրութիւն. յորժամ յառնէիք կաքաւել, ոչ եթէ կաքաւաձեւ ինչ զոտս բախել, այլ եւ ոչ թէ կալ իսկ ուղղորդ կարէիք. ամենեւին իսկ յապուշ մոռս հարեալ էիք, դու մոռացեալ եթէ թագաւոր իցես, եւ այլքն՝ եթէ դու իշխան ես. քանզի եւ ես յայնժամ ի միտ առի զառաջինն եթէ այն իսկ էր բանից հանգոյն հաւասարութիւն, զոր դուք յայնժամ առնէիք. քանզի եւ ոչ լռէիք իսկ երբէք։

Աժդահակ ասէ. Իսկ քո հայրն յորժամ ըմպիցէ, ո՞չ արբենայ։ Ոչ, ասէ։ Այլ զի՞ գործէ։ Ի ծարաւոյն դադարէ եւ ոչ այլ ինչ փաշաման կրէ. զի ոչ եթէ որպէս ինձ թուի ով հաւ, Սակաս մատռուակ է նորա։ Եւ մայրն ասէ. Զի՞մ իցէ որդեակ զի այնպէս համակ ընդ Սակայ դառնայցես։ Եւ Կիւրոս ասէ. Զի ատեամ, ասէ, զնա. զի բազում անգամ իմ ցանկացեալ երթալ առ հաւս, ժանտս այս արգելու. այդ աղաչեմ ասէ, ով հաւ, տուր դու ինձ զերիս աւուրս իշխել նմա։ Աժդա-

հակ ասէ. Եւ զիա՞րդ տիրիցես դու նմա: Կիւրոս ասէ. կացեալ որպէս եւ նոյն ի մուտս, եւ յորժամ ի ճաշն կամիցի մտանել, ասիցեմ բայ Չէ հնար դեռ եւս ի ճաշ անդր երթալ, զի կարեւոր ինչ իրս ընդ ոմանց խորհի. ապա յորժամ յընթրիս գայցէ, ասիցեմ թէ լուանայ. եւ եթէ ամենեւին իսկ յուտել իցէ, ասիցեմ եթէ առ կանայսն է, մինչեւ ձգեալ յապաղիցեմ զնա, որպէս եւ նա զիս յապաղէ եւ արգելու ի քէն:

Այսպէս ուրախ առնէր զնոսա ի վերայ ընթրեացն, եւ զցերեկ եթէ ազդ լինէր նմա թէ կարօտ ինչ իւիք է կամ հաւն կամ մօրն եղբայրն, դժկամակ լինէր եթէ այլ ոք աճապարէր զնոյն առնել. զի ուրախ լինէր Կիւրոս եթէ որչափ ինչ ձեռնհասն էր, պաշտօն առնէր նոցա:

Իսկ յորժամ կազմ եւ պատրաստ լինէր Մանդանէ գնալ միւսանգամ առ այր իւր, աղաչէր զնա Աժդահակ զԿիւրոս թողուլ: Նա տայր պատասխանի թէ կամիմ իսկ ամենեւին հօրդ շնորհել. բայց խիստ համարէր յակամայ կամս զմանուկն թողուլ:

Յայնժամ վայրի Աժդահակ ցԿիւրոս ասէ. Որդեակ, եթէ աստ առ իս մնասցես, նախ ոչ իշխեսցէ Սակաս մտանելոյ քո առ իս, այլ երբ եւ կամիցիս

մտանել առ իս, ի քեզ ապաստան իցէ։ Շնորհակալ եւս առէ եղէց քեզ որչափ յաճախագոյն մտանիցես առաջի իմ. եւ ապա զիմ երիւարս արկանիցես ի կիր, եւ այլ եւս որ ինչ քեզ կամ իցէ. եւ յորժամ երթայցես ուրեք, առ ընդ քեզ զորս դուն կամիցիս։ Նապա եւ յընթրիսն եւս յայն՝ որ քեզ համոյն եւ պարկեշտութեամբ թուիցի, երթ, ընդ որ ճանապարհ եւ ախորժիցես։ Յետ այնր ի բուրաստանսն զգազանսն քեզ տամ, եւ զայլ ազգի ազգի երէս ժողովեցից, զորոց դու իսկ եւ իսկ յորժամ ուսանիցիս երիւար արշաւեցուցանել, զհետ պնդիցիս, եւ նետիւք եւ աղեղամբք տապաստ արկանիցես, որպէս եւ աւագ որեարն։ Նա եւ մանկտի եւս տաց ես քեզ խաղալ ընդ նոսա. եւ այլ զինչ եւ կամիցիս, ասիցես ցիս եւ ոչ վրիպեսցիս։

Զայս իբրեւ ասաց Աժդահակ, եհարց մայրն ցԿիւրոս թէ զոր առաւել կամիցի, մնալ եթէ ելեալ երթալ։ Նա ոչ դանդաղեաց, այլ ասէ վաղվաղակի թէ կամիմ մնալ։ Միւսանգամ հարցեալ ի մօրէն թէ ընդէ՞ր. Նա ասէ. Ի մերում աշխարհին քան զամենայն հասակակիցս համարիմ ազնուագոյն լեալ եւ յաղեղն եւ ի նետս, եւ եմ իսկ ազնուագոյն. իսկ աստ տեղեկացեալ գիտեմ թէ երիւարաւ ի վայր քան զհա-

տակակիցս եմ. եւ զայն դու իսկ քաջ գիտես մայր թէ ամենեւին իսկ ի խոր խոցիմ. ապա եթէ սաստ զիս թողուցուս եւ ուսանիցիմ յերիւար հեծանել, յորժամ ի Պարսից աշխարհին իցեմ, ինձ այսպէս թուի, թէ զնոսին իսկ զընտիր ընտիր հետեւակայն ամենեւին գլիցեմ. ապա յորժամ այսրէն ի Մարս եկից, ջանացայց զօրաւիգն օգնականութեան հաւուս լինել, զի իցեմ իսկ քան զամենայն քաջ այրուձի ազնուագոյն:

Մայրն ասէ. Զարդարութիւն, մանուկ դու, զիա՞րդ ուսանիցիս, զի վարդապետք անդ են: Եւ Կիւրոս ասէ. Այնմ ես հաւաստեաւ եւ ճշգրիտ խելամուտ եղէ: Մանդանէ ասէ. Իսկ զիա՞րդ եղեր դու խելամուտ: Զի վարդապետն, ասէ, զիս՝ քանզի հաստատութեամբ զարդարութիւն ուսայ, այլոց դատաւոր կացոյց: Արդ, ասէ, երբեմն ուրեմն ի միում դատաստանի գան արբի, զի անուղղայս դատեցայ: Եւ էր դատաստանն այսպիսի ինչ: Մանուկ յաղթանդամ որ փոքր պարեգօտ ունէր, զմեւս եւս մանուկ փոքրիկ, որ մեծ բաճկոնն էր, զնա մերկացեալ եւ զիւրն զնովաւ արկ, եւ զնորայն ինքն ագաւ, ապա ես իբրեւ դատ կամեցայ առնել նոցա, այսպէս ածի զմտաւ թէ լաւ այն է, երկոցունց զպատշաճ իւ-

րաքանչիւր պարեգօտն ունել : Նա վասն նորին իսկ այնորիկ զան եհար զիս վարդապետն եւ ասէ. Եթէ կայիր դու դատաւոր եւ իրաւընտիր այնր որ պատշաճականն էր, ապա այսպէս պարտ եւ պատշաճ էր առնել. իսկ եթէ հաստանիցէ ընտրել թէ ո՛յր պարեգօտն իցէ, այնմ ասէ, պարտ է դէտ ակն ունել թէ ո՛ր ստացուած արդար եւ իրաւական է, արդեւք այնմ որ հան ինչ բռնութեամբ, ունե՞լ. եթէ որ գործեաց ոք ինչ կամ գնոց առ, զայն ստանալ. եւ ապա ասէ թէ որ օրինօք ինչ է, արդար է, եւ որ չէն օրինօք, այն բռնութեամբ : Արդ ետ հրաման թէ պարտուպատշաճ է դատաւորի օրինօք զվճիռն դնել : Այսպէս ես, ասէ, մայր, բնաւին իսկ գիտեմ հաստատութեամբ զիրաւն եւ զարժանն. ապա թէ կարօտիցիմ եւս ինչ, հաւս իմ, ասէ, այս ուսուսցէ զիս :

Այլ ոչ նոյն իրաւունք են, ասէ, որդեակ առ հաւուն քում եւ ի Պարսից աշխարհին : Քանզի սա ամենեցուն որ ի Մարաստանի իցեն զանձն տէր կացոյց. իսկ ի Պարսս զկշիռն ունել իրաւունք համարին : Եւ նախ քո իսկ հայրն զհրամայեալսն առնէ զոր ինչ առնէ ի քաղաքի անդ, եւ զպատուիրեալսն առնու. եւ նմա չափ ոչ իւր միտք են, այլ օրէնքն : Եւ արդ զի՞րդ

ոչ ի գանէ կորընչեցիս յորժամ երթայցես յաշխարհն, եթէ ի նմանէ փոխանակ ընդ թագաւորութեանն՝ բնութիւն ուսեալ գայցես։ Այս համարի թէ պարտ է աւելի քան զամենեսեան ունել։ Ասէ Կիւրոս. Քո հայրն ուսուցեալ կարող է ուսուցանել ունել սակաւ ինչ՝ եւ ոչ շատ։ Չտեսանիցե՞ս, ասէ, զի ամենեցուն իսկ Մարաց ուսոյց նուազագոյն քան զինքն ունել։ Որպէս զի վստահ լեր, զի հայրդ ոչ զայլ ոք եւ ոչ զիս արձակեսցէ ագահութեան ուսուցմն ուսեալ։

## ԳԼՈՒԽ Դ

ԶԱՅՍ եւ բազում ինչ քան զայն խօսէր Կիւրոս։ Նա եւ գլուխ իսկ ամենայնի, մայրն մեկնեալ երթայր, իսկ Կիւրոս մնաց եւ անդէն սնանէր։ Վաղվաղակի ընդ հասակակիցսն խառնէր ընտանեբար. իսկ եւ իսկ զնոցին հարս զիւրեւ ածէր, զի երթեալ յանդիման լինէր նոցա եւ յայտնի իսկ երեւէր եթէ սիրէր զորդեակս նոցա. մինչեւ եթէ հասանէր խնդրել ինչ ի թագաւորէ անտի, հրաման տային մանկանցն զԿիւրոս աղաչել զի զնոյն վճարիցէ։ Նա եւ Կիւրոս զոր ինչ աղաչէինն զնա մանկտին, վասն մարդասիրութեանն եւ առատութեան հանապազ հանէր զնոյն ի գլուխ։

Նաեւ Աժդահակ զոր ինչ Կիւրոսն խնդրէր ի նմանէ, չկարէր դիմադարձ ինչ լինել եւ չշնորհել: Զի եւ ի խօթանալ նորա չեթող երբեք զհամն եւ ոչ ի լալոյն դադարեաց. եւ յայտնի իսկ ամենեցուն էր, եթէ զահի հարեալ էր թէ գուցէ համն մեռանիցի. զի եւ գիշերի, եթէ խնդրէր ինչ Աժդահակ, նախ Կիւրոս զգայր, եւ յառաջ քան զամենեսին առանց զանդաղանաց ոստուցեալ ածապարէր սպաս հարկանել զոր օրինակ հաճոյ իսկ համարէր նմա, մինչեւ ամենեւին յանկուցանէր զԱժդահակ:

Սակայն շատախօս էր Կիւրոս, վասն խրատուն եւ իմաստութեան, զի ստիպէր ի վարդապետէ անտի տալ համարս ընդ որոց գործէր, եւ յայլոց առնուլ յորժամ դատիցի զնոսա: Նա՛ վասն ուսումնասէր եւս լինելոյ, բազում ինչ ինքն հանապազ ցմօտակայսն հարցանէր. թէ զիարդ իցէ կամ որպէս կամ զմէ. եւ որչափ ինչ յայլոցն հարցեալ լինէր, առ կորովութեան արագարագ առնէր պատասխանի. որպէս զի յայնմ ամենայնէ գումարէր իմն շատախօսութիւնն: Այլ զոր օրինակ ի մարմինս որ ի մատաղութեան լինիցին անդամայաղթք, մարմնադեղք, սակայն երեւիցի իմն ի նոսա մանկութեան նշանակ որ մատաղօրեայ տիոցն գուշակ լի-

նիցի. Նոյնպէս եւ Կիւրոսի ի շատախօսութենէ ոչ խարխալանք երեւէին, այլ միամտութիւնն եւ գութն եւ խնամն. որպէս զի առաւել ցանկութիւն ոք համարէր ունիլն դնել նմա, քան լինել առ նմա մինչ լուռն կայր:

Իսկ իբրեւ աճէր զնա ժամանակն յաղթանդամութեամբ հանդերձ ի չափ հասակի, այնուհետեւ սակաւ բանս ի կիր արկանէր եւ բարբառ. հանդարտութեան, ցածութեամբ եւ ակնածութեամբ լի լինէր. մինչեւ ամաչել իսկ եւ շիկնել յորժամ ծերոց հասանէր դիպել: Նա ոչ եւս զնոյն օրինակ զշան կորեան բարոյս ցուցանէր, ամենեցուն ընդ անձն անկանել քծնելով: Այնպէս հեզ էր եւ հանդարտ եւ ի ժողովս ամենեւին զուարճացեալ: Զի բազում անգամ յորժամ մրցէինն եւ զուպարէին ընդ միմեանս հասակակիցքն, ոչ որով իւիք գիտէր թէ ինքն առնուազոյն է յայն կոչէր զընկերսն, այլ զորաց գիտէրն թէ ինքն նուազագոյն է, այնմ առնէր սկիզբն, եւ ասէր թէ բարւոք իսկ քան զնոսա առնիցէ. յերիվար հեծանել սկսանէր կամ նետ ձգել յերիվարէ անտի մինչ չեւ բնաւ ուսեալ հեծանել. եւ ի պարտելն ինքն ընդ ինքն առաւել ծիծաղէր:

Բայց քանզի ոչ ինչ խորշէր ի պարտութենէ անտի, շահել որով պար-

տեցան, այլ յաճախէր հանդէս առնել միւսանգամ՝ եւս ազնուագոյն գործել, խսկ եւ խսկ ի նոյն կշիռ ընդ հասակակիցացն հասանէր եւ փաղփաղակի ելեւել ՝առնէր, վասն ցանկութեան գործոյն։ Որ ի բուրաստանին գազանքն էին, անդէն բարձ ջնջեաց ի միջոյ, քանզի զհետ պնդեալ տապաստ արկանէր եւ կոտորէր. մինչ զի Աժդահակ ոչ ժամանէր այնուհետեւ ածել կուտել նմին գազանս։ Իբրեւ ազդ լինէր Կիւրոսի եթէ կամի տալ նմա անասունս եւ չէ ձեռնհաս, բազում անգամ ասէր ցնա, թէ Ով հաւ զի՞ պիտոյ իցէ քեզ աշխատ լինել եւ խնդրել գազանս, այլ եթէ առաքիցես զիս յորս հանդերձ քեռեաւս, որչափ երէս տեսանիցեմ, համարեցայց եթէ դու իսկ քեզէն ինձ զայն պարարեցեր։

Յանկայր յոյժ յորս ելանել, բայց չկարէր այնուհետեւ նոյնպէս թախանձեցուցանել որպէս մինչ մանուկն էր. այլ դանդաղէր մատչել. եւ որ յառաջն զՍակաս բամբասէր թէ չտայ թոյլ երթալ առ հաւն, ինքն իսկ անձինն զըլխովին լինէր այնուհետեւ Սակաս. քանզի ոչ երթայր առ նա, եթէ չէր յառաջագոյն գիտացեալ թէ ժամ է, եւ բնաւ զՍակաս աղաչէր նշանակել նմա թէ երբ ի ժամու իցէ մտանել եւ երբ տարաժամու. մինչեւ եւ Սակաս

իսկ սիրէր զնա որպէս եւ այլքն ամե-նեքին։

Իսկ իբրեւ գիտաց Մժղահամ եթէ ցանկացեալ է արտաքին որսոց, արձա-կէ զնա քեռւոյն հանդերձ, եւ առա-քէ աւագ պահապանս ընդ նմա երի-ւարզք, զի ի դժուարին վայրաց զգու-շասցին նմա, եւ եթէ գազան ինչ ի գազանաց վայրի երեւիցի։ Կիւրոս ցայ-նոսիկ որ զհետն գային, մտադիւրու-թեամբ հարցանէր թէ որոց երեւոց հուպ երթալ պարտ իցէ, եւ զորոց պատշաճ խրախուսել եւ զհետ պնդել։ Եւ նո-քա պատմէին թէ արջք զբազումս որ մօտն գնացին՝ սատակեցին, եւ առեւծ-քըն եւ վարազք եւ ինձք. իսկ եղ-ջերուք եւ այծեմունք եւ առինք եւ էշավայրք չեն վնասիչք. եւ զայն եւս ասէին թէ պարտ եւ պատշաճ է ի դժուարին վայրացն զգոյշ լինել ոչ ինչ ընդհատ ի գազանաց. զի բազումք ձի ածեալ խառն ի խուռն քարավէժ գարահոս ի վախէ կործանեցան։

Եւ Կիւրոս զայս ամենայն ի միտ առ-նոյր յօժարութեամբ. բայց իբրեւ ե-տես եղջերու զի սրացաւ, զամենայն զոր լուաւն մոռացաւ, պնդեցաւ եւ ե-մուտ զհետ, եւ ոչ ինչ այլ ինչ տե-սանէր, բայց թէ յոր վայր արդեւք եր-թեալ ամփանայցէ փախստեայ։ Իսկ երիվարն յօցտեալն եւ ի խայտալն ան-

դէն ի դուճան հարաւ, եւ փոքր մեւս
եւս եւ զնա անդէն փողոտէր. այդ
ժուժեաց մնաց Կիւրոս հազիւ ուրեմն,
եւ երիվարն կանգնեցաւ: Իսկ իբրեւ ե-
կեալ հասանէր ի դաշտ անդր, հար
կործանեաց նետիւ զեղջերուն. մեծ իմն
եւ գեղեցիկ էր որսն: Նա ուրախ լի-
նէր, եւ պահապանքն մատուցեալ պա-
տուհասակոծ առնէին զնա, եւ ասէին
թէ յորպիսի ինչ վիշտս դիմեալ եր-
թաս. եւ խոստանային պատմել մի ըստ
միոջէ հաւուն իւրում: Արդ Կիւրոս ի-
ջեալ կայր եւ զայն լուեալ տրտմէր.
իսկ իբրեւ գոչիւն լուաւ, միւսանգամ
յերիվարն ելանէր, եւ տեսանէր ի հան-
դիպոյ անտի վարազ զի գայր, ընդ ա-
ռաջ երթեալ հասանէր, եւ ձգեալ զա-
ղեղն կորովութեամբ, զճակատն հար-
կանէր եւ ըմբռնէր զվարազն:

Յայնմ վայրի եւ քեռին սատակեաց
նմա յորժամ զհամարձակութիւնն ե-
տես: Եւ նորա պատուհասեալ՝ սակայն
աղաչէր թէ զոր ինչ ինքն կալաւ, զայն
թողցեն նմա տանել առ հաւուն:
Իսկ քեռին ասէ. Այլ եթէ ազդ լի-
նիցի նմա թէ զհետ մտեր, ոչ միայն
զքեզ, այլ եւ զիս պատուհասիցէ զի
թողի զքեզ: Թէպէտ եւ այնպէս ինչ
կամ իցէ, ասէ, գան հարցէ զիս, յոր-
ժամ տաց ես նմա: Եւ դու թէ կամիս,
ասէ ով քեռիդ, որ զինչ եւ պատու-

հաս հասանիցէ քեզ, սակայն զայն դու ինձ շնորհ արա։ Եւ Արտաքսարէս յանդ հանեալ ասէ. Երթ դու քեզ, արա որպէս զիարդ կամիս, զի այժմիկ իսկ դու մեր թագաւոր թուիս լինել։

Ապա տարեալ Կիւրոսի զգազանսն, տայր հաւուն եւ ասէր եթէ ինքն զայս ինչ որսաց նմա. զնետսն եցոյց իսկ ոչ, այլ արեամբ թաթախ տարաւ եդ ուր սովոր էր հայել հաւն իւր։ Եւ Աժդահակ ասէ. Մանուկ, ունիմ յանձին քաղցրութեամբ զոր ինչ ինձ շնորհես։ Ես միով իւիք յայսցանէ կարօտ եմ առ ի մատանելոյ քեզ ի վիշտս եւ ի ճգունս։ Կիւրոս ասէ. Արդ եթէ դու չես կարօտ, աղաչեմ տուր ինձ զսոսա զի ես տաց հասակակցացս։ Ասէ Աժդահակ. Առ զայս եւ տուր ում եւ կամիս եւ որ ինչ միանգամ յայլմէ եւս յամենայնէ յօժարիցիս տալ, տուր։

Եւ Կիւրոսի առեալ տայր մանկանց եւ ասէր. Ով մանկտի իբրեւ զառանցեալ իմն էաք յորժամ ի բուրաստանին երէ որսայաք։ Զի ինձ այնպիսի ինչ թուի, որպէս զի թէ կապեալ ոք անասունս որսայցէ. նախ այն իսկ զի ի փոքու վայրի էին, եւ ապա զի վտիտք էին եւ քոսոտք, կէսք ի նոցանէ կաղք էին եւ կէսքն կրճատք։ Իսկ որ ի լերինս եւ ի մարգս գազանք իցեն որպէս գեղեցիկք իցեն, զիարդ յաղթք երեւիցին

եւ իբր գէրք եւ սոնկքացեալք․ եւ եղջերուք իբրեւ զթեւականս ընդ երկինս վերանայցեն։ Իսկ վարազքն որպէս զարանց քաջաց պատմեն, ի վերայ դիմէին․ եւ վասն լայնութեան պառակացն չէր հնար սխալել։ Ինձ ասէ, եւս գեղեցիկ թուին սոքա որ մեռեալս են քան զկենդանիսն որ փակեալ պատեալ կայցեն յորմածս արգելոցացն․ այլ թողո՞ւմ արդեւք եւ զձեզ յորս հարքն ձեր։ Դիւրին է, ասեն, թողուլ նոցա եթէ Աժդահակ հրաման տայցէ։

Եւ Կիւրոս ասէ․ Ո՞ իցէ որ յիշեսցէ զձէնջ առաջի Աժդահակայ։ Ո՞ ոք, ասեն, բաւական իցէ քան զքեզ ածել զնա ի հաւանս։ Այլ զայն ոչ գիտեմ, ասէ, թէ որպիսի ինչ ոք եղէ, զի խօսել իսկ ինչ ոչ կարեմ, նա եւ հայել եւս ընդ հաւն իմ իբրեւ զառաջինն, ոչ մարթեմ․ եւ եթէ այսպէս իսկ ի սոյնս յաճախիցեմ, երկընչիմ ասէ, թէ գուցէ բնաւ անմիտ եւ յիմար ուրեմն լինիցիմ։ Յորժամ մանկիկն էի, զօրագոյն իմն խօսելն թուէր։ Մանկտին ասեն․ Դու ամենեւին յոռութեան իմն իրս խօսիս, որպէս թէ արդարեւ չիցես ձեռնհաս վասն մեր, որ ինչ պիտոյն իցէ, վճարել․ այղ զայլ ոք հարկ հասանիցէ աղաչել զայն ինչ որ ի քեզ իսկ ապաստան իցէ։

Զայս իբրեւ լուաւ Կիւրոս ծանրա-
ցեալ տրտմեցաւ, եւ գնաց լռիկ, եւ
այլ անձինն հրաման լքեալ ժտել եւ
անդէն մտանէր: Զմտաւ ածէր թէ
զիարդ խօսեսցի ընդ հաւուն առանց
տրտմեցուցանելոյ զնա, եւ ի գլուխ
հանիցէ զոր ինչ ինքն եւ մանկտին
հայցէին. եւ սկիզբն առնէր զայս ձեւ
օրինակ: Ասէ ասա դու ցիս, ասէ, ով
հաւ, եթէ ոք ի գերդաստանկաց պյատի
քոց ի բաց երթայցէ, եւ ըմբռնիցես
զնա, զի՞նչ ընդ նա առնիցես: Զինչ
այլ ինչ, ասէ, բայց պրկեմ, եւ ստի-
պեմ ի գործ ժրանալ: Ապա թէ միւսա-
նգամ ինքնակամն գայցէ առ քեզ,
զի՞նչ գործիցես: Զինչ ինչ գործի-
ցեմ, ասէ, բայց գանալից առնիցեմ
զնա, զի մի զնոյն դարձեալ գործ գոր-
ծիցէ, ապա որպէս յառաջին ի գործ
անդր վարեմ: Ասէ Կիւրոս. Ապա ու-
րեմն պարտ իցէ քեզ պատրաստել ինչ
որով զիս գան հարկանիցես, զի խոր-
հեցայս թէ զիարդ երթայցեմ փախըս-
տեայ յորս, առեալ զիմ հասակակիցս:
Եւ Աժդահակ ասէ. Զայդ լաւ եւ
բարւոք արարեր զի կանխեալ ասացեր.
քանզի պատուէր տամ քեզ աստի մի
մեկնել. զի արդարեւ, ասէ, գեղեցիկ
իմն լինիցի եթէ վասն պատառի միոյ
մսոյ ընդ վայր թողից զորդեակ դստերն
իմոյ:

Զայն լուեալ Կիւրոսի հնազանդեալ մնայր. տրտմէր տխրէր եւ լուռ եւեթ կայր։ Իբրեւ ետես զնա Աժդահակ թէ սաստիկ տրտմեցաւ, կամէր իմն շնորհել նմա եւ առեալ ածէր զնա յորս։ Ժամ տայր, բազում հետեւակս եւ հեծեալս գումարէր եւ մանկտի, եւ զգազանսն ածեալ կուտեալ ի դաշտս երիվարացն արշաւելոյ, որս մեծ առնէր. եւ ինքնին յայն վայր հասեալ իբրեւ զթագաւոր պատուէր տայր թէ մի՛ նետ ոք ձգիցէ, մինչ չեւ Կիւրոսի յագեալ իցէ ի ձգելոյ անտի։ Իսկ Կիւրոս չառ յանձն զարգելուլն. Այլ եթէ այս կամ իցէ քո, ասէ, թէ ես ուրախութեամբ որս առնիցեմ, թոյլ տուր ամենեցուն որ ընդ իս իցեն, զհետ մտանել եւ ոգորել որպէս զի արդ իւրաքանչիւր ոք բաւական իցէ։

Յայնմ վայրի թոյլ տայր Աժդահակ, եւ կայր նայէր ընդ նոսա յորժամ ընդ հակառակս գազանացն ելեալ ջանային, եւ զհետ պնդեալ ստէպ նետալից առնէին. եւ ընդ Կիւրոս ուրախ լինէր, որ առ խնդութեան չկարէր լուռ իսկ լինել, այլ իբրեւ բարակ մի քաջ այնպէս զաղաղակ եդեալ գոչէր յորժամ մօտ հասանէր ի գազան անդր, եւ աղաչէր յորդորելով զիւրաքանչիւր յանուանէ. ուրախ լինէր իբրեւ տեսանէր զԱժդահակ զի ծիծաղէր ընդ մի ոք ի

նոցանէ, եւ եթէ զմեւս ոք դրուատէր ոչ ինչ չարակնէր։ Պարծեալ գայր Մ.ժ-գահակ բազում երէովք հանդերձ. եւ այնպէս հեշտական զայնժամու որսն համարեցաւ, զի ցանգ իսկ հանապազ յորժամ յորս երթալ հասանէր, եղանէր ընդ Կիւրոսի եւ զայլ եւս բազում մանկտի առնոյր վասն Կիւրոսի։ Բազում ժամանակս այսպէս ի գլուխ հանէր Կիւրոս, ամենեցուն ուրախութեան եւ լաւութեան իմն պատճառք լինել, իսկ չարեաց, ոչ ումեք։

Յորժամ զհնգետասանամենիւք կամ զվեշտասանամենիւք ուրեմն էր, որդի արքային Մարեստանեաց որ ամուսնանալոցն էր, ցանկացաւ ինքնին որս առնել ընդ նոյն ժամանակս։ Արդ իբրեւ լուաւ եթէ ի մէջ իւրեանց սահմանաց եւ Մ՝արաց, բազում երէ կայ, որ ոչ որսացան վասն մարտից պատերազմաց, անդր տենչացաւ ելանել։ Արդ զի զգուշութեամբ իմն որսայցէ, հեծելազօրս եւս ընդ իւր առեալ երթայր եւ բազում տիգաւորս եւ սրնաւորս, որք զգազանսն ի թանձրախուռն մայրեացն ի վայրս եւ ի դեւրս հանիցեն։ Եւ հասեալ ուր իւր պահականքն էին անդէն ճաշ ուտէր որպէս թէ վաղիւ վաղորդայն որս առնիցէ։

Իսկ իբրեւ երեկոյ լինէր, պահակափոխ գային ընդ առաջին պահապանացն

ի քաղաքէ անտի հետեւակազօրք եւ հեծեալք։ Նմա այսպէս թուեցաւ, թէ բազում զօրականաց բանակք եկեալ հասեալ կան, զի երկու գունդք պահապանաց խառն էին, եւ ինքն եւս բազում հեծեալ եւ հետեւակ ունէր։ Զմտաւ ած թէ եւս ինձ լաւ այս է, զԱրաստան աւար հարկանել, եւ մեծապայծառ ինձ կարծէր ոսոխացն երեւել եւ մեհենական զոհիցն բազում յաճախութիւն լինել։ Ապա յարուցեալ ընդ այգն ընդ առաւօտն ածէր հասուցանէր զզօրսն, եւ զբազմամբոխ հետեւակացն ի մէջ սահմանացն թողոյր, եւ ինքն հեծելովքն ի Մարացն պահակսն մատուցեալ եւ զընտիր ընտիրսն գնդագունդ ընդ իւր առեալ անդէն զետեղ առեալ կայր զի մի Մարացն պահապանքըն ի վերայ ասպատակաւորացն հասցեն։ Իսկ զայլ եւս զպիտանիսն արձակէր ցեղընտիր այսր անդր ասպատակ դնել. եւ հրաման տայր շրջել եւ յինչ ինչ որք հանդիպէր, զայն ի բաց զերծանել եւ բերել առ ինքն։ Նոքա զայն ինչ առնէին։

Ազդ եղեւ Աժդահակայ եթէ թըշնամիք եկեալ կան յաշխարհն, դիմէր եւ նա ի սահմանակողմն անդր նոքօք որ զիւրեաւ էին. եւ նորին որդի նոյնպէս հասեալ հեծելովքն եւ այլոցն ամենեցունց նշանակէր ի թիկունս հա-

տանել։ Իսկ իբրեւ տեսին բազում մարդիկ յԱսորեստանեաց անտի առ միմեանս կարգեալ առ իրեարս ճակատեալ, եւ զվաշտս հեծելոցն անշարժ անխաղաց, պնդեցան կացին եւ Մարք։ Իսկ Կիւրոս իբրեւ ընդ այլսն հայեցաւ թէ յօգնականութիւն դիմեն, եւ ինքն ի վերայ խաղայր, յայնժամ նախ զէն ընդ անձն արկեալ, զի չեւ եւս թոյլ տուեալ էին նմա վառել զարդարել սպառազէն նովին զինուքն. քանզի զէնն եւ զարդն գեղեցիկ կարի էին եւ նմին համեմատ, զոր հաւոյն գործեալ էր հանդոյն մարմնոյն։ Այսպէս վառեալ պատրաստեալ հասանէր երիվարաւն։ Եւ Աժդահակայ հայեցեալ զարմանայր, որ հրամանաւ իսկ եկեալ կայր. բայց պատուէր տայր նմա առ իւր կալ։

Իսկ Կիւրոս իբրեւ ետես բազում հեծելազօր ի հանդիպոյ, հարցանէր թէ դոքա՞ իցեն, ասէ, թշնամիքն, հաւ, որ ի նոսա երիւարացն հեծեալ կան հանդարտեալ։ Սոքա են, ասէ, հակառակորդք մեր։ Մի՞ թէ եւ նոքա որ դիմեալ գան, թշնամի՞ք են։ Եւ նոքին եւս, ասէ, թշնամիք են։ Այլ ոքա, ասէ, հաւ, անզգամք թուին եւ ի վերայ յոռեաց երիւարաց հեծեալ գան զմեր կարասին կրել։ Արդ պարտ է ոմանց ի մէնջ ի նոսա արշաւել։

Զտեսանիցէ՞ս, ասէ, մանուկ դու թէ քանի ամբոխ հեծելոցն իցէ որ կարգեալ կայցեն ճակատեալ. եթէ մեք ի նոսա դիմեսցուք, նոքա այսրէն զան կրճատեն զմեզ. եւ դեռ չեւ եւս կայ մեր ոյժ եւ զօրութիւն։ Կիւրոս ասէ. Եթէ դու կացցես մնասցես, եւ առնիցիս զդէմ այնոցիկ որ ի թիկունս հասանեն, նոքա զահի հարկանիցին եւ չխլրտիցեն, եւ որ զառն եւ զաւարն կրեն, իսկ եւ իսկ ի բաց ընկենուցուն յորժամ տեսանիցեն եթէ զան ոմանք ի վերայ նոցա։

Յորժամ զայս ասաց, հաճոյ թըւեցաւ Աժդահակայ հրաման ինչ տալ, եւ միանգամայն զարմանք ունէին զնա, թէ այնպէս հոգայ եւ աքնի, եւ պատուէր տայր իւրում որդւոյն զգունդս հեծելոցն առնուլ եւ ի վերայ աւարառուաց աւարին դիմել։ Ես եւ, ասէ, ի նոսա յարձակեցայց եթէ խաղայցեն ի վերայ քո. մինչեւ ի հարկէ իսկ տագնապեալ մեզ ուշ ունիցին։ Կիաքսարայ առեալ զընտիր ընտիր երիվարացն եւ արս հզօրս ի վերայ դիմէր։ Իսկ Կիւրոս իբրեւ ետես եթէ դիմեցին, իսկ եւ իսկ փաղփաղակի խառն յարձակէր. նախ ինքն վարեաց չոգաւ տագնապաւ եւ Կիաքսարէս զհետ խաղայր եւ ապա այլքն։ Իբրեւ տեսին զնոսա աւարառուքն թէ մօտ եկին հասին,

վաղվաղակի թողեալ զկարասիսն փա-
խուստեայ գնային:

Բայց որ զՍիւրոսիւն էին, հասա-
նէին կրճատէին, եւ որոց միանգամ
հասանէին վաղվաղակի խոցէին, եւ ա-
ռաջին Սիւրոս էր: Իսկ որք ընդ այլ
աճապարեցին, զնոսա զհետ մտեալ
հալածական տանէին. եւ ոչ ուրեք
դադարէին մինչեւ զոմանս իսկ ի նոցա-
նէ սատակէին: Զոր օրինակ շուն քաջ
որ խամ եւ անտեղեակ իցէ յանդգ-
նագոյնս ի վարազ յարձակիցի այնպէս
Սիւրոս դիմեալ երթայր. ընդ այն եւեթ
հայէր թէ ըմբռնեալ խոցեսցէ, եւ
այլ ինչ զմտաւ ոչ ածէր: Իբրեւ տե-
սին հակառակորդքն եթէ իւրեանց
զօրքն վաստակեցան, զգունդն խառ-
նէին, որպէս թէ դադարեցին այնու-
հետեւ զհետ մտանել յորժամ տեսին
զնոսա ի վերայ յարձակեալ:

Բայց Սիւրոս ոչ հանդչէր ի խնդու-
թենէ անտի, զքեռին կոչէր եւ զհետ
մտեալ փախստեայ խուճապէր զհակա-
ռակորդսն. եւ Սիաքսարէս երթայր
զհետ, զի թերեւս ի հօրէն իւր ամա-
չէր. եւ այլքն եւս զկնի երթային յոր-
դորեալք պնդել եւ հալածել, եւ որք
չէինն իսկ ամենեւին քաջք եւ առա-
ջինք եւ խրախուսեալք ի թշնամիս
անդր: Իսկ Աժդահակ իբրեւ ետես
զնոսա խառն ի խուռն զհետ պնդեալ,

զթշնամիսն բազմամբոխ ճակատեալ ի դիմի հարեալ, կասկածէր երկուցեալ վասն որդւոյն եւ Կիւրոսի թէ մի գուցէ ի պնդակազմ գունդան անկարգ անկեալ վիշտք ինչ ընդ նոսա անցանիցեն, անդէն վաղ ի թշնամիսն հասանէր։

Դարձեալ իբրեւ զայն նշմարէին հակառակորդքն թէ Մարք շարժեցան ի տեղւոջէ անտի իւրեանց, պնդեցան կացին, կիսոց զտէգս արձակեալ, կիսոց զաղեղունս լարեալ, քանզի ցնետընկէց մի հասեալ կայլին, որպէս սովոր էին բազում անգամ առնել. զի յորժամ կամէին մօտ գալ, մինչեւ ցայն վայր առ միմեանս հասանէին եւ ի հեռաստանէ բազում անգամ նետ ձգէին մինչեւ ցերեկոյ։ Եւ իբրեւ տեսին թէ իւրեանց զօրքն փախստեայ գան ի նոսա, եւ զորս շուրջ զԿիւրոսիւն էին ի նոսա դիմեալ, եւ զԱժդահակ զի նետընկէց մի հեռի էր հեծելովք հանդերձ, խոտորեցան եւ ի փախուստ շրջեցան։ Սոքա միահամուռ զհետ մտեալ զբազումս սատակէին զօրութեամբ իւրեանց, եւ զորս ի բուռն անկանէին, հարկանէին զերիվարս եւ զմարդիկ, եւ զանկեալսն կոտորէին. եւ մինչ չեւ ցհետեւակս Ասորեստանեայց էին հասեալ, ոչ դադարէին։ Յայնմ վայրի զանգիտեալ թէ մեծ եւս դարան գործեալ իցէ, կարճեցան։

Պռառնայր այնուհետեւ Աժդահակ, յանձն իւր առաւել զուարճացեալ լինէր ընդ այրուձիոյն զօրութիւն, եւ թէ զինչ ցԿիւրոս արժան էր առնել, ոչ գիտէր. ի միտ առ թէ պատճառք նա է գործոյն. բայց ծանեաւ թէ մոլեգնեալ իմն ժպրհութեամբն է, զի յորժամ այլքն մեկնեալ գնացին յիւրեանս, նա միայն շուրջ եկեալ զդիականն անկեալս նշմարէր, եւ հազիւ ձգեալ զնա յիւրեանս որոց հրամանն առեալ էր վասն նորին, տարան առ Աժդահակ. բայց նա առաջոյ զքերելիան արձակէր, զի տեսս զդէմս երեսաց հաւուն վայրենեալ իմն ի հայել նորա ընդ նա։

Ի Մարաց աշխարհին այս ինչ գործեցաւ. եւ յայլոց ամենեցունց բերանս էր Կիւրոս եւ ի զրոյցս նոցա եւ յերգս։ Իսկ Աժդահակ որ յառաջագոյն մեծարէր զնա, յայնժամ սքանչանայր եւս ընդ նա։ Իսկ Կամբիւսէս հայր Կիւրոսի, լուեալ զայն ամենայն ուրախ լինէր։ Բայց քանզի լուաւ եթէ չափոյ արութեան գործ վճարէ Կիւրոս, կոչէր զնա անդրէն զի ի Պարսս զգաւառական հրահանգսն ի գլուխ հանիցէ։ ԶԿիւրոսէ պատմեն յայնմ վայրի ասել բայ կամիմ երթալ, զի մի հայրս ինչ տըրտմիցի, եւ քաղաքն բամբասիցէ։ Այնուհետեւ հարկ համարեցաւ եւ Աժ-

դահճակ արձակել զնա։ Նոյն անդէն առայր նմա անդրուարս զորս ինքն ցանկացաւանուլ, եւ այլ ինչ պէսպէս ազգի ազգի կազմած պատրաստեալ յուղարկէր, եւ վասն զի սիրէր զնա, եւ մեծամեծ եւս յոյս ի նմանէ ունէր, թէ այր հոյակապ լինիցի, եւ բարեկամացն օգուտ բաւական իցէ լինել, եւ զթշնամիս չարչարել։ Նոյն յորժամ մեկնէրն Կիւրոսի ամենեքին յուղարկ երթային եւ մանկտին եւ հասակակիցք եւ արք եւ ծերքն հեծեալք յերիվարս, եւ Աժդահակ ինքն ի գլխովին. եւ չէր ոք, ասեն, որ ոչ զարտասուս հարկանէր յորժամ դառնայրն։

Նա զԿիւրոսէ իսկ պատմեն թէ բազում արտասուօք մեկնեցաւ, եւ յաճախ պարգեւս հասակակցացն առեն բաշխել, զորս Աժդահակայ առեալ էր նմա։ Զմարական պատմուճանն զոր ունէր, հանեալ առայր միումն, յայտ արարեալ թէ զնա քաջ սիրիցէ. եւ որ զպարգեւսն, ասեն, առին, տարան առ Աժդահակ։ Նոյն Աժդահակայ առեալ յղեաց առ Կիւրոս, եւ նա, ասեն, միւսանգամ ի Մարս առաքեաց եւ ասէ թէ Մի հաւ եթէ կամիս զի այսրէն եկից առ քեզ ուրախութեամբ եւ ոչ եթէ ամօթով, թող զի կալցին ում զինչ ես ետու։ Զայս լուեալ Աժդահակայ արար որպէս առաքեաց Կիւրոս։

Նաեւ եթէ զմանկութեան ինչ բանս պարտ իցէ յիշատակել, պատմեն այսպէս, թէ մինչ երթային Կիւրոս եւ յիրերաց մեկնէին, համազգիքն համբուրէին բերանով զԿիւրոս եւ յուղարկէին ըստ Պարսից օրինակին, քանզի եւ այժմ իսկ զնոյն գործեն Պարսիկք. այր ոմն ի Մարաց անտի լաւ բարոյիւք եւ ազնիւ, բազում ժամս զարմացեալ ափրացեալ կայր ընդ գեղն Կիւրոսի: Յորժամ եւ տես զազգականիցն թէ համբուրեն զնա, զանեղի առ. իբրեւ այլքն ի բաց գնացին, մնացեալ առ Կիւրոս ասէ. Զի՞ս եւեթ ոչ ճանաչես ով Կիւրէ, ի համազգեաց այտի: Ասէ Կիւրոս. Իսկ արդ զիա՞րդ, մի թէ եւ դու ազգակի՞ց իցես: Այո՛, ասէ: Կիւրոս ասէ. Ապա ուրեմն վասն նորին իսկ ընդ իս հայէիր պշուցեալ. զի թուի ինձ թէ զայդ դու բազում անգամ առնես: Օն կամէի, ասէ, ցանդ մատչել առ քեզ, այլ ամաչէի: Կիւրոս ասէ. Քեզ չէր պարտ ամաչել որ համազգի էիր. եւ մատուցեալ համբուրէր զնա:

Իբրեւ առ զհամբոյրն մարն հարցանէր. թէ եւ ի Պարսս դո՞յն օրէնք են զհամազգիս համբուրել: Այո իսկ քաջ, ասէ, յորժամ զմիմեանս տեսանիցեն յետ բազում ժամանակաց կամ մեկնիցին ուրեք յիրերաց: Ապա

ուրեմն ժամ է, ասէ, քեզ միւսանգամ համբուրել զիս, զի մեկնիմ երթամ որպէս տեսանես իսկ: Ապա իբրեւ միւսանգամ համբուրեաց Կիւրոս, արձակեաց զնա, եւ մեկնեցաւ գնաց: Մինչ չեւ էին կարի բացարձակ ի միմեանց, եկն դարձեալ մարն եւ էր ձին համակ ի քրտան. իբրեւ ետես զնա Կիւրոս, թ՚երեւս մոռացար ինչ ասէ, յորոց կամէիրն ասել: Ոչ, ասէ, այլ վասն ժամանակին եկի: Կիւրոս ասէ. Սակաւ ինչ ժամանակ է: Մարն ասէ. Զիա՞րդ իցէ փոքր մի ժամանակ. չիցե՞ս ասէ խելամուտ թէ եւ ական թօթափել ինձ ամենեւին շատ թուի, եթէ ոչ տեսանեմ զքեզ: Յայնմ վայրի ծիծաղեցաւ Կիւրոս յառաջին արտասուացն, եւ հրամայեաց նմա երթալ, քաջալերեալ թէ գամ առ ձեզ ընդ հուպ, որպէս զի մարթիցի եթէ կամիցիս, տեսանել առանց զաչս իսկ թարթափելոյ:

## ԳԼՈՒԽ Ե

ԱՊԱ եկն եհաս Կիւրոս ի Պարսս. առաւել ժամանակ ասեն ի մանկունսն կալ: Զառաջինն դարովէին զնա մանկտին, որպէս թէ դիւրութիւն ուսեալ ի Մարաց աշխարհէն եկն: Իսկ իբրեւ տեսին զնա թէ որպէս նոքա նոյնպէս

եւ նա ուտէր եւ ըմպէր ուրախութեամբ, եւ եթէ մեծամեծ եւս ինչ ուրախութիւն երբեք հասանէր ի տօնս, ի միա առնուքին թէ նա եւ զիւր իսկ բաժինն պլոց շնորհէ եւ ոչ եթէ կարօտի։ Առոյնս տեսանէին թէ եւ այլովք եւս ամենեքումբք նա իւր գլէր զնոսա. եւ միւսանգամ ակն ածէին ի նմանէ հատակակիցքն։ Յորժամ ընդ այն խրատանց եւ ի պատանեական եմուտ, դարձեալ եւ ի նոցա միջի լաւագոյն երեւէր, եւ կրթէր յորս պարտ էր կրթել, եւ համբերէր որոց արժան էր ժուժկալել, ի ծերոցն ակն ածէր եւ իշխանացն հնազանդ լինէր։

Իբրեւ ժամանակ ինչ ի վերայ անցանէր, Աժդահակ ի Մարս մեռանէր, եւ Կիւաքսարէս Աժդահակայ որդի, Կիւրոսի մօրն եղբայրն զհարստութիւնն առնոյր զՄարացն։ Իսկ արքայն Ասորեստանեաց վանեալ վկանդեալ զամենայն Ասորնեայսն, ոչ զփոքր ազգ, եւ ընդ ձեռամբ նուաճեալ զԱրաբացւոց թագաւորն, եւ զՎրկանացիս եւս ածէր ի հնազանդութեան, պատեալ պաշարեալ եւ զԲակտրիացիսն, զմտաւ ած թէ յորժամ զՄարս տկարս եւ անզօրս առնիցէ, դիւրաւ այնուհետեւ ամենեցունց տիրիցէ, զի քան զամենայն ազգսն դրացիս այն ազգ ուժգնագոյն թուէր։

Սպա առաքէր առ ամենեսին որ ընդ-
բերեալ էին եւ առ Կրիւսոս Լիւդացւոց
թագաւոր, եւ առ թագաւորն Գա-
մրաց եւ յերկոսին գաւառս փռիւգա-
ցւոցն եւ ի Կարիացիս եւ ի Պափղագո-
նացիս եւ ի Հնդիկս եւ ի Կիլիկեցիս.
տղարտէր առաջի նոցա զՄ՛արս եւ
զՊարսիկս, եւ ասէր այսպէս թէ մե-
ծացան յաղթ եղեն զօրացան ազգքն
այնոքիկ, համագունդ միաբանութեան ի մի
վայր գումարեցան, եւ խնամութիւնս
ընդ միմեանս արարին առ իրեարս հա-
սին, եւ վիշտ վտանգի է, եթէ ոչ ա-
ճապարեալ ուրուք տկարացուցանէ
զնոսա, ի միոյ միոյ իւրաքանչիւր յազ-
գացն ի վերայ երթեալ վանիցեն զնո-
սա: Այսոց ընդ բանին հաճեալ, թի-
կունք օգնականութեան լինէին, եւ
կէսքն պատարագօք եւ ընչիւք գային
ի հաւան. զի գանձք բազում էին նորա:

Իսկ Կիաքսարայ Աժդահակայ որդ-
ւոյ իբրեւ զգաստ զնենգութենէն լինէր,
եւ զպատրաստելոյ նոցա կազմութեամբ
եւ համօրէն յիւր վերայ գումարելոյ,
եւ նա իսկ եւ իսկ վաղվաղակի որչափ
ինչ ձեռնհաս էր հանդերձէր կազմէր
եւ ի Պարսս առաքէր, եւ առ Կամբիւ-
սէս առ քեռն այրն որ ի Պարսից աշ-
խարհին թագաւորէր: Յղէր եւ առ
Կիւրոս, աղաչէր եւս զնա փութալ հա-
սանել լեալ զօրավար արանցն, եթէ

առաքեսցեն Պարսիկք զօրս։ Վասնզի Կիւրոս վճարեալ զտասն ամսն ի պատանեակսն, ընդ արսն էր։

Իբրեւ յանձն առ Կիւրոս, խորհուրդ առեալ ծերոցն զնա ընտրէին զօրավար զօրգք հանդերձ ի պատերազմ ի Մարս երթալոյ։ Նա թոյլ ետուն նմա ընտրել իւր երկերիւր այր ի պատուականացն. եւ դարձեալ միում միում իւրաքանչիւր յերկերիւրոցն թոյլ ետուն չորս չորս արս ի նմանեաց անտի ընտրել. եւ եղեն նոքա հազարք. եւ դարձեալ իւրաքանչիւր ումեք ի հազարէ անտի ետուն ի խառնիճաղանճ զօրուէն Պարսից տասն տասն շերտաւոր եւ տասն տասն պարսաւոր եւ տասն տասն աղեղնաւոր ընտրել. եւ գումարեցան բեւր աղեղնաւորք եւ բեւր շերտաւորք եւ բեւր պարսաւորք. արտաքոյ քան զոսա էին հազարաւորքն։

Այսչափ գունդ ի ձեռն գումարեցաւ Կիւրոսի։ Յորժամ ընտրեցան վաղվաղակի, սկիզբն նախ ի դիցն առնէր։ Գեղեցիկ գեղեցիկ նուէրս մատուցեալ ապա զերկերիւրսն ընտրէր. եւ յորժամ ընտրեցին եւ նոքա իւրաքանչիւր չորս չորս արս, ապա խօսէր ընդ նոսա նախ ձեւ զայս օրինակ։

Արք բարեկամք ես ընտրեցի զձեզ, իբր ոչ եթէ այժմ ինչ հաճեցայ ընդ ձեզ. այլ զի ի մանկութենէ իսկ տեսի

զձեզ, թէ զոր լաւն համարիցի քաղաքս, փութով յօժարութեամբ ի նոյնս՝ վաստակեցէք, եւ զոր ծանականս իմն հաշուիցի, ի նոցունց ամենեւին իսկ մերժեցէք զանձինս։ Բայց թէ յոր սակս արդեւք ես ոչ ակամայ կամօք յանձին կալայ զգործդ եւ զձեզ կոչեցի, կամիմ յանդիման կացուցանել։

Քանզի զմտաւ ածի թէ մեր նախնիքն ոչ ապաժամանք ինչ քան զմեզ էին. զի եւ նոքին թեւակոխեալ, որ ինչ գործք քաջութեան կարծիցեն, զայն ի գլուխ հանեալ վճարեցին։ Իսկ թէ զինչ ինչ լաւութիւն այնպիսիքն ստացան կամ հասարակաց Պարսից աշխարհին կամ թէ անձանց իսկ, զայն չկարեմ նշմարել։ Ինձ այսպէս թուի թէ ոչ ընդ մի ինչ առաքինութեան հրահանգս մարթ իցէ թեւակոխել մարդկան, եւ այնոցիկ որ ի կրթութենէն պիտանիք լինիցին, չունել ինչ քան զչպիտանիսն առաւելութիւն։

Այլ որ ի մօտաւորն հեշտականութեանց զանձինս մերժիցեն, ոչ եթէ զի ոչ ուրախ երբէք լինիցին, վասն այնորիկ առնիցեն, այլ զի ընդ այնր համբերութեան բազմապատիկ ուրախ յառաջապա ժամանակս առնիցին։ Եւ որ խօսօղ ոք անհնարին ի բանս ախորժիցէ լինել, իբր ոչ եթէ զի ի բար-

ւղջն խօսելոյ ոչ դադարիցէ, յայն սակս ընդ այն կրթիցի, այլ ակն ունիցի եթէ ազնուագոյնն խօսելով զբազում մարդկան միտս հաճիցէ եւ յաճախագոյն մեծամեծ լաւութիւնս վճարիցէ։ Դարձեալ եւ որք ի պատերազմունս թեւակոխեն, ոչ եթէ զի ի կռուոյ ոչ ուրեք հանգչիցին, յայն աշխատ լինիցին. այլ թուի ինձ եւ սոցա, թէ յորժամ առաքինիք ի պատերազմի լինիցին, բազում մեծութիւն եւ յաճախ փառաւորութիւն եւ մեծամեծար մեծարանս եւ անձանց եւ քաղաքին յաճախիցեն։

Ապեթէ ոմանք որ ի սոյնս խոնջիցին, եւ մինչ չեւ ինչ կթեալ շահ ի նոցանէ իցէ, տեսանիցեն զանձինս ի ծերութեան, պակասեալս ի զօրութենէ, թուի ինձ թէ այնմ իմն հանգոյն անցք անցանիցեն, որպէս՝ թէ ժրագլուխ ոք մշակ իցէ եւ լինիցի յառաջամիտ եւ բարուք զսերմանսն սերմանիցէ եւ տընկել տնկիցէ բարուոք, եւ յորժամ զտոհմականս արդեանցն հասանիցէ առնուլ, չժողովիցէ եւ թողուցու անդէն յերկիր հոսել. կամ թէ մարտիկ ոք իցէ եւ բազում ճգանց ժուժկալ լինիցի եւ արժանի յաղթութեան զտանիցի, եւ առանց մրցութեան վախճանիցի։ Ինձ թուի թէ չէ իրաւացի այնպիսում առանց անմտութեան բամբասանաց լինել։

Արդ մեք, ով արք, մի այնպիսի ինչ կրեսցուք. այլ քանզի մեզոյն իսկ զանձանց գիտեմք ի մանկութենէ սկիզբն արարեալ ընդ լաւութեան գործոց կրթութիւնս անցանել, ելեալ երթիցուք ի վերայ թշնամեացն եւ հակառակորդաց, յորոց եւս ստոյգ ի վերայ կացի, քանզի ինքնին իսկ տեսի թէ չեն հմուտ տալ ընդ մեզ ճակատս: Զի ոչ եթէ քաջ ինչ ուրեք պատերազմօղք իցեն որ նետիցենն եւ յերիվար հեծանիցին տեղեկութեամբ, եւ եթէ աշխատ ուրեք լինել հասանիցէ, լուծանիցին լքանիցին. եւ սոքա չեն հմուտ աշխատութեանց: Եւ ոչ նոքա քաջ պատերազմօղք են որ յարժամ սկելն պարտ իցէ, չկարիցեն սկել. այլ սոքա եւ ի քնոյ չմարթեն ժուժկալել: Նա եւ որք այնմ ամենայնի բաւական իցեն, բայց չիցեն խրատեալ թէ զիարդ օգնականօքն պարտ իցէ վարել եւ որպէս հակառակորդօքն, չեն եւ նոքա քաջք. յայտ է թէ եւ սոքա մեծամեծ ինչ խրատուց չեն տեղեակք:

Բայց դուք զգիշեր մարթէք ի գործ վարել, զոր օրինակ այլք զտիւ. զվաստակս առաջնորդ առ կեանսն հեշտականս համարիք. զքաղց իբրեւ ռոճիկ ի կիր արկանէք. իսկ ջուր ըմպելոյ քան զառեւծս եւս դիւրագոյն ժոյժ ունիք. զգեղեցիկ քան զամենայն եւ զպատե-

բազմոտկան ստացուած յանձինս բար-ձեալ բերէք, զի քան այլովք ինչ ա-մենեքումբք, առաւել յորժամ յար-գեցիքն ուրախ լինիք. եւ որ ցանկա-ցողք ոք գովութեան իցեն, Հարկ է ընդ այնր զամենայն վաստակս զհնաւ աշխատութիւն եւ զվիշտս ուրախու-թեամբ ամենեւին յանձին ունել։

Ապա թէ զայս զձէնջ առիցեմ, եւ այլազգունս իմն ունիցիմ ի միտ, ապա ինձէն անձամբ զանձն խաբիցեմ։ Քան-զի եթէ ոչ ինչ այնպիսի առ ի ձէնջ ի գլուխ ելանիցէ, յիս կրթիցին յան-ցանքն, այլ վստահ եմ ի փորձ ար-դեանցն եւ ի ձերոց կամացն մտադիւ-րութիւն եւ ի Հակառակորդացն տխ-մարութիւն, թէ մի վրիպեալ կացու-ցանիցեն զիս այսպիսի բարութեանցն յոյսքն։ Այլ խրախուսեալ դիմես-ցուք, քանզի Հեռի է ի մէնջ կարծիս կարծել թէ զուր ինչ տարապարտուց ակն եդեալ զօտարին խնդրեմք։ Քան-զի արդ իսկ խաղան զան թշնամիքն Հակառակորդք եւ զրկելոյն սկիզբն առ-նեն. կոչեն եւ զմեզ բարեկամք ի թի-կունս օգնականութեան։ Եւ արդ զի՞նչ ինչ քան զարդելոյ իրաւական կայցէ, կամ քան զբարեկամացն թիկունս լի-նել գեղեցիկ։

Այլ ինձ թուի թէ վասն այնորիկ իսկ ոչ սակաւ քաջալերիցիք, զի ա-

ուանց զդիցն անփոյթ առնելոյ, առնի արշաւանս. զի ընդ իս իսկ էք բազում ժամանակս եւ գիտէք թէ ոչ միայն յորժամ մեծամեծս, այլ եւ թէ մանունս ինչ կամիցիմ առնել, ի դիցն առնեմ սկիզբն միշտ։ Զի՞ եւս իսկ պիտոյ իցէ խօսել, այլ դուք որ ըստ արանց ընտրեցարուք, այլով ամենայնիւ կազմեալք պատրաստեալք գնացէք ի Մարս, եւ ես երթամ առ Հայրս եւ գամ, զի վաղվաղակի իսկ ուսեալ զիրս թշնամեացն թէ որպիսի ինչ իցեն, պատրաստեցից կազմութեամբ ձեզ զոր ինչ կարող եւ ձեռնհաս իցեմ, զի ազնուագոյն տացուք մարտ պատերազմի դիցն օգնականութեամբ։ Նոքա զայն առնէին։

## ԳԼՈՒԽ Զ

ԻՍԿ Կիւրոս ի տուն երթեալ եւ յաղօթս կացեալ Վեստեայ եւ գաւառական Արամազդայ եւ այլոց եւս դիցն երթայր ի բանակ անդր։ Յուղարկէր զնոսա եւ Հայրն. իբրեւ ելին արտաքոյ քան զապարանսն, փայլատակմանց պատմեն ճեպել, եւ ճայթել որոտմանց բարբառոյ։ Իբրեւ այն ամենայն երեւեցաւ, չեղեն այնուհետեւ հաւահարց եւ գնացին. քանզի չէր ծածկեալ յումեքէ թէ մեծին աստուածոյ նշանք են։

Մինչ դեռ գնացեալ երթայր Կիւրոս, խօսել սկսաւ հայրն ըստ ամին օրինակի բանից. Թէ Որդեակ, դիքն հաշտութեամբ եւ քաղցրութեամբ յուղարկեն զքեզ, եւ յայտ ի նուիրականն զոհիցն է եւ յերկնից նշանաց. նա դու իսկ ինքնին գիտես թէ զայդ իսկ ուսուցի քեզ, զի մի ի ձեռն այլոց թարգմանաց լինիցիս խելամուտ դիցն խորհրդոց. այլ ինքնին տեսեալ զտեսիլսն եւ լուեալ զգուշացմն ի միտ առնուցուս, եւ մի առ իղձսն երթայցես, որք եթէ կամիցին պատրիցեն զքեզ, եւ այլ ինչ խօսեսցին եւ ոչ զառ ի դիցն երեւեալ նշանսն բարբառիցին. եւ մի դարձեալ եթէ առանց ըղձի երբեք հասանիցէ լինել, ի վարանս ընդ դիցն նշանս մտանիցես, թէ զինչ ինչ պարտ իցէ գործել, այլ ըղձութեամբ գիտացեալ զառ ի դիցն խրատսն, անսայցես նոցա։

Ասէ Կիւրոս. Հայր քանզի հաշտ լեալ դիցն կամին զօրաւիգն օգնականութեան մեզ լինել, զոր ինչ կարօղ իցեմ ըստ քում բանիդ ի գլուխ հանից յօժարութեամբ։ Յուշ առնի ինձ եթէ լուայ երբեմն ի քէն եթէ յիրաւի առ ի դից, որպէս եւ ի մարդկանէ, բարութիւնս ոք գտանէ, որ ոչ յորժամ ի վարանս եւ յաղէտս կայցէ, յայնժամ երթեալ ատկիցէ, այլ յորժամ յաջողութիւնս իցէ, յայնժամ

մանաւանդ զդիցն յիշեսցէ. զբարեկամաց եւս ասէիր թէ ըստ նմին օրինակի պարտ եւ պատշաճ է փոյթ տանել։

Դու արդ, ասէ, այժմիկ որդեակ նովին փութով երթայցես մատադիւրագոյնս առ դիսն պաղատել։ Ակն ունիս թէ քաջ առնուցուս զոր աղաչիցես, զի գիտեսդ զանձին քո եթէ ոչ երբեք ուրեք անփոյթ զնոցանէ արարեր։ Ամենեւին, ասէ, հայր այնպիսի միտս ունիմ եթէ բարեկամք իմ են դիքն։

Յիշիցե՞ս արդեւք, ասէ, որդեակ, զոր երբեմն ասէաք թէ զոր ինչ աստուածոցն տուեալ իցէ, մարդիկ որ գիտակքն իցեն ազնուագոյնս ունիցին քան որ չիցեն այնմ ամենայնի հմուտ. եւ աւելի իմն որ գործեննն վճարիցեն քան որ ի վատութիւն հատանիցեն եւ յանգործ դատարկութիւն. եւ որ հոգ ի մտի ունիցին, եւս յամրի կայցեն քան զայնոսիկ որ չլինիցին զգոյշ։ Արդ այսպէս թուէր մեզ թէ պարտուպատշաճ է այնպէս զանձինս ընծայեցուցանել որպէս պարտ իցէ ընծայեցուցանել, եւ ապա յետ այնորիկ խնդրել ի դիցն զբարութիւնսն։

Յիշեմ թէ զայս լուայ ի քէն. քանզի հարկ էր անսալ բանիցն այնոցիկ. զի գիտեմ թէ ասէիր դու ցանդ թէ չէ արժան այնոցիկ որոց չիք ուսեալ յերիվար հեծանել, խնդրել ի դիցն

եթէ ի ձիամարտիկ կառուի յաղթիցեն. եւ ոչ որոց չիցեն աղեղնաւորութեան հմուտ, թէ նետիւք եւ աղեղամբք զաղեղնաւորութեան հմուտան պարծիցեն. եւ ոչ որ նաւավարութեան չիցեն տեղեակք, թէ յաղօթս կայցեն ճարտարապետս լինել նաւաց եւ ապրեցուցանել. եւ ոչ որ ցորեան չսերմանիցեն եւ ըղձանայցեն եթէ ցորեան ատոք բուսանիցի. եւ ոչ որ չզգուշանայցեն ի պատերազմի, թէ փրկութիւն խնդրիցեն. զի ամենայն ինչ այնպիսի ի դիցն հրամանաց լինիցի։ Իսկ որ զայն յաղօթս կայցեն որ չիցէ արժան, յիրաւի, ասէիր, չառնուն նոքա ի դիցն, զոր օրինակ եւ առ ի մարդկանէ չառնուն որ արտաքոյ ինչ քան զօրէնսն խնդրիցեն։

Իսկ զայն մոռացա՞ր արդեւք որդեակ, զոր ես եւ դու երբեմն ճառ արկեալ խօսէաք. թէ բարուոք այն գործ է մարդոյ, եթէ կարիցէ ոք փոյթ ի մտի ունել, զի եւ ինքն լաւ եւ ընտիր եւ պիտանի լինիցի, եւ զպիտոյսն ինքն եւ ընտանիքն ունիցին բաւական։ Ապա թէ այն այնպէս մեծ ինչ գործ իցէ, իսկ գիտելն վերակացու լինել այլոց եւս մարդկան զի ունիցին զպէտսն լիով եւ լինիցին ամենեքին որպէս պատշաճ իցէ լինել, այն մեզ սքանչելի եւ զարմանալի թուէր։

Հայր, ասէ, եւ զայդ յիշեմ թէ ասէիր. եւ ինձ նոյն բարւոք թուէր, թէ մեծ գործ իցէ բարւոքն իշխել. եւ այժմ, ասէ, այն նոյնպէս թուի, յորժամ ինքնին միտ եդեալ զիշխանութենէ խորհիցիմ: Յորժամ զայլոց մարդկանէ զմտաւ ածիցեմ թէ որպիսիք ոք իցեն եւ լինիցին իշխանք, եւ մեզ ախոյան ելանիցեն, թուի ինձ թէ ամենեւին իսկ ծանակութիւն իցէ յայնպիսեացն զարհուրել, եւ չկամել երթալ նոցա ոտն. զորոց եւ ես ասէ գիտեմ սկսեալ ի մերոց բարեկամաց սատի, զի համարին իմն թէ պարտ իցէ իշխանին յիշխանաւորացն այնու ընտրել, զի ամենայնից ընթրիս ուտիցէ, եւ բազում ի ներքս մթերեալ ունիցի ոսկի, եւ բազում ժամս ի քուն լինիցի, եւ զընաւ անվաստակ գործիցէ քան զայնոսիկ որոց իշխէն: Բայց ինձ, ասէ, այնպէս իսկ թուի թէ ոչ դիւրութեամբ ինչ պարտ իցէ իշխանին ընտիր յայնցանէ՝ որոց իշխիցէն, լինել, այլ մտադրեւրն դարմանօք եւ խոնջութեամբ:

Բայց գոյ ինչ ինչ, ասէ որդեակ, յորս ոչ եթէ ընդ մարդկան հասանիցէ կռուել, այլ ընդ իրսն իսկ ի գլխովին, որոց չէ ինչ դիւրին դերեվերոյ լինել: Նա աստատին իսկ, ասէ, գիտես, զի եթէ չգուցեն ռոճիկք զօրացն,

իսկ եւ իսկ քակիցի հարստութիւնդ։ Հայր, ասէ, Կիաքսարէս ասաց թէ զզարմանսն եւ տաց ամենեցուն որ անտի եկեսցեն, որչափ եւ իցեն։ Որդեակ, ասէ, դու յա՞յն ինչս Կիաքսարայ յուսացեալ երթայցես։ Ասէ Կիւրոս. Այո։ Իսկ արդ գիտիցե՞ս, ասէ, որչափ ինչք գուցեն նորա։ Ասէ Կիւրոս. Ոչ։ Ապա ուրեմն, ասէ, զանյայտան իմն հաւատարիմ համարիս. իսկ եթէ բազմօք կարօտանայցես, եւ այլ եւս ինչ յաճախագոյն հարկ իցէ ծախել, զայն ո՞չ գիտես։ Ասէ Կիւրոս. Գիտեմ։ Արդ յորժամ պակասիցեն համբարք նորա, կամ թէ կամաւ իսկ ստեսցէ, զի՞րդ իցեն պէտք զօրացն, յայտ է թէ ոչ բարւոք։ Հայր, ասէ, դու եթէ գիտիցես ինչ հնարս շահաւորութեան, մինչ դեռ ի խաղաղութեան իցեմք, տուր։

Հարցանես, ասէ, որդեակ, զի՞նչ օրինակ ժողովիցես շահս։ Ո՞ւմ մանաւանդ ի դէպ իցէ կուտել մթերս քան այնմ որ զօր ունիցի. դու աւադիկ զհետեւակ զօրութիւնն առեալ աստի երթաս, ընդ որում չգիտեմ թէ մարթիցի այլ ինչ զօր բազմամբոխ փոխանակել. եւ այրուձին Մարաց, որ ազնուագոյն է, զօրաւիգն օգնականութեան է քեզ։ Եւ արդ զումէ՞ ազգէ որ շուրջ զմեւք իցեն, կարծիցես թէ

ոչ շնորհ ինձ կամեցեալ առնել
սպաս հարկանիցեն, եւ կամ առ
իսկ թէ մի գուցէ վիշտս ինչ կր
Զորս պարտ է ընդ Կիւաքսարայ հ
րակ դիտել տեսանել, զի մի ինչ
կաս իցէ ի պիտոյից ձերոց: Ա
վասն սովորութեան զմտից շահսն
է հայթայթել: Զայս ինչ քաջ
ունիցիս, մի երբեք տեւել մնալ
բեւորսն շահելոյ յայնժամ յո
պէտքն ի վերայ հասեալ անդէն
գնայցիցեն. այլ յորժամ աջողեալ
շահիւք, յայնժամ պաճարեա
կարօտութեանն. զի առնուցու
յորոց խնդրիցես, յորժամ չտ
կարօտութեան կարծիս եւ առանց
բասանաց գտանիցիս ի քոց զօրա
տի: Նոյն իմն ակն ածիցեն ի
եւ եթէ վնաս ումեք զօրաց կա
առնել կամ օգուտ, մինչ դեռ զ
շաճսն ունիցին զօրականքն արբա
ցեն քեզ. եւ որպէս ճարտար գ
հաստատութեամբ բանս յայնժա
րիցես բարբառել, յորժամ մարթ
յանդիման կացուցանել, թէ եւ
բաւական ես եւ վնասել:

Հայր, ասէ, թուի թէ զայդ
նեւին բարւոք իսկ խօսեցար,
զոր ինչ այժմ առցեն զօրքն, ոչ
ցէ որ վասն նոցին շնորհակալ ի
նիցի. քանզի գիտեն թէ որով

նիւք կոչեաց զնոսա Կիաքսարէս ի թի-կունս օգնականութեան։ Ապա թէ աւելի քան զասացեալսն առնու ոք ինչ, զայն պատիւ իսկ այնուհետեւ համարիցին, եւ ի դէպ է թէ շնորհակալ եւս այնմ որ ետ, լինիցին։ Իսկ եթէ զօրականս ոք ունիցի որովք մարթիցի երախտիս ինչ բարեկամացն առնել եւ օգուտ ինչ ի նոցանէ գտանել. կամ թէ թշնամիք ուրուք իցեն, եւ կարօղ իցէ ջանալ եւ շահել ինչ ի նոցունց, եւ ինքն անփոյթ զշահսն առնիցէ, սակա՞ւ ինչ, ասէ, զայն նշաւակութիւն համարիցիս քան եթէ անդ եւ ագարակ ոք ունէր, եւ մշակք եւս էին նորա, որովք մարթէր ի գործ արկանել եւ ապա յետ այնորիկ լքեալ թողոյր զերկիրն դատարկ, անօգուտ լինել։ Այս, ասէ, ոչ երբեք անփոյթ առնիցեմ հնարել գտանել զկարեւորն պէտս զօրականացն ոչ ի բարեկամաց միջի եւ ոչ ի թշնամեաց. եւ դու այսպիսի իսկ միտս կալջիր։

Արդեակ, յիշիցե՞ս արդեւք եւ զայլ եւս ամենայն որ կարեւոր համարկ թուէր մեզ երբեմն չառնել անփոյթ զնոքօք։ Յիշեմ, ասէ, յորժամ վասն արծաթոյ գայի առ քեզ զի տարայց տաց այնմ որ ինձ զօրավարութիւն ուսուցանէր. եւ քո տուեալ ցիս հարցանէիր այսպէս եւ ասէիր. թէ Մ՛անուկ

դու ի զօրավարութեան գործո
ինչ քեզ ի տան խնամակալու
յուշ արար այրն ում զգինսդ ա
տանիս. զի ոչ ինչ պակաս զօր
կարօտ կարեւորացն իցեն քան որ
գերդաստանքն են։ Իբրեւ զճշմ
բարբառեցայ քեզ եւ ասէի թէ
ինչ վասն նորին այնորիկ յիշեաց.
անդամ հարցեր դու ցիս թէ զի՞
առողջութեան վասն պատուիրե
զօրութեան եւ պնդութեան.
զնոցունց իմն պատշաճ է զօր
իբրեւ զզօրավարութենէ հոգալ։

Իսկ իբրեւ ասացի թէ չասա
դարձեալ հարցեր դու զիս, թ
հոգաբարձութիւն ուսոյց, զի
կամք որ զօրաւիգն իցեն քեզ, լ
քաջք եւ պիտանիք յիւրաք
գործ պատերազմի։ Իբրեւ ասաց
եւ զայն ոչ. հարցեր միւսանգա
ուսո՞յց ինչ հնարս, զի կարիցե
ժարութիւն ի զօրսն արկանել.
սէիր եւս թէ ամենեւին ի բնաւ
գործս կրճիմ ի միջի ընդ յօժ
թիւնն եւ ընդ տրտմութիւն կայ
իբրեւ ասացի թէ ոչ. դու քննէ
թէ զի՞նչ արդեւք հնարս ուսո
իցէ վասն ի հնազանդութեան զ
պահելոյ։

Եւ իբրեւ յայտ լինէր թէ ե
ամենեւին չիք պատուիրեալ. հ

նէիր դու ցիս, թէ զի՛նչ ուսուցեալ ասիցէ թէ զօրավարութիւն ուսուցանեմ: Յայնժամ վայրի պատասխանի ետու թէ զճակատ առ ճակատ յարդարել եւ գունդ առ գունդ կազմել, եւ զու ծիծաղեալ մի ըստ միոջէ անցանէիր կարգեալ եդեալ թէ զի՛նչ օգուտ իցէ կամ ո՛ր շահ զօրավարութեան ի ճակատուց առանց կարեւորն պիտոյից. եւ զի՛նչ առանց առողջութեան, եւ ո՛ր օգուտ առանց զարուեստն որ վասն պատերազմաց գտան, գիտելոյ. կամ զի՛նչ ինչ վճարիցի առանց ի հնազանդութեան կալոյ. որպէս զի յայտ իմն այսպէս առնէիր թէ ճակատելն խուն ինչ մասն զօրավարութեան է: Եւ իբրեւ հարցի թէ զի՛նչ ինչ յայնժամ ամենայնէ բաւական իցես ուսուցանել դու ինձ, հրաման ետուր երթալ առ արան որ զօրավարքն համարիցին եւ ընդ նոսա խօսել եւ հարցանել թէ որպէս մի մի իւրաքանչիւր ի նոցանէ լինիցի:

Յայնժամ հետէ ընդ նոսա էի եւ առ նոսա կանխէի, զոլոց լսէի թէ աւելի իմն հանճարեղք նոքիմբք են: Սան համբարոցն ես հաւանեալ եմ եթէ այն շատ եւ բաւական է, զոր Կիւաքսարէս տալոց իցէ մեզ: Իսկ վասն առողջութեանն, քանզի լուայ եւ տեսի թէ եւ քաղաքք եւս որ բժշկութիւն ի կիր արկանիցեն, բժիշկս ընտրեն. եւ

զօրավարք վասն զօրականացն բ
առեալ տանին. Նոյնպէս եւ ես
զայս գործ ի ձեռն առի, իսկ ե
վասն Նորին հոգ յանձին կալ
թուի ինձ, ասէ, հայր, թէ ա
ընդ իս իցեն, ամենեւին իսկ հմ
բժշկական ճարտարութեան։

Ու այն հայրն ասէ. Գ·ղքա
ասես, զոր օրինակ պատառոտու
ձոց կարկատիչք են, նոյնպէս եւ բ
քըն են, յորժամ յախտ ոք ան
դնիցի, յայնժամ բժշկիցեն. բայ
ւելի իմն փոյթ ի մտի ունիցիս
առողջութեան, զի մի յառաջ
խօթանայցէ զօրն, զայնմանէ իմն
է քեզ հոգալ։ Ընդ որ ճանապ
ասէ, հայր, յուղի անկեալ, բաւ
լինիցիմ զայն վճարել։ Եթէ ժ
Նակ ինչ ի նմին վայրի կամիցիս յ
մի անփոյթ առնիցես Նախ յազնի
զիս բանակ հարկանել։ Եւ ոչ մ
ցես յայնմանէ եթէ ունիցիս հ
մտի. քանզի չդադարեն մարդիկ
վայրաց հիւանդութեան եւ առո
թեան խօսել. եւ երկոցունց ի նո
ստոյգ վկայք մտա կան, մարմինք
գոյնք երեւաց։ Ապա չէ շատ վայ
եւեթ դէտակն ունել. այլ յուշ
քեզ թէ որպէս գուն գործիցես
ի մտի ունել զանձնէ զի առողջ
լինիցիս։

Եւ Կիւրոս ասէ. Նախ ջանամ մի իսկ երբեք շուայտել մի մցուել, զի այն դժնդակ իմն է: Ապա ի դժուարին աշխատութիւնս խոնջիցիմ. քանզի ինձ թուի թէ այնպէս եւ առողջութիւնն եւս քաջ լինիցի առաւելան եւ ոյժ եւ պնդութիւն յաւելցի յիս: Ըստ նմին օրինակի պարտ է, ասէ, որդեակ, եւ վասն այլոցն փոյթ յանձին ունել: Եթէ լիցի°, ասէ, հայր պարապ կրթելոյ մարմնոց զօրացն: Ասէ հայրն. Ոչ միայն պարապ, այլ եւ հարկ եւս իցէ: Քանզի պարտ է զօրականին որ զպատշաճն կամիցի վճարել, մի երբեք դադարել, այլ կամ թշնամեաց մեղանչել կամ անձանց ժողովել բարութիւնս. զի դժուարին է մարդ մի դատարկ սնուցանել եւ եւս բազմապատիկ դժնդակ զողջոյն տուն մի, եւ ամենեւին իսկ քան զբնաւ դաժանագոյն զզօր ի վատութիւն հատեալ կերակրել. քանզի բազում է ի զօրու ուտելի, եւ սակաւ ինչ եւ նուազ այն որ ուտիցի, եւ զոր գտանիցեն ինչ վատնելով ի կիր արկանիցեն, որպէս զի չէ ի դէպ երբեք զօրու դատարկ կալ:

Հայր թուի ինձ եթէ ասիցես թէ զոր օրինակ հողագործի ի վատութիւնս հատելոյ չիք շահ, նոյնպէս եւ դատարկ զօրավարի չգոն օգուտք: Ես, ասէ, ունիմ յանձին զօրավար ժիր լինել,

եթէ ոչ վնաս ինչ ոք ի դիցն առ
եւ զպաշարս զօրականացն պատ
տել, եւ յարդարել զի յաջողեալ
անձինք նոցա: Այլ վասն յիւրա
չիւր գործ պատերազմի կրթելոյ,
ւի ինձ թէ եւ հրահանգս իւրաքա
ումեք սահմանելով եւ վարձս ա
եղեալ, արարից զի բարւոք յիւրա
չիւր ճգունս թեւակոխիցեն, մի
յորժամ պիտոյ լինիցի, ունիցիմ կ
եւ պատրաստս ի գործ վարել:
խօսեցար, ասէ, որդեակ, զի եթէ
առնիցես, իբրեւ զպարս գնդաց
րաւորացն ցանգ տեսանիցես զգու
ի պատշաճն կրթեալ:

Այլ վասն յօժարութիւն ի
արկանելոյ, ոչ մի ինչ այնպէս ինձ
ւական թուիցի, բայց կարող լին
բարւոք ակնկալութիւն զարսն յ
րել: Բայց այս այնմ նման է, որ
որպէս զի թէ պառականս ոք յոր
չիցէ ցանգ իսկ եւ միշտ կոչմամ
րով կարդայցէ յորժամ երէ նշա
ցէ. զի գիտեմ եթէ յառաջնում
ւագին յորդորագոյնս լինիցին
դիրք, ապեթէ բազում անգամ
տրիցին, յետոյ յորժամ ճշմարտի
գազան տեսեալ կոչիցես, չլինին
զանդ. եւ վասն ակնկալութեան
բանք են: Եթէ բազում բարութ
յոյսս խոստացեալ եւ ստիցէ ոք,

եւ ոչ թէ յորժամ ճշմարիտ ինչ յոյս պատմիցէ այնպիսին, կարիցէ ածել ի հաւան: Նոյն պարտ է անխայել, որդեակ, զի մի զոր սատոյգ ոք չգիտիցէ, ինքնին ասիցէ, այլ երբեմն յորժամ այլք ասիցեն, մարթի զնոյն գործ վճարել. իսկ զիւր խրատն ի մեծամեծ ինչ նեղութիւնս պահել զի առաւել հաւատարիմ լինիցի: Հայր ասէ բարւոք խօսեցար, զի եւ ինձ այսպէս քաղցր է:

Իսկ զզօրականսն ի հնազանդութեան ունելոյ թուի ինձ թէ չեմ ինչ անտեղեակ. քանզի դու ինձ իսկ եւ իսկ զդոյն ի մանկութենէ ուսուցեր յորժամ ստիպէիրն քեզ հնազանդ լինել: Ապա եսուր զիս ի վարդապետաց ձեռս, եւ նոքին դարձեալ զնոյն առնէին. եւ յորժամ ի պատանեկաց միջի էի, որ իշխան էր մեր վասն նորին իսկ փոյթ արար: Թուի ինձ թէ եւ բազում օրէնք են որ զայս երկուս քաջ ուսուցանեն, իշխել եւ ընդ իշխանութեամբ լինել: Այսուհետեւ զմտաւ ածեալ վասն այնցին իրաց, յամենայնի տեսանեմ զի առաւել իմն քաջալերութիւն է ի հաւանութիւն, զհնազանդն յարգել եւ մեծարել եւ զանհնազանդն անարգել եւ ի պատիժս մատնել:

Այդ ճանապարհ, որդեակ, ի հարկէ իմն հնազանդելոյ է. այդ այլ իմն կարճոյ ճանապարհ է լաւ քան զայն, կա-

մականն հնազանդել : Ո՛ի զուա
ծիցեն մարդիկ թէ իմաստութ
քան զնոսա զնոցա օգուտն խոր
նմին ախորժութեամբ կան ի հնա
դութեան : Եւ զի այդ այդպէս
միտ առցես այլովք բազմօք, նա
ցաւածսն իսկ, քանզի յօժարութ
զայնոսիկ որ կարծիցեն առնել
պատշաճն իցէ, կոչեն. եւ ի
յօժարութեամբ նաւավարացն որ
արկեանն հնազանդ լինին. եւ ղ
մանց կարծիցեն եթէ տեղեկագոյն
զնոսա զճանապարհսն գիտեն, չա
յանձն թողուլ զնոսա : Իսկ
կարծեն թէ յորժամ հնազանդ
վիշտս ինչ իցեն կրելոց, չկամին
ձին ունել զվնասսն եւ ոչ պարգ
խոստղել, քանզի ոչ եթէ առ
եղեւան ոք կամաւ առցէ կաշառ
Հայր, ասէ, ասես թէ առ ի
զանդութեան ունելոյ չիք ինչ կա
քան զիմաստնագոյնն երեւել
զնոսա որ ընդ իշխանութեամբ
Եւ արդ ասեմ, ասէ, հայր, զի
եւ որգունակ զայնպիսի կարծիս վա
զակի զանձնէ կարիցէ ընծայեցուցա
Չիք ասէ որդեակ կարճոյ ճանա
այլ որովք իմաստունն կամիցի
րեւել, ի նոսին իմաստուն լինի
Եթէ ընդ մի մի իւրաքանչիւր
ցանէ միտ եղեալ նայիցիս, ծա

եթէ զճշմարիտն ասեմ ես. զի եթէ կամիցիս թէ չիցես քաջ մշակ եւ համարիցիս քաջ հողագործ կամ հեծեալ կամ բժիշկ կամ փողար կամ այլ ինչ այնպիսի, զմտաւ ած որչափ հնարս քանի պատճառս պարտ էր պատճառել վասն այնպէսն կարծեցուցանելոյ: Նաեւ եթէ զբազմաց միտս հաճեսցես գովել զքեզ զի այնպիսի կարծիք կարծիցին, եւ բարուք կազմածս առ իւրաքանչիւր ի նոցանէ ստացեալ ունիցիս, արդ խաբեբայ եւ զրթիչ լինիցիս, եւ յետ սակաւ ինչ միոյ, ուր հանդէս եւս ցուցանիցես, յանդիմանեալ լինիցիս եւ ամբարտաւան եւս երեւիցիս:

Իսկ զիա՞րդ լինիցի ոք իմաստուն առ ի խելամուտ հանդերձելոցն լինելոյ: Յայտ է, ասէ, թէ որ ինչ մարթիցի ուսմամբ գիտել, ուսանելով, զոր օրինակ զճակատսն ուսար. իսկ որ ինչ մարդկան չիցէ ուսանելի եւ ոչ յառաջագոյն երեւելի մարդկեղէն մտաց, ըղձութեամբ ի դիցն հարցեալ իմաստնագոյն քան զայլսն լինիցիս: Նաեւ զոր դիտեսն եթէ լաւագոյն լաւ է առնել, փոյթ ի մտի ունիցիս զի ի գլուխ ելանիցէ: Զի հոգալ զայնմանէ որով կարօտ իցէ եւ չառնել անփոյթ առն իմաստնոյ է:

Նմղ վասն տիրելի իշխանաւորացն լինելոյ, որ մեծ իմն թուի ինձ, յայտ

է եթէ նոյն ճանապարհ է, եթ
ժարիցէ ոք զի գութ անկանիցի
նա բարեկամացն: Քանզի ինձ
թէ երախտեօքն պարտ է երեւ
նել. բայց այն դժուարին է, աս
դեալ, միշտ առնել բարի այնոց
րոց կամիցի ոք. մեւս եւս՝ ուրա
նել ընդ նոսա եթէ լաւ ինչ նոցա
պեսցի, եւ տրտմակից, եթէ չա
պատահար պատահեսցի, եւ յօժ
լինել օգնական ի վարանս նոցա
կընչել թէ մի սխալեսցեն, եւ փո
խնամակալ լինել զի մի վրիպե
սքիմբք պարտ եւ պատշաճ է օգն
լինել նոցա:

Իսկ վասն գործոց եւ արուութ
եթէ ամարայնի իցեն, պարտ է ի
նին յայտ յանդիման տապոյ ար
կան յաղթել. եւ եթէ ի կարեծ
ձմերայնի իցեն, ընդ ցուրտ ագ
եւ եթէ վաստակել հասանիցէ,
ւել լինել աշխատութեամբ. զի
ամենայն նպաստ լինիցի առ ի ա
իշխանաւորացն լինելոյ: Հայր,
ասես թէ պարտ է իշխանին յամե
հզօրագոյն քան զիշխանաւորսն լ
Արդարեւ, ասէ, զայդ ասեմ.
դու քաջալերեաց որդեակ, զայ
տասջիր, թէ մարմնոց նմանեաց
խատութիւնք ոչ հանդոյն մի
են, առն իշխանի եւ շինականի.

իմն զցաւս իշխանին պատիւն,
ն թէ ոչ թագչի որ ինչ գործ

յորժամ զուծիկան ունիցի զօ-
եւ ոգչ իցեն եւ վաստակել
ին եւ ի պատերազմաց արուես-
քեալք եւ կրթեալք իցեն, եւ
րին պատիւ պարծանաց քաջ
քինի երեւել, քան զանսաս-
ազանդելն հեշտական թուիցի
չ ապաքէն իմաստուն թուիցի
կամիցի ոք վաղվաղակի ընդ
մարտ եղեալ կռուել: Այո,
է ունելոց իցէ առաւելութիւն.
ոչ եւ ես որչափ թուիմս թէ
ազնուագոյն իցեմ եւ սպասա-
տանիս ունիցիմ, դոյնչափ եւս
գոյշ լինիցիմ. զոր օրինակ եւ
ս ինչ զոր մեծագինն համա-
ղայն ջանամք յամուր վայրի

իմա՞րդ ոք մարթիցի զօրագլուխ
թշնամիս լինել: Աչ զթեթեւ
լդոյզն գործոյ հարցանես, որ-
ւյլ գիտասջիր թէ որ զայն կա-
ծել, հարկ է նենգաւոր լինել
աւոր եւ խաբեբայ եւ պատրիչ
եւ յափշտակող եւ ամենեւին
ի թշնամիսն: Նու Կիւրոսի
ալ ասէ. Աh որպիսի իսկ ոք
մայես ինձ լինել: Թէ այնպի-

սի լինիցիս որդեակ, ապա այր
եւ օրինաւոր լինիցիս։

Բայց զիա՞րդ, ասէ, մինչ մա
էաք զնոցին հակառակն մեզ
ցէք, նա աւանիկ եւ այժմ, ա
րեկամս եւ առ քաղաքացիս։ Ո
տես, ասէ, եթէ բազում խարդ
թիւն ուսայք եւ մեղմեխանս զի
մեացն կարիցէք չար առնել։ Ո
սէ, հայր։ Իսկ արդ վասն Էր
ասէ, ուսանէիք նետ ձգել, հի
ղարդն առնուլ, ընդէ՞ր վարազաց
նենգէիք կարս մանեալ երագազ
փոս հատեալ, եւ այծեմանցն որ
սփռեալ։ Ընդէ՞ր եւ ընդ առիւծ
արջուց եւ ընձուց ոչ կշիռ զնո
նակ կռուէիք, այլ աւելի իմն ը
սա ջանայիք ազորել։ Թէ ո՞չ գի
եթէ այս ամենայն խարդախու
են եւ խաբէութիւնք եւ նենգո
եւ ժլատութիւն։

Նորէոց, ասէ, է խաբէութիւ
պա թէ կարծիցիմ եթէ ի մա
զոք կամիմ խաբել, բազում գ
պիցեմ։ Թուի ինձ, ասէ, թէ
մարձակէաք ձեզ նետալից զմա
նել. այլ ուսուցանէաք ձգել
տակ անդր, զի մի այժմ բարե
մեղանչիցէք. իսկ եթէ պատեր
վերայ հասանիցէ, մարդիկ եւս
ցէք հարկանել, եւ ուսուցա

եւ պատրել եւ յաղթել, ոչ
մարդկամբ այլ գազանօքն, զի մի
ջիմբք բարեկամաց վնասիցէք.
-է լինիցի երբեմն մարտ պատե-
մի առանց կրթութեան այնր
նի իցէք:
ասէ, եթէ արդարեւ պիտա-
իցէ երկոցունց կողմանց հմուտ
բարի ինչ եւ չար առնելոյ մար-
պարտ էր զերկոսեան իսկ ու-
ել ի մարդկան միջի: Պատմեն,
րդեակ, առ մերովք նախնեօք
եք եւ հաւուք լեալ այր վար-
մանկտւոյ, որ ուսուցանիցէ
ոյ զիրաւն եւ զարժանն, որպէս
աս հրաման, եւ զզրկանսն, մի
սատել, եւ մի խաբել եւ խա-
բամբասել եւ բամբասել, մի ա-
եւ ագահել. եւ զատանէր զայն
առ բարեկամսն առնելի էր, եւ
ր առ թշնամիս: Եւ եւս յա-
տուցեալ զայս ուսուցանէր թէ
ամսն արժան է խաբել ի բա-
գողանալ զբարեկամացն ի լաւ:
ր զայսն ուսուցանէր, հարկ էր
նկտին ի հանդիսի անցուցանել
գ միմեանս առնել. զոր օրինակ
րահանգս կռուանոցացն զՅու-
ատմեն ուսուցանել պատրանս
թեան, եւ վարժել զմանկտին
միմեանս առնել: Արդ ոմանք

քանզի մտավարժ էին եւ առ պա
եւ առ ագահել, թերեւս եւ առ
հել իսկ, ոչ կարծէին եւ ոչ ի
կամաց առ ի չյաղթահարելոյ զ
Յայնմ հետէ հրաման լինէր,
եւ այժմ վարիմք, ուսուցանել
զմանկտին, որպէս զծառայս ուս
նեմք ճշմարիտս լինել նոցա ա
եւ մի խաբել եւ մի գողանալ
ագահել. եւ եթէ արտաքոյ քան
գործիցեն, պատիժս ի վերայ
որպէս զի ընդ այնպիսի բարս
լեալք, զգօնագոյնք քաղաքա
լինիցին։
Յետոյ իբրեւ յայն տիս հա
ցեն, յորում դու այժմիկ իցե
զօրէնս եւս պատերազմացն ուսու
զգուշութիւն կարծեցաւ. զի ա
թուիք եթէ չէք այսուհետեւ
րելոց խակ քաղաքացիս լինել։
եւ զաստղկան ցանկութենէ ըն
մօրէն երիտասարդսն չխօսիմք,
ի սաստիկ ցանկութիւն անդր
յաւելցի դիւրութիւնն, եւ առա
փոյ նովին վարեսցին երիտաս
Եւ արդ քանզի զայն ես անագ
ստնիմ. հայր, մի խնայեր յինէ
կարիցես ուսուցանել ինչ զի ա
լինիցիմ քան զթշնամիսն։
Եւ արդ հնարեսջիր, ասէ,
կար իցէ քո, քոյովքն ճակա

դ եւ զչճակատեալ թշնամիսն
լ , եւ վառելովք զանզէնսն ,
նովք զքուն եղեալսն, եւ ե-
ն նորա քեզ, եւ դու նոցա ան-
ն իցես, նորա ի դժուարս ի-
րու յամուր վայրի։
զիարդ իցէ, ասէ, հայր, թէ
ոք ըմբռնել զթշնամիսն որ
ն ինչ յանցուցեալ իցեն։ Բան-
ում ինչ յայսցանէ, ասէ, որ-
հարկ է եւ ձեզ եւ հակառա-
ձերոց կրել. հարկ է երկոցունցդ
ալ, երկոցունցդ ի քուն լի-
ընդ առաւօտն գրեթէ ամե-
միանգամայն պարտ է մեկնել
իտոյեց, եւ որպիսի ինչ ճանա-
ն իցեն, սակայն հարկ է ընդ
ղի անկեալ երթալ։ Զորս
քեզ զամենայն մի ըստ միոջէ
մնոաւ, եւ յորս գիտեսն թէ
ւ անզօր էք դուք, այնմ իմն
պահ ունել, իսկ յորժամ ազդ
քեզ զթշնամեացն եթէ դիւրին
ռն առնուլ զնոսա, յայնժամ
նդ ի դիմի հարկանել։
Կիւրոս. Մի՞ թէ սոքօք եւեթ
ի առաւել լինել, թէ այլովք
իրօք։ Եւ կարի քաջ, ասէ,
այլովք իրօք. զի ի դոսա բա-
նգամ ամենեքին սաստիկ պահ-
թիւնս առնիցեն, քանզի գիտեն

թէ կարօտանան։ Իսկ որք զթշ
պատրեն, մարթեն վստահս
զնոսա եւ զեղծս ըմբռնել, եւ
տուեալ զկնի մտանել, զկարգ
կարգութիւն հանիցեն, եւ փախ
ի դժուարս ածեալ անդ ի դի
կանիցին։

Պարտ եւ պատշաճ է, ասէ, ո
քեզ որ զայս ամենայն սիրես ու
ոչ զոր ուսանիցիսն, նդքիմբք
վարել, այլ եւ ինքնին իսկ ընդ
ռակորդսն մենքենայել հնարս,
եւ դուսանականքն, ոչ զոր
զայն եւեթ արկանեն ի կէր
եւս նուագս գեղգեղեն բազմ
տաւղօքն. եւ կարի յերաժիշ
նոքքն իցեն եւ ի ծաղկի, այն
թուիցին. եւ բազմապատիկ իսկ
ի մարտի նոր մենքենայք. զի սոք
աւել մարթեն զթշնամիսն պա

Բայց դու ասէ, որդեակ, ե
այլ ինչ հաստուցանիցես մարդկա
զհնարս մենքենաւորութեանն զ
մանր մանր գազանաց մենքեն
կարծիցե՞ս թէ չլինիցիս ամենեւ
մագիտ թշնամեացն։ Քանզի
սաստիկ ձմերայնի յարուցեալ
սուց որսս, երթայիր գիշերի. ե
չեւ հաւուցն շարժեալ յիւրաք
բունոց թակարդք ձգէին խուն
կանք սփռէին, եւ երկիրն պ

ր կորդացեալ դեռնոյ։ Եւ հայքն
եալ էին ի քէն, մինչ զի քում
թեանդ սպասաւոր լեալ առ-
էին եւ զհամազգի թռչունսն
ել. եւ դու դարմանեալ նստէիր,
զի դու նշմարէիր զնոսա եւ նո-
նէիր երեւելի. եւ ունէիր հոգ ի
ճապարել եւ ձգել զթռչունսն
եւ փախուցեալ նոցա։
րձեալ եւ առ նապաստակն
ի խաւարի արածին եւ զցերեկ
ուսեն, պառակսն բուծանէիր,
տոտելովն գտանէին զնոսա. եւ
երագ փախուցեալ ապրին յոր-
դտանին, այլ եւս պառակսն
սատակսն ունէիր ի փախստեան
ել. ապա թէ անտի եւս զերծա-
ուսեալ զճանապարհս նոցա,
է յոր վայր ախորժիցեն դիմել
տակքն, անդէն զաներեւոյթ
տարածանէիր, զի ի սաստիկ
տեանն ինքն զինքն շաղեալ պա-
Եւ առ անտի եւս չապրելոյ
եալ, դէտս իրացն կացուցա-
րըք ի մօտոյ իսկ վաղվաղակի ի
դիմիցեն. եւ դու յետոյ կուսէ
կ եղեալ ի նապաստակ անդր
րեցուցանէիր զնա, որպէս զի
աստից ի բուռն անկանիցի. եւ
րկ որ յառաջոյ դարմանամուս
իցեն պատուէր տայիր լուռ լի-

նել, եւ այնպէս թագուցանէիր
սա։

Արդ որպէս կանխագոյն ասէի,
այսպիսի հնարս եւ ի մարդիկ հ
ցիս, չգիտեմ թէ թողուցուս
հակառակորդաց անտի։ Այսպ
հարկ հասանիցէ երբեմն ի դիւրի
դաշտի յայտյանդիման վառեալ
ցուանց կողմանց ի մարտ պատե
ընդ միմեանս բախել յայնժամ
որդեակ, առաւելութիւնքն որ
զուամ ժամանակաց պատրաստեալ
ցեն մեծ իմն զօրութիւն ունիցին
ես, ասէ, յայնժամ ասեմ թէ
ւելութիւնք են, յորժամ զօրակա
անձինք կիրթք իցեն եւ ոգիքն զ
թացեալք, եւ զպատերազմական
տարութեանց փոյթ լեալ։

Պարտ է եւ այնմ եւս քաջ գ
լինել, թէ զորս ստիպես հնա
լինել քեզ, եւ նոքա ամենեքին
պէս համարին թէ եւ քեզ պա
զնոցանէ խորհել։ Եւ արդ մի ա
կայցես, այլ դիշերայն տեսջիր
զինչ իշխանաւորքն առնիցեն յոր
տիւ լինիցի. իսկ զցերեկ թէ զ
բարուցք իցեն ցայգութեանն պէ

Բայց թէ զիարդ պարտ իցէ ի
զզօրսն ճակատեցուցանել կամ
սանել զցերեկ կամ զցայգ կամ
նեղ կամ ընդ լայն ինչ ճանա

․ լեռնականս կամ ընդ դաշ-
, կամ որգունակ զօրաժողով
ազմ երթալ կամ զիարդ ցայ-
ն եւ ցերեկութեան պահա-
կացուցանել, կամ որպէս առ
ն հակառակորդս մատուցա-
մ ի բաց տանել ի նոցանէ,
էս առ պատերազմօղ քաղա-
նել կամ ի պարիսպսն մատու-
կամ մեկուսի ի պարսպաց ան-
լ, կամ ընդ խոխոմս եւ ընդ
ընդ գետս անցանել, կամ
նել հեծելազօրուն կամ տի-
ն կամ աղեղնաւորացն։ Եւ ե-
յորժամ թեւ ի թեւ առեալ
, յանդիման լինիցին թշնա-
պէս պարտ իցէ ի դիմի հար-
ւ եթէ կարդեալ ճակատեալ
այլուստ ուստեք թշնամիքն
ն եւ ոչ ի հանդիպոյ, զիարդ
է տանել ընդ նոցա դէմ. կամ
իրս թշնամեացն որք զգայցէ
ն թշնամիք չդիտիցեն. եւ
ս զայս ամենայն քեզ յաճա-
զոր ինչ գիտէի, զայն բա-
գամ լուար։ Եւ եթէ թուէր
րիք յայնցանէ հմուտ, չառ-
նոյթ զնմանէ, եւ չլինէիր ան-
այսուհետեւ պարտ է ընդդի-
ատահելոց նոքիմբք վարել,
քեզ միշտ օգուտ թուիցի։

Նաեւ զայս եւս մեծամեծս ուսի
որդեակ: Մի երբեք առանց զո
Հմայից մի անձամբ եւ մի զօրօք
մխիցիս, ի միտ առեալ թէ
յօժարեն ի գործս յորժամ զ
նկատեն, թէպէտ եւ գիտիցեն
թէ ուստի արդեւք լինիցին նոց
րութիւնքն: Նաեւ ծանիցես իս
դեանց իւրացն եղելոց. քանզի բ
ածին ի Հաւան, եւ այն զի իմա
գոյնք եւս թուէին թէ իցեն
պատերազմ. ընդ նոսա զրգռիցի
րոց որք հաւանեցանն երթալ
դիմի հարկանել, սատակեցան:
զբազում արս շինականս եւ ք
մեծացուցին, եւ յայնցանէ որ
ցանն եւ աճեցին զմեծամեծ
կրեցին: Նաեւ բազումք իսկ, զոր
էր իբրեւ բարեկամս վարել եւ
տիս առնել եւ ի նոցունց եր
դառնել, կամեցեալ ծառայս
զնոսա եւ ոչ բարեկամս, անդ
նոցունց իսկ եառուն վրէժս: Ն
մաց որ զկողմն մի ունէին. չեղ
ւական կեալն հեշտականութեա
ցանկացան ամենեցունց տեարք
յայն սակս իսկ եւ յորոց ունէի
պեցին. եւ յոլովք որ զցանկա
ունէին, վասն նորին կորեան:

Որպէս մարդկեղէն իմաստո
ոչ մի ինչ ազնուագոյն գիտէ

յորժամ որ ինչ վիճակ ելանիցէ,
առնիցէ ոք: Իսկ դիքն, որդեակ,
միշտ իսկ են եւ յաւէժ կենդա-
ք զբնաւ գիտեն որ ինչ եղեալ
էն եւ որ զինչ անցք ընդ ի-
չիւր ոք ի նոցանէ անցանիցեն.
դկան որ հարցանեն զնոսա եթէ
իցեն ընդ նոսա, գուշակեն թէ
յարտ իցէ առնել եւ զինչ չիցէ
: Ապա եթէ ոչ ամենեցուն կա-
օգնական լինել, չեն ինչ զար-
քանզի չգոյ ինչ նոցա հարկ ի
զորոց ոչն կամիցին, հոգալ:

…ՍՆՃՆՈՓՄՆՏԵԱՑ

# …ՐՈՍԻ ԽՐԸՏՈՒ

…ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ

…Գ ՊՐՈՒԹԻՒՆ



## ԳԼՈՒԽ Ա

…Մ ճառ արկեալ ընդ միմեանս
…առանէին ի սահմանս Պարսից
…ին. եւ իբրեւ արծուի յաջողակ
…անդիման ընթանայր առաջի
…աղօթս կացեալ դիցն եւ դից-
…ր զՊարսից աշխարհն ունէին,
…թեամբ յուղարկել զնոսա,
…ընդ սահմանսն անցանէին։ Եւ
…ցին, դարձեալ աղօթս դիցն
…անէին այնոցիկ որ զՄարաստան
…ւնիցին մտադիւրութեամբ ըն-
…նոսա։ Զայս արարեալ ողջոյն
…միմեանց որպէս ի դէպ էր. եւ
…ւսանգամ ի Պարսս մեկնեալ
…եւ Կիւրոս ի Մարս առ Կիաքսա-
…ու։
… Եհաս Կիւրոս ի Մարս առ
…րէս, զառաջինն որպէս արժան
…անց ողջոյն տայրն. ապա հար-

ցանէր զԿիւրոս Կիաքսարէս թէ
զօրս ածեր: Եւ նա ասէ թէ
հազարս, որ յառաջ ժամանակա
կանուլթեամբ զայլին առ քե
այլք եւս ի հանդիտապատուաց
որոց ոչ երբեք եղեալ է, եկեալ
Ասէ Կիաքսարէս. Ո՞րչափ են:
Կիւրոս. Ոչ համարն ինչ ուրախ
ցէ զքեզ յորժամ լսիցես, այլ
ած դու զմտաւ, եթէ սոքա սա
որ պատուակիցքն կոչեցին, այլոց
մաց Պարսից իշխեն: Կարօ՞տ ի
զեւք նոքօք իցես, եթէ զուր
չեցիս ընդ վայր կասկածիցիս եւ
ցեն թշնամիքն: Գալոց են ա
բազումք իսկ: Բայց այն ուստի
իցէ: Զի բազումք, ասէ, որ
եկին, այլ ոք այլ ինչ օրինակ,
ամենեքին զդոյն իմն ասեն: Ա
րեմն, ասէ, պարտ իցէ կռուել
արանցն: Հարկ է, ասէ, կռուե
Ասէ Կիւրոս. Զի՞ իսկ չասացի
զզօրացն, եթէ գիտէիր թէ քան
եկեալ հասեալ զօրքն իցեն եւ
էիր մերոց զօրութեանց. որպէս զ
ղեկացեալ երկոցունց կողմանց
այն խորհեսցուք զի աղնուագոյն
տիցեմք: Ասէ Կիաքսարէս. Ա
լուր. Կրեսոս լիւդացի ասեն ած
հեծեալ եւ շերտաւորս եւ աղեղն
աւելի քան զչորս բիւրաւորս: Եւ

...այ զմեծի փռիւգացւոց աշխարհին
...է ասեն ածեալ պղրուճի ուլթհա-
..., եւ նիզակաւորս շերտաւորօք
...րձ ոչ ինչ ընդհատ ի քառասուն
...ւոց. եւ զՄիրիբեայ Գամրաց թա-
...է, վեց հազարս առնեւձիոյ, իսկ
...աւորս եւ շերտաւորս ոչ ինչ
...յերից հազարաց. զՄարագդեայ
...ցւոյ բեւր հեծեալ պատմեն բե-
... կառս հարեւր, եւ պարսաւորաց
...մ իմն ամբոխ: Իսկ զՅունաց որ
...ցւոց աշխարհին բնակիցեն ոչ
...դիւ ուրեք պատմի թէ գայցեն
... եւ զայնոսիկ որ ի փռիւգաս-
...իցեն որ առ Եղղէսպոնտոս ծո-
...յ, Գաբէոս ասեն Նպատոս լինի-
...ոյ ի Կայիստրոս դաշտի վեց հա-
...ծեալք եւ բեւր շերտաւորք ի-
...Կարիացւոց եւ զԼիղիկեցւոց եւ
...լագոնացւոց ասեն թէ կոչեցեալ
... Իսկ ասորեստանեայն որ զՆա-
...ւոց քաղաքն ունի եւ զայլ եւս
...եստան, թուի ինձ թէ հեծելա-
...ածիցէ ոչ պակաս յերկուց բիւ-
...ւ կառս ոչ ինչ աւելի քան զեր-
..., եւ հետեւակս բազումս. քան-
...պէս իսկ սովոր էր յորժամ այսր
...լ գայր:
...է Միւրոս. Դու զԹշնամեացդ ա-
...պատմես թէ վեց բեւր հեծեալք
... շերտաւորք եւ աղեղնաւորք ա-

աւելի քան զքսան բեւրս: Նա ա
սուհետեւ զինչ բազմութիւն ա
զքո զօրացն: Այն, ասէ, Մարա
րուձին աւելի քան զբեւրս, չեր
եւ աղեղնաւորք իցեն առ մեզ
բեւր: Ի Հայոց ի մերոց արուարձա
հասցեն չորեքհազար հեծեալք ե
տեւակք երկու բեւր: Ասէ Կի
Ասես թէ մեր այրուձին պակա
զերիր մասն հեծելազօրու թշնա
են, եւ հետեւակք գոգ կէս ի
ցա: Կիաքսարէս ասէ. Իսկ ար
ա՞րդ սակաւաւորս համարիցիս զ
սիկս, զորոց դուդ ասես թէ ա
Կիւրոս ասէ. Այլ թէ իցէ՞ ար
մեզ կարօտութիւն արանց եթէ
սաստատին իսկ զայն խորհեսցուք:
զկռուին, ասէ, պատմեա թէ
կռիւ իցէ:

Կիաքսարէս ասէ. Գրեթէ ա
ցուն նոյն պատերազմ է. քանզ
ղեղնաւորք եւ տիգաւորք են եւ ն
եւ մերքն: Ասէ Կիւրոս. Ապա ո
հարկ է ի մեծ հեռաստանէ կռ
եթէ այնպիսի զէնք իցեն: Ասէ
քսարէս. Հարկ է թէ ի հեռաս
կռուիցիմք: Կիւրոս ասէ. Ապա
րեմն, յայնժամ բազմացն լինիցի
թութիւն. քանզի կարի քաջ
սակաւաւորացն ի բազմաց անտի
ցեալ սատակիցին եւ ոչ եթէ ի ա

տզրումքն։ Նպա թէ այդ այդ-
է, ասէ, ով Կիւրէ, զինչ այլ
ինչ ոք գտանիցէ, այլ առա-
Պարսս, եւ տեղեկացուցանել
տանայցեն ինչ Մարքն, աղէտք
իկս հասանիցեն, եւ խնդրել
եւս զօր։ Իսկ Կիւրոս. Զայս,
միտ առ թէ եւ ոչ եթէ ամե-
կ Պարսիկքն միաժողով գայ-
զմութեամբ չառաւելումք քան
րիմն։

դու զի՞նչ ազնուադոյն քան
ծիցես զմտաւ։ Այս, ասէ Կիւրոս,
րրեւ զքեզդ էի, փաղփաղակն
զարդ գործէի ամենայն Պարսից
ալ հասեալ կան, զոր օրինակ
մեզն իցեն, ումին, որ հանգի-
իւքն անուանեալ կոչիցին. այն
զրահապատ պատեանք զլան-
ասպար յահեակ ձեռին, եւ
պողովատիկ կամ թուր յա-
թէ զայդ պատրաստիցես, մեզ
մօտ երթալ հակառակորդացն
թեամբ, եւ թշնամիքն փախ-
համարիցին քան կալ մնալ։
ինքնին կացցուք ճակատա-
դ մնացելոցն. եւ որք փախչա-
լանեն ի նոցանէ, զնոսա ձեզ
ելոց ապատատան առնեմք, որ-
չլինիցի նոցա պարապ ոչ փախ-
ոչ դառնալոյ յետս։

Զայս խօսեցաւ Կիւրոս. եւ
թուեցաւ բանն Կիաքսարայ. եւ
այնուհետեւ յիշէր առաքել կոչե
բոլս, եւ կազմէր պատրաստէր զ
որ յառաջագոյն ասացան, եւ
պատրաստ իմն էր եւ ի Պարսից
զայլն հասանէին պատուակիցք
զՊարսից զօրսն ունէին: Յայնմ
Կիւրոս, ասեն, ի մի վայր գումա
զնոսա խօսէր զայն ձեւ օրինակի բ

Արք բարեկամք, իմ տեսեալ
այսպէս վառեալ ի զէն եւ ի զա
կազմս եւ պատրաստս ոգւովք ե
որպէս թէ գիրկ ընդ գիրկ խառ
իցէք անոյեննիցն. եւ գիտացի թէ
սիկք որ զհետ ձեր գան այնպէ
ռեալ են, զի ի հեռաստանէ
ճակատեալ մարթեն կռուել,
թէ մի վասն զի սակաւաւորք իցի
լոկ եւ թափուր յօգնականաց,
ի բազմամբոխ թշնամեաց, վիշա
կրիցէք: Արդ այժմիկ առս հա
ընդ ձեզ առեալ գայք. լինիցի
նոցա զէնք համգոյն մերոց զինու
զմիտս նոցա յորդորել, այն մե
լիցի: Քանզի իշխանի գործ այն
ինքն եւեթ առաքինի լինել,
զայնցանէ որ ընդ իշխանութեա
ցեն, հոգալ, զի լաւագոյնք լին

Իբրեւ նա զայն խօսէր, նոքա
նեքին ուրախ լինէին, զմտաւ

դ բազմաց կռուեցին. եւ մի ամե
այսպէս. Թերեւս, ասէ, զար-
ինչ Թուիցիմ բարբառել, ե-
րսոսի խրատ տայցեմ խօսել ինչ
յորժամ զզէնսն առնուցուն որք
ենկունք օգնականութեան լինե-
ն. Վասնզի գիտեմ ես, ասէ,
ք այնոցիկ որ բարի ինչ կամ
ականն իցեն հատուցանել, նո-
ւել յորդորեն զմիտս լսողացն.
դեւս եթէ տայցեն այնպիսիքն,
եւ նուազագոյն եւս դիպեսցի
ա ի հաւաստարիցն պարգեւս,
մեծամեծար զնոյնս առնլեքն
ցեն. Նաեւ այժմ, ասէ, Պար-
թէ ի Կիւրոսէ քաջալերիցին,
ւկ անսայցեն, քան ի մէնջ մխի-
թիւն գտեալ. Նաեւ եթէ ընդ
սապատիւն կարգիցին, հաս-
ւյն զայն համարիցին յորժամ
աւորի որդւոյ եւ իպպարապե-
ն եթէ ի մէնջ յայս եւ ի սոյն
նցեն. Թէպէտ եւ ոչ մերոցն
րա է հեռի լինել, այլ արժան
նայն հնարիւք զմիտս արանցն
ել ամենեւին, զի դոյն մեզ օգ-
եւ շահաւոր է թէ սոքա լա-
ք եւ առաքինիք լինիցին.
ս զզէնսն ի միջի անդ դնէր Կիւ-
եւ կոչեցեալ զամենայն զօրսն
, խօսէր զայս գոյն օրինակ բա-

նից. Մինչ պարտիկք դուք ան
նմին աշխարհի ծնայք մնայք, ե
մինս ոչ ի վայր ինչ քան զմեզ
ըմբռն եւ ի դէպ է մի եւ միատ
ժաման քան զմեզ ունել: Ի
Թէպէտ եւ այսպիսիք ոչք էիք
ի մերում աշխարհին չունէիք հ
դութիւն հաւասար ընդ մեզ,
մինչ մերժեալ էիք, այլ զի հարկ ի
կայր ձեր զպէտսն կարեւորս չ
Բայց զի զպէտսն ունիցիք, ինձ
լիցի հանդերձ աստուածովքն:
սուհետեւ իշխանութիւն է եւ
եթէ կամիք, առնուլ զէն որպ
մեքն ունիմք, եւ թէպէտ եւ
եւս քան զմեզ իցէք, ի նոյն
ընդ մեզ մխել, եւ եթէ լաւո
ինչ եւ շահ ի նոցունց գործիցի,
հանդոյն մեզ արժանի լինիցիք:

Զառաջին ժամանակն եւ դո
զեղնաւորք եւ տիգաւորք էիք ե
եւ եթէ նուազագոյն քան զմեզ
նայիք, ընդ այն չէն ինչ զար
քանզի չէր ձեր պարապ իբրեւ
ընդ նոյնս կրթել. բայց զինուքդ
քիւք ոչ մի ինչ աւելի մեք քան
ունիցիմք: Վասնզի դուն զրահք
ջոք ըստ իւրաքանչիւր պատշաճի
պար յահեկի, զոր ամենեքին ի
վոր իցեմք կրել, սուսեր կամ
յաջում ձեռին որով զհակառակ

հանդերձ ի վերայ երիվարաց, արդ ոչ ինչ իւիք պակասեալ գտանիցիմք յուրախութենէ, իսկ եթէ հետեւակք իցեմք առաւել եւս թիկունք լինիցիմք ձեր, վաղվաղակի իշխանիցեմք եւ հետի հասանիցեմք ձեզ զօրաւիգն. եւ մեք հնարեսցուք գտցուք ուստ առցուք զերիվարսն :

Նա զայս խօսէր, եւ նոքա տային պատասխանի. Թէ Մ՛եք ո Կիւրէ ոչ արս ունիմք զոր ի նոյս երիվարաց նստուցանիցեմք, եւ ոչ թէ ունէաք, որովհետեւ դու ընդ այս կամիս այլ ինչ նմին հակառակ ընտրեսջք. եւ այժմ առեն առեալ զերիվարսն արա որպէս թուի իսկ քեզ: Ընդունիմ, ասէ. մեք հեծեալք լինիցիմք, եւ դուք բաժանիցէք որ ինչ հասարակաց իցէ: Արդ նախ, ասէ, դիցն որոշեցէք զոր ինչ մոգքն հրամայիցեն. եւ ապա ընտրեցէք Կիաքսարայ զոր ինչ կարծէք թէ առաւել հաճոյ իցէ նմա:

Նոքա ծիծաղեցան, ասեն, թէ զկանայս զեղեցիկս պարտ է զատանել: Զկանայս, ասէ, ընտրեսջիք եւ որ ինչ ձեզ հաճոյ թուիցի: Եւ յորժամ որոշիցէք նմա, ո Վ՛րկանացիք, ամենեցուն որ կամաւոր զհետ իմ եկին մի տայցէք տրտնջել ըստ ձերում կարի: Եւ դուք ով Մ՛արք մեծարեսջիք զգաստըք նախ զօրաւիգն օգնականութեան

եղէն, որպէս զի համարեսցին եթէ բարւոք խորհուրդ խորհեցան զի բարեկամք մեր եղէն: Ճանէք բաժին յամենայնէ եւ պատգամաւորին որ առ ի Կիպքարայ եկն, նմա եւ որոց ընդ նմա. եւ աղաչեցէք զի ընդ մեզ կայցէ, ասասցէք թէ եւ ինձ նոյն բարւոք թուի. զի եւ Կիպքարայ զճշմարիտն պատմեսցէ ի միտ առեալ զամենայն մի բառ միոջէ: Իսկ Պարսից որ ընդ իս իցեն, որչափ ինչ աւելորդ իցէ յետ քաջ կազմելոյ պատրաստելոյ ձեր, այն բաւական է. քանզի մեք հովասան չունաք այլ շինականութեամբ. մինչ զի թերեւս ծիծաղիցիք իսկ զմեւք եթէ մեծապայծառ ինչ հանդերձ ագանիցիմք. զոր օրինակ, ասէ, գիտեմ եթէ յաճախ ծաղր առնիցեմք ձեզ յորժամ յերիվարաց վերայ նստիցիմք. թուի ինձ թէ եւ յորժամ ի գետին անկանիցիմք:

Ապա գնացին նոքա ընտրել ծիծաղեալ ընդ բան հեծանելոյն: Իսկ նա զզօրագլուխն կոչեցեալ հրաման տայր զերիւարսն առնուլ եւ զերիւարացն կազմածս եւ զվարաւանդապաստն եւ համարակարս առնուլ վիճակեալս զընդաց գնդաց: Եւ ինքն իսկ Կիւրոս հրամայեաց ասել եթէ իցէ ոք յԱսորեստանեաց կամ յԱսորւոց, կամ յԱրաբացւոց զօրուէն ծառայ այր կամ Մարաց կամ Պարսից կամ Բակտրիացւոց կամ

կարիացւոց կամ Կիլիկեցւոց կամ Յունաց կամ այլուստ ուստեք նեղեալ բռնութեամբ ի մէջ գայցէ։ Եւ որք լըւան քարոզութեանն ինքնակամ բազումք երեւեցան։

Եւ նորա ընտրեալ զազնուագոյնսն ի նոցանէ տեսլեամբ, ասէր թէ յաղթութիւն ելեալ կրեսցեն զզէնսն զոր տայցեն նոցա, եւ ինձ, ասէ, փոյթ լիցի, զի զուռճիկսն ունիցիք. եւ անդէն տարեալ առ զօրագլուխսն, յանձն արար նոցա եւ հրաման ետ ապարս եւ նուրբ սուսերս տալ նոցա, զի առեալ զհետ գայցեն երիւարօք, եւ զուռճիկսն հանդոյն Պարսից որ ընդ իւրն իցեն առնուլ նոցա. եւ ինքեանք զրահապատք եւ արդնաւորք ցանգ յերիւարաց վերայ երթայցեն. եւ նախ ինքն սկսաւ առնել այնպէս. իսկ ի վերայ հետեւակաց պատուակցացն իւրաքանչիւր ոք փոխանակ իւր զայլ ոք իշխան կացուցանիցէ ի հանդիսապատուաց անտի։ Այդքա զայնու էին։

## ԳԼՈՒԽ Զ

ՅԱՅՆՄ ժամանակի Գովբրիաս ասորի հասանէր ծեր այր, երիւարաւ հանդերձ սպասու հեծելոցն։ Ամենեքին ունէին ասպազէն, եւ որք կարգեալ էին առնուլ զզէնսն, հրամայէին զգե-

ղարդունսան տալ զի այրեսցեն որպէս եւ զայլ եւս զէնսն ։ Բայց Գովբրիաս ասէ. եթէ զԿիւրոս նախ կամիմ տեսանել, եւ սպասաւորքն զայլ եւս հեծեալս նորա թողին եւ զԳովբրիաս տարան առ Կիւրոս. Նա իբրեւ ետես զԿիւրոս սկսաւ խօսել զայս գոյն օրինակի բանից ։

Տէր, ես յազգէ ասորի եմ, է իմ պարիսպ ամուր, եւ բազում աշխարհաց տիրեմ, եւ հազար երիւար տայի թագաւորին Ասորեստանեայց եւ բարեկամ էի նմա առաւել ։ Բայց քանզի նա ի ձէնջ մեռաւ որ այր պիտանի էր, նորին որդի զհարստութիւնն ունի որ ինձն թշնամի է, առ քեզ գամ եւ աղաչանօք անկանիմ առաջի քո, եւ տամ քեզ զանձն իմ ծառայ եւ պատերազմակից եւ խնդրեմ զի առցես զքէն վրիժու իմոյ, եւ զքեզ արարից որդեակ որչափ ինչ հնար գուցէ, քանզի անորդի եմ յարու մանկանէ ։

Որդի որ գեղեցիկն էր, տէր, եւ լաւ եւ պիտանի եւ զիս սիրէր եւ ինձ մեծարանս դնէր. զոր օրինակ որդի որ հօր շուք դնիցէ փառաւոր լինիցի, զնա այժմու թագաւորս, ի կոչել յայնժամու թագաւորին հօր այժմու թագաւորին զի զդուստրն տայցէ իմում որդւոյն, քանզի եւ ես առաքեցի մեծամեծաւ իմն եթէ գոգցես արքայի

դստեր ամուսնլեալ տեսանիցեմ զոր-
դեակն իմ. իսկ այժմու Թագաւորս
կոչեալ զնա յորս. Թոյլ տայր նմա
որս առնել ըստ զօրութեանն, զի ա-
ռաւել ազնուագոյն քան զնա հեծ-
եալ զանձն համարէր. եւ նա իբրեւ ընդ-
բարեկամի որս առնէր: Իբրեւ արջ ե-
րեւեցաւ, երկոքին զհետ մտանէին, որ
այժմ իշխանն է, նա նետ ձգեալ վրի-
պեաց. երանի Թէ ոչ երբեք իսկ, բայց
իմ որդին ձգեալ, որ չէր արժան
կործանեաց զարջն եւ ապա տրտմեալ
տխրեալ Թագոյց զչարակնութիւնն:

Միւսանգամ յորժամ առիւծու
պատահեաց դարձեալ նա սխալեաց,
Թուի Թէ ոչ զարմանալի ինչ կրեաց
եւ որդին իմ դարձեալ դիպեցուցեալ
եհար զառեւծն, եւ ասէր Թէ միով
հարուածով երկիցս ձգեցի եւ կործա-
նեցի երկիցս գազանս: Յայնմ վայրի
ոչ եւս ժոյժ ունէր նախանձու, այլ
բուռն մի գեղարդան յումեքէ յեկելոցն
զհետ՝ յափշտակեալ ի զխստան հարեալ
զմիայն եւ զսիրելի որդեակն իմ յա-
րեւէ արկանէր, եւ ես հէքս զդիակն
փոխանակ փեսային տարայ, եւ մինչ
դեռ այն ինչ տեղք մուրուացն արձա-
կէին զքաջ որդեակն իմ զսիրելի Թա-
ղեցի: Եւ որ սպանն, որպէս Թէ
Թշնամի այր սատակեցաւ, ոչ երբէք
ստրջացաւ, եւ ոչ փոխանակ չարու-

թեան գործոյն պատուի իւրեք արժանի արար զայն որ ընդ հողով էր։

Հայր նորա մորմոքէր յիմ վերայ եւ յայտնի իսկ արտամէր ընդ իս ընդ վիշտանն։ Արդ ես, եթէ նա կենդանի լեալ էր, ոչ երբեք գայի առ քեզ առ չարչարել նորա, քանզի բազում գութ եւ խնամ անկանէր նորա ընդ իս եւ սպասաւորութիւն հարի նմա։ Բայց քանզի իսպանօղ անդր որդւոյս հաս իշխանութիւնն չկարեմ բարւոք միտս ունել ընդ նմա, եւ գիտեմ թէ եւ ոչ նա երբեք բարեկամ համարիցի զիս։ Քանզի գիտէ թէ որպիսի միտս ունիմ ընդ նմա եւ զի յառաջն զուարթութեամբ կեանս կէի, այժմ լոկ եւ թափուր մնացի եւ սգով զծերութիւնս ի գլուխ հանիցեմ։ Արդ եթէ դու զիս ընդունիցիս, կայցէ եւ ինձ ինչ ակնկալութիւն հասանելոյ խնդրել զվրէժ որդւոյ իմոյ սիրելւոյ, միւսանգամ մանկանալ թուիցիմ եւ ոչ ամօթով կեցցեմ եւ ոչ ի մահուս տրտմութեամբ վախճանիցիմ։

Նա զայս խօսէր եւ Կիւրոս տայր պատասխանի. Եթէ արդարեւ զնոյն ածես զմտաւ զոր ինչ խօսիս առ մեզ, ընդունիմ զքեզ որ աղաչեսդ եւ խոստանամ վրէժ առնուլ իսպանողէ անտի հանդերձ աստուծովքն։ Ասա դու ցիս, ասէ, եթէ զայդ ամենայն առնիցեմք

քեզ եւ զպարիսպսդ թողցուք քեզ եւ զաշխարհն եւ զզէնս եւ զզօրականսն զոր յառաջն ունէիր, դու մեզ զինչ ընդ այնր սպասաւորութիւն հարկանիցես ։

Եւ նա ասէ. Զպարիսպսն յորժամ կամիցիս տաց քեզ տուն բնակութեան, եւ զհարկ աշխարհին զոր նմա հարկանէի քեզ տաց. եւ ուր հասանիցէ ի պատերազմ երթալ, երթայց ընդ քեզ ի պատերազմ առեալ զզօրս աշխարհին ։ Է եւ իմ, ասէ, դուստր կոյս սիրելի եւ ժամ է ամուսնութեան, զորմէ ես յառաջն կարծէի թէ այնմ որ այժմ թագաւորէ կին մնուցանեմ ։ Բայց այժմ ինքն դուստրն իմ յոյժ արտասուելով պաղատի ինձ մի տալ զինքն այնմ որ զեղբայրն սպան, եւ ես նոյնպէս զմտաւ ածեմ ։ Այժմ քեզ տամ խորհել վասն նորա այնպէս որպէս եւ ես վասն քո խորհիմ ։

Ապա ասէ Կիւրոս. Վասն այսր ամենայնի, ասէ, ես ճշմարտութեամբ տամ քեզ զաջ իմ եւ առնում զաջ քո. դիքն եղիցին մեզ վկայք ։ Իբրեւ այս ի գլուխ ել, հրաման ետ երթալ Գոբրիայ առեալ զզէնսն, եւ հարցանէր եթէ որչափ ինչ գնաց ճանապարհի իցէ առ նա, եթէ գայցէ. եւ նա ասէր եթէ վաղիւ ելցես ընդ արշալուրշն, ի միւսում աւուր առ մեզ լինիցիս ։ Եւ

Պռովկրիտա մեկնեցաւ թողեալ առաջ-նորդ մի։

Իսկ Մարացն հասեալ զոր ինչ մոգ-քըն ասացին ընտրել աստուածոցն տայ-ին ձեռն ի ձեռն մոգացն. եւ Կիւրոսի զատուցին զխորանն գեղեցիկ եւ զկինն շուշանացի, զորմէ քան զամենայն կա-նայս Շուշանացւոցն պատմէին թէ գեղե-ցիկ է. եւ ապա Կիաքսարայ զերկրորդսն. եւ այլովք եւս նոյնպիսեօք որովք կա-րօտի էին լցուցանէին զանձինս զի ոչ իւիք կարօտեալ երթայցեն ի պատե-րազմ, զի ամենայն ինչ բազում էր։ Մանուին եւ Վրկանացիք որոց կարօտ ինչ էին, բաժանակից առնէին զպատ-գամաւորն Կիաքսարայ, եւ զաւելորդ խորանսն որչափ էին, ետուն Կիւրոսի զի Պարսից լինիցի եւ զզանձսն, ասեն, յորժամ բնաւն ժողովիցի, տացուք, եւ ետուն իսկ։

Նոքա զայս ինչ գործէին եւ խօսէին. եւ Կիւրոս հրամայեաց ընտանեացն Կիա-քսարայ առնուլ եւ պահել զամենայն որ ինչ նորա էր։ Եւ զոր տայք ինձ, յօժարութեամբ, ասէ, ընդունիմ. ի կիր արկցէ զնոսա որ առաւել կարօ-տեալ իցէ ի ձէնջ։ Ոմն ի Մարացանոց որ զզուսանութիւն սիրէր, ասէ. Նա, Կիւրէ, լուայ երէկունն զձայն արուես-տականացն զոր դու ունէիր եւ քաղ-ցրութեամբ լուայ, եւ եթէ տաս դու

ինձ զմի ոք ի նոցանէ, լաւ համարիցիմ երթալ ի մարտ պատերազմի քան եթէ ի տան մնալ։ Կիւրոս ասէ. Այս, ասէ, տամ քեզ. եւ առաւել շնորհակալ լինիցիմ քեզ զի խնդրեցեր յինէն, քան դու ինձ զի առնուս։ Զի այսպէս ծարաւի եմ շնորհս առնել ձեզ։ Ապա առ զնա այն որ խնդրեացն։



# ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ

# ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ

## Ի ԴՊՐՈՒԹԻՒՆ

---

### ԳԼՈՒԽ Ա

ԿՈՉԵՑԵԱԼ Կիւրոսի զԱրասպէս մար որ ի մանկութենէ ընկեր էր նորա, որում եւ զմարականն պատմուճանն հանեալ ետ յորժամ յԱժդահակայ ի Պարս մեկնէր, հրաման ետ նմա զի պահեսցէ նմա զկինն եւ զվրանն, եւ կինն էր Աբրադատայ Շուշացւոց թագաւորի. եւ յորժամ ի բուռն անկաւ Ասորեստանեաց բանակն, այր նորա ոչ դիպեցաւ ի զօրու անդ, այլ առ Բակտրիացւոց արքայն պատգամագնաց լեալ էր: Առաքեաց զնա Ասորեստանեայն վասն թիկանց օգնականութեան քանզի հիւր լեալ էր Բակտրիացւոց թագաւորին: Զսա հրամայեաց Կիւրոս Արասպայ պահել, մինչեւ ինքն առնուցու:

Արասպէս որ զհրամանն առ, հարցանէր. Տեսե՞ր, ասէ, ով Կիւրէ, զկինն

զոր պաշտել հրամայես։ Ասէ Կիւրոս Ոչ տեսի։ Այո, ասէ, տեսի յորժամ ընտրէի զնա քեզ, եւ կրկին անգամ յորժամ մտանէաք ի խորանն նորա զառաջինն ոչ ծանեաք զնա. զի ի գետին անկեալ դնէր եւ ամենայն նաժիշտք զնովաւ էին. եւ ունէր հանդերձ հանգոյն աղախնացն. եւ իբրեւ կամեցաք գիտել թէ ո՛ ոք տիկինն իցէ զամենեքումբք հայեցաք. եւ վաղվաղակի յայտնի իսկ զատաւ յայլոցն ամենեցունց, թէպէտ եւ նստեալ եւս ի հող եւ ծածկեալ երեւէր։ Իբրեւ հրաման տուաք նմա կանգնել կալ, յարեան ընդ նմա եւ ամենեքին որ զնովաւ էին։ Յայնժամ վայրինախ զանցուցանէր յաղթանդամութեամբն, ապա ուժգնութեամբն եւ քաջութեամբն եւ գեղեցկութեամբ, թէպէտ եւ ի գձձութեան կերպարանս կայր. եւ յայտնի երեւէին արտասուացն վիժեալն զի ի հանդերձսն հոսէին եւ յոտսն։ Իբրեւ ասաց որ ծերագոյնն էր ի մէնջ, թէ քաջալերեաց ով կին դու. լսեմք թէ քո այրն գեղեցիկ է, բայց այժմ ընտրեմք զքեզ առն որ ոչ ի վայր իցէ քան զնա գեղով եւ ոչ միտօք եւ ոչ զօրութեամբ։ Այլ որպէս մեք համարիմք, թէպէտ եւ իցէ եւս այլ այր, սակայն եւ Կիւրոս արժանի զարմանալոյ է, եւ դու այսուհետեւ նորա լիցիս։

Իբրեւ լուաւ զայս կինն պատառէր զվերին պատմուճանն եւ մորմոքէր. եւ կառաչէին ընդ նմա նաժիշտքն: Յայնմ վայրի մեծ մասն երեսաց նորա երեւէր պարանոցն եւ ձեռքն: Ի միտ առ, ասէ, Սիլուոս, եթէ ինձ եւ այլոց ամենեցունց որ տեսին այսպէս թուեցաւ թէ ոչ երբեք ծնեալ իցէ կին մի համեմատ ի մահկանացուաց աստի Ասիացւոց աշխարհին եւ դու տեսցես զնա:

Սիլուոս ասէ. Կարի իսկ սակաւ տեսից, ասէ, եթէ այնպիսի ոք է որպէս դու պատմես: Զի՞մ, ասէ երիտասարդն: Զի եթէ այժմ, ասէ, լուեալ ի քէն եթէ գեղեցիկ է, յանձին կալայց երթալ տեսանել, յորժամ ամենեւին չիցէ ինձ պարապութիւն, երկնչիմ թէ մի կարի վաղվաղակի հաւանեցուցէ նա զիս գալ տեսանել: Նա՛ եւ ապա թերեւս անփոյթ արարեալ զոր պարտն իցէ գործել, նստիցիմ հայիցիմ ընդ նա:

Իսկ երիտասարդն ծիծաղեալ ասէ, Համարիցիս, ասէ, ով Սիլուէ, եթէ բաւական իցէ գեղ մարդոյ բռնադատել զայն որ չկամիցի գործել արտաքոյ քան զլաւութիւն: Զի եթէ այդ այդպէս էր, ասէ, զնոյն օրինակ զամենեսին ի հարկէ բռնադատէր: Տես, ասէ, զկրակ, զիարդ զամենեսին զմի օրինակ կիզու. զի ի բնէ իսկ այնպէս է: Իսկ ի գեղեցկաց, կէսոց ցանկանան եւ կէ-

սոց ոչ, եւ այլ ոք այլում տենչայ. քանզի կամական է եւ ցանկայ իւրաքանչիւր ոք ում կամի: Ոչ եղբայր քեռ ցանկայ, այղ այլ ոք նմին ցանկայ. եւ ոչ հայր դստեր, այղ այլ ոք դստերն. քանզի եւ ահ եւ օրէնք բաւական են զցանկութիւնն կարճել: Եթէ օրէնք, ասէ, դնէին թէ որոց չիցէ կերեալ մի քաղցիցեն, եւ որոց չիք արբեալ մի ծարաւեսցին, եւ մի ձմերայնի մսել եւ մի ամառայնի տապանալ. ոչ մի ինչ օրէնք ձեռնհաս էին վճարել զի մարդիկ նոցին հնազանդ լինիցին. քանզի ի բնութենէ է ի նոցունց յաղթել. իսկ ցանկալն կամածին է. իւրաքանչիւր ոք ցանկայ այնմ որ ըստ իւրոց մտացն իցէ. որպէս հանդերձից եւ աւղոց:

Եւ արդ զի՞րդ, ասէ, եթէ արդարեւ կամածին ցանկալն էր, ո՞չ եւ դադարել մարթիցի յորժամ կամիցի ոք: Ես, ասէ, տեսի զի եւ լային եւս ի տրտմութենէ անտի վասն ցանկութեանն, եւ ծառայութիւն հարկանէին նոցին որոց ցանկայինն. որք եւ չար զծառայանալն համարէին յառաջ քան զցանկութիւնն. եւ բազում ինչ չնորհէին, յորոց չէր ինչ բարւոք նոցա զրկել եւ զլանալ. եւ ըղձանային եւս իբրեւ յախտէ իմեքէ զերծանել եւ չէին ձեռնհաս ապրել, այլ կապեալք

եւ կծեալք ի սաստիկ ինչ հարկէ իմիքէ առաւել քան յերկաթի կապանաց։ Տան զանձինս այնոցիկ որոց ցանկանանն, բաղում եւ ընդ վայր իսկ սպասաւորութիւն հարեալ։ Նա եւ ոչ ի բաց փախչել մտաբերեն որ այնպիսի ցաւովքն ծնգեալ են, այլ եւ պահեն եւս զայնսիկ որոց ցանկանանն զի մի ուրեք վտարանդի գնայցեն։

Ասէ երիտասարդն. Այնպէս, ասէ, առնեն. են իսկ, ասէ, այնպիսիքն ստահակք։ Վասն որոյ թուի ինձ թէ ցանգ իսկ եւ հանապազ ըղձանան թէ հէքք մեռանիցին, ուր բիւրապատիկ հնարք եւ հայթայթանք իցեն ի կենաց զերծանելոյ եւ ոչ զերծանիցին։ Նոքին իսկ եւ ի գողանալ մտաբերեն եւ յօտարացն ոչ կարծեն զձեռս, այլ յորժամ յափշտակիցեն ինչ կամ գողանայցեն, մեղադիր լինին այնմ որ գողանան եւ յափշտակէ. եւ ոչ եթէ արգահատեն, այլ եւ տանջեն եւս։ Այնպէս, ասէ, եւ գեղեցիկքն ոչ եթէ բռնադատեն ի հարկէ ցանկալ անձանց, եւ ոչ ձգել զմարդիկ յոր ինչ չիցէ պարտ, այլ մարդք ժանդք ամենայն ցանկութեան չունին ժոյժ, եւ ապա մեղադիր ցանկութեանն լինին։ Բայց որ լաւքն եւ պիտանիք իցեն ցանկալ ցանկան ոսկւոյ եւ ազնիւ երիւարաց եւ կանաց գեղեցկաց, սակայն յայնմ ամենայնէ

գիւրաւ մարթեն ի բաց մերժել զանձինս զի մի հուպ երթայցեն նոցա արտաքոյ քան զարժանն։ Արդ ես, ասէ, տեսի զնա, եւ ամենեւին գեղեցիկ թուեցաւ ինձ, սակայն առ քեզ եմ, եւ յերիւար հեծանիմ, եւ զայլ եւս զպատշաճսն վճարեմ։

Ասէ Կիւրոս. Թերեւս վաղվաղակի իսկ անցեր. զի մարթի եւ ի հուր ումեք հուպ լինել եւ ոչ իսկ եւ իսկ այրել, եւ փայտք ոչ վաղվաղակի վառին։ Սակայն ես ոչ ի հուր հուպ լինիմ, եւ ոչ ի գեղեցիկսն պշնում, եւ ոչ քեզ խրատ տամ ասէ, ով Արասպա, զի տայցես աչաց քոց դեգերել ի գեղեցիկսն. զի հուր զմերձեցեալսն այրէ, իսկ գեղեցիկք եւ զայնոսիկ որ ի բացուստ նայիցին, բորբոքեն մինչեւ զգալոյ ցանկութեանն։ Քաջալերեաց, ասէ, ով Կիւրէ. եւ ոչ թէ չդադարիցեմ երբեք ի պշնլոյ, չլինիցիմ ժուժկալ առ առնելոյ ինչ յորոց չիցէ պատշաճ առնել։ Բարւոք է, ասէ, զոր ասես, այսուհետեւ պահեա, զոր հրամայեմ իսկ քեզ եւ փոյթ լիցի քեզ զնմանէ. զի թերեւս բնաւ ի ժամանակի իմն մեզ կին լինիցի դա։

Զայս ասացին եւ ի միմեանց մեկնեցան։ Իսկ երիտասարդն տեսեալ զգեղեցիկ զկինն, եւ իմացեալ զլաւութիւն նորա, եւ զի պաշտէր եւս զնա, համա-

րէր թէ շնորհս ինչ առնիցէ նմա, եւ իմացեալ եւս թէ չէ անշնորհակալ, այլ փոյթ յանձին ունի վասն իւրոցն գերդաստանկացն, զի գուցէ եկելոցն որ ինչ պիտոյն իցէ. եւ եթէ երբեք խօթանայցէ, մի առնիցի ումեք կարօտ. յայսմ ամենայնէ գրաւեցաւ տենչանօք սակայն ոչ ինչ զարմանալի կիրս կրեաց: Այս ամենայն այսպէս վճարէր: Բայց Կիւրոսի կամեցեալ թէ ի Մարաց եւ ի պատերազմակցաց որք կամիցին մնալ ընդ իւր, մնայցեն, կոչէր ի մի վայր զամենայն զմեծամեծսն. իբրեւ եկին հասին, խօսէր այսպէս:

Արք Մարք եւ ամենեքին որ աստ կայք, ես զձեզ գիտեմ հաստատութեամբ եթէ ոչ ընչից կարօտեալք եկէք ընդ իս. եւ ոչ Կիաքսարայ ապասաւորութիւն զայն համարէիք. այլ զի կամեցարուք ինձ շնորհս առնել եւ ինձ մեծարանս եդիք եւ շնորհակալ եւս եմ վասն նոցին, եթէ ոչ անիրաւ ինչ կամիցիմ գործել, բայց տակաւին թուի ինձ թէ չիք իմ կար արժանի հատուցանելոյ. եւ չհամարիմ զայն ամօթ ասել: Բայց եւ զայն եթէ կայցէք մնայցէք առ իս, հատուցից ձեզ, ամաչեմ ասել. զի կարծիս առնում թէ զայս յայն սակս ասիցեմ զի դուք յօժարեսջիք առ իս մնալ: Բայց ընդ այնր զայս ասեմ: Ես թէպէտ եւ դուք ան-

տայցէք Կիաքսարայ եւ մեկնեսջիք , սակայն եթէ լաւութիւն ինչ գործիցեմ, ջանացայց զի այնպէս առնիցեմ որպէս զի եւ դուք յարգեալ գովիցէք զիս։ Վասնզի եւ ոչ երթամ ի բաց, այլ Վրկանացւոց որոց երդուամն եւ աջ ետու, հաւատարիմ եղէց եւ ոչ երբէք տաց զնոսա ի ձեռս։ Եւ Գովբրիայ որ զայս ամենայն ետ մեզ զպարիսպն եւ զաշխարհն եւ զզօրս ջանացայց առնել զի մի տարջասցի ի վերայ ճանապարհին որով եկն նա առ իս. եւ որ մեծ իսկ քան զընաւ է. յորժամ այնպէս յայտնի իսկ բարութիւն շնորհեսցեն դիքն, պարտ իցէ մեզ երկնչել ի նոցանէ եւ ամաչել, եթէ թողեալ զայս ամենայն ընդվայր գնայցեմք։ Ես, ասէ, այսպէս արարից. բայց դուք որպէս գիտէք այնպէս առնիջիք. եւ ցիս ասացէք զինչ ձեզ հաճոյ թուիցի։

Նա զայս խօսէր. եւ նախ այն որ ասացն երբեմն թէ համազգի իցէ Կիւրոսի, ասէր առ այն. Ես, ասէ, արքայ. զի ինձ թուիս դու թէ ի բնէ իսկ թագաւոր ծնեալ ես, ոչ ինչ ընդհատ յայնմանէ որ ի բջիջան մեղուաց թագաւոր ծնանիցի։ Զի սմա միշտ մեղուքն կամակար հնազանդ լինիցին, ուր եւ կայցէ, եւ չերթայ անտի ոք ի բաց, եւ եթէ ուրեք ելանիցէ, ոչ ոք թողու զնա։ Նմանապէս անհնարին իմն ցան-

կութիւն է նոցա լինել ընդ իշխանութեամբ նորա. եւ առ քեզ նմին համագոյն միտս ունին մարդիկս: Զի եւ յորժամ ի մէնջ ի Պարսս մեկնեալ երթայիր, ով դու մանուկ կամ ծեր ի Մարաց եթող զքեզ եւ ոչ եկն զհետ քո մինչեւ Աժդահակ դարձոյց զմեզ: Եւ յորժամ ի Պարսից աշխարհէն եկիր մեզ յօգնականութիւն, գրեթէ զամենայն իսկ զքո բարեկամս տեսանէաք զի զհետ գային քո մտադիւրութեամբ: Եւ յորժամ յօժարեցար գալ այսր ի պատերազմ, ամենայն Մարք կամաւորին զկնի քո: Եւ այժմ այսպէս հաստատեալ եմք, զի ընդ քեզ յերկրի աստ թշնամեաց եմք եւ համաձայնիմք, իսկ առանց քո եւ յաշխարհ իսկ մեր երթալ զանգիտեմք: Այլք զիարդ առնելոց իցեն. զայն ինքեանք ընտրեսցեն. բայց ես Կիւրոս, եւ որոց եմն իշխեմ կացցուք առ քեզ, եւ հայեցեալ ընդ քեզ համբերեսցուք եւ ժուժկալ լիցուք ի քէն երախտիս գտեալք:

Յետ այնորիկ Տիգրանէս խօսէր զայս գոյն օրինակ բանից. Դու, ասէ, Կիւրոս. մի ինչ զարմանայցես եթէ ես լուռ կամ, զի պատրաստ է անձն իմ ոչ զի խորհիցի այլ զի առնիցէ զոր ինչ դու հրամանս տայցես: Իսկ վրկանացին ասէ, Ես ով Մարք եթէ այժմ ի բաց գնայցէք, ասեմ թէ ի դիցիրիք կամաց լի-

նիցի, որ չտայ ձեզ աւելագոյն փառաւորս լինել։ Ո՞ րք մարդկեղէն մտօք ի փախստեայ գնալ թշնամեացն դառնայցէ յետս, կամ յորժամ զզէնսն ի բաց տայցեն, ոչ առնուցու, եւ յորժամ զանձինս վտարանդիս տայցեն եւ զոր ինչ իւրեանց իցէ, եւ ոչ ընդունիցի, մանաւանդ իսկ զի եւ առաջնորդ եւս մեզ այնպիսի ոք իցէ, որ որպէս ինձն թուի եւ ի դիսն ամենայն երդնում, թէ առաւել ուրախ լինիցի յորժամ երախտիս մեզ առնիցէ, քան յորժամ զիւր իսկ անձն մեծացուցանիցէ։ Յետ այնորիկ ամենայն Մարք խօսէին այսպիսի ինչ բանս. Դու, ո Կիւրէ. հաներ բերեր զմեզ. եւ յաշխարհն մեր, յորժամ քեզ ժամ թուիցի գնալդ, ընդ քեզ տար զմեզ։ Զայն լուեալ Կիւրոսի եկաց յաղօթս. Ով մեծ Արամազդ, խնդրեմ ի քէն տուր դու ինձ, այնոցիկ որ զիս մեծարեն, յաղթել երախտեօք իմովք։

Ապա հրաման տայր այլոց կարգել կացուցանել պահապանս, եւ զանձամբ պատաղել, եւ Պարսից հրամայէր բաժանել տալ զվրանսն, հեծելոցն զնոցին պատշաճսն, եւ հետեւակաց զայն որ բաւականն իցէ նոցա, եւ կարգել զի ամենեքին որ ի վրանսն իցեն պատրաստեսցեն Պարսից ըստ գնդաց գնդաց զպէտսն եւ զերիւարսն դարմանեալ

մատուցեն։ Պարսից մի այլ ինչ գործ լիցի եթէ ոչ վաստակել յերս պատերազմի։

## ԳԼՈՒԽ Բ

ԶԱՅՆ օր այնպէս ի գիւղն հանին։ Ընդ առաւօտն վաղայարոյց եղեն, յուղի անկեալ երթային առ Գոբրիաս, Կիւրոս անդրուարաւ, եւ Պարսից հեծելովքն, եւ էին իբրեւ երկու հազարք։ Զկնի խաղային նոցա ասպարակիրք եւ սուսերակիրք նոցա նոյնչափ թուով եւ այլ եւս զօրն կարգեալ տողեալ երթայր։ Հրաման տայր իւրաքանչիւր ումեք ասել ցնոր պաշտօնեայսն իւրեանց թէ որ ոք ի նոցանէ յետոյ քան զվերջապահսն երեւեսցի, կամ յառաջոյ ճակատուն, կամ ի կողմանց արտաքոյ քան զայնոսիկ որ ի գնդի անդ իցեն ըմբռնեսցի, ի պատուհաս մատնեսցէ։ Յաւուրն երկրորդի ընդ երեկոյս հասին ի տեղին Գոբրիայ, եւ տեսանեն անխառն զամուրն եւ զամենայն յարդարեալ պարսպովք, որպէս զի հարկ իցէ անհնարին սաստկութեամբ մարտ եդեալ կռուել. եւ զուարակս բազումս եւ բազում արջառ ի ներքոյ ամրին տեսանէին։

Սուաքեալ Գոբրիայ հրամայեաց Կիւրոսի շուրջ գալ եւ տեսանել թէ ընդ

որ իցէ դիւրին մուտն, եւ ի ներքս եւս յղել առ նա զոմանս ի հաւատարմաց անտի որ զամենայն որ ինչ ի ներքս կայցէ, տեսեալ պատմեսցեն։ Ինքն իսկ Կիւրոս ճշմարտիւ կամէր տեսանել թէ գուցէ ուրեք կուիւ յորմունսն, եթէ սուտ երեւիցի Գոբրիաս, յամենայն կողմանց շուրջ գայր հայեցեալ տեսանէր զբնաւ ամուր անմատոյց։ Իսկ զորս առաքեաց առ Գոբրիաս, պատմէին Կիւրոսի թէ այնչափ բարութիւնք ի ներքս կան, որ ցազգ մի մարդկան չպակասիցեն այնոցիկ որ ի ներքս իցեն։ Կիւրոս ի հոգս կայր թէ զինչ այն ինչ արդեւք իցէ։ Ինքն իսկ Գոբրիաս ել առ նա եւ զամենեսեան որ ի ներքս էին, հան, զոմանս զի գինի եւ ալեւր բերէին. եւ զայլս որք երինջս եւ խոզս եւ այծս եւ ուլս եւ եթէ ուտելի ինչ էր զամենայն բաւականութեամբ բերէին, զի բարւոք ընտրիս ուտիցեն ամենայն զօրն որ ընդ Կիւրոսի իցեն, եւ որք ի նոյն կարգեալ կային բաժանէին զամենայն եւ ընտրիս առնէին։

Իսկ Գոբրիաս, իբրեւ արքն արտաքս ելին, հրաման ետ Կիւրոսի ի ներքս մտանել որպէս զիարդ զգուշութեան համարէր։ Յառաջագոյն առաքեաց ի ներքս Կիւրոս դէտս եւ զօրս եւ ապա ինքն եմուտ։ Իբրեւ ի ներքս մխեցաւ բաց ունէր զդրունսն. կոչէր զամենայն

բարեկամս եւ զիշխանս որ ընդ իւրն էին։ Յորժամ ի ներքս էին, հանեալ Գոբրիայ տաշտս ոսկիս եւ բաժակս եւ բաժակակալս եւ զարդս եւ սպասս ազգի ազգիս եւ անչափ դահեկանս եւ զամենայն ինչ զգեղեցիկ, եւ զդուստր իւր ամենայնի զդուստրն անհնարին գեղեցիկ եւ անդամայաղթ որ ի սուգ թախծեալ կայր վասն եղբօրն վաղամեռիկ լինելոյ, հանէր եւ խօսէր զայս ձեւ օրինակ բանից այսպէս. Ո Կիւրոս ես քեզ զգանձդ տամ, եւ զդուստրդ զայդ յանձանձեցից զի այնպէս իցէ որպէս դու կամիցիս. այսուհետեւ աղաչեմք, ես որպէս յառաջին իսկ, աղաչեմ զի առցես զքէն որդւոյ իմոյ, եւ սա այժմ աղաչէ զի զեղբօրն վրէժ խնդրեսցես։

Կիւրոս ասէ. Ես քեզ եւ յայնժամ խոստացայ, եթէ չստես, խնդրել զվրէժ քո. բայց քանզի այժմիկ ճշմարիտ տեսանեմ զքեզ, պարտ իսկ եմ խոստմանն։ Եւ դստերդ խոստանամ զդոյն առնել հանդերձ աստուածովքն. եւ զկարասիդ, ասէ, ես ընդունիմ եւ տամ զդոսա աղջկանդ եւ այնմ որ կին առասցէ զնա։ Բայց պարգեւ մի առեալ երթամ ի քէն, ընդ որում ոչ որ ինչ ի Բաբիլացւոց աշխարհին իցէ, յորում բազում ինչ գոյ, առնում յանձն. եւ ոչ որ ընդ ամենայն տեղիս գոյ ընդ այնր յօժարութեամբ առեալ գնայցեմ։

Գոբրիասս զարմացեալ կայր թէ զի՞նչ այն իցէ, եւ կասկածեալ թէ մի զդրա- տերէն տարիցէ, այսպիսի ինչ հարցանէր. Եւ զի՞նչ ինչ այն իցէ, ասէ, ո Կիւրոս:

Կիւրոս տայր պատասխանի: Քանզի ով Գոբրիա, ասէ, ինձ թուի թէ իցեն բազումք ի մարդկանէ որ ամպարշտել չկամիցին եւ ոչ զրկել եւ ոչ սուտ կամաւ խօսել. բայց վասն ոչ ուրուք կամելոյ յանձն առնել նոցա ոչ ինչս բազումս ոչ հարստութիւն ոչ պարիսպս ամուրս ոչ որդեակս ցանկալիս, մինչ չեւ յայտնի լեալ թէ որպիսիք ոք իցեն, անդէն մեռանին: Իսկ ինձ դու այժմիկ, պարիսպս ամուրս եւ պէսպէս մեծութիւն եւ զզօրսն քո եւ զդուստրն քո արժանաւոր, տաս ի ձեռս, եւ յայտ արարեալ ցուցանես զիս ամենայն մարդկան, թէ ոչ ի հիւրսն կամեցայ ամպարշտել եւ ոչ զրկել եւ զլանալ ընչից վասն, եւ ոչ սուտ կամաւ ուխտիցն: Արդ ես մինչեւ այր արդար իցեմ, եւ արդար կարծեալ ի մարդկանէ դրուատիցիմ, զայս ոչ ուրեք մոռացայց. այլ փութացայց ընդ այսոր ամենայնի, մեծարել զքեզ ամենայն բարութեամբք: Մի՛ երկնչիր, ասէ, եթէ չքաւորեսցիս գտանել այր մի դստերդ, ըստ արժանի նորա: Քանզի բազում եւ պիտանի պիտանի բարեկամք են իմ յորոց ո՛ ոք եւ իցէ առնիցէ զնա կին,

բայց թէ ունիցի ինչս այնչափ, որչափ տասն կամ թէ այլ եւս բազմապատիկ քան զնոյն, զայն չկարեմ ասել. բայց դու զայս գիտասջիր, եթէ իցեն ոմանք ի նոցանէ, որք եթէ տայցես եւս նոցա զինչսն, ոչ փոքր ինչ աւելի վասն նորին զարմանայցեն ընդ քեզ: Եւ ինձ նախանձ բերեն այժմ, եւ յաղօթս կան դիցն ամենեցուն, զի լինիցի նոցա յայտ առնել, թէ հաւատարիմք են բարեկամացն ոչ ինչ ընդհատ լինէին. իսկ ի թշնամեաց ոչ երբեք ի բաց կայցեն մինչ դեռ կենդանիքն իցեն եւ ոչ դիքն վնասիցեն: Եւ քան զառաքինութիւն եւ զազնուական փառաւորութիւնն ոչ զամենայն ինչ զԱսորւոց քրդովքն հանդերձ եւ զԱսորեստանեաց նախամեծարս ընտրիցեն. գիտասջիր զի այսպիսի արք կան աստ նստեալ:

Իսկ Գոբրիաս ծիծաղեալ, Ցոյց ինձ, ասէ, ով Կիւրէ, թէ ուր իցեն սոքա. խնդրիցեմ ի քէն միում ումեք ի նոցանէ լինել ինձ որդեակ: Զիս, ասէ, չէ ինչ պիտոյ ածել ի հաւան, այլ եթէ գայցես ընդ մեզ. դու իսկ քեզէն կարիցես եւ այլում ցուցանել զմի մի իրաքանչիւր ի նոցանէ: Զայս ամենայն ասաց եւ կալաւ զաջոյ Գոբրիայ եւ յարուցեալ երթայր, եւ զամենեսեան որ ընդ իւրն էին հանէր. եւ իբրեւ շատ աղաչեաց Գոբրիաս ի ներքս ընթրիս

ուսանել եւ ոչ կամեցաւ, ի բանակի ու-
տէր ընթրիս, եւ զԳոբրիաս առ ընդ-
իւր յընթրիսն ։

Ընկողմանեալ ի յարդի վերայ, հար-
ցանէր զնա այսպէս. Ասա դու ցիս,
ասէ, ով Գոբրիա, զի՞նչ կարծիս կար-
ծիցես, քո՞ աւելի կազմածք իցեն ե-
թէ իւրաքանչիւր ուրուք ի մէնջ ։ Եւ
նա ասէ. Գիտեմ զի բազում եւս կազ-
մածք գոն ձեր եւ գահոյք. եւ տուն
մեծ քան զիմ ապարանս. որոց տուն
երկիր եւ երկինք են, եւ գահոյք են
ձեր որչափ խշտիք իցեն վերայ երկրի,
եւ պաստառաւս համարիք ոչ զոր խա-
շինքն ծնանին զասրն, այլ զոր բոյսս
իսկ լերինք եւ դաշտք արձակեն ։

Յայնժամ զառաջինն Գոբրիաս կե-
րեալ ընթրիս ընդ նոսա տեսանէր զյա-
ռութիւն կերակրոցն առաջի յօրինե-
լոց, ի միտ առ թէ կարի ազատագոյնք
են նոքա քան զնոսա քանզի նկատեալ
տեսանէր զչափաւոր ուճիկն ։ Քանզի
ոչ ի կերակուր ինչ եւ ոչ յըմպելի ա-
կնարկէր աչօք իւրովք այր պարսիկ ի
խրատելոց անտի, ոչ յափշտակելով եւ
ոչ մտօք իսկ իւրովք, զի այնպէս իսկ
միտս ունէին որպէս թէ չիցեն ի հացի ։
Այլ զոր օրինակ հեծեալքն վասն ոչ
խռովելոյ յերիվարացն վերայ, մար-
թեն եւ տեսանել եւ լսել եւ խօսել
զարժանն ինչ, մինչ դեռ յերիվարսն

հեծեալ իցեն . նոյնպէս եւ նոքա ի հացի անդ այնպէս համարին թէ պարտ է հանճարեղս իսկ երեւել եւ ի չափոյան կալ . իսկ գրգռելն ի կերակրոց եւ յըմպելեաց , ամենեւին իսկ շնական եւ գազանաբարոյ թուի նոցա ։

Ի միտ առ եթէ հարցանէին . նոքա զմիմեանս այնպիսի ինչ որ ինչ ախորժելի էր հարցանել քան զչհարցանել . եւ զի դիտէին որ ինչ ախորժութեան էր դիտելն քան զչդիտել . եւ յորժամ խաղ առնէին կարի իսկ մեկուսի ի թշնամանաց էին եւ ի խայտառակս ինչ գործելոյ եւ յառ միմեանս զպյրանալոյ . եւ մեծ իսկ քան զամենայն այն թուէր նմա , զի յարշաւանի էին եւ ոչ ումեք յայնցանէ որ ի նոյն վիճշտս դիմեալ երթային , աւելի ինչ առաջի յօրինէր . այլ խրախութիւն զայն համարէին , թէ զայնոսիկ որ զօրաւիգն օգնականութեան լինելոց իցեն ազնուագոյնս յարդարիցեն ։

Յորժամ յոան եկաց Գոբրիաս երթալ յապարանսն , պատմեն այսպիսի ինչ ասացեալ , թէ Ոչ եւս այսուհետեւ զիս զարմանք ունիցին , ով Կիւրէ, եթէ ըմպելիս եւ հանդերձս եւ ոսկի աւելագոյն քան զձեզ ունիմք մեք . բայց մեք փոքու արժանի եմք քան զձեզ ։ Մեր հոգ ի մտի է եթէ յաճախեսցեն դոքա մեզ . դուք փոյթ

յանձին ունիք թէ ժուժկալք եւս լինիցիք: Նա զայս ինչ խօսեցաւ: Եւ Կիւրոս ասէ. Ով Գոբրիա վաղորդայն զայցես հասանիցես այսր հանդերձ հեծելազօրու վառեալ, զարդարեալ սպառազէն, զի եւ զզօրս եւս զքո տեսանիցեմք, եւ ընդ աշխարհն քո շըրջեցուցանիցես զմեզ, զի գիտասցուք թէ զոր պարտ իցէ երկիր բարեկամաց համարել եւ զոր թշնամեաց. ապա զայս ասացեալ մեկնէին երկոքեան:

Իբրեւ տիւ եղեւ եկեալ հասանէր Գոբրիաս առեալ զայրուձին, եւ ինքն երթայր յառաջոյ: Իսկ Կիւրոս, որպէս ի դէպ իսկ է առն իշխանի, ոչ միայն ուշ ունէր գնալոյ ճանապարհին, այլ կանխագոյն դիտէր տեսանէր, եթէ մարթ ինչ իցէ տկար եւ անզօր զթշնամիսն առնել, եւ զնոսա հզօրագոյնս: Կոչեցեալ զՎրկանացին եւ զԳոբրիաս, զի գիտէր թէ նոքա մանաւանդ գիտեն զոր ինչ պիտոյ իցէ նմա ուսանել: Ինձ թուի, ասէ, արք բարեկամք, թէ ընդ ձեզ իբրեւ ընդ հաւատարիմս խորհուրդ խորհեալ վասն պատերազմիս այսորիկ, ոչ ինչ սխալեմ: Վասնզի ձեզ մանաւանդ, քան ինձ հասանէ զմտաւ ածել թէ զիա՞րդ ասորեստանեայն չլինիցի մեզ զամագիտ: Վասնզի ես, ասէ, եթէ վրիպիցիմ ի սոցանէ, թերեւս գոյ այլ ուրեք շրջել. իսկ

ձեզ, եթէ նա յաղթիցէ, զընաւ իսկ ինչս օտարոտի լեալ տեսանեմ։ Զի եւ ինձ թշնամի է, ոչ եթէ զի տանեալ զիս, այլ համարի եթէ չէ նմա օգուտ մեզ մեծանալ։ Եւ վասն այնորիկ իսկ զօրաժողով գայ ի վերայ մեր ի մարտ պատերազմի։ Բայց զձեզ առեալ, եւ համարի թէ ի ձէնջ զրկիցի։ Պատասխանի ետուն երկոքեան, թէ եւ մեզ այն նոյնպէս թուի եւ անհնարին հոգ ի մտի իցէ նոցա թէ զիա՞րդ իրքս որ առաջի կան ի գլուխ ելանիցեն։

Յայնմ վայրի սկսաւ խօսել այսպէս. Ասացէք ցիս գոդէք, զձե՞զ միայն թշնամիս համարի անձինն ասորեստանեայն, եթէ գիտէ՞ք եւ զայլ ոք նորին թշնամի։ Աւ է Վրկանացին եթէ թշնամութեամբ են կադուսիացիքն ազգ բազում եւ կաշմբուուն զօրաւոր։ Սակքն մեր իսկ տրուարձանեայք որ բազում չարիս յասորեստանեայն կրեցին։ Քանզի ջանացաւ եւ զնոսա որպէս եւ զմեզ վտանեալ վկանդել։ Ապա ուրեմն համարիք, ասէ, եթէ նոքա յօժարութեամբ մեւք հանդերձ խաղացեալ երթայցեն ի վերայ ասորեստանեայն. ասեն. Մադիւրագոյնս իսկ եթէ մարթայցեն խառնել ընդ մեզ. եւ զի՞նչ, ասէ, կըրճիմ իցէ խառնելոյ նոցա ընդ մեզ. Ասորեստանեայքն, ասեն, ազգն յորս այժմ ի ճանապարհ անկեալ երթաս։

Իբրեւ զայն լուաւ Կիւրոս. Ով Գոբրիա, ո՛չ դու, ասէ, բամբասես զերիտասարդդ, որ այժմիկ եկաց ի թագաւորութեան, թէ կարի իսկ ամբարտաւան ոք բարոյիւք է: Ասէ Գոբրիաս. քանզի եւ այնպիսի իսկ միշտ կրեցի ի նմանէ: Ասէ Կիւրոս. արդեւք ի քե՞զ եւեթ նոյնպիսի գտաւ, եթէ եւ յայլս եւս ոմանս: Ասէ Գովբրիաս. եւ յայլս եւս բազումս: Բայց թէ զի՞արդ զանաւագսն թշնամանիցէ, զի՞ պիտոյ իցէ ասել: Զառն միոջ, որ հարստագոյն քան զիս էր, զորդին որ եւ ի մանկութենէ իսկ ընկեր էր իբրեւ զիմ որդին, յորժամ առ նմայն էր ի գինըմպելիսն առեալ կրճատէր, որպէս ոմանք պատմեցին, զի հարճ նորա յարգէր զնա թէ գեղեցիկ իցէ եւ երանի տայր այնմ որ նմա կին լինելոց էր: Իսկ որպէս նա այժմ ասէ, թէ զչափ առ զիւրոյ հարճին. եւ նա այժմ ներքինի է եւ զիշխանութիւնն ունի, քանզի հայր նորա վախճանեցաւ:

Արդ համարիցիս, ասէ, եթէ եւ սա յօժարութեամբ հայիցի ընդ մեզ, եթէ պիտացէ թէ նմա օգնական լինիցիմք: Ասէ Գոբրիաս. Վաղ իսկ գիտեմ եթէ դժուարին է նմա հայել կամ տեսանել: Զիա՞րդ, ասէ Կիւրոս, զի եթէ կամիցի ոք հաղորդութիւն առնել ընդ նմա, պիտոյ է անդր իսկ ի

Բաբիղացւոց աշխարհն համանել. Դու արդ զիարդ, ասէ, դժուարի՞ն ինչ իցէ այն: Ասէ Գոբրիաս, զի գիտեմ, ասէ, եթէ բազմապատիկ զօր քան զօր դուն այժմ ամիս, ելանիցեն անտի: Դու գիտասջիր ասէ, թէ վասն այսր ամենայնի ոչ այժմ որպէս զառաջինն ըղզէնան ի բաց կրեն Ասորեստանեայքն եւ զերբիւարուն տանին, զի որոց առեսին զզօրս քո, սակաւ թուեցաւ. եւ նոյն համբաւ յաճախէ: Ինձ այսպէս թուի թէ առաւել լաւ է զգուշութեամբ գնալ զճանապարհն:

Կիւրոսի լուեալ զայս ամենայն ի Գոբրիայ, ասէ ցնա այսպէս. Բարւոք թըւիս խօսել ով Գոբրիա, զի հրաման տաս զզգուշութեան ճանապարհն երթալ: Արդ ես միտ եդեալ չկարեմ եւս առաւել զգուշաւոր ճանապարհ ածել զմտաւ քան զճանապարհն որ անդր իսկ ի Բաբիղոն է. եթէ անդ իցէ թշնամեացն զօրութիւնն, քանզի բազում իսկ զօրք են որպէս դու պատմես. եթէ քաջալերեալ համարձակեսցին, եւ ի մեր եւս վերայ ծանրանայցեն որպէս ինձ թուի: Արդ եթէ ՚ոչ տեսանիցեն զմեզ, այլ համարիցին զմէնջ թէ անհետ յաչաց եղեալք առ ահին նոցա, գիտեա, ասէ, եթէ յահէ անտի որ անկաւ ի նոսա, ապրեսցին, եւ ընդ այնր քաջալերութիւն հասանիցէ ի նոսա,

այնչափ յաճախագոյն որչափ բազում ժամանակս չտեսանիցեն նոքա զմեզ։ Նա եթէ դիմեալ երթայցեմք ի վերայ նոցա, զբազումս իսկ ի նոցանէ գտանիցեմք զի դեռ եւս զսատակեալսն ի մէնջ աշխար եղեալ լայցեն, եւ զբազումս որոց տակաւին պատեալ վէրքն իցեն զոր ի մերոց աստի առին. եւ ամենեքին ի մտի ունիցին զյանդգնութիւն զօրականաց այսր բանակի, եւ զիւրեանց փախուստն եւ զվիշտս։

Իմիտ առ ով Գոբրիաս, թէ այս այսպէս է, որպէս բազում մարդիկ յորժամ խիզախեսցեն անընդդիմակայ միացուցանիցեն, բայց յորժամ վհատիցին, որչափ բազումքն իցեն, դոյնչափ յաճախագոյն յապշութիւն կործանեալ ահն եւ երկեւղն շուրջ հասեալ փետէ, քանզի եւ ի բազում համբաւուց չարաց աճէ ահն. եւ ի յաճախ յոռութեան իրաց եւ ի բազում տրտում տխուր երեսաց վհատելոց միանգամայն դումարիցի։ Մինչ զի ի յաճախութենէ անտի երկեղին, չէ դիւրին բանիւք զահն շիջուցանել, եւ ածել ի թշնամեաց վերայ եւ յորդորել, եւ ոչ յախոյենիցն ի բաց տանել եւ փարաւազստալ, այլ որչափ քաջալերել հրամայիցէ նոցա, դոյնչափ զանձինս ի տագնապի եւ ի տարակուսի լեալ համարիցին։

Ամին մեր դիցուք թէ որպիսի ինչ իցէ. զի եթէ այնր էր ի մէջ պատերազմողացն յաղթութիւն, ոյր բազում ամբոխ էր, յիրաւի եւ դուզմէնջ կասկածէիր, եւ մեք արդարեւ ի նեղութեան էաք: Բայց եթէ որպէս յառաջին իսկ նոյնպէս եւ այժմ ի քաջութենէ պատերազմողացն պատերազմունք ընտրիցին, եթէ խիզախեսցես ոչ ինչ սխալիցես. զի աստուածովքն հանդերձ կարի իսկ բազմագոյնս առ ի մէնջ գտանիցես որ ընդ պատերազմն կամիցին քան առ ի նոցանէ:

Բայց զի եւս առաւել քաջալերեսցիս եւ զայս ած զմտաւ, թէ հակառակորդքն յոյժ իսկ նուազունք են այժմ քան մինչ չեւ ի մէնջ ի պարտութիւն մատնեալ. եւ եւս նուազագոյնք քան յորժամ փախստեայ գնային ի մէնջ: Իսկ մեք այժմ յաճախագոյնք եմք քան յառաջին քանզի յաղթեցաք, եւ զօրագոյնք եմք քանզի յաջողեաց մեզ. եւ բազմագոյնք եմք քանզի դուք յաւելայք ի մեզ. այսուհետեւ մի անարգեր զքոյսն քանզի ընդ մեզ են: Քանզի եւ որք զհետ գան այնոցիկ որ յաղթեցինն քաջալերութեամբ գնան: Ամի եւ այս ինչ ասէ գաղանի իցէ ի քէն թէ զոյ հնար եւ այժմ տեսանել զմեզ հակառակորդացն. եւ ոչ ուրեք պնդակազմք երեւիցիմք նոցա բայց յոր-

ժամ ի վերայ նոցա խաղալցեմք. արդ-քանզի ես այսպէս ածեմ զմտաւ, տար զմեզ պարզ ուղիղ ի Բաբիլոն:

# ԳԼՈՒԽ Գ

ԱՅՍՊԷՍ յուղի անկեալ յաւուրն չորրորդի ի սահմանս Գովբրիայ աշխարհին հասանէին. եւ յորժամ յերկրի թշնամեաց էին, կարգէր կացուցանէր առեալ ընդ իւր կարգաւ զհետեւակս եւ ի հեծելոց անտի զորս ինքն ի դէպ համարէր: Նա եւ զայլ այրուձին արձակեաց ասպատակ դնել, եւ հրամայեաց զայնոսիկ որ զէն ունիցին այրել, իսկ զայլսն եւ զխաշինս զոր ի բուռն արկանիցեն բերել առ ինքն: Հրաման ետ եւ Պարսից ընդ նոսա ասպատակել. եւ գային բազումք ի նոցանէ անկեալք յերիւարացն, եւ շատք առ եւ աւար բազում բերեալ:

Իբրեւ առաջի կայր աւարն, կոչեցեալ զիշխանս Մարացն եւ Վրկանացւոց եւ զպատուականս ասէր. Հիւրացոյց զմեզ բազում բարութեամբք Գոբրիաս. արդ ասէ, եթէ ընտրեալ դիցն զօրինաւորսն եւ բանակին որ ինչ բաւական իցէ, զայլ առն եւ զաւարն նմա տայցեմք, բարւոք առնիցեմք, զի իսկ եւ իսկ յայտնի լինիցիմք զի եւ զերախտաւորսն մեր փութամք գլել երախտեօք մերովք: Իբ-

րեւ զայն լեռին, ամենեքեան գովէին, բոլորեքեան դրուատէին. եւ մի ոմն ասէր այսպէս։

Արասցուք զայս, ասէ, ով Կիւրէ, զի եւ ինձ թուի թէ Գոբրիաս աղքատս տառապեալս ոմանս համարէր զմեզ. զի ոչ դահեկանօք լցեալ զայսաք եւ ոչ յոսկի նուագաց ըմպէաք։ Եթէ զայն առնիցեմք, ի միտ առցէ, ասէ, թէ եւ առանց ոսկւոյ մարթի առատս լինել։ Արթայք, ասէ, որ ինչ դիցն իցէ զայն մոգուցն տուք, եւ որչափ բաւական իցէ զօրուն որոշիցէք, եւ զայլն ամենայն կուտեցեալ զԳոբրիաս տուք նմա։ Առեալ նոցա որ ինչ պիտոյն էր, զամենայն Գովբրիայ ետուն։

Ապա երթայր ի Բաբելացւոց աշխարհն ճակատեալ որպէս յորժամ պատերազմի էր։ Իբրեւ ոչ ելին ընդդառաջ Ասորեստանեայքն, հրաման ետ Կիւրոս Գոբրիայ երթալ ասել, եթէ կամ իցէ թագաւորին ելեալ ի վերայ աշխարհին մարտընչել, ինքն իսկ ընդ նմա մարտընչիցի, ապա թէ ոչ խնդրիցէ զվրէժ երկրին, հարկ է այնոցիկ որ յաղթեցինն հնազանդ լինել։ Գոբրիաս մատուցեալ ի տեղի ինչ ուր ամուր էր, ասէր։ Եւ նա յղեաց պատասխանի այսպէս. Տէրն քո ասէ, Գոբրիաս, ոչ զի սպանի զորդին քո, ստրջանամ, այլ թէ ոչ եւ զքեզ առ նմին սպանի։

Եթէ մարտընչել կամիցիք, երթայք յերեւումն օր. զի այժմ չիք մեր պարապ, զի կազմ եւ պատրաստ լինիմք։ Գոբրիաս ասէ. Մի լիցի ասէ երբեք զրաւ այնց ըստրջանաց. քանզի յայտ է եթէ տրտմեցուցանեմ ես զքեզ յորմէ հետէ այն զղջումն ունի զքեզ։

Գոբրիաս պատմեաց զբանս ասորեստանեայն. եւ Կիւրոսի լուեալ. հան զզօրսն եւ կոչեցեալ զԳոբրիաս. ասդուցիս, ասէ, ո՞չ ապաքէն ասէիր թէ եւ կրճատեալն յասորեստանեայն ընդ մեզ լինիցի։ Այսպէս գիտեմ, ասէ. քանզի բազում անգամ ես եւ նա ճառ արկեալ խօսէաք ընդ միմեանս։ Արդ յորժամ ի դէպ թուիցի քեզ մատիր առ նա. եւ նախ այնպէս արա որպէս զիարդ ինքն ասիցէ։ Ապա իբրեւ մերձ լինիցիս նմա, եթէ գիտես եթէ կամի մեր բարեկամ լինել նա, զայս ինչ մեքենայեսջիր զի անյայտ իցէ եթէ բարեկամ մեր է։ Քանզի ոչ աւելի ինչ բարութիւնս այլազգ ոք բարեկամաց կարիցէ առնել, բայց յորժամ հակառակորդ թուիցի. եւ ոչ թշնամեաց ոք աւելագոյն վնաս գործիցէ, այլ յորժամ բարեկամի կարծիս տայցէ։

Գիտեմ, ասէ. Գոբրիաս եթէ հնարի եւ Գադատաս մեծ ինչ եղեան վնասու այժմու թագաւորին Ասորեստանեայց հասուցանել. այլ թէ իմ իմիք

ձեռնհաս իցէ, այնմ մեզ պարտ է միա գնել ։ Ասէ Կիւրոս. տես դու զիս ի բերդդ որ կայ հանդէպ երկրին, զուամէ եւ դուք տեսէք, թէ ընդդէմ Կարկեդոնացւոց եւ Աֆրիկաց պատրաստեցաւ, զի լինիցի աշխարհին պատուար պատերազմի, համարիցի՞ս թէ թողուցուն պահապանքն զներքինին մատնել անդր զօրօք հանդերձ. յայտնի իսկ տեսէ, եթէ առանց կարծեաց իցէ, զոր օրինակ այժմըս է, թողցեն անդր ։

Որդ տեսէ, առանց կարծեաց լինիցի, եթէ ես ի գեղջն նորա յարձակիցիմ որպէս թէ կամիցիմ առնուլ, եւ նա մտօք եդեալ կռուիցի զօրութեամբ, եւ առնուցում զնորա ինչ ես, եւ նա ընդ այնր առնուցու ի մէնջ զմանս կամ զհրեշտակսն առաքեալս յինէն առ նոսա զորոց ասէք թէ թշնամի են տարեատանեայն, եւ որք ըմբռնեցինն առիցեն եթէ ի բանակն երթամք, եւ առնդուղս առ ամուրն մատուցանիցեն ։ Իսկ ներքինւոյն լուեալ պատճառիցի թէ մօտ երթայ, զի զայն ամենայն կամի յայտ առնել ։ Եւ Գոբրիաս ասէ. Եթէ այսպէս լինիցի, գիտեմ հաստատութեամբ եթէ երթայց առ նա եւ աղաչեցից զնա կալ մնալ, մինչեւ դու մեկնեսցիս ։

Ասէ Կիւրոս. եթէ միանգամ մտանիցէ կարիցէ՞ս տալ ի ձեռն մեր զդղեակն.

ի դէպ է, ասէ Գոբրիաս, քանզի եթէ ի ներքուստ նա պատրաստիցի եւ դու արտաքուստ սաստկագոյնս հարկանիցես: Եւ արդ երթ, ասէ, եւ փութա եւ ուսո զայս ամենայն եւ ի գլուխ հանեալ եկեսցես. եւ առ հաւատչեայ նմա ոչ տայցես եւ ոչ ցուցանիցես մեծ եւս ինչ քան զորս դու իսկ ինքնին առ ի մէնջ առեր:

Ապա չոգաւ Գովբրիաս. իբրեւ լուսաւոր եռես զնա ներքինին, միաբանէր ընդ նմա, եւ դաշինս կռէր որպէս պարտ իսկ էր: Եւ իբրեւ պատմեաց Գոբրիաս եթէ ամենայն ինչ որ պատուիրեցաւ ներքինւոյն հաստատութեամբ ի գլուխ ել. ի վաղիւ անդր մօտ երթայր Կիւրոս, բայց Գադատաս մարտ եդեալ կռուէր. եւ զոր առն Կիւրոս այն դեւղ էր, զորմէ Գադատաս ասաց: Իսկ ի հրեշտակաց անտի զոր Կիւրոս առաքեաց պատուիրեալ թէ յո՞ երթայցեն, զոմանս թող Գադատաս պրծանել զի զզօրան ածցեն եւ զաւանդուզսն բերիցեն. եւ զոմանս կալեալ հարցանէր բազմաց առաջի: Իբրեւ լուաւ թէ վասն էր երթան, վաղվաղակի կազմեալ որպէս թէ զըղյց տայցէ, գիշերի յուղի անկեալ երթայր: Եւ գլուխ ամենայնի, հաւատարիմ եղեալ եթէ մտանէ անդր յամուրսն օգնական լինել. եւ առ ժամանակ մի

ընդ պահապանացն կացմէր պատրաստէր զոր ինչ կարէրն։ Իսկ իբրեւ եմուտ Կիւրոս, զդեղն ի բուռն առնոյր եւ գործակից զառ ի Կիւրոսէ առեալ զերիս առնէր։

Իբրեւ այն մեծարեցաւ, մաղմաղակի Գադատաս ներքինի զներքինսն կարգէր կացուցանէր եւ եղանէր առ Կիւրոս. եւ օրինաք երկիր պագեալ ասէ. Ուրախ լեր Կիւրէ. այլ ուրախ լինիմ, ասէ, զի դու աստուածովք հանդերձ ոչ միայն հրաման տաս, այլ եւ հարկես եւս ուրախ լինել։ Գիտասջիր, ասէ, զի ես մեծ ինչ համարիմ զդեղդ զայդ թողուլ խաղաղ նիզակակցաց որ աստ իցեն։ Ով Գադատաս, եբարձ ի քէն ատորեստանեայն զորդեծնութիւնն, բայց չկարաց զրկել զքեզ ի բարեկամս ստանալոյ։ Գիտասջիր զի գործովդ այդուիկ զմեզ բարեկամս արարեր, որք եթէ կարող իցեմք, ջանասցուք ձեռընտու եւ օգնական եւ խնամակալ լինել քեզ որպէս եթէ որդիս եւ թոռունս ծնեալ էիր։

Նա զայս ինչ խօսեցաւ։ Յայնմ մայրի Վրկանացին այն ինչ զգաստ լինեալ զիրացն որ եղեն, ընթացաւ առ Կիւրոս եւ բուռն հարեալ զաջոյ նորա, ասէ. Ամենամեծար բարութիւն բարեկամաց դու Կիւրոս, զի բազում իմն գոհութեան պարտապան զիս դիցն

տանես, զի ածինն զիս առ քեզ։ Նա-
սուհետեւ երթ, ասէ, Կիւրոս եւ ա-
ռեալ զգեւղն ոյր վասն համբուրես զիս,
այնպէս յարդարեսջիր զի ձեռում ազ-
դին բազմազին լինիցի եւ այլոց նիզա-
կակցաց, մանաւանդ իսկ ասէ այսմ
Գադատայ որ առ եւ ես մեզ։

Եւ արդ զիա՞րդ, ասէ, վրկանա-
ցին, որովհետեւ Կադուսիացիք գան եւ
Հակքն եւ իմ քաղաքացիքն, կոչես-
ցո՞ւք արդեւք եւ զնա, զի առհասա-
րակ խորհուրդ խորհեսցուք ամենեքին,
որոց անկ իցէ, թէ ո՞րպէս յօգուտ ի կիր
արկանիցեմք զամուրս պահապանացն։
Ընդ այն եւ Կիւրոս հաճեցաւ։ Իբրեւ
ի մի վայր եկին որոց յանձն էր ամուրսն
խորհեցան առհասարակ պահել, որոց
օգուտ իսկ էր եթէ այն ի խաղաղու-
թեան լինէր, զի իւրեանց պատուար
պատերազմի լինիցի եւ ընդդէմ Ասո-
րեստանեաց պարիսպ ամրութեան։

Գ.վ. Իբրեւ այն կատարեցաւ առա-
ւել եւս յօժարագոյնս երթային ընդ-
նմա ի մարտ պատերազմի Կադուսիացիք
եւ Հակք եւ Վրկանացիք, եւ անդէն
բանակ գումարէր, ի Կադուսիացւոց
ասպարաւորք երկու բեւր եւ հեծեալք
չորեքհազարք. իսկ ի Հակաց աղեղնա-
ւորք բեւր մի, եւ աղեղնաւորք հե-
ծեալք երկուհազարք. եւ Վրկանացիք
հետեւակս որչափ բաւական էին յղէին

եւ յաւելլին հեծեալս երկու հազար։ Վասնզի յառաջին բազում հեծեալք յաշխարհին թողան, զի Կադուսիացիքն եւ Շակք Ասորեստանեաց թշնամիք էին։ Որչափ ժամանակս հոգայր ինքնին Կիւրոս խնամակալութեան ամրին, բազումք յԱսորեստանեաց որ ի գեղ-սըն յայնս էին զերիվարսն ի բաց տանէին եւ կրէին զզէնսն երկուցեալ յամենայն մօտաւոր բնակացն։

Ապա գայ առ Կիւրոս Գադատաս եւ ասէ, եթէ հասին նմա հրեշտակք թէ Ասորեստանեայն յորժամ գիտաց զիրս ամրին, դժկամակ եղեւ, եւ կազմեցաւ արշաւել յերկիր նորա։ Արդ եթէ թողուցուս զիս ով Կիւրէ ըզպարիսպն ջանացայց ապրեցուցանել. իսկ զայլսն փոքունս համարիմ։ Եւ Կիւրոս ասէ. եթէ այժմ երթայցես, ե՞րբ յաշխարհի անդ իցես. եւ Գադատաս ասէ. յաւուրն երրորդի յիմում երկրին ընթրիս արարից։ Ապա թէ. համարիցիս եթէ հասեալ անդէն ըմբռնիցէ ասորեստանեայն։ Գիտեմ, ասէ, եթէ հասցէ։ Զի փութասցի որչափ դու ի բացեայ լեալ թուիցիս։ Իսկ ես, ասէ, Կիւրոս ի քաներորդո՞ւմ աւուր զօրօքն անդր հասանիցեմ։ Եւ այն ասէ Գադատաս. Բազում, տէր, զօրս ունիս, եւ չկարես ի վեց կամ յեւթն աւուրց ընդհասա գալ ի

բնակութիւն իմ։ Արդ դու, ասէ Կիւրոս, երթ վաղվաղակի, եւ ես որչափ մարթ իցէ ընթացայց զճանապարհս։

Գադատաս գնաց. եւ Կիւրոս կոչէր միանգամայն զամենայն իշխանս նիզակակցացն. եկին հասին բազումք եւ պիտանիք. ընդ որոց խօսէր Կիւրոս այսպէս. Արք նիզակակիցք, Գադատաս այնպիսի ինչ վճարեաց որ ամենեցուն իսկ մեծարոյ թուի, եւ այն մինչ չեւ բարի ինչ ի մէնջ գտեալ։ Այժմ զասորեստանւոյն պատմի արշաւել յերկիր նորա, յայտ է եթէ կամի վրէժ խնդրել ի նմանէ զի առաւել իմն վնասեալ համարի ի նմանէ. թերեւս եւ զայն զմտաւ ածիցէ, թէ որ առ մեզս ապստամբեալ գան, ոչ մի ինչ վիշտս ի նմանէ վշտանան, իսկ որք ընդ նմա իցեն ի մէնջ կորընչին, զի վաղվաղակի իսկ ի դէպ է թէ ոչ ոք կամիցի ընդ նմա լինել։ Արդ այժմիկ ով արք, գործ ինչ բարւոք համարիմ գործել. եթէ յօժարադոյնս Գադատայ օգնական լինիցիմք առն երախտաւորի, եւ յիրաւի եւ յարժանի գործիցեմք զի շնորհս փոխարէն հատուցանիցեմք, եւ որպէս ինձ թուի եւ զանձանց իսկ օգուտն գործիցեմք։ Զի եթէ ամենեցուն երեւիցիմք յաղթել մերոցն Ակչացն գուն գործեալ չարչարել զնոսա եւ անցուցանել բարութեամբք զերախ-

տաւուրօքն, ի դէպ է յայնմ ամենայնէ բազմաց կամել բարեկամս լինել. եւ ոչ ումեք ցանկալ թշնամի լինել: Ապա թէ թուիցիմք զԳադատայ անփոյթ առնել, որո՞վ ք բանիւք զայլսն կարիցեմք ածել ի հաւան շնորհել ինչ մեզ: Զի՞րդ իշխիցեմք զանձինս յարգել. ո՞րպէս նայել ոք ի մէնջ կարիցէ ընդ Գադատաս. եթէ ի պարտութիւն մատնիցիմք ի նմանէ որ զերախտիսն ուրար, այսչափիքս յառնէ միոջէ, եւ այն յորժամ յայնպիսի չափու իցէ:

Նա զայս ասէր եւ ամենեքին յանձն առնոյին զնոյն. Արդ, ասէ, այսուհետեւ, որովհետեւ եւ ձեզ դոյն հաճոյ թուի, թողցուք ջորւովք եւ գետապակովք երթալ այնոցիկ որ պատեհքն իցեն: Գոբրիաս իշխեացէ նոցա եւ առաջնորդեացէ նոցա, քանզի եւ ճանապարհացն հմուտ է. եւ այլով ամենայնիւ բաւական, եւ մեք հարուստ երիւարօք եւ արամբք երթայցեմք, զերից աւուրց պէտս առեալ: Որչափ թեթեւագոյնս կազմիցեմք եւ անարգս դոյնչափ յապա աւուրս քաղցրագոյն ճաշ եւ ընթրիս ուտիցեմք եւ ննջիցեմք:

Բայց այժմ. ասէ, այսպէս երթիցուք զճանապարհն: Նախ դու Քրիսանտաս տար զզրահապատսն, զի հարթ եւ հաւասար է ճանապարհն. եւ զամենայն զօրագլուխսն ի ճակատու ունիցիս.

եւ իւրաքանչիւր գունդ մի առ մի երթիցէ. զի յորժամ միահամուռ կայցեմք, արագ եւ զգուշութեամբ երթայցեմք: Եւ յայն սակս, ասէ, զզօրահաւորսն հրամայեմ տանել, զի քան զամենայն զօրսն նոյնն ծանրագոյն է: Յետ երթալոյ ծանուն, հարկ է դիւրաւ ընաւ իսկ նուազիցն զհետ խաղալ: Եւ յորժամ որ արագագոյնն իցէ երթայցէ յառաջոյ ի գիշերի, չեն ինչ զարմանք, թէ խախտիցի բանակն: Զի որ յառաջոյ կարգեալ կայցէ, ի բաց սրանայցէ:

Յետ նոցա Արտաւազ զասպարաւորսն եւ զաղեղնաւորսն Պարսից տանիցի: Յետ նոցա Անդրամիաս մար զՄարաց հետեւակն. յետ նոցա Եմբաս զՀայոց հետեւակսն. եւ յետ նոցա Արտուքաս զՎրկանացիսն. յետ նոցա Թամբրադաս զՍակաց հետեւակսն. յետ այնոցիկ Դամատաս զԿադուսիացիսն: Ածցեն սոքա ամենեքին եւ ունիցին զզօրագլուխն ի ճակատուն յաջմէ զասպարաւորսն եւ յահեկէ զաղեղնաւորս իւրոյ գնդին, զի յորժամ այսպէս երթայցեն պիտանացուք լինիցին: Եւ յետ նոցա, ասէ, որ ամենեցուն կապարճակիրքն գնայցեն: Եւ իշխանք նոցա, զամենեցունց հոգայցեն, զի ամենայնիւ կազմ եւ պատրաստ լինիցին մինչ չեւ առաւօտակ եղեալ, եւ ընդ

այգն ընդ առաւօտն կազմածովք հանդերձ ի կարգեալ տեղին հասանիցեն եւ զի կարգաւ զհետ գայցեն ։

Յետ զինակրաց գնդին, ասէ, զՊարսիկսն հեծեալս Մադատաս պարոնիկ տանիցի, եւ նա ունիցի զհարիւրապետս հեծելոցն ի ճակատուն ։ Իսկ հարիւրապետան տարցի զգունդն ուրոյն որպէս հետեւակապետքն ։ Յետ նոցա Հռամբակաս մար, ըստ նմին օրինակի զիւր հեծեալսն . յետ նոցա դու ով Տիգրանէ, զքո այրուձին, եւ այլ պետք հեծելոցն եւ այնոքիկ ընդ որոց իւրաքանչիւր ոք հասանէ առ մեզ ։ Յետ նոցա Ռակք երթիցեն ։ Զոր օրինակ յետոյ եկին Կադուսիացիքն, յետոյ տարցին զզօրս ։ Եւ դու Աղկեւնա որ տանիս զնոսա, հոգ յանձին կալջիր ի ժամանակիս յայսմիկ զամենեցունց որ յետոյ իցեն, եւ մի զոք թողցես յետոյ քան զհեծեալսն քո ։

Հոգացարուք լուռ երթալ, իշխանք եւ ամենայն իմաստունքդ ։ Զի ի գիշերի մանաւանդ հարկ է ականջօք, քան աչօք զբնաւ զգալ եւ վճարել. քանզի եւ խռովութիւն առաւել է ի գիշերի քան ի տուընջեան եւ դժուարին առ ցածնուլ, նմին իրի պարտ է ի լռութիւն կրթել եւ զկարգս պահել. եւ զցայգութեան պահսն, յորժամ գիշերի ուրեք երթալոց իցէք միշտ

պարտ է կարճագոյնս եւ բազմագոյնս առնել. զի մի զօք պահպանութեանցն աքնութիւն յորժամ յաճախ իցէ մնասիցէ ի ճանապարհի։ Նմա յորժամ ժամ իցէ ի ճանապարհ երթալոյ, նշանակել թեւին։ Նաեւ ձեր զամենայն որ ինչ պիտոյն է, եկայք ի ճանապարհ Ասորիացւոց քաղաքին. եւ որ երթայցեն համապատ, զայն որ յետոյ գայցէ քաջալերեսցէ գալ զինի։

Այս երթային ի վրանսն, եւ ի գնալն խօսէին ընդ միմեանս թէ զիարդ ուշեղ իցէ Կիւրոս, որոց հրամայերն, որպէս յականէ յանուանէ պատուիրեր։ Եւ Կիւրոս խնամով զնոյն գործեր։ Օր ամենեւին իսկ զարմանք թըւէին նմա, եթէ արուեստիցն ճարտարապետքն գիտիցեն իւրաքանչիւր զիւրոց ճարտարութեան գործեաց զանուանսն, եւ բժիշկ այր գիտիցէ զգործւոյնեւ զդեղոց որովք վարիցեն ամենեցուն զյորջորջանսն։ Իսկ զօրավար այնպէս ապ ուշ իցէ, որպէս զի չգիտիցէ զզօրավարացն որ ընդ իւրեւ իցեն, զանուանսն, զորս պարտ իցէ նմա գործիս ի կիր արկեալ վարել. եւ յորժամ ըմբռնել ինչ կամիցի կամ պահել կամ քաջալերել կամ ահ արկանել. եւ յորժամ պատուել զոք երբեք կամիցի, վայելուչ իմն կարծէր, նմա յանուանէ կոչել։

Այսպէս թուէր նմա թէ որ համ-
մարինն յիշխանէ անտի առաւել փու-
թան զի լաւութիւն ինչ գործեալ յակն
անկանիցին, եւ ի խայտառակ ինչ գոր-
ծելոյ եւս աւելի յօժարիցեն մերժել
զանձինս: Նաեւ զայն եւս ապուշ մտաց
համարէր թէ յորժամ կամիցի ոք եթէ
վճարեսցի ինչ, այնպէս հրաման տայ-
ցէ. որպէս ի տան իշխանք ոմանք հրա-
մայիցեն թէ երթայցէ ոք զջրոյ, փայտ
ոք հատանիցէ: Զի յորժամ այնպէս
հրաման առնուին թուէր նմա թէ ընդ-
միմեանս նայիցին ամենեքեան եւ ոչ
ոք զհրամանն ի գլուխ հանիցէ, եւ ա-
մենեքին մեղադրութեամբ իցեն, եւ
ոչ ոք ամօթ զյանցանան համարիցի,
թերեւս եւ երկիցէ իսկ ոչ, վասն ընդ-
բազմաց զբամբասանան ունելոյ: Վասն
այսր ամենայնի ինքն զամենեսին ա-
նուանէր յորժամ հրամանն տայր:

Կիւրոս զայսմ ամենայնէ այսպէս
անէր զմտաւ: Յայնժամ զօրքն ըն-
թրիս կերեալ եւ պահապանս կացու-
ցեալ եւ պատրաստեալ ամենայնիւ որ
ինչ պիտոյն էր, ննջէին: Նաեւ յորժամ
էր 'ի մէջ գիշերի, նշանակէր թեւին,
եւ Կիւրոս ասէր Կրիւսանտայ թէ կայ-
ցէ ի ճանապարհի անդ առաջի զօրուն,
եւ առեալ զպաստաւորան որ շուրջ
զիւրեւ էին եղանէր: Յետ սակաւ ինչ
ժամանակի գայր հասանէր Կրիւսան-

տաս ածեալ զգլխաւորսն։ Նման տր-ւեալ Կիւրոսի առաջնորդս ճանապարհին պատուիրէր երթալ հանդարտ մինչեւ հրեշտակ հասանիցէ. քանզի չեւ եւս ամենեքեան ի ճանապարհի էին. եւ ինքն կայր ի նմին տեղւոջ եւ զհասեալսն յղէր յառաջ կարգաւ, եւ առ յետնեալսն առաքէր կոչել։

Իբրեւ ամենեքին ի ճանապարհի էին առաքէր առ Քրիսանտաս հեծեալս, ասել եթէ ամենեքին ի ճանապարհի են, արդ տար փութանակի. եւ ինքն երթեալ յառաջակողմն երիվարաւն հանդարտիկ նայէր ընդ կարգսն, եւ զոր տեսանէր կարգեալս յարդարեալս եւ զի լուռ երթային, մատուցեալ առ նոսա, ո՞յք իցեն հարցանէր, եւ իբրեւ ի միտ առնոյր՝, գովէր. ապա թէ զոմանց ղգայր թէ խռովեալ են, ընդ պատճառս խռովութեանն նայէր եւ ջանայր զաղմուկն ցածուցանել։

Մի ինչ միայն մնաց ի ցայգութեան հոգաբարձութենէ նորա, զի յառաջ իսկ քան զամենայն բանակ ոչ բազում հետեւակս պնդակազմս առաքէր, որ երեւէին Քրիսանտայ եւ զնա նշմարէին զի ականջալուր լեալ եւ այլազգ կարիցեն զգալ ինչ, յայտ առնիցեն Քրիսանտայ որ ինչ ի դէպ թուիցի։ Նոյց իշխան եւ հրամանատար մի ոք էր, որ եւ զնոսա յարդարէր. եւ որ արժանաւոր ինչ

ւէր, զայն նշանակէր, եւ որ չէրն արժանաւոր ինչ, չլինէր տաղտուկ ասելովն. զցայգ այսպէս երթային:

Իբրեւ տիւ եղեւ զԿադուսիացւոց հեծեալսն, զինոցին եւ հետեւակքն յետոյ երթային, եթող առ նոսա, զի եւ սոքա լոկք ի հեծելոց երթայցեն: Իսկ այլոցն հրամայեաց յառաջակողմն երթալ. քանզի եւ հակառակորդքն յառաջակողմանն էին, որպէս զի թէ հակառակ ինչ պատահիցէ նոցա անդէն ինքեանք յանձանց զօրութենէ կռուիցին, եւ եթէ փախստեայ ինչ ուրեք տեսանիցէ, պատրաստութեամբ զհետ մտեալ հալածիցէ: Նա եւ էին հանապազ կարգեալ ճակատեալ, եթէ պիտոյ լինիցի զհետ մտանել այնոցիկ որոց պարտ իցէ զհետ մտանել եւ որոց պարտ իցէ առ իւր մնալ: Ամենայն իսկ կարգին ոչ երբեք թոյլ տայր քակել: Այսպէս տանէր Կիւրոս զբանակն: Բայց ինքն ոչ եթէ ի միում վայրի կայր այլ եւ ընդ այս եւ ընդ այն կողմըն շուրջ եկեալ տեսանէր եւ հոգայր եթէ կարօտ ինչ իւիք էին:

## ԳԼՈՒԽ Դ

Որ զԿիւրոսիւն էին այսպէս յուղի անկեալ երթային: Իսկ ի Գադատայ հեծելոց անտի մի ոմն յարանց զօրաւարաց, իբրեւ ետես զնա ապստամբեալ յասորեստանեայն, զմտաւ ած թէ նա յորժամ վիշտս ինչ վշտանայցէ, ինքն առնուցու յասորեստանեայ անտի զամենայն որ ինչ Գադատայն էր: Ապա առաքէ զմի ոմն յիւրոց հաւատարմացն առ Ասորեստանեայն եւ պատուէր տայր այնմ որ երթային թէ յորժամ հասանիցէ յերկիրն Գադատայ բանակին Ասորեստանեաց, ասասցէ Ասորեստանեայն, զի եթէ կամիցի դարանակալ լինել ըմբռնիցէ զԳադատաս եւ զորս ընդ նմա իցեն: Նա պատուիրէր յայտ առնել թէ որչափ զօր ունիցի Գադատաս Կիւրոս ոչ գայ զհետ նորա, եւ զճանապարհն ընդ որ մատչելոց էր, յայտ առնէր: Հրամայեաց եւ գերդաստանկացն զի առաւել հաւատարիմ թուիցի, զպարիսպն, զոր ինքն ի Գադատայ երկրին ունէր տալ ի ձեռս Ասորեստանեայն եւ զամենայն որ ի նմա իցէ: Նա եւ եկից ասէ, եթէ կարիցեմ, սպանեալ զԳադատաս, ապա թէ ոչ այնուհետեւ ընդ Ասորեստանեայն եղէց:

Իբրեւ որ ի դոյն իսկ կարգեալ կայր,

երթեալ վաղվաղակի առ ստորեստա-
նեայն հասանէր եւ յայտ առնէր վասն
որոց եկեալն էր. Նորա լուեալ իսկ եւ
իսկ ի գեւղ անդր հասանէր, առեալ
երիւարս եւ կառս բազումս անդէն ի
գեղջն Նստէր դարանակալ: Պաղա-
տաս յորժամ մօտ ի գեւղջն էր, առա-
քէր զոմանս յառաջագոյն խուզել ըզ-
վայրսն. բայց ստորեստանեայն իբրեւ
գիտաց թէ մօտ են խուզակքն, հրաման
տայր երկուց կամ երից կառաց եւ սա-
կաւ հեծելոց ելանել փախչել մազա-
պուր. որպէս թէ երկեան զահի հարան
քանզի սակաւաւորք էին: Իսկ խըն-
դրակքն իբրեւ զայն տեսին, ինքեանք
զհետ մտանէին, եւ ակնարկէին Պա-
ղատայ. եւ Նորա պատրեալ սաստկու-
թեամբ հալածական տանէր: Ստորես-
տանեայքն, յորժամ թուեցան նոցա
թէ ըմբռնիցի այսուհետեւ Պաղատաս,
վաղվաղակի յարեան ի դարանէ անտի:
Իսկ որոց զՊաղատասունէին տեսեալ,
որպէս ի դէպ էր փախստեայ գնայրն
բայց Նոքա զհետ պնդեալ ստէպ հա-
լածէին: Յայնմ վայրի որ զնենգու-
թիւնն խորամանգեաց Պաղատայ հար-
կանէր զնա անդէն, թէպէտ եւ յազ-
դոյ վիրացն սխալեաց, սակայն եհար
զնա յուսն եւ խոցեաց եւ ինքն պըն-
դեալ երթայր ընդ հալածչացն. եւ ի-
բրեւ յայտ եղն թէ ո ոք էր, միան-

զամայն ընդ Մասրեստանեացն տագնապաւ արշաւէր երիւարաւն զհետ մտեալ թագաւորաւն հանդերձ: Յայտ է թէ որոց յայնժամ յամրագնաց երիւարքն էին յերագագունաց ըմբռնէին: Մանայն այրուձին Գադատայ լուծեալ պարտասեալ էին վասն ի ճանապարհէն վաստակելոյ. եւ իբրեւ տեսին զի գայր Կիւրոս հանդերձ բանակաւն, այսպէս իսկ պարտ է ածել զմտաւ եթէ ուրախութեամբ եւ ցնծութեամբ իբրեւ ի նաւահանգիստ ի կարեձմեռն ձմերայնւոյ հասին առ նոսա:

Ո Կիւրոս անդէն զառաջինն զարմանք ունէին. իբրեւ գիտաց զիրսն, որչափ նոքա միահամուռ ընդդէմ գային, եւ ինքն հակառակ ընդդէմ զզօրսն գունդագունդ տանէր: Իբրեւ ծանեան հակառակորդքն զոր ինչ եղեւ, ի փախուստ դարձան. անդ հրաման ետ Կիւրոս այնոցիկ որ ի դոյն իսկ կարգեալ կային զհետ մտանել, եւ ինքն զկնի գայր ընդ այլոցն որպէս օգուտն թըւէր: Յայնմ վայրի ըմբռնեցան կառք եւ ոմանք ի կառավարացն անկեալ կործանէին, ոմանք ի դառնալն եւ ոմանք այլ իմն ազգ. եւ ոմանք կրճատեալ ի հեծելոց անտի ի բուռն անկանէին: Նոզայլ եւս. բազումս կոտորէին եւ զայն որ զԳադատայն եհար: Բայց ի հետեւակացն Մասրեստանեաց որք զԳադա-

տայ գեղն պաշարեալ դիպեցան, կէաք յամուր անդր որ ի Գադատայ ապաստամբեաց, անկանէին, եւ կէաք անձապարեալ ի քաղաք ինչ յաղթ ասորեստանւոյն անկանէին. եւ ինքն իսկ գլխովին ասորեստանեայն կառօք եւ երիւարօք փախստական անդր դիմէր։

Յորժամ զայս ամենայն ի գլուխ հան Կիւրոս, մեկնեալ երթայր յերկիրն Գադատայ եւ հրաման տուեալ որոց պարտն էր հրաման տալ վասն գերւոյն, վաղվաղակի յուղի անկանէր զի երթեալ տեսանիցէ զԳադատաս, թէ զիարդ իցէ ի վիրէ անտի. եւ մինչ դեռ նախաղացեալ գայր, Գադատաս պատեալ զվէրն ընդ առաջ ելանէր։ Տեսեալ զնա Կիւրոսի զուարճացեալ լինէր յանձն իւր եւ ասէր. Ես գայի առ քեզ տեսանել թէ որպէս իցես։

Ասէ Գադատաս, ես ասէ եկի միւսանգամ տեսանել զքեզ, եթէ որպիսի ինչ իցէ տեսիլ կերպարանաց քոց, որ այսպիսի ոգի ունիս, եւ գիտեմ իսկ եթէ ոչ իմիք կարօտեալ, եւ ոչ խոստացար իսկ ինձ զայս առնել, ոչ թէ երախտիս ինչ յինէն գտեալ առանձինն եւ ոչ մի, այլ զի բարեկամաց օգուտ ինչ արարի. այնպէս յօժարութեամբ օգնական իմ եղեր. որպէս զի այժմ որչափ յիս ապաստանէ կորուսեալ եմ, բայց որչափ ի քեզ ապաս-

տան ինձ ողջ իսկ ապրիցեմ։ Ով Կիւրոս եթէ որպէս իսկզբանն էի եւ որդիս ծնանէի, ոչ գիտեմ եթէ սատանայի երբեք որդեակ որ այսպիսի միտս առ իս ունիցի. եւ այլ եւս որդիս տեսի եւ զայս արքայ Ասորեստանեաց, որ առաւել իսկ զիւր հայրն տրտմեցոյց, քան զքեզ այժմ կարիցէ արտմեցուցանել։

Եւ Կիւրոս ասէ այսպէս. Ով Գադատաս զմեծ եւս ինձ զարմանս թողեալ ընդ իս եւս այժմ զարմացեալ։ Ասէ Գադատաս. եւ զինչ այն զարմանալիք իցեն։ Զի այնչափ արք, ասէ, զոմն գործեցին վասն քո ի Պարսից եւ ի Մարաց եւ ի Վրկանացւոց եւ ամենեքին որ աստ էին ի Հայոց եւ ի Սակաց եւ Կադուսիացւոց։ Եւ Գադատաս յաղօթս կայր. Ով Արամազդ, ասէ, եւ նոցա բազում բարութիւնս շնորհեսցեն դիքն, եւ առաւելագոյն այնմ որ այնր ամենայնի պատճառք եղեւ, զի եւ նոքա նոյնպիսի լինիցին։ Որպէս զի եւ զորս դու զովես ով Կիւրոս, ապնջականութեամբ ընդունիցիմք զնոսա, ընկալ զպարգեւս զոր ես կարող իցեմ պարգեւել. եւ բազում պարգեւս ածէր զի որ կամիցին զոհս մատուցանիցէ, եւ ապնջական լինել բանակին արժանի զեղեցիկ գործելոցն եւ ի գլուխ ելելոց։

Կադուսիացին վերջապահ էր եւ ոչ

հաղորդեցաւ ի պնդելն զհետս։ Իբրեւ կամեցաւ եւ նա մեծ ինչ գործ վճարել, ոչ ինչ պատմեալ Կիւրոսի ասպատակ դնէին յերկիրն որ առ Բաբիլացւոց աշխարհին կայ. եւ ցան սաստ անդ վարատեալ երիվարաց նոցա, եղանէր ասորեստանեայն ի քաղաքէ անտի իւրմէ յոր փախուցեալն էր, եւ պատահէր նոցա, քանզի ճակատեալ էին զօրք նորա։ Իբրեւ գիտաց թէ միայն են Կադուսիացիքն ի վերայ դիմէր, եւ զիշխանն Կադուսիացւոցն սատակէր եւ զայլս բազումս եւ բազում երիվարս ի Կադուսիացւոց առնոյր, եւ եթէ դիպէր այնոցիկ որ զառն եւ զաւարն կրէին հանէր ի նոցանէ։ Եւ ասորեստանեայն զհետ մտեալ մինչեւ ցայն վայր զոր ամուր համարէր այսրէն դառնայր. իսկ Կադուսիացիքն ընդ երեկոյս պրծեալ ապրէին անկեալ ի բանակ անդր։

Կիւրոսի իբրեւ զգաստ լինէր զիրացըն որ եղեն, ընդ առաջ երթայր Կադուսիացւոցն, եւ զոր ոք խոցեալ տեսանէր, առնոյր զնա եւ առ Գադատաս առաքէր զի դարմանեսցի, եւ զայլսն վրանակիցս առնէր, եւ հոգ առնէր զի զպէտսն կարեւորս ունիցին, առեալ ընդ իւր եւ ի պատուականացն Պարսից։ Զի յայնպիսի ինչ իրս որ պիտանիքն իսկ իցեն վաստակոցն կցորդ կամին լինել. բայց ինքն յայտնի իսկ նեղէր սաս-

տիկ, քանզի մինչ դեռ այլքն ընտրէին, զի ժամ իսկ էր յայնժամ ընտրեացն, դեռ եւս Կիւրոս սպասաւորքն համ- դերձ եւ բժշկօքն ոչ զոք առանց խնա- մոց թողոյր, այլ կամ ինքնին իսկ տե- սանէր, կամ թէ ինքն չկարէր վճա- րել, յայտնի իսկ դարմանիչս առաքէր, եւ այնպէս ապա ի քուն եղեալ ննջե- ցին ։

Վաղվաղակի իբրեւ տիւ եղեւ քա- րոզ կարդայր գալ ի մի վայր ժողովել իշխանայն եւ ամենայն Կադուսիա- ցւոցն. եւ խօսէր զայս դոյն օրինակի բանից ։ Արք բարեկամք, վիճակք մար- դկօրէնք են որ հասինս. զի յանցանել որ մարդիկ իցեն, ինձ թուի թէ չէ ինչ զարմանալոյ ։ Բայց արժան է յայսմ ամենայնէ իրաց որ եղենս ի բարու- թեան իմիք վայելել եւ ուսանել մի երբեք ուրեք քան զզօրս թշնամեացն տկար եւ անզօրն զօրութեան քակել ի բովանդակ զօրացն ։ Ոչ զայս, ասէ, ասեմ, որպէս թէ չիցէ պարտ երբեք սակաւ զօրօք երթալ յա պիտոյն իցէ քան որով այժմն չոգաւ Կադուսիա- ցին, այլ եթէ ոք հաղորդութիւն ընդ այնմ որ բաւական իցէ օգնական լինել ունիցի եւ դիմեալ երթայցէ, մարթի պատրել, հնար է եւ մնացելովքն ըղ- թշնամիսն խաբեալ պատրեալ կացու- ցանել եւ այլում դարձուցանել զնոսա

Մարթի եւ այլ եւս ինչ իրս ի վերայ թշնամեացն խորամանկել եւ զբարեկամս յամուր զգուշութեան կացուցանել: Նոյնպէս եւ ոչ որ որոշիցին ի բաց մեկնիցի, այլ կախեալ կայցէ զպընդութենէ զօրութեանն. իսկ որ ի բաց ուրեք մեկնեալ գնայցէ, եւ չունիցի հաղորդութիւն ուր ուրեք եւ իցէ, ոչ ինչ ընդհատ յայնմանէ կրիցէ, եթէ միայն միայնակ էր երթեալ ի մարտ պատերազմի: Այլ ընդ այսր, ասէ, եթէ դից այն կամ իցէ, առցուք վրէժս ի թշնամեաց ոչ յետ բազում ժամանակի: Այլ եթէ վաղվաղակի ճաշիցէք, սաբայց զձեզ անդր ուր իրքն կատարեցան, եւ զվախճանեալսն թաղեսցուք, եւ ցուցցուք հակառակորդացն թէ ուր յաղթելն կարծեցին, ինմին վայրի այլք զօրագոյնք քան զնոսա գան, եթէ Աստուած կամեսցի. որպէս զի մի եւ ընդ տեղին ուրախութեամբ հայիցեն ուր կոտորեցին զնիզակակիցս մեր: Եթէ ոչ ի դիմի հարկանիցեն մեր, այրեսցուք զհանգրուանս նոցա եւ յաւեր դարձուսցուք զերկիրն, զի մի իցէ թէ տեսեալ զոր ընդ մեզն արարին ուրախ լինիցին, այլ ընդ իւրեանց վիշտսն նայեցեալ ծանրացեալ նեղեսցին: Ամենեքին երթեալ ճաշեցէք, բայց դուք ով Կադուսիացիք, նախ երթեալ ընտրեցէք ձեզ իշխան, որպէս օրէնք ի-

ցեն ձեր, որ հոգասցի զձէնջ ընդ դիցն եւ ընդ մեզ, եթէ կարօտիցիք ինչ։ Այլ յորժամ ընտրիցէքն եւ ճաշիցէք առաքեցէք առ իս զընտրեալն։

Սոքա զայն գործէին. եւ Կիւրոս իբրեւ եհան զզօրսն, եւ հաստատեաց կացոյց ի գնդին զընտիր ընտիրս ի Կադուսիացւոցն, հրամայեաց մօտ առ իւր տանել զգունդն, որպէս զի, ասէ, եթէ կարօղ իցեմք քաջալերս արանցն տայցեմք. եւ այնպէս յուղի անկեալ երթային եւ եկեալ թաղէին զԿադուսիացիսն, եւ զվայրսն ապականէին. զայս արարեալ մեկնէին, եւ զպէտս պէտս առեալ յերկրէ անտի թշնամեացն միւսանգամ մեկնէին յերկիրն Գադատայ։

Իբրեւ զայս ած զմտաւ թէ որ ապըստամբեցինն եւ եկին առ Նա, քանզի առ Բաբիղացւոց աշխարհին են, չարչարեսցին եթէ ոչ ինքն հանապազ մօտ իցէ, ապա ի թշնամեաց անտի զորս արձակէրն, հրամայէր ասել ցասորեստանեայն եւ ինքն իսկ քարոզ առաքէր առ Նա ասել այսպէս. թէ զայնոսիկ որ զերկիր ի գործ արկանեն չզրկեմ, եթէ եւ դու կամեսցիս թողուլ մշակացն ապստամբեացն գործել զգործ մըշակութեան։ Բայց դու, ասէ, եթէ խափանել կամիս զսակաւաւորս ոմանս խափանեսցես. քանզի սակաւ իսկ եր-

կիր ապստամբելոցն եւ եկելոց առ իս· նեւ ես բազում երկիր թողի, զի արդիւնս քեզ բերիցէ։ Իսկ ի կթել պտղոցն եթէ պատերազմ իցէ, ինձ թուի թէ որ յաղթէն, զայն նա տարցի. ապա թէ խաղաղութիւն լինիցի, յայտ է եթէ դու քաղեսցես։ Բայց եթէ ոք յիմոց սատի քեզ զէն վերացուսցէ, կամ ի քոյոցն՝ ինձ, զնոցա, ասէ, որչափ ձեռնհաս իցեմք, վրէժ առցուք։

Զայս պատուիրեալ քարոզին առաքէր։ Ասորեստանեայքն իբրեւ լուան, ածէին ի հաւան զթագաւորն շնորհել եւ պակաս առնել զպատերազմն։ Բայց ասորեստանեայն դրդեալ ի համազգեաց անտի, եւ իւր իսկ ընդայն կամեցեալ, յանձն առ. եւ դաշինք ի միջի կուէին, թէ մշակացն խաղաղութիւն լինիցի, եւ զինակրաց՝ պատերազմ։ Զայս ինչ վասն սատարացն ի գլուխ հան Կիւրոս. հրաման տայր իւրոցն բարեկամացն զարօտս անանոցն, եթէ կամիցին, իւրոց զօրացն առնիցեն յանձն. տանէին եւ զառ եւ զաւար թշնամեացն ուստի եւ կամէին, զի հեշտ լինիցի նիզակակցացն արշաւանն։ Զի թէպէտ եւ նոյն միշտք ի վերայ կային, բայց ի թշնամեացն կերակրելն թեթեւագոյն իմն զպատերազմն ցուցանէր։

Իբրեւ պատրաստ լինէր Կիւրոս, զի

երթայցէ, գայր հասանէր Գադատաս, բազում եւ ազգի ազգի պատարագս բերեալ իբրեւ ի մեծ տանէ եւ ընտիր ընտիր երիւարաց յիւրոց հեծելոցն, որոց՝ վասն նենգութեանն չհաւատայր։ Իբրեւ մերձ եղեւ, խօսէր այսպէս. Ով Կիւրոս այժմիկ զայս բերեմ քեզ, զի ի ժամանակիս յայսմիկ վարեցիս նոքօք թէ պիտոյ ինչ լինիցին. համարեաց, ասէ, թէ եւ այլն ամենայն որ ինչ իմ է, այն քո է։ Որդի չիք եւ չէ իսկ երբեք որ յինէն ծնաւ, ում թողից զիմ տունս. այլ հարկ է, ասէ, ընդ իս յորժամ վախճանիմս, ամենեւին շիջանել ազգատոհմին մերոյ եւ անուանն. Երդմնի լինիմ, ասէ, ես ի դիմն ով Կիւրէ, որ զամենայն տեսանեն եւ ըզբնաւ լսեն, թէ ոչ անիրաւ ինչ եւ ոչ ծանականաց ինչ բանս խօսեցայ կամ գործեցի, եւ զայս կրեցի. զայս ասէր եւ զիւր բախտն արտասուէր, եւ ոչ եւս կարէր աւելի ինչ ասել։

Եւ Կիւրոսի լուեալ ի խոր խոցեալ խօսէր այսպէս. Զերիւարսն, ասէ, առնում, զի քեզ օգուտ գործեցից, տըւեալ զնոսա որոց մտադիւրագոյնք այժմ քան զքեզ իցեն, որպէս երեւի իսկ։ Եւ որում եւ յառաջագոյն իսկ ցանկացեալ էի, զՊարսից այրուձին բավանդակիցեմ հեծեալս բիւր մի. իսկ զայլ եւս ինչսն դու տար պահեա, ա-

սէ, մինչեւ տեսանիցես զնա, զի որ-եալ պարգեւս ընդ պարգեւացն ոչ պար-տեցայց ի քէն։ Ապա թէ ինչ աւելի տուեալ երթայցես քան զայն զոր յի-նէն առեր, չգիտեմ թէ զիարդ ոչ յա-մօթ լինիցիմ։

Գաղատատաս ասէ. Հաւատամ, ա-սէ, քանզի տեսանեմ իսկ զկարգս քո. բայց տես թէ բաւական իցեմ պահել։ Քանզի մինչ բարեկամքն էաք սա-րետասանեւոյն, զի ազնուագոյն իմն թը-ւէր կալուած հօր իմոյ, քան ի մեծ քա-ղաք անդր Բաբիղացւոց մօտ էր, որ-չափ ինչ շահս մարթ էր ի յաղթ քա-ղաքէ անտի առնուլ, ի նոյն վայելէաք, եւ եթէ աղմուկ ինչ կամ խռովութիւն հասանէր դառնայաք յաշխարհն մեր եւ մեկուսի էաք յայնմ ամենայնէ։ Բայց այժմ քանզի թշնամիք եմք, յայտ է թէ յորժամ դու մեկնիցիս, եւ մեք եւ ամենայն տուն մեր նենգի-ցիմք. եւ թուի ինձ տրտմութեամբ կեանս կեցցեմք, զի ընաւ զմերձաւորան իսկ մեր թշնամիս ունիցիմք եւ զօրա-գոյնս քան զմեզ տեսանիցեմք։

Ընդերեւս ասիցես իսկ, թէ զմէ՞ ոչ խորհեցար մինչ չեւ ապստամբեալ։ Օհ անձն, ով Կիւրէ, վասն թշնամւոյն եւ ցասմանն ոչ ընդ զգուշութիւն հայ-էր, այլ ցանգ իսկ եւ միշտ այսպիսի ինչ երկնէր. թէ երբ հասանիցէ վրէժ

առնուլ ի դիցն եւ ի մարդկան թշնամւոյն, որ չդադարեն յատելութենէ, երբ ոչ եթէ զի զրկեաց ոք ինչ զնա, այլ յորժամ կարծիս զումեքէ կարծիցէ լաւ քան զինքն լինել: Ինձ այսպէս իսկ թուի թէ քանզի ինքն չէ պիտանի, ապա վատթարագոյնս քան զինքն թիկունս ունիցի: Եւ եթէ ազնուագոյն քան զնա երեւիցի, քաջալերեաց, ասէ, ով Կիւրէ, ոչ հասցէ ընդ առն այնմիկ քաջի ի կռիւ կալ. այլ ինքն իսկ բաւական լինիցի հնարս ինչ նմա մենքենայել, մինչեւ բարձցէ զայն որ ազնուագոյն քան զինքն է. բայց ի նեղելն զիս, ինձ թուի թէ եւ վատթարօքն հզօրագոյն լինիցի:

Կիւրոսի որ զայս ամենայն լուաւ արժանի հոգաբարձութեան բանքն՝ թըւեցան, եւ անդէն ասէր. Իսկ արդ զիարդ, ասէ, ով Գադատա ոչ դու զպարիսպսն պահապանօք ամրացուցեր, զի ի զգուշութեան իցես յորժամ մտանիցես ի նոսա. եւ դու ո՞չ ապաքէն ընդ մեզ ի պատերազմ գումարեալ ես, զի թէ դիքն, որպէս եւ այժմ իսկ, ընդ մեզ իցեն, նա ի քէն զանգիտիցէ եւ ոչ դու ի նմանէ: Արդ որ ինչ քաղցրըն իցէ քեզ տեսանել ի քոյոց անտի կամ ընդ որում ախորժիցես լինել, առ եւ եկ ընդ իս, զի դու ինձ, որպէս ինձ թուի, ամենեւին պիտանացու լինիցիս.

ես եւ որչափ թէ կարօղ եւ ձեռնհաս իցեմ զուն գործիցեմ, պիտանացու քեզ լինել։ Զայս լուեալ Գադատայ ոգի առեալ կազդուրէր եւ ասէր. Արդ, ասէ, մարթիցիմ ճեպել պատրաստել մինչ չեւ քո ելեալ իցէ, զոր կամիմ, ասէ, եւ զմայր իմ ածել ընդ իս։ Աճապարեսցես, ասէ, զի կացից մնացից մինչեւ դու ասիցես թէ բարւոք է։

Ապա երթեալ Գադատայ պահ եդ պարապին Կիւրոսի հանդերձ զոր ամրացուցն իսկ, եւ զամենայն կազմէր պատրաստէր, որովք շինիցի տուն մի մեծ. առնոյր եւ յիւրոց հաւատարմաց անտի որովք կարօտն էր եւ զբազումս յորոց թերահաւատն էր, բռնադատեալ կիսոցն ի նոցանէ եւ զկանայս ընդ իւրեանս ածել, եւ կիսոց եւ զքորսն զի ընդ նոսա կապեալ դրաւիցէ զնոսա. եւ զԳադատաս առ Կիւրոս ընդ այնոսիկ որ զիւրեանն էին եւ երթայր, զի ճանապարհացն ցուցիչ լինիցի եւ ջրոց եւ ճարակի եւ հացի, որպէս զի միշտ իսկ ի պատրաստութիւնս գնայցեն։

Իբրեւ երթեալ զՆաբիղացւոց աշխարհն նշմարէր, թուեցաւ նմա թէ ճանապարհն զոր երթայր անդր իսկ ի քաղաքորմն տանիցի, կոչեցեալ նորա զԳոբրիաս եւ զԳադատաս, հարցանէր եթէ գուցէ՞ այլ ճանապարհ, զի մի բնաւ մօտ ի պարիսպ անդր տանիցի։

Եւ Գովբրիաս ասէ. Են տէր եւ բազում են ճանապարհք, այլ ես կարծէի եթէ կամիցիս հուպ երթալ ի քաղաքն զի ցուցանիցես նոցա զզօրսն քո, թէ բազում զօրք են քո եւ գեղեցիկք։ Վասնզի յորժամ սակաւ զօրսն ունէիր, մատեար ի պարիսպ անդր եւ տեսանէին զմեզ զի ոչ բազում էաք, եւ այժմ կազմեալ պատրաստեալ որպէս առաջն առ քեզ պատրաստ լինիցի ի պատերազմ, գիտեմ թէ յորժամ զքո զօրս տեսանիցէ, միւսանգամ իւրքն առանց կազմութեան թուիցին։

Կիւրոս ասէ. Զարմանս իմն առնես, ով Գովբրիա, թէ ի ժամանակի յորժամ յոյժ իսկ սակաւ զօրս առեալ երթայի, անդր իսկ ի պարիսպն մատչէի, եւ այժմ բազմագոյն զօրս ունիմ եւ չկամիմ տանել ի պարիսպն։ Բայց մի ինչ սքանչասցիս, ասէ, քանզի ոչ եթէ նոյն իցէ մօտն տանել եւ հեռացուցանել. զի մօտ ամենեքին տանին, այնպէս ճակատեալք որպէս համարինն թէ ազնըւագոյն պատերազմն լինիցի։ Բայց որ ցածունքն եւ իմաստունքն իցեն զգուշութեամբ ի բաց մեկնին եւ ոչ եթէ արագութեամբ. Հարկ իսկ է սայլիցն ակաղձելոց մի ըստ միոջէ անցանել, բայց պարտ է զայն ամենայն վառելովք եւ սպառազինօք թագուցանել, եւ ոչ ուրեք մերկս ի զինուց երեւել

կապարճակրացն առաջի հակառակոր-
դաց: Որդ հարկ է այնոցիկ որ այնպէսն
դնայցեն առաջի ակարացն զպատերազ-
մօղսն կարգել. եւ այնուհետեւ եթէ
կամիցին ի պարապէ անտի միահամուռ
ի վերայ անկանել ուր ուրեք եւ խառ-
նիցին, սաստկագոյնս ընդխառնիցին
քան զայնոցիկ որ անցանիցեննն:

Սղջա քանզի երկայնածիգ տողեալ
երթայցեն, դանդաղագոյնք լինիցին
թիկունք օգնականութեանն, եւ նո-
քա ի պարապէ անտի վաղվաղակի դի-
մեալ ի վերայ մօտաւորացն միւսանգամ
այսրէն դառնայցեն: Իսկ եթէ ոչ սա-
կաւ հեռացեալ երթայցեմք քան որչափ
թէ կարիցեն տեսանել զմեզ եւ մեք
ձգտեալ երթայցեմք, զբազմամբոխ
բազմութիւն մեր նշամարիցեն. եւ ի
զինուց եւ ի զարդուց առ միմեանս մի-
մեամբք հիւսելոց բնաւ իսկ ամբոխ ան-
հնարին երեւիցի: Նւ եթէ այնպէս
երթայցեմք եւ լռիկ դայցեն ի մեր վե-
րայ, ի բազմաց հետէ յառաջագոյն
տեսեալ զնոսա ոչ առանց պատրաս-
տութեան անկանիցիմք ի բուռն: Մա-
նաւանդ թէ, սաէ, ով արք, եւ ոչ
ձեռնամուխ իսկ լինիցին յորժամ հա-
սանիցէ հեռագոյն մեկնել ի պարապէն՝
եթէ ոչ բովանդակ իսկ զօրքն կարծի-
ցեն ամենայն բանակին յաղթել. զի
ահագին է ի դիմի հարկանելն:

Իբրեւ զայս ասէր հաճոյ թուեցաւ որոց անդն էին, եւ Գոբրիաս որպէս հրաման եւս տանել, տանէր։ Իբրեւ զանցանէին զօրքն զքաղաքաւն, մինչ զվերջին բանակն ամրագոյն յարդարէր, եւ այնպէս մեկնեալ երթայր եւ եկեալ հասանէր ի սահմանակողմն Ասորեստանեայցն եւ Մարացն ուստի ելեալն էր. անդ քանզի երեք պահակք էին Ասորեստանեայցն, զմին ի նոցանէ զտկարագոյն յարձակեալ անդէն առնոյր բռնի, բայց յերկուց անտի երկնչէր Կիւրոս, իսկ Գադատաս հաճեաց զմիւս պահապանացն տալ զամուրսն ի ձեռս։

## ԳԼՈՒԽ Ե

ԻԲՐԵՒ այս ամենայն ի գլուխ ել, առաքէ առ Կիաքսարէս, պատուէր տայ չու առնել գալ ի բանակն զի վասն ամրականացն զոր ըմբռնեցին խորհուրդ խորհեսցին թէ զինչ ինչ պարտ իցէ առնել, եւ զի տեսեալ զզօրսն եւ վասն այլոցն եւս խրատտու լինիցի որ ինչ արժան իցէ յայնմ հետէ գործել։ Եւ թէ հրամայեսցէ. ասա, ասէ, թէ ես եկից առ նա բանակել։ Եւ չոգաւ հրեշտակն պատմել։ Եւ Կիւրոս հրամայեաց յայնժամ Գադատայ զվրանն Ասորեստանեայն, զոր Կիաքսարայ ընտրեցին Մարքն, քաջ պատրաստել այլովք եւս կազմա-

ծովք զոր ունէր, եւ զերկուս կանայսն մուծանել ի սենեակ անդր վրանին եւ նոքօք հանդերձ եւ զարուեստականսն որ ընտրեալ էին Կիաքսարայ: Նոքա վաղ զայն գործէին, իսկ որ առաքեցաւն առ Կիաքսարէս, իբրեւ ասաց զհրամայեալսն, լուեալ Կիաքսարայ, գիտաց եթէ լաւ է բանակին կալ ի մէջ սահմանացն, զի եւ Պարսիկքն զորս կոչեաց Կիւրոս, գային հասանէին, եւ էին քառասուն բեւրք աղեղնաւորաց եւ ասպարաւորաց: Արդ տեսեալ զնոսա եթէ բազում ինչ վնաս գործեն Մարաց աշխարհին, զի առաւել լաւ համարէր ապրել ի նոցանէ, քան այլ ամբոխ ի ներքս ընդունել: Որ ի Պարսից աշխարհէն ածէր զզօրն, հարցանէր զԿիաքսարէս, ըստ Կիւրոսի պատուիրանին, եթէ զօրաց ինչ պէ՞տք իցեն նմա. իբրեւ ասաց թէ չեն պէտք, նոյն օրին յորժամ լուաւ թէ Կիւրոս մօտ է, չոքաւ առ նա տարեալ զզօրն: Բայց Կիաքսարէս ի վաղիւ անդր յուղի անկեալ զայր մնացեալ Մարաց հեծելովքն: Իբրեւ զգաց Կիւրոս թէ մօտ գայ նա, առեալ զՊարսիկ հեծեալսն որ բազում էին եւ զամենայն Մարսն եւ զՀայս եւ զՎրկանացիս, եւ յայլոց նիզակակցաց զքաջ հեծեալսն եւ զքաջ վառեալս ընդ առաջ երթայր եւ ցուցանէր Կիաքսարայ զզօրսն:

Կիաքսարէս իբրեւ ետես թէ զԿիւրոսի բազումք եւ քաջք զհետ երթեալ էին, իսկ ընդ իւր սակաւ ինչ սպասք էին անարգանս իմն անձինն համարեցաւ եւ դժկամակ լինէր ընդ այն: Եւ իբրեւ իջեալ Կիւրոսի յերիւարէ անտի մատչէր զի համբուրեսցէ զնա ըստ օրինացն, էջ Կիաքսարէս յերիւարէ անտի, եւ զերեսս ի բաց դարձոյց, եւ համբուրեաց ոչ, եւ յայտնի լինէր թէ արտասուէր: Ապա հրաման ետ Կիւրոս այլոց ամենեցուն ի բաց գնալ եւ դադարել. եւ ինքն բուռն հարեալ զաջոյ Կիաքսարայ, եւ հանեալ զնա արտաքոյ ճանապարհին ընդ արմաւենեօքն, եւ զմարական կտաւսն հրամայէր տարածանել եւ նստուցանէր զնա, եւ ինքն առ նմին նստեալ հարցանէր այսպէս:

Ասա դու ցիս, ասէ, ով քեռի, թէ հի՞մ ընդ իս ցասուցեալ ես, եւ զի՞նչ ինչ դժնդակութիւն տեսեր, զի այնպէս դժկամակ լինիցիս: Յայնմ վայրի տայր պատասխանի Կիաքսարէս այսպէս: Զմտաւ ածի թէ ի հաւուց եւ ի նախնեաց եւ ի հարց թագաւորաց ծնայ եւ ես թագաւոր կացի, բայց տեսանեմ զի ես անարգանօք եւ առանց մեծարանաց երթամ, եւ դու իմով սպասու եւ այլ եւս զօրօք մեծավայելուչ հասեալ կաս. զայս ի թշնամեաց անգամ կրել ծանր համարիմ, եւ եւս առաւել

դժընդակագոյն յայնցանէ յորոց չէր պարտ այնպիսի ինչ կրել ։ Վասնզի լաւ համարիմ բեւր անգամ ընդ հողով մտանել, քան այնպէս անարգ երեւել եւ տեսանել զիմն, զի անփոյթ առնիցեն զինէն եւ ծիծաղիցին զինեւ ։ Վասնզի ոչ եթէ այնմ ինչ տգէտ իցեմ, ասէ, եթէ ոչ դու մեծ քան զիս իցես, այլ եւ իմ ծառայքն սաստիկ դիմադարձ ինձ լինիցին, եւ կազմ իցեն առ առաւելագոյն զմեզ լկելոյ, քան եթէ յինէն վշտանալոյ ։

Նա մինչ դեռ ասէր զայս առաւել եւս պարտեալ լինէր յարտասուացն, մինչեւ եւ զԿիւրոս համբուրէր եւ լի լինէին աչք նորա արտասուօք ։ Պնդեալ սակաւիկ մի այսպիսի ինչ խօսէր Կիւրոս ։ Զայս, ասէ, ով Կիաքսարէ, ոչ ճշմարտութեամբ ասացեր եւ ոչ առնուս իսկ ուղղորդ ի միտ զի համարիս եթէ իմով իսկ գալստեամբս կազմեցան Մարք առ ի բաւական լինել լկել զքեզ ։ Ընդ քեզ ոչ զարմանամ թէ ի ցասման եղեր եւ երկեար. եթէ յիրաւի տրտմեալ իցես ընդ նոսա, եթէ յանիրաւի զայն թողից ։ Զի գիտեմ եթէ ծանրացեալ նեղիցիս եթէ լսիցես յինէն թէ ես ընդ նոցա իրաւունս տայցեմ ։ Բայց առն իշխանի զայրանալ ի վերայ ամենայն իշխանաւորացն, այն իսկ ինձ մեծ յանցանք թուին. քանզի հարկ է թէ

վասն զբազումսն երկեցուցանելոյ, բազում թշնամիս առնիցէ. եւ ընդ ամենեսին սրտմտելովն, ամենեցուն նոյն միաբանութիւն արկանիցէ: Որոց աղագաւ ես ոչ առաքեցի առանց իմ զնոսա, երկուցեալ թէ մի այնպիսի ինչ լինիցի քո ցասմամբն զի զամենեսին զմեզ տրտմեցուցանիցէ. արդ այդ ամենայն մինչ դեռ ես մօտս իցեմ առաւածովք հանդերձ զգուշութեամբ վճարիցի: Բայց զի համարիսդ թէ զրկիս ի մէնջ. արդարեւ ես ընդ այն ամենեւին դժկամակ իսկ եղէ, եթէ բազում բարեկամս պիտանիս առնել թեւակոխիցեմ եւ ապա կարծիս առնուցում թէ զնորին հակառակն գործիցեմ:

Այլ զի մի, ասէ, ընդ վայր մեղադիր մեզ տայցեմք լինել, այլ եթէ հնար ինչ իցէ, ստոյգ հայեսցուք ոճով թէ որպիսի ինչ առ ի մէնջ վնասն իցէ: Նա զարդար պատճառանս ի մէջ մատուցից. զի եթէ չար ինչ գործ գործեալ իցէ իմ, յանձին կալայց եթէ զրկեցի, ապա թէ ոչ մի ինչ չար գործեալ է իմ կամ խորհեալ. ո՞չ եւ դու խոստանայցես թէ ոչ ինչ զրկեցար յինէն: Հարկ է, ասէ, յանձն առնուլ: Իսկ թէ եւ լաւ ինչ գործեալ երեւիցիմ եւ յօժարեալ գործել որչափ աւելագոյնն ձեռնհաս իցեմ, ոչ մանաւանդ գովութեան ար-

ժամի թուլցիմ եւ ոչ պարապաւանաց։ Յիրաւի, ասէ։

Ասէ Կիւրոս, Աւն առ այսուհետեւ դիտեսցուք տեսցուք զամենայն ինչ զոր իմ գործեալ իցէ զմի մի գործ իւրաքանչիւր. զի այնպէս յայտ առնել լինիցի թէ զինչ լաւութեան գործ ի նոցանէ իցէ եւ որ յոռութեան։ Բայց իսկզբանէ իսկ արարից սկիզբն եթէ եւ քեզ շատ եւ բաւական թուեսցի։ Քանզի քեզ յորժամ ազդն եղեւ թէ բազում հակառակորդք գումարեցան, եւ ի վերայ քո եւ ի վերայ քոյոյ աշխարհին դիմեալ գան, իսկ եւ իսկ վաղվաղակի առաքէիր ի Պարսից աշխարհն խնդրել թիկունս օգնականութեան, եւ առ իս իսկ առաձինն, եւ աղաչէիր եւս փութալ ինքնին իսկ գալ զօրավար եթէ գայցեն ոմանք ի Պարսից անտի։ Արդ միթէ ո՞չ իսկ անսացի քեզ եւ եկի եւ բերի ընդ իս արս բազումս եւ պիտանիս որչափ բաւական էի։ Եկիր, ասէ։

Այսուհետեւ նախ տաս դու ցիս, թէ ապիրատութիւն ինչ արդեւք բագանի՞ր դու զիմ, թէ մանաւանդ երախտիս գտեր։ Ասէ Կիաքսարէս, յայտ իմն է, թէ յայսմ ամենայնէ երախտիս գտի։ Քանզի զինչ էր, ասէ, յորժամ թշնամիքն գային եւ կռուել հասանէր ընդ նոսա, տեսանե՞ր դու զիս յայնժամ

յաշխատութենէ իմեքէ ի բաց կացեալ կամ անխայեալ: Ոչ, ասէ, ոչ: Եւ զի՞նչ, ասէ, յորժամ յետ մեր լինելոյ յաղթութեանն աստուածովքն եւ մերժելոյ թշնամեացն, աղաչէի ես զքեզ զի առ հասարակ զհետ պնդիցեմք նոցա եւ հասարակ վրէժ խնդրեսցուք, եւ առ հասարակ թէպէտ լաւ ինչ թէպէտ յոռի դէպք տայցեն, զայն շահիցիմք: Անիցի՞ս ինչ դողջ առաւելութիւն առ ի բամբասելոյ զիս:

Լուռ եւեթ կայր Կիաքսարէս՝ բայց Կիւրոս միւսանգամ խօսէր այսպէս. Բայց որովհետեւ լաւ համարիս լուռ իսկ լինել քան տալ պատասխանի, զայն ասա եթէ զրկեցա՞ր ինչ, զի յորժամ քեզ ոչ զգուշութեան թուէր զհետ մտանել, քեզ չետու լինել հաղորդակից վշտացն, եւ աղաչեցի ես զքեզ առաքել զայրուձիդ ի քոյոց այտի. զի եթէ եւ զայդ խնդրելով զրկեցի ինչ, մանաւանդ իսկ զի եւ ետու ես զանձն քեզ զօրաւիգն օգնականութեան, այն առ ի քէն իսկ յայտ արարեալ ցուցցի:

Իբրեւ առ այն եւս լուռ լինէր Կիաքսարէս: Եթէ եւ ոչ այդմ բանի կամիցիս տալ պատասխանի, զայն ասա դուցիս, միթէ ընաւ զլացա՞յ ես ինչ զքեզ, զի յորժամ դու ետուրն ինձ պատասխանի, եթէ ոչ կամիմ անդէն զՄարս բռնադատել ի վիշտս, զի ամենեմն

զնոսա թէ զուարճացան զուարթացան. մի թէ չար ինչ գործեցի քեզ զի ոչ ցասեայս. եւ յայնր վերայ միւսանգամ խնդրէի ի քէն քան զոր հեշտ ինչ չիցես ձեռնհասս տալ ինձ եւ ոչ դիւրագոյն ինչ քան զնոյն հրամայել Մ՝արաց։ Զի խնդրեցի թէ որ կամին զհետ իմ գալ, տացես ինձ։ Զայդ ի քէն ընկալեալ ոչ այլ ինչ գործ գործեցի թէ ոչ հաւանեցուցանէի զնոսա. արդ երթեալ հաւանեցուցանէի զնոսա եւ զորոց զմիտսն հաճեցի, զնոսա առեալ յուղի անկայ քո իսկ թոյլն տալով։ Եթէ զայս մեղադրութեան արժանի համարիցիս, ապա եւ ոչ զոր տայցես դու ումեք ինչ, որպէս ի դէպ իսկ է, առանց բամբասանաց իցէ առնուլ ի քէն։ Նոյնպէս իսկ գնացեալ երթայաք։

Եւ յորժամ գնացաքն, զինչ գործ վճարեցաք որ չիցէ յայտնի եւ երեւելի. ո՞չ ապաքէն բանակ հակառակորդաց առաք, ո՞չ բազմագոյնք յայնցանէ որ ի վերայ քո եկին սատակեցան։ Նա մինչ դեռ կենդանիքն իսկ էին հակառակորդքն, ո՞չ ապաքէն բազումք ի զինուց մերկացան, եւ յոլովք յերիւարաց զրկեցան. եւ զինչս այնոցիկ որք յառաջին զքոյսն՝ տանէին կրէին, այժմ տեսանես թէ քո իսկ բարեկամք ունին, զկէսս քեզ բերեն եւ զկէսս անձանց առնուն ընդ քոյով իշխանութեամբ։

Իսկ որ մեծ քան զամենայն եւ գեղեցիկ է, զքո երկիրն մեծացեալ տեսանես, եւ զթշնամեացն նուաղեալ. եւ զպահակսն առեալ եւ զքո իսկ զպահակսն որ յառաջին վտարանդի լեալ էին Ասսորւոց իշխանութիւնն, այժմ նմին հակառակ ընդ քոյով ձեռամբ է: Բայց չգիտեմ թէ զիա՞րդ ասիցեմ թէ կամիմ ուսանել թէ որ չար իցէ ի սոցանէ կամ որ բարի. բայց լսելոյ, ասէ, ամենեւին չիք իսկ արգել. ասա զի՞նչ զմտաւ ածես վասն այսր ամենայնի:

Զայս ասաց Կիւրոս եւ դադարեաց: Խօսեցաւ Կիաքսարէս այսպէս. Ով Կիւրոս ոչ գիտեմ թէ զիա՞րդ պարտ իցէ ասել թէ զոր ինչ գործեցերն, այն գործ չարութեան է: Բայց գիտա, ասէ, թէ այս ամենայն բարութիւնք այսպիսի իսկ են զի որչափ առաւելլուցուն դոյնչափ ծանր իցեն ինձ: Զի ես զքո իսկ աշխարհն կամէի իմով զօրու մեծացուցանել քան եթէ զիմն ի քէն այնպէս մեծացեալ տեսանել. զի քեզ, որ զայդ առնես փառք են, բայց ինձ անարգանք են: Եւ գանձս, ասէ, ես լաւ համարիմ պարգեւել քեզ, քան առնուլ ի քէն զոր դու այժմիկ տաս ինձ: Զի զգամ թէ նոքիմբք մեծանամ ի քէն, որովք աղքատանամն: Եւ եթէ զիմ հնազանդեալս տեսանէի, սակաւ ինչ վնասեալ ի քէն, խոսն ինչ տրտմէի,

քան այժմ տեսանել զի մեծամեծ բա-
րութիւնս գտից: Թէ զայս ամենայն,
ասէ, ապախտաւոր մտօք կարծիցիմ
ածել զմտաւ, մի յիս զայս այլ ի քեզ
իսկ դարձո զբնաւ տեսանել թէ որպի-
սի ինչ երեւիցի: Զի եթէ շունս ոք,
զոր դուն պարարէիր վասն անձին եւ
քոյոցն պահպանութեան, զնոսա ողո-
քելով, եւս ծանօթագոյնս անձին քան
քեզ առնիցէ, ուրա՞խ ինչ ընդ ողոքանան
լինէիր:

Նա եւ եթէ փոքր ինչ այդ քեզ թուի-
ցի, եւ զայն ած զմտաւ, եթէ զքո իսկ
ոք զպաշտօնեայսն, զոր դու պահպա-
նութեան եւ սպասու վասն ստացար,
այնպէս կազմիցէ զնոսա, զի նորա մա-
նաւանդ, քան եթէ քո կամիցին լինել,
միթէ շնորհակա՞լ ինչ ընդ այնր երախ-
տեաց լինէիր: Նա որում առաւել իմն
խնամ ունին մարդիկ եւ ընտանեբար
սպասս հարկանեն, եթէ զքո կին ոք այն-
պէս ածիցէ զիւրեւ, որպէս զի ընդ նա
առաւել քան ընդ քեզ անկանիցի կնոջն
դուլթն, ուրա՞խ ինչ ընդ բարերարու-
թիւնն լինէիր. եւ ճարտար գիտեմ
թէ քան զամենեսեան առաւել զրկիցէ
զքեզ զայն առնելով: Նա զի զայն ա-
սացից որ առաւել հանգոյն իմոց վըշ-
տացս իցէ, եթէ զորս ածերն իսկ զՊար-
սիկս այնպէս ոք ողոքէր, որպէս զի ա-
խորժէին զնորա զհետ երթալ, քան զքո

կնի, բարեկա՞մ արդեւք համարէիր զնա, թուի ինձ եթէ ոչ. այլ առաւել թշնամի քան եթէ զբազում ի նոցանէ էր կոտորեալ: Եւ զինչ եթէ ի քոց բարեկամաց ոք, յորժամ մարդասիրութեամբ բարբառէր, թէ առ յիմոց այտի որչափ կամիս, եւ զայն լուեալ երթայր առնոյր ոք զամենայն որչափ ինչ կարէր, եւ նա քոյովքն մեծանայցէ, դու եւ ոչ սակաւ ինչ ունիցիս զոր ի կիր արկանիցես. կարիցե՞ս զայնպիսի բարեկամ առանց բամբասանաց համարել:

Բայց ես այժմ եթէ ոչ զայսոսիկ, սակայն այնպիսի ինչ ի քէն կրեալ համարիմ: Զի դու ճշմարիտ իսկ ասես եթէ յորժամ ասացի ես թէ որ կամիցին տար, առեալ զամենայն զօրս իմ գնացեր, եւ զիս լոկ եւ թափուր թողեր: Եւ այժմ զոր իմով զօրու առեր. զայն ինձ ածես, եւ զիմ երկիրն իմով զօրօք մեծացուցանես: Եւ ես քանզի չեմ ինչ պատճառք բարութեանցն, ցուցանիցեմ զանձն իբրեւ կին մի զի բարիս յայլոց մարդկանէ գտանիցեմ եւ յիմոց հնազանդելոց իսկ: Դու այր առաջինի երեւեցիր, ես եւ իշխանութեան արժանի չիցեմ. արդ այս ամենայն քեզ երախտիք կարծիցին ով Կիւրէ: Գիտասջիր, ասէ, զի եթէ խնամածէիր ինչ ինձ, ապա զգոյշ լեալ էր քո ոչ յիմեքէ այնպէս զլանալ զիս, որ-

պէս ի պատուոյ եւ ի մեծարանաց։ Զի ինձ զի՞նչ շահ իցէ, երկրին ընդարձակել եւ ինձ յանարգութիւն հասանել. զի ես ոչ եթէ Մարաց յայն սակս իշխեցի զի ազնուագոյն քան զնոսա զամենեսին էի, այլ առաւել զի համարեցան նոքա զմեզ ամենեւին լաւ քան զանձինս։

Եւ Կիւրոս մինչ դեռ խօսէրն իսկ, ասէ. Ով քեռի, քանզի յառաջագոյն շնորհս արարի քեզ, եւ դու այժմիկ շնորհեսջիր վասն որոց աղաչեմն զքեզ. դադարեա, ասէ, ինձ մեղս դնելոյ. եւ յորժամ զհանդէս առնուցուս զմեր թէ որպիսի միտս ընդ քեզ ունիցիմք, եթէ թուիցի քեզ թէ որ ինչ գործ գործեցաւ յինէն, առ ի քո օգուտ արարաւ, ի համբուրել իմ զքեզ, եւ դու համբուրեսջիր զիս եւ երախտաւոր եւ բարերար համարեսջիր, ապա եթէ այլազգ ինչ գտանիցես յայնժամ ինձ մեղ դնիջիր։ Ասէ Կիաքսարէս. Թերեւս քաջ խօսիս. եւ ես այսպէս արարից։ Ասէ Կիւրոս. Եւ արդ զիարդ, միթէ համբուրեցի՞ց զքեզ. Եթէ դու կամիս, ասէ։ Եւ ո՞չ զերեսս դարձուցանիցես յինէն, որպէս եւ այժմ իսկ. Ոչ դարձուցից, ասէ, զերեսս. եւ նա համբուրեաց զնա։

Իբրեւ տեսին Մարք եւ Պարսիկք եւ այլք բազումք. քանզի ամենեցուն հոգ

ի մտի էր թէ զինչ ինչ յայնմ ամենայնէ լինիցի, վաղվաղակի իսկ ուրախ եղեն եւ զուարթացան։ Կիաքսարէս եւ Կիւրոս յերիւար հեծեալ գային, եւ Մ՝արք զհետ երթային Կիաքսարայ, քանզի այնպէս իսկ հրաման տուեալ էր նոցա Կիւրոսի. եւ զկնի Կիւրոսի Պարսիկքն, եւ զհետ նոցա այլքն, եւ յորժամ հասանէին ի բանակն եւ կացուցին զԿիաքսարէս ի պատրաստեալ խորանն որոց հրամայեալն էր, եւ կազմեցին Կիաքսարայ զպէտսն կարեւորս։ Բայց Մ՝արք որչափ ժամանակս յառաջ քան ընթրիսն պարապորդ էր Կիաքսարէս, երթային առ նա ոմանք ինքնին յանձանց իսկ, եւ բազմագոյնք զի հրամայեալ էր ի Կիւրոսէ, եւ տանէին պատարագս. ոմն զքաջ տակառապետ, ոմն զամճաբեր եւ միւս ոմն զհացարար եւ ոմն զարուեստական եւ միւսն ըմպելիս եւ այլ ոք հանդերձ գեղեցիկ։ Նուամենայն ոք զմի ինչ յորոց ըմբռնեցան տայր նմա պարգեւս. որպէս զի փոխել Կիաքսարայ ի մտաց անտի եթէ Կիւրոս ոչ ի բաց դարձոյց զնոսա ի նմանէ եւ ոչ Մ՝արք սակաւ ինչ քան զառաջինն անսային նմա։

Իսկ իբրեւ ընթրեացն ժամն էր, կոչեցեալ Կիաքսարէս զԿիւրոս աղաչէր թէ վասն զի բազում այն ժամանակ էր զի չէր տեսեալ նորա զնա, ընդ իւր ըն-

թրեսցէ: Կիւրոս ասէր, Մի՞ դու ինչ զայդ հրաման տար, ով Կիաքսարէ. չտեսանե՞ս զի դոքա որ զմեւք կան, ամենեքին զմէնջ կախեալ կան: Նւ արդ ոչ բարւոք առնիցեմ, եթէ զնոցանէ անփոյթ առնիցեմ, եւ իմում յօժարութեան պաշտօն կարծիցիմ առնել: Զօրականք, եթէ զմտաւ ածիցեն թէ չառնի ինչ փոյթ զնոցանէ, որ լաւքն իցեն, շատ տրտմիցին եւ որ յոռիքն իցեն առաւել եւս թշնամանիցեն: Բայց դու ասէ, մանաւանդ զի երկար եւս ճանապարհ եկիր, ընթրեա. եւ որք պատուեննն զքեզ ընկալ զնոսա եւ արա խրախութիւննոցա. զի եւ զքեզ քաջալերեսցեն, եւ ես երթեալ վասն որոյ ասէին, դարձայց: Սաղիւ, ասէ, ընդառաւօտն այսրէն ի քո դրունան հասանիցեն ամենայն աւագանին, զի խորհուրդ խորհեսցուք ընդ քեզ, թէ զինչ պարտ իցէ յայսմ հետէ առնել. դու մեզ խօսեսցես վասն այսորիկ թէ արդեւք բարւոք թուիցի երթալ ի մարտ պատերազմի, թէ ի դէպ իցէ զզօրսն արձակել:

Ապա Կիաքսարէս զընթրեաքն էր: Իսկ Կիւրոս ժողովեալ ի բարեկամաց անտի զայնոսիկ որ բաւականքն էին խորհել, եւ գործակից լինել եթէ պիտոյ ինչ լինէր, խօսէր այսպէս ընդ սոսին բանից: Արք բարեկամք, զոր ինչ յա-

ւաջին ըղձանայաք, եկն եհաս աստուածովքն. զի ուր ուրեք եւ գնայցեմք, տիրեսցեմք երկրին, եւ զթշնամիսն տեսանիցեմք պակասեալս, եւ զմեզ յաճախագոյնս եւ զօրագոյնս: Այլ եթէ տակաւին կամիցին նիզակակիցքն, որ այժմ ի մեզ յաւելան, կալ մնալ, եւ առաւել եւս գործ կարեմք վճարել, եթէ ի դէպ իցէ բռնադատել, եթէ պատշաճ իցէ հաւանեցուցանել: Արդ զի կալն բազմաց ի մերոց նիզակակցաց հաճոյ թուիցի, ոչ իմ ինչ առաւել գործ է հնարելն: Այլ զոր օրինակ յորժամ մարտընչել հասանիցէ, որ զբազումս ձերբակալ առնէ, ուժգնագոյն կարծի, նոյնպէս յորժամ խորհրդականութեան պէտք ուրեք իցեն, որ զյոլովագոյնն ընդ մեզ միաբանեսցէ, նա յիրաւի խօսող ոք եւ ոչ եթէ ժրագլուխ ընտրիցի: Բայց մի որպէս թէ ցոյց ինչ մեզ զբանսըն առնիցէք, եւ թէ զինչ ինչ առ իւրաքանչիւր ոք ինոցանէ ասիցէք, զայն ածէք զմտաւ. այլ պատրաստեսջիք հաճել, հաւանեցուցանել զմի մի ի նոցանէ, մինչ զի որովք գործենն յայտ առնիցեն, եթէ հաւանեցան. ձեզ զայդ ամենայնէ փոյթ լիցի. իսկ ես զի զաճիկսն ունիցին զօրականքն վասն ընդ պատերազմս կամելոյ, զայնմանէ ջանացայց հոգալ որչափ ինչ կարօղ իցեմ:



# ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ
# ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ
## ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ
## Ջ. ԴՊՐՈՒԹԻՒՆ

---

### ԳԼՈՒԽ Ա

ԶԱՅՆ օր այնպէս անցուցանէին եւ ընթրեալ հանգչէին։ Ի վաղիւ անդր ընդ այգն ընդ առաւօտն գային հասանէին ի դրունս Կիաքսարայ ամենայն թիկունք օգնականութեանն։ Արդ մինչ դեռ Կիաքսարէս ընդ զարդ գայր, զի լուաւ եթէ ամբոխ բազում ի դրունսըն եկն, յայնժամ բարեկամքն ածէին առ Կիւրոս, կէսք զԿադուսեցին որ առաջչէին իսկ զնա կալ մնալ, կէսք զՎրկանացին, այլ ոմն զԳոբրիաս, եւ մեւս զՀակաս եւ զՎշտասպէս զԳադատաս ներքինի որ աղաչէրն զԿիւրոս մնալ։

Յայնժամ վայրի գիտաց Կիւրոս թէ Գադատաս յառաջագոյն իսկ յաՀէն սաստակի թէ մի գուցէ արձակեսցի բանակն, ծաղու առնէ. Ով Գադատաս յայտնի իսկ է, ասէ, թէ ի Վշտասպայ այտի գրգռեալ խօսիս զոր խօսիդ։ Գադա-

տաս կարկառեալ զձեռս յերկինս երդմնի լինէր, թէ ոչ ի Վշտասպեայ դըրդեալ գիտէ զոր գիտէ։ Այլ գիտեմ, ասէ, զի եթէ դուք ի բաց գնայցէք, որ ինչ իմ իցէ, ամենեւին իսկ խարխաբեալ կործանիցի, եւ վասն այնորիկ իսկ եւ ես մատեայ առ նա հարցանել, թէ գիտիցէ՞ եթէ յինչ միտս յոր խորհուրդս իցես վասն զզօրսն արձակելոյ։

Կիւրոս ասէ. Արդեօք յանիրաւի իսկ, որպէս նման իսկ է, զՎշտասպէս բամբասեմ։ Վշտասպէս ասէ. Յանիրաւի, ասէ, ով Կիւրոս. քանզի դիմադարձ լինէի Գադատայ թէ չիցէ քեզ մարթ մնալ, եւ ասէի թէ հայրդ կոչէ զքեզ։ Կիւրոս ասէ. Զի՞նչ խօսիդ. եւ զայդ եւս իշխեցեր ասէլ ամենեւին իսկ է վերհանել, թէպէտ ես կամէի թէպէտ ոչ։ Քանզի տեսի զքեզ, ասէ, ցանկացեալ երթալ շրջել երեւելի ի Պարսից աշխարհին. եւ ցուցանել մի ըստ միոջէ հօրդ, թէ զիարդ զինչ գործ վճարեցեր։ Կիւրոս ասէ. Դու ո՞չ ցանկանայցես երթալ յաշխարհդ։ Ասէ Վշտասպէս. Ոչ մեկնիմ, այլ մնամ եւ լինիմ զօրավար զօրաց մինչեւ առնիցեմ զԳադատաս տէր տարեստանեայն։

Զայս խաղս ընդ միմեանս խաղային խնամով։ Ապա Կիաքսարէս լուսաւոր մեծապայծառ զարդարեալ ելանէր, ի վերայ մարական աթոռոյն նստէր։ Ի-

բրեւ ամենեքին միանգամայն որոց պարտըն էր մտանել մտին, եւ լռութիւն լինէր, խօսել սկսաւ Կիրաքսարէս այսպիսի ինչ օրինակ. Արք Նիզակակիցք, թերեւս քանզի աստ դիպեցայ, եւ քան զԿիւրոս երիցագոյն եմ, ի դէպ է ինձ առնել սկիզըն բանիցն: Ինձ դիպող թուի, ասէ, նախ վասն այնորիկ արկանել խօսս, թէ արդեւք Հաճոյ թուիցի երթալ տակաւին զօրաժողով ի մարտ պատերազմի, եթէ արձակել զզօրս: Խօսեսցի ոք վասն նորին իսկ այնորիկ թէ զինչ ածիցէ զմտաւ:

Ապա նախ խօսէր վրկանացին: Արք պատերազմակիցք, ոչ գիտեմ, ասէ, եթէ պէտք ինչ իցեն բանից ուր արդիւնք իսկ իրացն յայտ զլաւն առնիցեն: Քանզի ամենեքին համագունդմիաժողով երթայցեմք, աւելի եղերս եւ ոճիրս թշնամեացն գործիցեմք, քան եթէ կռիցեմք ի նոցանէ վիշտս: Իսկ յորժամ մեկուսի ի միմեանց լինիցիմք, նոքին ի կիր արկանիցեն զմեզ, որպէս ինչ նոցա Հաճոյ թուեսցի եւ մեզ դժընդակ:

Յետ նորա ասէ կադուսիացին: Մեք զինչ ասիցեմք, ասէ, վասն մեկնելոյ իւրաքանչիւր ումեք յերկիր իւր եւ զատանելոյ, ուր եւ ոչ երթելոցն ի պատերազմ, որպէս յայտ է օգուտ ինչ է զատանելն: Ոչ բազում այն ժամա-

նակք են զի մեք ուրոյն ի մերմէ բազմ-
ամբոխ բազմութենէ, չոգաք ի մարտ
պատերազմի, եւ վրէժս տուաք որպէս
եւ դուք իսկ գիտէք։

Յետ նորա Արտաւազ, որ ասացն
երբեմն թէ ազգակից եմ Կիւրոսի, աս-
աէ այսպէս։ Ես, ասէ, ով Կիաքսարէ,
այսու զատ եմ յայնցանէ որ յառաջ
քան զիս խօսեցան. զի սոքա ասեն
տեւել եւ երթալ ի պատերազմ, բայց
ես ասեմ թէ յորժամ երթայցեմք յաշ-
խարհն մեր, ի պատերազմ երթայցեմք,
քանզի ես բազում անգամ յօգնակա-
նութիւն երթայի յորժամ զմեր ինչ
կրէին եւ վասն պահակացն նոցա, զի
նենգ իմն գործէին, բազում անգամ
իմ իսկ գործ էր, թէպէտ պահապա-
նօք էի, երկընչէի. եւ զայդ առնէի զիմ-
արն իսկ ծախելով։ Բայց այժմ ունիմք
զպահակս նոցա, զնոցայն ուտեմ, ըզ-
թըշնամեացն ըմպեմ։ Որ ինչ յաշխար-
հին մերում իցէ, պատերազմ իցէ, իսկ
սոքա տօն. ինձ ոչ բարւոք թուի քա-
կել զտօնավաճառ շահիցս։

Յետ նորա Գոբրիաս ասէ, Ես, ով
արք պատերազմակիցք, մինչեւ ցայս
վայր գովեմ զաջն Կիւրոսի, զի ոչ մի
ինչ ստեաց յորոց խոստացաւն. այլ
եթէ մեկնեսցի եւս յերկրէ աստի,
յայտ է եթէ հանգիցէ ասորեստանեայն
եւ չտայցէ զպատիժս այնր ամենայնէ

որովք ձեռն արկ զրկել զձեզ եւ որովք ինձն վնաս գործեաց. եւ ես միւսանգամ տայցեմք վրէժս զի ձեզ բարեկամս եղէ։

Յետ նոցա ամենեցուն ասէ Կիւրոս. Ով արք, եւ յինէն չէ ծածկեալ թէ յորժամ զզօրսն արձակիցեմք, մերքն տկարագոյնք լինիցին, եւ հակառակորդքն միւսանգամ մեծանայցեն։ Զի զէնք եթէ բարձան ի նոցանէ, այլ զէնս գործիցեն. թէպէտ յերիվարաց զրկեցան, վաղվաղակի դարձեալ այլ երիվարս ստանայցեն։ Եւ փոխանակ ընդ մեռելոյն այլք ի չափ հասանիցեն եւ մի ըստ միոջէ ծնանիցին։ Որպէս զի չեն ինչ զարմանք եթէ արագ արագ միւսանգամ մեզ աշխատութիւն մարթիցեն հասուցանել։

Զի՞մ ես հրաման ետու Կիաքսարայ խօսս արկանել վասն արձակելոյ զօրուն, զի երկընչիմ իմն յայնմանէ որ գալոցն իցէ։ Քանզի տեսանեմ զախոյեանսն մօտ եկեալ հասեալ, ընդ որոց մեք եթէ այնպէս ի դիմի հարկանիցիմք, չկարիցեմք կռուել. զի ձմեռն հասանէ, թէպէտ եւ յարկք են մեր, այլ ոչ երիվարացն եւ ոչ սպասաւորացն եւ ոչ խառնիճաղանճ բազմութեան զօրականացն։ Առանց նոցա մեք չկարեմք երթալ ի մարտ պատերազմի. եւ համբարք սպառեցան ուր ուրեք լու-

ծայք։ Իսկ ուր ոչն հաստք, վասն ի մէնջ երկընչելոյ, պնդեալ պաշարեալ կան յամուրսն, որպէս զի նոքա ունել ունին, բայց մեք չկարեմք առնուլ։ Արդ ո՞ ոք այնպէս սաստիկ իցէ որ ընդ քաղց եւ ընդ ցուրտ կարիցէ կռուել եւ երթալ ի պատերազմ։

Արդ եթէ այսպէս երթայցեմք ի պատերազմ, ես ասեմ թէ պարտ է կամաւ իսկ մանաւանդ արձակել ըզզօրսն, քան յակամայ կամս յանհնար հնարից քակել։ Այլ եթէ կամիցիմք տակաւին տալ պատերազմ, ես ասեմ թէ եւ՛ զայս ինչ եւս պարտ իցէ առնել, փութալ վաղվաղակի իսկ զբազումս յամուր ամուր վայրացն նոցա թափել ի նոցանէ, եւ մեզ բազում ամուրս գործել։ Զի եթէ այն լինիցի, զհամբարսն յաճախագոյնս ունիցին, որք յոլովագոյնն կարիցեն առնուլ եւ մթերել եւ յարդել արկեալ պաշարեացին որ նուազագոյնն ունիցին։ Բայց այժմ չեմք ինչ ընդհատ յայնցանէ որ ի համատարած ծովուն նաւարկիցեն. քանզի եւ նոքա նաւարկեն միշտ, այլ ոչ ընդ որ նաւենն թողուն ինչ անձանց, քան ընդ որ չիցենն նաւեալ։ Այլ եթէ պահակք լինիցին մեր, նոքին հանիցեն զերկիր թշնամեացն, եւ ամենայն ինչ մեր ի խաղաղութեան իցէ։

Բայց թերեւս ոմանք ի ձէնջ երկնչիցին, թէ հեռագոյն ի ձերոց աշխարհացն հասանիցէ պահ դնել, մի ինչ ընդ այն տատամսիցիք։ Զի մեք թէպէտ եւ յաշխարհէ ի տար աշխարհ եկեալ իցեմք, յանձն առնուցումք զերկիրս մօտաւորս թշնամեացն պահել։ Իսկ դուք զսահմանս Ասորեստանեաց աշխարհին որ մօտ ձեզ իցեն, զնոսա ստացարուք եւ ի գործ արկէք։ Զի եթէ մեք զմօտաւոր վայրսն նոցա կարիցեմք պահել եւ ապրեցուցանել, ի բազում խաղաղութեան, դուք որ ըզվայրսն զհեռաւորս ունիցիք, կեցցէք։ Վասն զի ոչ եթէ մարթիցեն զիւրեանց մօտաւորն չարեաց անփոյթ արարեալ, ձեզ հեռաւորացդ նենգել։

Իբրեւ այս ամենայն ճառեցաւ, ամենեքին յարուցեալ միաբան յօժարութեամբ յանձին կալան. յանձն առ եւ Կիաքսարէս։ Եւ Գադատաս եւ Գոբրիաս երկոքին զպարիսպն իւրեանց, եթէ հրաման տայցեն պատերազմակիցքն, յանձն առին ամրացուցանել, որպէս զի եւ նոքին խաղաղութեան երկիր նիզակակից ընկերացն լինիցին։ Կիւրոս իբրեւ ետես զամենեսեան յօժարեալս առնել զոր ինչ ասացն, ասէ. Արդ եթէ կամիցիմք ի գլուխ հանել զոր ինչ միանգամ ասացաք եթէ պարտ իսկ է առնել, հարկ է վաղվաղակի մեն-

քեննայս պատրաստել առ ի քաշել զհակառակորդացն պարիսպն, եւ ամաշէն գաղատոսս առ ի կազմելոյ մեզ աշտարակս ամուրս: Նոյն խոստանայր Կիաքսարէս թէ ինքն տացէ գործել մեքենայս, եւ Գադատաս եւ Գոբրիաս խոստացան եւ Տիգրանէս եւս. ինքն իսկ Կիւրոս յանձն առ փութալ այլ եւս մեքենայս կազմել: Իբրեւ այն վճարեցաւ մեքենագործս խնդրէին, եւ պատրաստէին իւրաքանչիւր առ մեքենայսն որ ինչ պիտոյն էր. եւ կացուցին եւս արս ի նոյն բաւականքս:

Կիւրոս իբրեւ գիտաց եթէ կայ դեգերել ի նոսա, կարգէր կացուցանէր զզօրսն ուր առաջագոյնն թուէր եւ դիւրին էր կրել անդր որ ինչ պիտոյն էր կրելոյ. եւ որ ինչ ամրութեան կարօտ էր, այնպէս յարդարէր զի միշտ իսկ ի զգուշութեան կայցեն, թէպէտ եւ հեռացեալ եւս երբեմն ի զօրութենէ անտի բանակին էին: Հանդերձ նաքիմէք հարցանէր եւս զայնոսիկ զորոց գիտէր թէ վայրացն հմուտ են, եթէ ուստ՞ աւելագոյն շահս զօրքն շահիցեն, եւ միշտ իսկ ի ճարակս հանէր, զի յաճախագոյն առնուցու զհամբարս բանակին, զի առաւել առողջագոյնք լինիցին եւ ուժգնագոյնք վաստակեալք ի ճանապարհաց անտի եւ զի ի տանել զկարգսն մի մոռասցին:

Կիւրոս զայնու էր. իսկ ի Բաբելոնացւոց աշխարհէն որոց անձամբ զանձինս վտարանդի տուեալ էր եւ ըմբռնեալ, զայս ինչ զրոյց տային եթէ ասորեստանեայն ի Մեդացւոց աշխարհն չոգաւ, բազում տաղանտս արծաթոյ եւ ոսկւոյ տարեալ եւ այլ եւս ստացուածս եւ սպասս ազգիազգիս։ Արդ ամբոխ զօրացն կարծէր եթէ երկուցեալ զինչս ի պահ անդէն դնիցէ. բայց Կիւրոս գիտաց եթէ գնաց գումարել հակառակորդս եթէ կարիցէ ինչ, պատրաստէր զանձն սաստկագոյնս, զի տակաւին մարտնչել իսկ հասանէր, եւ ընդ զՊարսից այրուձին. առնոյր եւ ի գերւոյն եւ զամանս ի բարեկամացն հեծեալս։ Քանզի յամենեցունց ընդունէր եւ մերժէր ինչ ոչ եթէ զէն ոք գեղեցիկ տայր եթէ երիվար։

Կազմէր եւ կառս ի գերեացն կառաց այլուստ ուստեք ուստի կարէրն, եւ զառաջին զտրովացի կառսն եւ զԿիւրենացւոց կառսն որ ցայժմ կան, բարձ ի միջոյ. զի զառաջին ժամանակն որ ի Մարաց եւ յԱսորւոց եւ յԱրաբացւոց աշխարհին եւ ամենեքին իսկ որ ի կողմանս Ասիացւոց էին այնպիսի կառս արկանէին ի կիր, որպէս այժմ Կիւրենացիքն։ Զի մտաւ ած թէ ընտիր ընտիր զօրացն, յորժամ ազնուագոյնք ի կառսն իցեն, յառաջնաւորաց կարգի իցէ եւ ոչ մեծ

ինչ նպաստ ի յաղթութիւնն լինիցի։ Զի երեքարեւր կառք երեքհարեւր մարտիկ պատերազմօղս մատուցանեն, եւ նոքին հազար եւ երկերիւր երիվարս վարեն, եւ երեքհարեւր կառավարք են նոցա, որպէս ի դէպ իցէ, յորս առաւել յուսան քաջքն. բայց նոքա ոչ մի ինչ ամենեւին կարեն հակառակորդացն մեղանչել։

Արդ զայն կառս եբարձ ի միջոյ, եւ փոխանակ նոցա պատերազմի կառս կազմեաց հաստ անուովք, զի մի դիւրաւ խորտակեսցի եւ երկայն ծայրիւք զի մի ամենայն լայնութիւնն կործանեսցի, եւ աթոռ վանդակակապ կառավարացն գործէր իբրեւ զաշտարակ ի հաստաբեստ փայտից, եւ բարձրաբերձ բարձրութիւն նոցա մինչեւ ցգիրկս կառավարին, զի կարիցեն զսանձսն ունել զերիվարացն ի վերոյ աթոռոցն, եւ զկառավարսն ամենեւին զրահապատ պատենազէն զարդարէր, բայց միայն յաչացն. դնէր եւ գերանդիս երկաթիս առ անուացն յաջմէ եւ յահեկէ անուոցն, եւ այլ եւս գերանդիս ի խոնարհ ի ներքոյ անուոցն որ ի գետին հայիցեն զի մխեսցին ի հակառակորդս կառացն։ Որպէս զայդ ամենայն կազմեաց պատրաստեաց յայնժամ Կիւրոս, եւ ըստ նմին օրինակի մինչեւ ցայժմ վարեն զկառսն որ յերկրի Թագաւորին իցեն։ Իւրն նորա եւ ուղտք

բազումք առ ի բարեկամաց ժողովեալ եւ ի գերութենէ անտի։

Այս այսպէս վճարէր։ Բայց իբրեւ կամէր առաքել զոմն դէտ ի Լիւդաստան եւ ուսանել թէ զինչ գործիցէ ասորեստանեայն, պատեհ թուեցաւ նմա Արասպայ երթալ, այն որ զկինն գեղեցիկ պահէր. քանզի այս անցք անցին ընդ Արասպաս։ Ամբռնեալ կնոջն տենչանօք հարկ համարեցաւ արկանել խօսս ընդ նմա վասն լինելոյ ընդ նմա, եւ նա չառնոյր յանձն, քանզի հաւատարիմ առն իւրում թէպէտ եւ հեռի եւս էր, քանզի սաստիկ սիրէր զնա, բայց չլինէր ամբաստան զԱրասպայ առաջի Կիւրոսի, քանզի չկամէր զարս բարեկամս ընդ միմեանս արկանել։ Իսկ Արասպէս իբրեւ կամեցաւ սպառ առնել հասանել այնմ զոր խորհէրն, սպառնացաւ կնոջն, եթէ ոչ կամիցի իւրով կամաւ, ակամայ զնոյն առնիցէ։ Յայնմ հետէ կինն քանզի երկեաւ ի բռնութենէ անտի, ոչ թագոյց այնուհետեւ, այլ առաքէ զներքինին առ Կիւրոս, եւ հրամանաւ տայ պատմել զամենայն։

Նա իբրեւ լուաւ, ծիծաղեալ ի վերայ նորա զի վերագոյն քան զցանկութիւն լինել ասէր, առաքէ զԱրտաւազ ընդ ներքինւոյն, եւ հրամայէ ասել նմա մի բռնադատել զայնպիսի կին, իսկ հաւանեցուցանել եթէ կարիցէ, ոչ արգե-

լուեալ ասէ։ Երթեալ Արաասպայ առ Արաասպաս, թշնամանս դնէր նմա, անուանէր աւանդ զկինն եւ ասէր զամպարըշտութիւն նորա, զապիրատութիւնն եւ զանխառնութիւնն, մինչ շատ արտասուել Արաասպայ առ տրտմութեանն եւ յամօթոյն կորանալ եւ յահէն տագնապել միգուցէ եւ ի Կիւրոսէ կրիցէ ինչ։

Զայս իմացեալ Կիւրոսի, կոչեաց զնա եւ միայն ընդ միայն խօսէր. Տեսանեմ զքեզ, ասէ, ով Արաասպա, յինէն երկուցեալ եւ ամօթով տագնապեալ. արդ դադարեա յայնմ ամենայնէ։ Քանզի եւ զդից լսեմ ի ցանկութենէ ի պարտութիւն մատնեալ, գիտեմ եւ զմարդիկ որ առաւել հանճարեղքն թուէին այնպիսի ինչ կրեալ ի տենչանաց։ Բայց այդր գործոյ պատճառք ես իսկ եմ, զի փակեցի զքեզ ընդ այնպիսի իրաց ընդ որում չմարթի կռուել։ Եւ Արաասպաս ասէ. Դու ով Կիւրէ, զայդ այսպէս գործես որպէս եւ զայլ եւս բազում ինչ իրս, քանզի զգօն եւ հանդարտ ես եւ ներող եւ արգահատող մարդկօրէն յանցանաց։ Բայց զիս, ասէ, այլ մարդիկ տրտմութեամբ նեղեն, քանզի սփռեցաւ շշունջ վշտաց իմոց, թշնամիքս ուրախ լինին ի վերայ իմ, եւ բարեկամք մատուցեալ խրատ տան մերժել զանձն եւ հեռանալ, զի

մի ինչ կրիցեմ ի քէն զի զրկեցիս զքեզ։

Կիւրոս ասէ. Գիտասջիր դու ով Արտապա, եթէ դովին կարծեօք մարթես դու ինձ մեծ ինչ շնորհս առնել, եւ նիզակակցաց յաճախագոյն օգուտ։ Ասէ Արտապաս. Իցիւ եթէ ի դէպ ժամու լինիցիմ քեզ պիտանացու։ Արդ եթէ կերպարանեալ, ասէ, որպէս թէ հատուած գնալ կամիցիս յինէն երթայցես առ թշնամիսն, թուի ինձ թէ հաւատարիմ երեւիցիս դու թշնամեացն։ Ասէ Արտապաս, Գիտեմ, թէ եւ ի բարեկամաց տարածանիցի համբաւն, թէ փախստեայ գնամ ի քէն։ Ապա եկեսցես, ասէ, առ մեզ զամենայն ինչ տեսեալ զթշնամեացն։ Թուի ինձ թէ բանից եւ խորհրդոց հաղորդ առնիցեն զքեզ վասն համարելոյ զքեզ. մինչեւ ոչ մի ինչ ծածկեսցի ի քէն յորոց կամիցիմք գիտել։ Արդ այժմիկ իսկ, ասէ, յուղի անկեալ երթայց. քանզի եւ այս մի ինչ նշանակ հաւատարիմ լինելոյ է, կարծեցուցանելն թէ ես ինչ կրելոց էի ի քէն եւ ի բաց փախեայ։

Միթէ կարիցե՞ս, ասէ, թողուլ զգեղեցիկ Պանթիայն։ Հաստատութեամբ, ասէ, ով Կիւրոս երկուս ոգիս ունիմ. այժմիկ իսկ զայսմանէ ճարտարմտեցի յետ անիրաւ իմաստութեան ցանկութեանն, զի ոչ եթէ մին մերթ բարի

իցէ եւ մերթ չար, եւ ոչ լաւութեան եւ յոռութեան գործոց միանգամայն ցանկանայցէ. եւ զնոյնս կամիցի եւ չկամիցի գործել. ապա յայտ ուրեմն է եթէ երկու ոգիք են, եւ յորժամ առատ ոգին գլէ, լաւութեան գործք գործին, իսկ յորժամ յոռին յաղթիցէ ծանականաց իրք վճարին: Եւ այժմ քանզի զքեզ զօրաւիգն օգնականութեան առ, լաւն առաւել իշխէ:

Ասէ Կիւրոս. Այսուհետեւ եթէ հաճոյ թուեսցի քեզ երթալ, այսպէս պարտ է առնել, զի եւ նոցա հաւատարիմ լինիցիս. պատմեա նոցա որ ինչ առ մեզս իցէ, եւ այնպէս պատմեսջիր, զի որ ինչ առ ի քէն ասիցի, առաւել արգել եւ խափան լինիցի այնմ, զոր գործելն կամիցի. եւ լինիցի խափան, եթէ ասիցես թէ պատրաստ լինիմք յարձակել ուրեք ի վայրաց նոցա: Զի յորժամ զայն լսիցեն, եւ ոչ զընաւին իսկ զզօրութիւնս գումարեսցեն, իւրաքանչիւր ուրուք երկուցեալ վասն ընտանեացն: Եւ մնա, ասէ, առ նոսա բազում ժամանակս զի զինչ առնենն յորժամ մօտ առ մեզ հասանիցեն, զայն իսկ մանաւանդ գիտող է մեզ գիտել. եւ խրատ եւս տուր նոցա ճակատ յարդարել ուր ազնուագոյնն թուիցի: Զի յորժամ դու մեկնիցիս, թէպէտ եւ գիտիցես դու զկարգս նոցա, հարկ

է այնպէս իսկ ճակատել նոցա. քանզի ոչ կամիցին զճակատն փոփոխել, եւ եթէ յայլ ինչ ճակատ փոխիցեն, վաղվաղակի իսկ աղմկիցին։

Արտապայ այնպէս երթեալ, առեալ ընդ իւր զծառայսն հաւատարիմս եւ պատմեալ ոմանց զոր ինչ օգուտիբացն կարծէր, գնայր։ Իսկ Պանթիայ իբրեւ ազդ եղեւ եթէ Արտապաս գնաց, առաքեաց առ Կիւրոս, ասէր. Մի տրտմիր ով Կիւրոս եթէ Արտապաս առ թշնամիս երթայ։ Զի թոյլ տայցես ինձ առաքել առ այրն իմ, յանձն առնում քեզ թէ եկեսցէ առ քեզ եւ քան զԱրտապաս հաւատարիմ բարեկամ իցէ, եւ զօրս որչափ մարթիցի առնուլ եւ գալ առ քեզ։ Վասնզի եւ հայր այժմու թագաւորին բարեկամ էր նորա. եւ որ այժմ թագաւորեաց, ձեռն արկ երբեմն զիս եւ զայրն իմ ի միմեանց քակել։ Արդ քանզի զնա թշնամանիչ համարի, գիտեմ եթէ յօժարութեամբ առ այր մի որպիսի ոք դու իցես, անկեալ զերծանիցի։

Զայս լուեալ Կիւրոսի հրամայէ առաքել առ այրն. եւ նա առաքեաց։ Իբրեւ գիտաց Աբրադատէս զառ ի կնոջէն նշանակսն, եւ զայլոց եւս իրաց լուեալ, անդէն գայր առ Կիւրոս, առեալ երիվարս իբրեւ երկու հազար։ Իսկ իբրեւ եհաս ի Պարսից դէտսն, առաքէ

առ Կիւրոս ասել թէ ո ոք իցէ: Եւ Կիւրոս իսկ եւ իսկ հրաման տայ ածել զնա առ կինն: Յորժամ տեսին զմիմեանս կինն եւ Աբրադատէս, ողջոյն ետուն միմեանց որպէս ի դէպ էր: Ապա պատմէ Պանթիա զԿիւրոսի սրբութիւնն եւ զզգաստութիւնն, եւ զանախնամսն: Իսկ Աբրադատայ լուեալ ասէ. Եւ արդ զի՞նչ առնիցեմ, ով Պանթիա, զի ընդ քո եւ ընդ իմ հատուցանիցեմ Կիւրոսի շնորհս: Ոչ ինչ այլ ինչ, ասէ, բայց զի ջանայցես փութով յօժարութեամբ այնպիսի ոք առ նա գտանել, որպիսի ոք նա առ քեզ գտաւ:

Ապա երթայ առ Կիւրոս Աբրադատէս, եւ իբրեւ ետես նա զնա, բուռն հարեալ զաջոյ նորա ասէր. Ընդ բարեացն զոր արարեր մեզ ով Կիւրոս, զինչ ասիցեմ մեծ եւս ինչ, բայց զի բարեկամ տամ քեզ զանձն իմ եւ պաշտօնեայ եւ նիզակակից. եւ յոր ինչ տեսանիցեմ զքեզ փութացեալ, բարւոք գործակից լինել ջանայցեմ: Եւ Կիւրոս ասէ. Եւ ես ընդունիմ, եւ թողում զքեզ, ասէ, ընթրել այժմ ընդ կնոջդ: Եւ անդէն առ իս պարտ է քեզ ընակել ընդ քոց եւ իմոց բարեկամաց:

Յետ այնորիկ տեսեալ Աբրադատայ զԿիւրոս աշխատ լեալ վասն գերանդաղէն կառացն, եւ վասն զրահապատ

երիւարացն եւ հեծելոց, ջանայր հարեւր կառս յիւրոց հեծելոցն համագոյնս նմին ի գլուխ հանել. եւ ինքն կազմ եւ պատրաստ լինէր առաջնորդ լինել նոցա. եւ լծէր զիւր կառսն ի չորից սամեաց եւ յութ ձիոց: Իսկ Պանթիակին նորա յիւրոց ընչից գործէր նմա զրահս ոսկեզօծս եւ սաղաւարտ ոսկի. նոյնպէս բազկաց արկանելիս. եւ զերիւարս կառացն ամենեւին պղնձի արկանելեօք կազմէր:

Աբրադատէս զայս ինչ գործէր: Իսկ Կիւրոսի տեսեալ զչորից սամեաց կառսն ի միտ առ եթէ մարթի եւ յութից սամեաց գործել, որպէս զի ութ լծովք երընջոց տանել զներքին շինուած մեքենայիցն: Եւ էր այն երեքուղկեան յերկրէ անուովք հանդերձ. զի այնպիսի աշտարակք յորժամ երթայցեն կարգաւ մեծ իմն օգնականութիւն իւրում ճակատուն թուիցին լինել, եւ առաւել վնաս զնդի թշնամեացն: Արար եւ ի վերայ շինուածոց ճեմելիս եւ մահարձանս կազմեալ յօրինէր եւ ի վերայ իւրաքանչիւր աշտարակացն քսան քսան սպառազէնս կացուցանէր:

Իբրեւ ամենայն կարգէր եւ յարդարէր որ վասն աշտարակացն ինչ էր, զչափ առնոյր զվարելոյն. եւ յոյժ իսկ դիւրագոյն տանէին ութ լուծքն զաշտարակն եւ զարան որ ի վերայ աշտարակին

էին քան զբեռնաբարձ լուծս կառացն քանզի գոյր լծոյն կշիռ իբրեւ քսան եւ հինգ քանքար. իսկ աշտարակին, քանզի իբրեւ վրանի թանձրութիւն էր փայտիցն. եւ քսան քսան վառեալ սպառազէն եւ քսան քսան զէնք էին, նորքիմբք լինէր պակաս քան զհնգետասան տաղանդ հասանել տանել իւրաքանչիւր լծոյ։ Իբրեւ գիտաց թէ դիւրին իցէ վարելս, պատրաստ լինէր զի զաշտարակին զօրջքն հանդերձ տարցի, զմտաւ ածեալ թէ ի պատերազմի առաւելութիւն լինիցի եւ փրկութիւն եւ աջողութիւն։

## ԳԼՈՒԽ Բ

ՅԱՅՆՄ ժամանակի եկին եւ ի Հնդկաց որ զգանձսն բերէին, եւ պատմէին նմա եթէ զայս ինչ պատուիրեաց Հնդկաց արքայն։ Ես, Կիւրոս, ուրախ եմ զի պատմես դու ինձ որովք կարօտ իցես. եւ կամիմ քո իսկ հիւր լինել, եւ առաքեմ ես քեզ գանձս, եւ եթէ այլ եւս պիտոյ լինիցի, առաքեա. զի հրամայեալ է իմոցն տանել զոր ինչ դու հրամայեսցես։

Կիւրոսի լուեալ ասէ. Հրամանս տամ ձեզ, ասէ, զի որք մնալոց իցէք, առ տէն բնակեցարուք պահել զկարասին, եւ կեալ որպէս զիարդ ձեզ հաճոյ թը-

ւիցի. եւ երբէք ի ձէնջ երթեալ առ հակառակորդսն իբրեւ ի Հընդկաց Թագաւորէ վասն Թիկանց օգնականութեան, եւ ի միտ առեալ որ ինչ անդն իցէ, զոր ինչ խօսինն եւ գործեն, վաղվաղակի զրոյց տուք ինձ եւ արքային Հընդկաց. եւ եթէ զայդ սպասաւորութիւն քաջ հարկանիցէք ինձ, առաւել եւս վասն Նորին շնորհակալ եղէց ձեզ, քան եթէ զի եկայք բերէք ինձ գանձս: Զի դէտք ծառայից նմանիք ոչ ինչ այլ ինչ մարթեն գիտել եւ պատմել, բայց զոր ամենեքինն գիտեն: Բայց այսպիսի արք, որպիսիք դք դուք իցէք, բազում անգամ եւ զխորհուրդս առնուցուն ի միտ:

Իսկ Հընդկաց, քաղցրութեամբ լըւեալ եւ հիւրացեալ յայնժամ առ Սիւրոսի, ի վաղիւ անդր կազմեալ պատրաստեալ յուղի անկանէին, եւ խոստանային եթէ բազում ինչ ուսեալ ի թշնամեացն, որչափ հնար իցէ, եկեսցեն վաղվաղակի: Կիւրոս մեծավայելուչ զճակատուն պատրաստէր, քանզի ոչ ինչ փոքր ինչ կամէր վճարել այրն: Եւ ոչ եթէ զայն եւեթ որ նիզակակցացն հաճոյ թուէր, հոգայր, այլ եւ զմիմեամբք զբարեկամսն արկանէր, զի իւրաքանչիւր քաջ վառեալ եւ հեծեալ երեւիցին, եւ արագունք յաղեղն եւ ի նետ եւ աշխատասէր միտս ունիցին:

Զայս ամենայն յարդարէր յորս հանեալ, եւ զառաքինիսն մեծարեալ պատուով։ Տեսանէր եւ զիշխանսն զի վասն նորին հոգ ի մտի ունէին, թէ զիարդ քաջք զօրականքն լինիցին, եւ զնոսա գովելով գրգռէր, եւ շնորհս եւս առնելով նոցա զոր ինչ միանգամ կարէրն։ Եթէ երբեմն զոհս մատուցանէր եւ տօն կատարէր, եւ ի նմին տօնի որ ինչ վասն պատերազմի հանդէս առնիցեն մարդիկ, այնր ամենայնի մըրցութեան հրահանգս առնէր, եւ պարգեւս որոց յաղթիցեն բաշխէր, եւ բազում ուրախութիւն էր ի բանակի անդ։

Գրեթէ ամենայն ինչ եւ ի գլուխ, զոր կամէրն Կիւրոս ունել եւ երթալ ի պատերազմ բայց ի մենքենայիցն. քանզի Պարսից հեծեալքն բեւրք եղեն, եւ կառքն գերանդազէնք, զոր ինքն կազմէր, հարեւր կառք բովանդակեցան, եւ զորս Աբրադատէս շաւշացի ձեռն ի գործ արկ կազմել հանգոյնն Կիւրոսի, եւ նոքին բովանդակեցան այլ եւս հարեւր։ Եւ հաճեաց Կիւրոս զԿիաքսարէս՝ զմարական կառսն ի նոյն օրինակ փոփոխել ի տրովացի եւ ի լիբէացի կառաց. գումարեցան եւ նոքա միանգամայն այլ եւս հարեւր։ Եւ ի վերայ ուղտուցն կարգեալ կային երկու երկու աղեղնաւորք առ մի մի ուղտ։

Մեծ մասն զօրացն այնպիսի ինչ միտս ունէր, որպէս թէ բնաւ յաղթեցին իսկ. եւ համարէին թէ որ ինչ թշնամեացն իցէ, այն ոչ ինչ է։

Մինչ դեռ այնպիսի միտսն ունէին, եկին հասին Հընդիկք ի թշնամեաց անտի զոր առաքեալ էր Կիւրոսի լրտեսել, եւ պատմէին եթէ Կրիւսոս սպարապետ եւ ամենեցուն զօրավար ընտրեցաւ ի թշնամեացն, եւ հրաման տուաւ ամենայն նիզակակից թագաւորաց համօրէն զօրօք միանգամայն գալ հասանել, եւ գանձս բազումս ընդ իւրեանս բերել, եւ զայն կշռել, առ վարձելոյ զոր կարող իցեն վարձել, եւ պարգեւս որոց պարտ իցէ բաշխել, եւ վարձել զբազումս ի Թրակացւոց սուսերաւորաց, եւ Եգիպտացւոց նաւարկել գալ. զթիւ համարոյն ասէին երկոտասան բեւր լեալ ասպար ի ձեռն եւ յաղթ տիգօք եւ գեղարդեամբք զոր եւ ցայժմ ունին, եւ սուսերովք. նաւարկել եւ Կիպրացւոց զօրուն եւ հասանել ամենայն Կիղիկեցւոց եւ փռիւգացւոց եւ Լիկայոնացւոց եւ Պափղագոնացւոց եւ Գամրաց եւ Արաբացւոց եւ փիւնիկեցւոց եւ ընդ իշխանի Բաբիղացւոց աշխարհին, Ասորեստանեացն եւ Յոնիացւոց եւ Եւողացւոց եւ գրեթէ ամենեցուն իսկ Յունաց ասիացւոց հարկել զհետ երթալ Կրիւսոսի. եւ առա-

քել Կրիսոսի ի Լակեդեմոն վասն Թիկանց օգնականութեան. եւ զոր գումարել զՊակտողան գետով, եւ հանդերձել կանխագոյն երթալ նոցա ի Թիւբառա, եւ արդ եւս ժողով բարբարոսացն ստորին Ասորւոց, որ ընդ Թագաւորաւն իցեն, անդ է. եւ ամենեցուն պատմել թէ զվաճառսն անդր բերիցեն։ Եւ գրեթէ զնոյն պատմէին եւ գերեալքն. քանզի փոյթ ի մտի ունէր Կիւրոս զի ըմբռնեսցին ոմանք յորոց իմասցի ինչ. առաքէր եւ դէտս հանգոյն ծառայից իբրեւ վտարանդիս։

Արդ իբրեւ լուաւ զայս ամենայն բանակն Կիւրոսի, ամենայն ոք ի հոգս էր, որպէս ի դէպ էր իսկ, հանդարտագոյնք լռեալ երեւէին որպէս չէին սովոր. եւ բազումք բնաւ իսկ չերեւէին զուարթունք, բակ առեալ ժողովէին, եւ լի էր ամենայն այնոքիւք որ զմիմեանս վասն նոցին հարցանէին եւ խօսէին ընդ միմեանս։ Իբրեւ ազդ լինէր Կիւրոսի եթէ ահ մածեաւ զզօրօքն, ի մի վայր կոչէր զիշխանս զօրացն, եւ զամենեսին որոց ի վհատելն համարէր թէ վնաս ինչ գործիցի, եւ ի յօժարելն օգուտ։ Յառաջագոյն պատուիրէր եւ սպասաւորացն թէ յորժամ այլ ոք ի վառելոցն մատուցեալ կամիցի ունկն դնել բանիցն, մի արգելուլ։ Իբրեւ ի մի վայր եկին, խօսէր այսպէս։

Արդ նիզակակիցք, ես կոչեցի զձեզ, զի տեսի զոմանս ի ձէնջ, յորժամ զըրոյցք հասին ի թշնամեաց անտի, ամենեւին հանգոյնս զարհուրելոց մարդկան։ Զի ինձ զարմանք իսկ թուին եթէ ոք ի ձէնջ, քանզի չհակառակորդաց տեսն թէ գումարին, զանգիտիցէ. զի այժմ մեք յաճախագոյն գումարեալ եմք, քան ի ժամանակի զի յաղթեցաք մեք նոցա, եւ եւս ազնուագոյն ընդ աստուածոց այժմիկ կազմեցաք, քան յառաջնում նուագին. զայս տեսեալ ո՞չ խրախուսիցէք։ Զի՞նչ ինչ գործիցէք, որ այժմիկ իսկ զարհուրեալ էք, եթէ պատմիցեն ոմանք որ ինչ առ մեզս իցէ։ Նա նախ իսկ լուարուք, ասէ, զի որ յառաջագոյնն յաղթեցին մեզ, նոքին միւսանգամ գան, եւ ունին ի մտի զյաղթութիւնն զոր երբեմն յաղթեցին. եւ ապա ոյք քակեցինն զյարձակումն աղեղնաւորացն եւ տիգաւորացն, նոքին այժմ գան, եւ այլք եւս բազումք նոցին նմանք. եւ ապա զոր օրինակ նոքա վառեալք յաղթեցին յայնժամ հետեւակաց, նոյնպէս եւ այժմ հեծեալք նոցա պատրաստեալք մատչին առ հեծեալս, եւ զաղեղունսն եւ զտէգսն զայն ի բաց ընկեցին, եւ զհզօր ապարան առեալ իւրաքանչիւր ոք ի նոցանէ խորհի գալ հասանել, զի ի մօտոյ տացէ պատե-

բազմ: Եւ կառք եւս արշաւիցին, որ ոչ այնպէս կացցեն եւտեղակալ զոր օրինակ յառաջն իբրեւ ի փախուստ դարձեալ, այլ երիվարք որ ի կառսն լծեալ իցեն, զրահապատք իցեն, եւ կառավարք ի վանդակակապ մարտկոցսն ի վերայ աշտարակացն կայցեն, եւ բնաւ վերին կողմն զրահապատ պատենազէն սաղաւարտեալ, եւ գերանդիս երկաթիս աղխեալ ընդ անիւսն, զի եւ նոքին իսկ եւ իսկ դիմեսցեն ի գունդս թշնամեացն: Ուղտք եւս են նոցա, յորոց զմին հարեւր ձիք չհանդարտիցեն տեսանել: Եւս աշտարակօք հասանիցեն, յորոց իւրեանց զօրացն օգնական լինիցին եւ զձեզ ձգեալ արգելուցուն կռուել ի հարթ յողորկ վայրի:

Եթէ զայդ ամենայն պատմէր ոք ձեզ զթշնամեացն, որ այժմդ երկուցեալ էք, զի՞նչ գործէիք: Յորժամ պատմեցինն ձեզ եթէ Կրիւսոս ի թշնամեաց զօրավար ընտրեցաւ, որ այնչափ ապաժաման քան զԱսորիսն գտաւ, զի Ասորիք յորժամ ի կռուի ի պարտութիւն մատնեալ փախստեայ եղանէին, Կրիւսոսի տեսեալ զպարտեալսն, փոխանակ ձեռնտու նիզակակցացն լինելոյ փախստեայ գնայր: Եւ յետ այսորիկ պատմի թէ հակառակորդքն չհամարին բաւական լինել մեզ կռուելոյ, եւ զայլս վարձին որպէս թէ քաջ պա-

տերազմիցին նոքա փոխանակ նոցա, քան եթէ ինքեանք։ Այլ եթէ ոմանց այսպիսի ինչ ամենայն ահագին թուիցի, եւ մերքն խարխուլք, ասեմ թէ պարտ է զնոսա, ով արք, արձակել ի թշնամին անդր։ Վասնզի եթէ անդ իցեն յոյժ իսկ առաւել օգուտ մեզ իցեն քան յորժամ մօտն կայցեն։

Իբրեւ զայս խօսեցաւ Կիւրոս, յոտն եկաց Քրիսանտաս պարսիկ եւ խօսէր այսպէս. Ո Կիւրոս, մի ինչ զարմանար եթէ ոմանք տրտմեցան լուեալ զգրոյցսըն։ Վասնզի ոչ եթէ որ երկընչէինն այնպէս կացցեն, այլ որ ծանրացեալ նեղիցին։ Զոր օրինակ, ասէ, եթէ իցեն ոմանք որ կամիցին եւ ուտիցեն ճաշ, եւ պատմեսցի գործ ինչ զոր յառաջ իսկ քան զճաշն հարկ իցէ գործել, ինձ թուի թէ ոչ ոք զուարճանայցէ յորժամ զայն լսիցէ։ Նոյնպէս եւ մեք այսուհետեւ համարեալ թէ մեծանալոց իցեմք, իբրեւ լուաք թէ է եւ այլ ինչ գործ, զոր պարտ իցէ վճարել, միանգամայն տրտմեցաք, իբր ոչ եթէ զի երկեաք իսկ, այլ զգործն կամիմք գործել. զի ոչ եթէ վասն Ասորեստանի եւեթ կռուիցիմք, ուր բազում ցորեան է եւ արջառ եւ արմաւենիք մրգաբերք, այլ եւ վասն Լիւդացւոց աշխարհին. անդ է բազում գինի եւ թուզ յաճախ եւ շատ ձիթապտուղ,

եւ ծով զնովաւ պատի, ընդ որ բազում զան բարութիւնք զոր ուրուք չէք տեսեալ: Զայդ ամենայն, ասէ, զմտաւ ածեալ, մի ինչ այսուհետեւ նեղեսցիմք, այլ առաւել եւս խրախուսիցեմք, զի վաղ ի նոսին իսկ ի Դի- դացւոց բարութիւնսն վայելիցեմք:

Նա զայս ասէր. եւ ամենայն նիզակակիցքն ուրախ եղեն, եւ յանձին կալան զամենայն զբանսն: Ասէ Կիւրոս. Ով արք, ինձ այսպէս համոյ թուի, վաղվաղակի իսկ երթալ ի վերայ նոցա, զի նախ աճապարեսցուք քան զնոսա հասանել, եթէ կարիցեմք, ուր եւ ժողովեսցին համբարք նոցա: Յետ այնորիկ որչափ թէ վաղ երթայցեմք, դոյնչափ սակաւ ինչ գտանիցեմք մօտ առ նոսա, եւ բազում ինչ հեռի ի նոցանէ: Նա այսպէս ասեմ. ապա թէ այլազգ ինչ ոք խորհեսցի կամ զգուշաւոր կամ դիւրագոյն ինչ մեզ, խօսեսցի: Իբրեւ բազումք միաբանեցին եթէ պարտ է վաղվաղակի իսկ երթալ ի թշնամեաց վերայ, եւ չէր ոք որ դիմադարձ լինէր, ապա սկիզբն արար Կիւրոս բանից այսպիսի ինչ օրինակ:

Արք պատերազմակիցք, ոգիք եւ մարմինք եւ զէնք որովք վարելն պարտ էր, ի բազում ժամանակաց կազմեցան պատրաստեցան. այժմիկ պարտ եւ պատշաճ է զհամբարսն ի ճանապարհ

պատրաստել մեզ եւ չորքոտանեաց զոր ի գործ արկեալ վարիցեմք, ոչ ինչ պակաս յաւուրց քանից։ Վասնզի իմ զմտաւ ածեալ գտանեմ աւելի քան զՏնդեստատան աւուրց ճանապարհ լեալ յորում ոչ ինչ ի պիտոյից գտանիցեմք։ Վասնզի աղխ բազում յաւելաւ եւ ի մէնջ եւ ի թշնամեաց, որչափ մարթ էր։ Արդ պարտ է բազում թոշակ պատրաստել, զի առանց թոշակի ոչ կարել մարթեմք, եւ ոչ կեալ իսկ. եւ զինի այնչափ պարտ է իւրաքանչիւր ումեք ունել, որչափ բաւական լինիցի ընդ երացուցանելոյ զմեզ ջուր ըմպել. քանզի մեծ մասն ճանապարհին առանց գինւոյ է, յոր եթէ ընաւ բազում գինի պատրաստիցեմք, չաւանիցի բաւական։ Արդ զի մի յորժամ յանկարծակի առանց գինւոյ լինիցիմք, յախտ անկանիցիմք, այսպէս պարտ է առնել։ Այժմ իսկ ի հացի անդէն սկիզբն առնիցեմք ըմպելոյ ջուր։

Զի յորժամ զայս առնիցեմք, ոչ կարի փոփոխիցիմք. զի որ փոխինդն ուտիցէ, միշտ ընդ ջուր խառնեալ կերիցէ. եւ որ հաց ուտիցէ, ի ջուր թրջեալ կերիցէ զհացն եւ ամենայն եփոյք բազում անգամ ջրով կազմիցին։ Իսկ յետ հացին եթէ գինի ըմպիցեմք, ոչ մի ինչ պակաս գտանիցեն ոգիքն եւ հանդարտիցեն. եւ յետ այնորիկ

եւ զայն յետ ընթրեացն պարտ է բառնալ, մինչեւ ջրըմպուք ուսանիցիմք։ Զի որ առ սակաւ սակաւ փոփոխումն է, զամենայն իսկ բնութիւնն պատրաստէ ժուժկալ լինել փոփոխմանցն։ Ուսուցանէ եւ Աստուած յորժամ տակաւ հանիցէ զմեզ ի կարեձմեռն ձմերայնոյն, հանդարտել տօթոյ սաստկութեան, եւ ի տօթոյն ի սաստիկ ձմեռն. որում պարտ եւ պատշաճ է նմանօղս լինել, եւ յոր հասանիցէ երթալ, յառաջագոյն ընդելեալ հասանել։

Եւ զծանրութիւն կազմածոյ մահճացն ընդ կարեւոր պիտոյիցն առէք. զի ռոճիկքն աւելորդք ոչ անպիտանք լինիցին, եւ եթէ անկողնոց կարօտ լինիցիք, մի երկընչիցիք թէ ոչ քաղցր ի քուն լինիցիք. ապա թէ ոչ, ինձ դիք մեղ։ Բայց որ բազում ձորձ գուցէ, բազում իւիք օգնական լինիցի անձինն եթէ առողջ իցէ եւ եթէ յոյժ խօթացեալ։ Եւ խորտիկս պարտ է հանդերձել. որ աւելագոյն թթուք եւ փաթաթահամք եւ յաղեալք իցեն, զի նոքին ի հաց յորդորիցեն, եւ բազում ժամանակս բաւական լինիցին։ Յորժամ ի տեղիս հասանիցեմք ուր ի դէպ իցէ մեզ առնուլ ցորեան, պարտ է ձեռաց աղօրիս անտի պատրաստել, որովք հաց գործիցեմք. զի այն իմն թեթեւագոյն իսկ քան զամենայն գործիս հացարա-

բաց է։ Պարտ է հանդերձել եւ որ ինչ պիտոյ լինիցի հիւանդաց մարդկան։ Զի նոցա ծանրութիւնն փոքր է. եւ եթէ այնպիսի ինչ դէպք լինիցին առաւել պիտոյ լինիցի։

Պարտ է եւ փոկս ունել. զի բազում ինչ եւ մարդկան եւ երիվարաց փոկովք կախին. յորոց ի խորտակելն եւ ի խզելն հարկ է դատարկ կալ, եթէ ոք չունիցի լաւծս։ Նա եւ որ ուսեալ ոք իցէ սուսեր սրել, բարւոք է եւ զսուսեր սրել չմոռանալ եւ զյեսան ընդ իւր տանել. զի որ զնիզակն սրիցէ, նա եւ զոգիսն սրիցէ. քանզի ամօթ իսկ է, թէ որ զնիզակն սրիցէ, ինքն անպիտան իցէ. պարտ է եւ փայտս բազումս ի կառս եւ ի սայլս ունել, զի բազում իրաց կարեւորք են։

Պարտ է եւ զկարեւոր կարեւոր գործիս վասն այնր ամենայնի ունել։ Քանզի ոչ եթէ ամենայն ուրեք ձեռագէտք մօտ կայցեն, եւ որ զօր մի տեւիցէ, չեն բաւական զայն սակաւք ոմանք գործել։ Պարտ է եւ դանկու եւ ուրագ ըստ կառաց կառաց ունել եւ ըստ գրաստու գրաստու դանակ եւ գերանդի։ Զի այս ամենայն եւ առանձինն պիտանացու է իւրաքանչիւր ումեք, եւ բազում անգամ հասարակաց օգուտ լինիցի։ Արդ զկերակրոյն պէտսն զօրավարքդ վառելոցն հարցէք ցայնոսիկ որք ընդ

ձեւք իցեն։ Վասնզի չէ պարտ զանց առնել որով ոք կարօտանայցէ ի նոցանէ, քանզի եւ մեք նոքիմբք կարօտ լինիցիմք։

Որչափ զբաստս հրաման տամ ունել, դուք իշխանք կրելեաց կազմածոցն, հարցէք խնդրեցէք, եւ որ ոչ ունիցի ստիպեցէք պատրաստել։ Եւ դուք ռահվիրայիցն իշխանք, ունիք գրեալ յինէն զխոտեալսն եւ զմերժեալս ի տիգաւորացն եւ յաղեղնաւորացն եւ ի պարսաւորաց։ Արդ զնոսա որ ի տիգաւորացն իցեն, մայրեւորութեան զակու առնուլ եւ երթալ ի մարտ պատերազմի, եւ որք յաղեղնաւորացն իցեն եւ որք ի պարսաւորացն՝ դանակ։ Ոցա առեալ զայն ամենայն յառաջ քան զսայլսն համագունդ երթայցեն, որպէս զի թէ պիտոյ ինչ լինիցի ճանապարհացն, վաղվաղակի ի գործ ճեպիցեք, եւ ես եթէ կարօտանայցեմ ինչ, տեսից եթէ ուստի պարտ իցէ առնուլ եւ նոքօք վարել։ Տարայց եւ զորս ի զինուորութեան տիս իցեն գործեօք պղնձեօք եւ հիւսունս եւ դերձակս, որպէս զի որ ինչ պէտք լինիցին ի պատերազմի այնպիսի ճարտարութեանց, մի ինչ պակաս իցէ։ Եւ ի բաց կայցեն նոքա ի գնդէ վառելոցն, եւ որ ինչ խելամտութիւն ունիցին վարձու արբա-

նեկեալ այնմ որ կամիցի, կայցէ ի կարգին։

Ապա եթէ վաճառական ոք կամիցի զհետ գալ վաճառել ինչ, զյառաջագոյն ճառելոց աւուրց պէտսն ունիցի, իսկ եթէ ըմբռնիցի վաճառեալ ինչ, ի բնաւէ անկանիցի։ Այլ յորժամ անցանիցեն աւուրքն այնոքիկ, վաճառեսցէ որպէս զիարդ կամիցի։ Եւ որ ի վաճառականաց ոք առաւել վաճառս առեալ գայցէ, այնպիսին ի նիզակակցաց եւ առ յինէն պարգեւաց եւ մեծարանաց հասանիցէ։ Իսկ եթէ համարիցի թէ ինչ պիտոյ են առ ի գինս, ծանօթս եւ ընտանիս ածեալ առ իս, գայցէ ընդ բանակին եւ առցէ յորոց մեքն ունիմք։

Եւ զայս յառաջագոյն պատմեմ, եթէ ոք եւ այլ ինչ պիտոյ տեսանիցէ նշանակեսցէ ինձ. եւ դուք երթեալ կազմեցարուք պատրաստեցարուք, եւ վասն արշաւանիս զոհս մատուցից, եւ եթէ բարւոք հրամանք դիցն իցեն, նշանակեսցուք։ Պարտ է ամենեցուն առընթեր կալ առեալ զայն ամենայն, զորոց յառաջագոյն ասացաք ի տեղւոջ ուր հրամայեալ իցէ զօրավարացն. եւ դուք ով զօրավարք իւրաքանչիւր զիւր գունդ յարդարիցէ, եւ ամենեքին եկայք առ իս զի իւրաքանչիւր ոք ի ձէնջ զիւր տեղի առցէ։

## ԳԼՈՒԽ Գ

ՕԱՑՆ լուեալ նոցա հանդերձեւն. եւ ինքն զոհս մատուցանէր. եւ իբրեւ բարուոք նուէրքն էին, խաղայր գնայր զօրօք հանդերձ, եւ յառաջնում աւուր մօտագոյնս բանակ հարկանէր, որպէս զի թէ մոռացեալ ինչ ուրուք իցէ, երթայցէ. եւ եթէ ի միտ առցէ ոք թէ կարօտ է իւիք, հանդերձեսցէ: Կիաքսարեայ առեալ զերիր մասն Մարացն, եկաց անդէն, զի մի աշխարհն անապատ լինիցի: Իսկ Կիւրոս յուղի անկեալ երթայր տագնապաւ զայրուձին առաջի արկեալ, եւ յառաջ իսկ քան զնոսա յուզակս եւ դէտս միշտ ի դիտանոցսն հանէր: Յետ նոցա գային կահք եւ կազմածք. ուր դաշտային էր, բազում ամբոխ լինէր սայլից եւ կազմածոց: Ապա յետուստ զհետ խաղայր ճակատն եւ եթէ կահ ինչ ի կահուցն մնայր, որք յառաջեալ երթային յիշխանաց անտի, հոգային զի մի արգել ինչ երթալոյն լինիցի:

Իսկ ուր նուրբ եւ նեղ ճանապարհն էր, ի մէջ առեալ վառելոցն զկազմածսն աստի եւ անտի երթային: Ապա եթէ խոչ ինչ պատահէր, ի զօրաց անտի, որ ի նոյն կարգեալ կային, հոգային: Ապա երթային գունդքն բազում անգամ

առեալ ընդ իւրեանս զկահն եւ զկազմածս: Վասնզի հրաման տուեալ էր ամենեցուն որ զկահն տանէին, զի իւրաքանչիւր ոք ընդ իւրում գնդին երթայցէ, եթէ ոչ կարեւոր ինչ հարկ խափան լինիցի. եւ որ զկազմածն կրէր տուեալ գնշանակ հազարապետին գնդայն, որ ծանօթ իսկ էր իւրում գնդին: Որպէս զի համագունդ միահղյլ գումարեալ երթային, եւ իւրաքանչիւր ոք զիւրայոցն սաստիկ հոգայր զի մի յետնեալ մնայցեն. եւ քանզի այսպէս առնէին, ոչ զմիմեանս խնդրել հասանէր, եւ ամենայն ինչ մօտ էր եւ ողջ, եւ վաղվաղակի զպիտոյսն գտանէին զօրականքն:

Իսկ իբրեւ դէտքն որ յառաջագոյն արձակեցան, տեսանէին ի դաշտի արս որ ճարակ եւ փայտս առնէին, եւ տեսեալ գրաստս որ զայլ եւս նոյնպիսի կրէին, եւ արածէին, եւ ի հեռաստանէ նշմարէին զի ծուխ կամ փոշի մրրկեալ վերանայր, յայնմ ամենայնէ գիտացին թէ անդ ուրեք մօտ իցէ բանակ թշնամեացն: Արդ վաղվաղակի իշխան դիտիցն յղէ զոմն պատմել զայն ամենայն Կիւրոսի: Եւ նորա զայն լուեալ հրաման ետ նոցա կալ անդէն ի դիտանոցսն եւ որ ինչ նոր միշտ տեսանիցեն, պատմել: Բայց զգունդս հեծելոցն առաքեաց յառաջակողմն, եւ

հրամայեաց ջանալ ըմբռնել զոմանս յարանցն որ ի վերայ դաշտին իցեն, զի հաստատութեամբ զճշմարիտն ուսանիցի:

Որ զհրամանն առին ի գլուխ հանին. եւ ինքն զայլ զօրսն անդէն զետեղէր զի պատրաստեսցեն որ ինչ պիտոյն թուիցի, մինչ չեւ ամենեքին ի մի վայր գումարեալ իցէ. եւ նախ պատուիրեաց ճաշել, եւ ապա կալ ի մէջ գնդացն եւ որ զինչ հրաման տացի զայնու առնել զմիտս: Իբրեւ ճաշեցին ի մի վայր կոչէր զհեծելոց եւ զհետեւակաց եւ զկառաց առաջնորդս եւ զմեքենայից եւ զայնոսիկ որ զկահօն տանէին զեշխանսն եւ զսայլիցն. եւ նոքա ժողովեցան: Իսկ որ ի դաշտ անդր ընթացան, ըմբռնեալ արս ածէին. եւ ըմբռնեալքն իբրեւ հարցան ի Կիւրոսէ, ասէին թէ ի բանակէ անտի գամք եւ մեկնեցաք ոմանք վասն ճարակի եւ կէսք վասն փայտից անցեալ զառաջապահօքն. զի վասն յաճախութեան զօրացն ամենայն ինչ անօսր է:

Զայն լուեալ Կիւրոսի ասէ. Ո՞րչափ հեռի է աստի բանակն. նոքա ասեն. Իբրեւ երկու խրասախ: Յետ այնորիկ հարցանէր Կիւրոս թէ իցէ՞ ինչ զմէնջ համբաւ առ նոսա. ասեն. Բազում համբաւ է թէ մօտ իսկ հասեալ կայք: Եւ արդ զխարդ, ուրա՞խ ինչ եղեն յոր-

ժամ լուանն. զայս հարցանէր վասն մօտակայացն: Նոքա ասեն. ոչ ուրախ եղեն, այլ մանաւանդ տրտմեցան: Ասէ Կիւրոս. Այժմ զի՞նչ գործեն: Կարգեալ ճակատին, ասեն, եւ երէկ եւ եռանդ զնոյն գործէին: Կիւրոս ասէ. Ո՞ է որ ճակատեցուցանէ: Եւ նոքա ասեն. Ինքնին իսկ Կրիւսոս, եւ ընդ նմա յոյն ոք այր եւ այլ ոչ մար. բայց զմարէն պատմէր թէ ի ձենջ իսկ եկն հատուած: Եւ Կիւրոս ասէ. Ով Արամազդ մեծ, լիցի ինձ ըմբռնել զնա, որպէս ես կամիցիմ. յայնմ հետէ հրամայեաց զդերին ի բաց տանել, եւ դարձաւ առ այնոսիկ որ մօտն կային որպէս թէ խօսեսցի ինչ:

Յայնմ՝ վայրի այլ ոք ի դիտացն հասանէր, պատմէր եթէ գունդ մի ստուար հեծելոց ի դաշտի երեւին. եւ մեք, ասէ, նկատեմք եթէ գան նոքա, կամեցեալ տեսանել զբանակս, զի յառաջագոյն իսկ քան զգունդն զայն այլ հեծեալք իբրեւ երեսուն տագնապաւ ի մեզ իսկ հասանեն: Ընտրեալս կամին ըմբռնել, եթէ կարիցեն, զդիտանոցն. եւ մեք տասունք եւեթ եմք ի վերայ դիտանոցին: Կիւրոս հրաման ետ հեծելոցն, որ միշտ զիւրեւն էին, երթալ մինչեւ ցդիտանոցն անյայտ ի թշնամեաց, եւ անդէն ունել զդադարիկն: Յորժամ մեր տասունքն, ասէ, թող-

ցեն զդիտանոցն, յարուցեալ ի վերայ անկանիցիք ելելոցն ի դիտանոց անդր. եւ զի զձեզ մի նեղիցեն ի մեծ գնդէ անտի, ընդ առաջ եւ դու, ասէ, ով Վշտասպա, զհազարաւորս հեծելոցն առեալ. եւ երեւեսցիս առաջի հակառակորդաց գնդին: Եւ ոչ ուրեք յանյայտ տեղիս զհետ մտանիցես դու նոցա, այլ իբրեւ հոգայցես զի կացցեն մնասցեն դէտքն, դարձիր այսրէն: Իսկ եթէ կարկառեալ ոմանց զաջս դայցեն առ մեզ, սիրով ընկալարուք զարսն:

Վշտասպաս երթեալ վարէր. եւ սպասաւորք դայլին հասանէին վաղվաղակի որպէս հրամանտուեալ էր: Պատահէր նոցա ի մէջ դիտուիցն Արասպաս պաշտօնէիւք հանդերձ, որ յառաջագոյն իսկ առաքեցաւ լրտեսել, որ պահապանն էր կնոջն շուշացւոյ: Ընդ Կիւրոս իբրեւ ետես զնա, յարուցեալ յաթոռոյ անտի ընդ առաջ ելանէր նորա եւ ընդունէր. եւ այլքն որպէս ի դէպ էր, քանզի ոչ ինչ գիտէին աքանչացեալ էին ընդ իրսն, մինչ ասաց Կիւրոս. Արք բարեկամք, այր մի քաջ գայ առ մեզ, զի այժմիկ պարտ եւ պատշաճ է ամենայն մարդկան գիտել զգործս նորա: Նա ոչ յամօթոյ իմիք է վաթարեալ չոգաւ եւ ոչ յինէն երկուցեալ այլ յինէն առաքեցաւ զի ի մտս առեալ զկրս թշնամեացն, ճշգրիւ գտանկաւ զոր-

դարն պատմեսցէ։ Արդ զոր ինչ խօսա-
տացայ ես քեզ, ով Արասպա, յիշեմ.
եւ հատուցից հանդերձ այսու ամենայ-
նիւ։ Արժան է եւ ձեզ ամենեցուն, ով
արք, դմա մեծարանս դնել իբրեւ առն
քաջի։ Զի վասն մերոյն բարութեան-
ցըն ի վիշտս մխեցաւ, եւ կրեաց յան-
ձին զմեղադրութիւնն որով ծանրա-
ցեալ նեղէր։

Ապա ամենեքին ողջոյն ետուն Արասպա-
պայ եւ ընկալան։ Եւ յաւել անդ Կիւ-
րոսի թէ շատ իցէ այս. այլ զոր ինչ ի
դէպ իցէ մեզ գիտել, զայն, ասէ, պատ-
մեա ով Արասպա, եւ մի զճշմարտու-
թիւնն նուազեցուցանէր զիրաց թշնա-
մեացն։ Զի լաւագոյն լաւ է մեծամեծս
կարծել եւ փոքր տեսանել, քան փոքր
լուեալ մեծամեծս ինչ դտանել։ Ասէ
Արասպաս ջանայի ճշգրիտ տեսանել.
քանզի մօտ երթեալ զճակատն յար-
դարէի։ Ասէ Կիւրոս. Ապա ուրեմն ոչ
զբազմութիւն եւեթ գիտես, այլ եւ
զնոցին կարգսն։ Ասէ Արասպաս. Ես
եւ զայդ գիտեմ, թէ որպէս խորհիցին
տալ պատերազմ։ Ասէ Կիւրոս. Սա-
կայն զբազմութիւնն նախ ասա դու համ-
առօտս։ Ոտքս ասէ, կարգեալ կան
երեսուն առ երեսուն ի թանձրութիւն
եւ հետեւակք եւ հեծեալք, բաց յե-
գիպտացւոցն։ Եւ գրաւեալ ունին նո-
քա իբրեւ քառասուն վտաւան. զի ա-

մենեւին իսկ հոգ ի մտի էր իմ տալ ի գիտելոյ թէ որչափ վայրս գրաւեալ ունիցին:

Ասէ Կիւրոս. Ասա զիա՞րդ կայցեն ճակատեալ Եգիպտացիքն. զի ասացեր թէ բաց յԵգիպտացւոցն: Զսոսա բերապետքն ամենայն ուրեք զիւրաքանչիւր բիւրաւորս հարեւր հարեւր ճակատեցուցանէին. զի այն իմն ասէին օրէնք են ճակատուց յաշխարհին նոցա: Բայց Կրիսոս մանաւանդ ակամայ իսկ թող նոցա այնպէս ճակատել.- զի կամէր ճակատ յարդարել անդր քան զքո բանակդ: Ասէ Կիւրոս. Իսկ զմէ՞ զայն ցանկանայր: Զի աւելորդաւն, ասէ, շուրջ պատեալ պաշարեալ փակիցէ:

Կիւրոս ասէ. Տակաւին զայն ոչ գիտեն թէ որ շուրջն պատէն, պատիցեն շուրջ: Զոր ինչ ի դէպ էր ուսանել ի քէն, լուաք. բայց ձեզ ով արք, այսպէս պարտ եւ պատշաճ է առնել: Յորժամ աստի երթայցէք, զգուշացարուք երիւարաց ձերոց եւ զինու եւ զարդու, քանզի բազում անգամ փոքր ինչ կարօտութեամբ, եւ այրն եւ երիւարն եւ կառքն անպիտանք լինիցին: Վաղիւ վաղորդայն, մինչ դեռ ես զոհս մատուցանիցեմ, նախ պարտ է ճաշել եւ արանց եւ երիւարաց. որպէս զի զոր ինչ ցանդգիպող իցէ առնել, մի այնր պէտք լինիցին: Յետ այնորիկ դու, ասէ, Ա-

րապետ, զաջ թեւն կալ որպէս ունիմն,
եւ դուք բիւրապետք որպէս այժմ ու-
նիք։ Զի մարտին լինելոյ, այնուհե-
տեւ եւ ոչ միում կարաց ժամ լինիցի
զերիւարսն փոփոխել։ Պատմեցէք եւ
հազարապետացն կալ ի գնդին, զիւրա-
քանչիւր վաշտս ընդ երկուս զատու-
ցեալ. եւ վաշտն էր իւրաքանչիւր քսան
եւ հինգ։

Ասէ ոմն ի բիւրապետացն. Թուի-
ցիմք քեզ, ասէ, Կիւրոս, թէ այսչափ
առ այնչափ կարգեալ, բաւական լինի-
ցիմք առ այնչափ թանձրախիտ ճա-
կատսն։ Եւ Կիւրոս ասէ. Թանձրա-
գոյն ճակատք որ չկարիցեն հասանել
զինուց հակառակորդացն, զի՞նչ թուի-
ցին քեզ, ասէ, կարիցե՞ն վնասել ինչ
թշնամեացն կամ օգուտ նիզակա-
կցացն լինել։ Զի ես, ասէ, զվառեալսն
զայնոսիկ որ հարեւր առ հարեւր կար-
գեալ կայցեն, կամէի թէ բեւր առ
բեւր կարգեալ էին. զի այնպէս ընդ
սակաւաւորաց հասցէ մեզ կռուել։
Բայց ես որչափ թանձր յարդարիցեմ
զճակատն, թուի ինձ թէ ողջոյն իսկ
գունդն ի գործ վաստակիցի, եւ ինքն
զօրաւիգն օգնականութեան ինքեան
լինիցի։ Զտիգաւորսն յետ զրահաւո-
րացն կարգեցից, եւ յետ տիգաւորացն
զաղեղնաւորս։ Վասնզի ո՞ ոք իցէ որ
յառաջոյ կարգիցէ զնոսա, ուր եւ ին-

քեանք իսկ գլխովին խոստանայցեն թէ ոչ կռուոյ երբէք մարթեն ի մօտոյ հանդարտել: Իսկ եթէ զզրահապատան առաջի ունիցին, ժուժկալ լինիցին. ամանց զտէգսն արձակելով եւ այլոցն նետաձիգ լինելով անդր քան զամենեսին որ յառաջոյ կայցեն, հարկանեն զթշնամին: Նաեւ եթէ լկէ ինչ ոք զհակառակորդսն, յայտ է եթէ նովին զնիզակակիցսն թեթեւացուցանէ:

Նաեւ ի կատարած կարգեցից զնոսա որ յետս ամենեցուն կոչիցին. զի զոր օրինակ տուն առանց քարանց չիցէ ամուր, եւ ոչ առանց այնոցիկ որ զձեղունն գործիցեն, օգուտ ինչ են. նոյնպէս եւ ոչ ճակատ, ոչ առանց առաջնոցն եւ ոչ առանց վերջնոց, եթէ չիցեն քաջք, օգուտ ինչ է: Արդ դու, ասէ, որպէս հրաման տամ այնպէս կարգեցէք, եւ դուք որ ասպարաւորաց իշխանք էք, յետ նոցա նոյնպէս զվաշտասն կացուցանիցէք, եւ աղեղնաւորացն իշխանք յետ ասպարաւորացն: Նաեւ դու որ իշխեսդ այնոցիկ որ յետոյ քան զամենեսին իցեն, եւ զվերջինսն ունիս. պատուէր տուր քոյոցն զի իւրաքանչիւր ոք իւրոյսն զգոյշ լինիցի. եւ որ զպատշաճսն գործիցեն զնոսա յորդորել, եւ վհատելոցն սաստիկ սպառնալ: Ապա թէ ոք յետս դառնայցէ եւ կամիցի մատն լինել, մահու

պատիժս կրիցէ։ Զի յառաջակայացն այն գործ է քաջալերել զայնոսիկ որ զհետ գայցեն եւ բանիւք եւ արդեամբք։ Իսկ ձեզ որ յետոյ իսկ քան զամենեսին ճակատեալ իցէք, առաւելագոյն քան զթշնամիսն պարտ է վատացն երկերղուկս արկանել։

Դուք զայդ ինչ արարէք։ Բայց դու, Եփրադատա, որ իշխեսդ վերակացուաց մենքենայիցն, այսպէս առնիջիր զի լուծքն որ զսպասաւորսն եւ զմարդկոցսն տանիցին զհետ երթայցեն մօտ առ ճակատուն։ Եւ դու Դաւուքէ որ կապարճակրացն, որ ի վերայ աշտարակացն եւ ի վերայ մենքենայիցն են, իշխես, տար զամենայն զայնպիսի զօր. եւ սպասաւորք քո սաստկագոյնս տանջիցեն զնոսա որ յառաջ քան զժամանակն գնայցեն, կամ յետնեալ գտանիցին։ Եւ դու Կարդուքէ, որ սայլիցն իշխես որ զկանայսն տանին, կացո զնոսա ի կատարածին յետ կրելեաց կազմածոցն։ Զի յորժամ այս ամենայն զհետ խաղացեալ գայցէ, բազմամբոխ բազմութեան կարծիս տայցէ, եւ գուցէ մեզ համարձակութիւն դարանակալ նստել, եւ զթշնամիսն, եթէ կամիցին բակ առնուլ, բռնադատիցէ մեծ եւս իմն շրջանս կատարել։ Եւ որչափ մեծ վայրս շուրջ պատիցեն, նոյնչափ հարկ է թէ տկարագոյնք լինիցին։

Նոյն դուք այսպէս առնիջիք: Իսկ դու, Արտաւազդ եւ Արտագերսա, երկոքեան զհազարաւորս հետեւակացն որ ընդ ձեզ են յետ նոցա ունիցիք: Նոյն դու և Փառնուքէ, եւ Ասիադատա, ըզհեծելոց հազարաւորսն որոց երկոքեան իշխէք, մի ի մէջ ճակատուն կարգիցէք, այլ յետուստ կողմանէ սայլիցն սպառազէն վառեցարուք, եւ ապա եկայք առ մեզ ընդ այլոց եւս զօրավարացն: Այսպէս պարտ է կազմ եւ պատրաստ լինել ձեզ, որպէս թէ դառնաջին ձեզ իսկ հասանիցէ մարտնչել: Նոյն որ իշխեսդ արանցն, որ յուղտուց վերայ հեծեալ իցեն, յետոյ սայլիցն կարգեալ կայցես, եւ արա զոր ինչ հրամայիցէ քեզ Արտագերսաս: Դուք որ կառացն առաջնորդք իցէք, արկէք վիճակ, եւ ում ի ձէնջ վիճակ ելանիցէ, նա հարեւր կառօքն հանդերձ կացցէ յառաջ քան զճակատն. իսկ այլ եւս հարիւրաւորք կառացն, մին յաջակողմն բանակին անցեալ կայցէ եւ զհետ խաղացեալ երթայցէ ճակատուն յետ թեւին, եւ միւսն ի ձախակողմն կուսէ:

Այսպէս կարգէր կազմէր Կիւրոս. Աբրադատէս Շուշացւոց արքայ ասէ. Ես, ասէ, Կիւրոս, կամաւ առնում յանձն զդունդն որ հանդէպ ընդդիմակաց ճակատուն իցէ, ունել, եթէ ոչ

այլ ինչ քեզ հաճոյ թուիցի։ Կիւրոս զարմացեալ ընդ նա եւ բուռն հարեալ զաջոյ նորա եւ ցՊարսիկսն որ ի վերայ այլոց կառացն էին հարցանէր . Միթէ եւ դուք, ասէ, տայցէ՞ք թոյլ. եւ իբրեւ ետուն նոքա պատասխանի թէ չէ բարւոք զայն թողուլ, արկանէր վիճակս ի մէջ նոցա, եւ առնոյր վիճակ Աբրադատէս որպէս յանձին կալեալ էր. եւ եղեւ ընդդէմ Եգիպտացւոցն։ Ապա մեկնեալ եւ հոգացեալ զորոց ասացին, ընթրիս առնէին եւ պահապանս կացուցեալ ննջէին։

## ԳԼՈՒԽ Դ

Ի վաղիւ անդր ընդ այգն զոհս 'մատուցանէր Կիւրոս. եւ այլ ամենայն զօրն, իբրեւ ճաշեցին եւ նուիրեցին նուէրս, անդէն վառէին զարդարէին բազում գեղեցիկ պարեգօտիւք զրահապատ պատենազէնք, սաղաւարտաւորք։ Վառէին եւ զերիվարսն ի ճակատսն եւ ի բարձսն եւ զկարթս միաձիոցն եւ զկառամարտսն կողմանոցօք. որպէս զի ի պղնձապատ վառելոցն փայլատակունք շողային, եւ գունագոյն փիւնիկեցի նաբօտոյք երփն երփն հարկանէր բանակն։ Եւ Աբրադատայ էին կառք չորից սամեաց եւ ութ երիվարաց մեծապայծառ զարդարեալ։ Եւ քանզի կամէր ըզ-

կտաւի զրահն որպէս դաւառականն իմն էր նմա, ընդ անձն արկանել, մատուցեալ տայր նմա Պանթիա ոսկի սաղաւարտ փողփողեալ եւ բազկաց արկանելիս, եւ ապարանջանս լայնեալս վասն ձեռացն եւ պարեգօտ ծիրանի պճղնաւոր ի ներքոյ եւ վերջաւորս ներկեալ կապուտակ երկնագոյն նարօտաւք. զայս ամենայն գործեաց գաղտ յանէ անտի իւրմէ չափեալ զզէնսն նորա:

Զնորա տեսեալ զարմանայր եւ հարցանէր Պանթիա. Ով կին դու, դու՞ զարդդ հատեալ զէ՞նս ինձ գործեցեր: Ասէ Պանթիա. սակայն ոչ նոքիմք որք մեծագինքն էին, զի դու ինձ, եթէ եւ այլոց երեւեսցիս որպիսի ոք ինձ թուիս թէ իցես, մեծ իմն զարդ լինիցիս: Իբրեւ զայս ասէր, զզէնսն ագուցանէր. թէպէտ եւ ծածկել եւս ջանայր, արտասուք ընդ այտսն վիժէին՝ Իսկ Աբրադատաս քանզի եւ յառաջն արժանի տեսանելոյ էր, յորժամ նովին զինուք վառեցաւ, եւս գեղեցիկ եւ լուսաւոր երեւէր, զի յախտարակաց գեղեցիկ էր. առեալ ի կառավարէ անտի զկառան պատրաստ լինէր ի կառսն ելանել:

Յայնմ վայրի Պանթիա հրաման տուեալ մեկնել ամենեցուն մօտակացացն, խօսէր. Ով Աբրադատաս, եթէ այլ ոք երբեք ուրեք կին զիւր այրն ա-

առնել, քան զիւր անձն մեծարեաց, թուի ինձ ի միտ առնուլ քեզ, եթէ եւ ես մի ոմն ի նոցանէ եմ: Եւ զի՞ իսկ պիտոյ իցէ մի ըստ միոջէ ասել. զի արդիւնք իսկ իւրացն թուի ինձ թէ առաւել հաւանեցուցանիցեն քան զբանսըս որ այժմ ճառեալ պատմեցան: Բայց սակայն ես ինքնին որ այսպիսի միտս ընդ քեզ ունիմ, որպէս դու իսկ գիտես, երդմնի լինիմ յիմ եւ ի քո դաւթն թէ կամիմ ընդ քեզ, յորժամ այր քաջ լինիցիս, առ հասարակ ի հող մտանել, քան ընդ քեզ ամօթալից կեանս կեալ: Որպէս ես զքեզ եւ զիս արժանի համարեցայ առնել գեղեցկացն: Եւ Կիւրոսի մեծ ինչ շնորհս պարտիմք, զի որ գերիս էի, իւր ընտրեաց զիս, եւ ոչ աղախին կամեցաւ ստանալ զիս, եւ ոչ ազատակին անարգութեան անուամբ. այլ պահեաց քեզ իբրեւ զկին եղբօր: Եւ յայնր վերայ ի ժամանակի զի Արասպաս յետս եկաց ի նմանէ, որ պահեացն իսկ զիս, խոստացայ նմա, եթէ թոյլ տայցէ նա ինձ առաքել առ քեզ, գաս դու, եւ քան զԱրասպաս յոյժ իսկ հաւատարիմ եւ ազնուագոյն լինիս:

Նա զայս ինչ խօսեցաւ. իսկ Աբրադատայ զարմացեալ ընդ բանսն ձեռն զգլխովն արկանէր եւ հայեցեալ ընդ երկինս յաղօթս եկաց այսպէս. Արա-

մազդ մեծ, տուր ինձ Պանթիայ արժանի այր երեւել, եւ Կիւրոսի արժանաւոր բարեկամ, որ պատուեացն իսկ զմեզ: Իբրեւ զայն խօսէր ընդ դրունս աթոռոյ կառացն: Իբրեւ յետ ելանելոյ նորա փակեաց զդուռնն կառավարն, քանզի չկարէր Պանթիա այլազգ ինչ այնուհետեւ համբուրել զնա, զդուռնն համբուրեաց: Եւ յառաջեալ երթային կառքն, իսկ նա գաղտագողի երթեալ հասանէր առ նա, մինչեւ դարձեալ ի թիկունս կոյս եւ տեսեալ զնա Աբրադատայ ասէր. Քաջալերեաց Պանթիա, ողջոյն ընդ քեզ, երթ: Ապա առեալ զնա ներքինեացն եւ նաժշտացն տանէին զնա ի դեսպակն, եւ նստուցեալ զնա ի դահոյսն ծածկեցին վրանաւն: Իսկ մարդիկն թէպէտ եւ գեղեցիկ էր տեսիլն Աբրադատայ եւ կառացն, չկարացին տեսանել զնա մինչ չեւ մեկնեալ Պանթիայ:

Յորժամ զնուէրսն կատարեաց Կիւրոս, եւ բանակն կարգեցաւ ճակատեցաւ, որպէս պատուէր տուեալ էր, եւ ունէր դիտանոցս մի ըստ միոջէ, զզօրավարսն ի մի վայր գումարէր եւ խօսէր այսպէս: Արք բարեկամք եւ նիզակակիցք, զզոհսն մեզ դիքն ցուցանեն, որպէս յայնժամ զառաջին յաղթութիւնն շնորհեցին: Բայց ես կամիմ յուշ առնել ձեզ զայն՝ զոր եթէ ունի-

ցիք դուք ի մտի կարի յօժարագոյնք ի պատերազմ երթայցէք։ Վասնզի թեքեալ եւ կրթեալ էք դուք ի պատերազմ առաւել քան զհակառակորդսն, եւ առ միմեանս սնայք եւ զարգացայք ի նմին բազում ժամանակս առաւել քան զթշնամիսն, մանաւանդ զի եւ յաղթեալ եւս էք։ Իսկ ի թըշնամեաց անտի բազումք ընդ նոսա ի պարտութիւն մատնեցան. իսկ ի թըշնամեաց անտի որք յերկոցունց իսկ կողմանց ոչ կոտորեցան, ոմանք գիտեն եթէ զմատնութեան առ իւրեանս ունին։ Բայց դուք որ ընդ մեզ էք, գիտէք եթէ ընդ նոսա մտանէք ի պատերազմ որ օգնական կամիցին նիզակակցացն լինել։ Եւ ի դէպ է թէ որ վստահ ի միմեանս իցեն միաբան մտօք կացցեն ի մարտ պատերազմի, իսկ որ չիցեն վստահ, հարկ է խորհել թէ զիարդ իւրաքանչիւր ոք վաղվաղակի ի բաց որանայցէ։

Եւ երթիցուք ի վերայ թշնամեացն, որ կառս վառեալս ունիմք առ անզէն կառս թշնամեացն, որպէս են մեր հեծեալք եւ երիվարք վառեալք առ անզէնսն զի մօտ կռուիցիմք, եւ ընդ այլոց հետեւակաց խառնեալ ընդ առաջնոցն մարտ եղեալ կռուիցիմք։ Եգիպտացիք զնոյն օրինակ վառեալ են, զնոյն ձեւ ճակատեալ զի յաղթ վահանս ու-

նին որպէս զի չկարեն ինչ գործ վճարել եւ ոչ տեսանել ինչ. զի հարեւր առ հարեւր ճակատեալ կան, յայտ է թէ միմեանց խափան պատերազմելոյ լինիցին բնաւ բաց ի սակաւուց անտի: Եւ թէ մղելով համարիցին մերժել, նախ պարտ է նոցա զերիւարաց զդէմ ունել եւ զերկաթոյն որ յերիւարաց անտի սաստկագոյն լինիցի. եւ եթէ ժուժկացէ ոք, զիա՞րդ կարիցէ ընդ երիւարացն եւ ընդ ճակատուն եւ ընդ աշտարակացն ոգորել. զի որք ի վերայ աշտարակացն իցեն, մեզ օգնական լինիցին, եւ զթշնամիսն հարեալ յանհնար հնարիս փոխանակ ընդ կռուելոյն հատուցանիցեն: Եւ եթէ տակաւին կարօտ ինչ իւիք համարիցիք լինել, ասասցէք ցիս, զի աստուածովքն ոչ յիմեքէ չքաւորիցիմք. եւ եթէ խօսել ինչ ոք կամիցի, խօսեսցի. ապա թէ ոչ երթեալ առ զրուանն եւ յաղօթս կացեալ դիցն, որոց զոհս իսկ մատուցաք, երթայք ի գունդսն. իւրաքանչիւր ոք յիշեսցէ զայնոսիկ որ ընդ իւրն իցեն, որպէս ես զձեզ, եւ ցուցանիցէ ոք զանձն իշխանաւորացն արժանի իշխանութեան, եւ առանց երկեղի կերպարանս ցուցանիցէ եւ դէմս երեսաց եւ բանս:



# ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ
# ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ
## ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ
## Ի ԴՊՐՈՒԹԻՒՆ

---

### ԳԼՈՒԽ Ա

*Ն՛ՈՔԱ աղօթս դիցն մատուցեալ դար- ձան առ դունդսն: Իսկ Կիւրոսի եւ ո- րոց զնովաւն էին մատուցանէին սպա- սաւորքն կերակուր եւ ըմպելի, մինչ դեռ զնուիրագքն իսկ էին: Նոյ Կիւրոս որպէս կացեալ կայր, այնպէս սկսեալ ճաշէր, եւ տայր միշտ այնմ ում առաւե- ել պիտոյ էր. նուիրեալ եւ կացեալ յաղօթս ըմպէր. եւ այլքն որ շուրջ զնովաւ էին նոյնպէս առնէին: Յետ այնորիկ խնդրէր ի դաւառակսն Արա- մազդայ զօրավար լինել եւ զօրաւիգն օգնականութեան, եւ հեծանէր ի նուա երիվարին. եւ հրաման տայր որոց շուրջն կային: Ամենեքին սպառազէն վառեալ կային. որ զԿիւրոսիւն էին Կիւրոսի իսկ զինուքն փիւնիկեցի պարեգօտիւքն եր- կաթակուռ պղնձապատ զրահիւքն եւ սաղաւարտիւք, վերջիւք ասպատակօվք*

եւ սուսերովք եւ թրովք. եւ երիվարացն ճակատք եւ բարձք եւ կողք պղղնձապատք. եւ արանցն նոյնպիսի ինչ զարդք պղնձիք էին։ Այնչափ եւեթ զատ էին զէնքն Կիւրոսի զի այլոցն զէնք օծեալ էին ոսկւովք երանգօք. իսկ զէնքն Կիւրոսի իբրեւ հայելի ի բաց փայլէին։

Իբրեւ հեծաւն, եւ կայր նայէր թէ յո երթալոց իցէ, որոտումն բարբառեցաւ յաջակողմն կուսէ. եւ նա ասէ. Զհետ քո եկեսցուք, Արամազդ մեծ. եւ խաղացեալ երթայր, առեալ ընդ աջմէ զՔրիսանտաս եւ զայրուձին, եւ ի ձախմէ զԱրսամաս եւ զհետեւակսն, եւ հրաման տայր հայել ի նշան անդր զի կշիռ հաւասարակ զհետ խաղասցեն. եւ էր դրաւշն արծուենշան ոսկիապատ տարածեալ երկայն գեղարդեան, եւ այժմ եւս կայ պահի նոյննշանակ Պարսից արքային։ Եւ մինչ չեւ տեսեալ զթշնամիսն երիցս անգամ զզօրսն հանգոյց։

Մինչ դեռ յառաջեալ երթային իբրեւ քսան վտաւանս, եւ սկսան զթշնամեաց բանակն ի հանդիպոյ անտի նշմարել։ Իբրեւ ամենեքին երեւէին միմեանց, եւ զմտաւ ածէին թշնամիքն յերկոցունց կողմանց անցանել անդր քան զճակատն, կացուցանէին զիւրեանց ճակատն, քանզի չգոյր այլ իմն ազգ շուրջ պատեալ պաշարել. զի իբրեւ զգամմայ

յաջմէ եւ յահեկէ զգունդն գործերին եւ ամենայն ուստեք մարտ եդեալ կըռուէին ։

Զայն տեսեալ Կիւրոսի, չեկաց յետս այլ նոյնպէս խաղացեալ երթայր, ի միտ առ թէ ի հեռաստանէ պատեալ յաջմէ եւ յահեկէ, երկայնեն տարածանեն զթեւսն ։ Առնուս ի միտ, ասէ, ով Քրիւսանթաս թէ աստաստին իսկ կամին պատել ։ Առնում, ասէ, ի միտ, եւ զարմանք ունին զիս, զի թուի թէ ի բաց քակեն զթեւսն առանց յիւրեանց ճակատուէ ։ Ասէ Կիւրոս եւ ի մերմէ իսկ ճակատուէ ի բաց տանին ։ Զի՞նչ այն յայտ առնիցէ. յայտ է, ասէ, եթէ հուպ լինիցին թեւքն մեզ, մինչ դեռ ճակատն հեռի իցէ, յարձակիցիմք ի նոսա ։ Ասէ Քրիսանթաս. Իսկ զի՞արդ կարիցեն օգնական լինել այր եղբօր, եթէ այնպէս հեռացեալք ի միմեանց իցեն ։ Ասէ Կիւրոս. Յայտ է եթէ յորժամ թեւքն ելեալ կայցեն ի հանդէպ կողմն մերոյ բանակին կողմանն, դառնայցեն ի ճակատ անդր եւ ամենայն ուստեք ի մեզ դիմիցեն, զի յամենայն կողմանց պատերազմիցին ընդ մեզ ։

Ասէ Քրիւսանթաս. Միթէ քեզ բարւոք թուիցի խորհուրդս ։ Առ այն ասէ, զոր տեսանեն քաջ խորհին. եւ առ որս ոչն տեսանեն տակաւին, չարաչար. քան եթէ թեւ առ թեւ հա-

թուլթեան այսր աւուր, այլ եւ վասն առաջին յաղթութեանն զոր յաղթեցէք եւ վասն համօրէն իսկ աջողութեանս։ Նոյն առ այլսն մատուցեալ ասէր. Ով արք այսուհետեւ գիտն չէ արժան մեղադիր լինել, քանզի ետուն մեզ ի ձեռս բազում բարութիւնս ստանալ. բայց դուք քաջ լերուք։

Իսկ առ այլսն այսպիսի ինչ. Ով արք, յո՞ր գեղեցիկ ուրախութիւն երբեք մարթեմք կոչել զանձինս թէ ոչ ի սոյն. զի այժմիկ համարձակութիւն է, եթէ արք քաջք լինիցիք, բազում բարութիւնս իբերաց մատուցանել։ Դարձեալ եւ առ այլսն. Թուի ինձ եթէ գիտիցէք, ով արք, եթէ այժմիկ հատուցմունք առաջի կան որոց յաղթեն, զհետ մտանել, հարկանել, կոտորել, բարութիւնս առնել, բարութիւնս լսել, ազատս լինել, իշխել. իսկ վատացն յայտ է եթէ նոցին հակառակքն։ Նոյն արդ որ ոք զիւր իսկ անձն սիրիցէ, ընդ իս մարտիցէ. զի ես չասեմ կամաւ չարի իմիք լինել եւ ոչ ամօթոյ։ Յորժամ մատեաւ առ ոմանս ի նոցանէ որ յառաջագոյն իսկ ընդ նմա պատերազմեցան, ասէ. Արդ ձեզ զի՞նչ պարտ իցէ խօսել, զի դուք հմուտ էք թէ որպէս քաջքն եւ առաքինիք ի պատերազմունս զօրն անցուցանեն, եւ որպէս վատքն։

Նոյն իբրեւ մեկնեալ չոգաւ առ Ա-

բրադատէս, եկաց ։ Աբրադատայ արուեալ կառավարին զերասանակսն, եկն առ նա . ընթացան եւ այլք ի մօտ ճակատելոցն եւ ի հետեւակաց անտի եւ ի կառավարացն . եւ Կիւրոս ի մերձենալն նոցա խօսէր այսպէս . Զոր օրինակ ըղձանայիր, ով Աբրադատաս, արժանի արարին զքեզ դիքն եւ զօրս ընդ քեզ են լինել յառաջակացս նիզակակցացն ։ Դու զայս ինչ զմտաւ ած, յորժամ պատերազմել հասանիցէ քեզ, եթէ Պարսիկքն տեսանեն զձեզ եւ զհետ եկեսցեն ձեր . եւ ոչ թողուցում զձեզ միայն մարտնչել ։ Աբրադատէս ասէ . Թուի ինձ թէ ամենայն ինչ մեր բարւոք է . բայց զկողմանցն հոգամ, զի զթեւ թշնամեացն զօրագոյն տեսանեմ ձըգեալ երկայնեալ կառօք եւ ազգի ազգի զօրօք . իսկ ի մէնջ ոչ ինչ այլ ինչ ճակատեալ կայցէ ընդդէմ նոցա, բայց միայն կառքն . որպէս զի ես, ասէ, եթէ ոչ պատահեալ էր իմ այսմ գնդի, ամաչէի աստէն կալ . այսպէս յամրի թուիմ լեալ ։

Եւ Կիւրոս ասէ . Եթէ քոյքն բարւոք են, համարձակեաց ի վերայ նոցա . քանզի ես աստուածովքն ցուցից քեզ թափեալս ի թշնամեաց զկողմանսն, եւ վկայեմ թէ ոչ յարձակիցիս դու ի թշնամիսն մինչ չեւ ի փախուստ դարձեալ տեսանիցես զնոսա յորոց երկըն-

չիան. այսպէս մեծամեծս կոտորէր յոր-
ժամ պատերազմն իսկ լինելոց էր. ա-
պա թէ ոչ չխօսէր մեծաբանս. բայց
յորժամ տեսանիցես զնոսա ի փախստի
եւ զիս համարեաց եկեալ հասեալ, եւ
խաղա ի վերայ արանցն. զի յայնժամ
զախոյանսն տեսանիցես ի վատութիւն
հատեալ եւ զորս ընդ քեզ իցեն առա-
քինիս: Նոյն մինչ դեռ պարապ իցէ քո,
ով Մաքրադատես, անցեալ զքո կառօքդ
յորդորեսջիր զորս ընդ քեզ իցեն յար-
ձակել. երեսօք քաջալերեսջիր եւ
յուսովք թեթեւացո: Եւ զի քաջք
քան զամենեսին որ ի վերայ կառացն
իցեն, երեւիցիք, արկ ի մէջ նոցա հա-
կառակութիւն: Գիտասջիր զի եթէ
այդ ի գլուխ ելանիցէ ամենեքին այնու-
հետեւ ասիցեն թէ քան զքաջութիւն
շահաւորագոյն ինչ չիք:

Մաքրադատաս ելեալ շրջէր եւ վճա-
րէր զամենայն: Դարձեալ մեկնեցաւ
Կիւրոս եկն ի ձախակողմն, ուր Վշտաս-
պան էր հանդերձ կիսով Պարսից հե-
ծելոցն, կարդայր զնա եւ ասէր. Վըշ-
տասպա, տեսանես այժմիկ զգործ քոյ
երագութեանն. քանզի այժմ եթէ ա-
ճապարիցեմք կանխեալ յառաջ քան
զթշնամիսն կոտորել, ոչ ոք ի մէնջ
անկանիցի: Վշտասպաս ծիծաղեալ
ասէ. Զայնցանէ որ հանդէպ մեր կայ-
ցեն, մեզ փոյթ լիցի, իսկ զայնցանէ որ

ի կողմանէ իցեն այլոց, հրաման տուր զի մի եւ նոքա պարապորդք լինիցին: Եւ Կիւրոս ասէ, Նա երթամ իսկ: Ով Կրէտասպա զայս ած զմտաւ, եթէ ում ի մէնջ տայցեն դիքն զյաղթութիւնն, եթէ մնայցէ ուրեք թշնամի, միշտ ի դիմի հարկանիցիմ այնր որ պատերազմիցի

Զայս խօսէր եւ ելեալ երթայր, եւ ինքն եւս երթեալ հասանէր ի կողմն անդր եւ առ իշխանս կառացն, ասէր ցնա. Ես գամ օգնական լինել ձեզ, այլ յորժամ զգայցէք զմէնջ եթէ յետուստ յարձակեցաք, յայնժամ եւ դուք փութացեալ ընդ մէջ թշնամեացն յարձակեալ երթայցէք. զի կարի իսկ յամուր զգուշութեան լինիցիք, յորժամ արտաքոյ իցէք քան ի ներքս ընթացեալք: Իբրեւ մօտ հասանէր յետուստ այլոցն, հրաման տայր Արտագերսեայ եւ Փառնուքայ առնուլ զհազարաւորս հեծեակացն եւ զհեծելոցն եւ կալ անդէն: Յորժամ, ասէ, զգաստ լինիցիք զինէն թէ դիմեցի ի վերայ այնոցիկ որ յաջում թեւի իցեն, ապա եւ դուք ձեռնամուխ լերուք որոց ընդդէմ ձեր կան: Պատերազմեցարուք, ասէ, ընդ թեւին որ տկարակողմն իցէ զօրացն. եւ կալարուք դուք զճակատն զի զօրագոյնք լինիցիք. եւ որպէս նշմարէք իսկ, վերջինք քան զամենայն հակառակորդն հեծեալքն են. արձակեցէք ի նոսա

զգունդս ուղտուցն· գիտասջիք զի մինչ չեւ իսկ պատերազմել, ծառք եւ ծանաւք զթշնամիսն տեսանիցէք։

Իբրեւ զայս ամենայն ի գլուխ հանէր Կիւրոս, չոգաւ եհաս յառաջակողմն։ Արիւսոս համարեցաւ եթէ մօտագոյն է թշնամեացն գունդն յորում ինքն վարեալ երթայր քան զթեւսն սփռուեալս, ամբարձ նշանակ թեւոց, այնուհետեւ յառաջ մի խաղալ այլ զտեղեաւն իսկ դառնալ· իբրեւ կարգեցին կացին ամենեքին եւ հայէին ի բանակ անդր Կիւրոսի, նշանակէր նոցա երթալ ի թշնամիսն, եւ այնպէս երեք գունդք դիմեցին ի վերայ զօրացն Կիւրոսի, մին հանդէպ երեսաց եւ մին յաջակողմն եւ միւսն ի ձախակողմն, մինչեւ բազում ահ եւ երկեւղ հասանէր զօրացն Կիւրոսի։ Զոր օրինակ փոքր ինչ աղիւս ի մեծ աղիւս դնիցի, նոյնպէս եւ բանակն Կիւրոսի ամենայն ուստեք պատեալ պաշարէր ի թշնամեաց անտի շուրջանակի, հեծելովք եւ վառելովք եւ ասպարակրօք եւ աղեղնաւորօք եւ կառօք, բայց միայն յետուստ կողմանէ։

Սակայն իբրեւ պատուէր ետ Կիւրոս դարձան ամենեքին հանդէպ թշնամեաց, եւ էր ամենայն ուրեք լռութիւն ի հոգալոյ անտի զլինելոցն։ Իբրեւ ժամ թուեցաւ Կիւրոսի, սկիզբն առնէր երգոցն եւ միաբան բարբառով հնչէր

ամենայն զօրն։ Յետ այնորիկ Անիադ- եայ աղաղակ բարձեալ գոչէին. յարեաւ Կիւրոս, եւ իսկ եւ իսկ վաղվաղակի ընդ- հեծելոցն զԹշնամիսն յայնմ կողմանէ ի բուռն առնոյր, եւ վաղվաղակի իսկ խումբ գործեալ ընդխառնէր ի պատե- րազմին։ Եւ հետեւակքն կարգեալք ճա- կատեալք սաստիկ զհետ գային, եւ ան- կանէին զնոքօք յաջմէ եւ յահեկէ, զի զօրագոյնք քան զնոսա լինիցին. զի գնդաւն ի վերայ թեւին անկանէին. մինչեւ վաղվաղակի սաստիկ փախուստ թշնամեացն լինէր։

Իբրեւ զգաստ լինէր Արտագերսեայ թէ Կիւրոս գործէ, յարձակեցաւ եւ նա յահեակ կողմն զուղտսն առաջի արկեալ, որպէս հրամայեաց Կիւրոս։ Եւ երիւարքն չհարկանէին ի դիմի, այլ կի- սոցն զայրացեալ փախստեայ գնացին եւ կէսք սաստեալ իմն խայտային. եւ այլք ընդ միմեանս հարկանէին. քան- զի յուղտուցն այսպիսի ինչ կրեն երի- վարքն։ Բայց Արտագերսէս քանզի ճակատեալ ունէր զայնոսիկ որ ընդ իւրն էին, ճակատեալ ի վերայ խառնելոցն անկանէր. եւ զկառսն որ ընդ աջմէ եւ ընդ ահեկէ էին միաբանգամ արձակէր. եւ բազում կառք ի կառացն փախու- ցեալ յայնցանէ որ ի թեւ անդր դիմէ- ին սատակէին. եւ շատք ի նոցանէ պր- ծեալ ի կառացն ՚ըմբռնէին։

Նաեւ Աբրադատէս ոչ եւս այնուհետեւ դանդաղէր սաստիկ զաղաղակ եդեալ եթէ. Արք բարեկամք ելէք զհետ իմ. եւ դիմեալ երթայր, եւ ոչ երիվարացն ինչ անխայէր, այլ հարկանէր խթանաւն. յարձակեցան ընդ նմա եւ այլ եւս կառավարք, եւ փախուցեալ երթային իսկ եւ իսկ ի նոցանէ կառքն, կիսոցն առեալ զայնոսիկ որ ի կառսն ելեալ էին եւ կիսոցն լքեալ: Բայց Աբրադատէս ուղղորդ նորօք յԵգիպտացւոց ճակատն դիմէր, հանդերձ նոքօք որ մօտ առ նմին իսկ կային ճակատեալ: Արդ բազում եւ այլ ուստեք յայտ է եթէ չէ զօրագոյն ճակատն եթէ ոչ յորժամ ի բարեկամաց նիզակակցաց գումարեալ իցէ, բայց եւ ի ժամանակի աստ յայսմիկ յայտ արարեալ ցուցաւ. քանզի որ ընկերքն էին նորա եւ բազմականակիցք, ընդ նմին յարձակէին. իսկ այլ եւս կառավարք, տեսին զԵգիպտացիսն բազմապատիկ կարգօք տեւեալ բաւեալ, խոտորեցուցին զկառսն ի փախստեայս անդր եւ պնդեալ երթային զկնի նոցա:

Իսկ աբրադատեանքն քանզի ի տեղւոջն ուր դիմեալ էին չկարէին Եգիպտացիքն ի միմեանց զատանել, վասն կալոյ նոցա աստի եւ անտի, զկանգնաւորսն սաստկութեամբ երիվարացն հարեալ կործանէին եւ զանկեալսն կոտո-

րէին, զնոսա եւ զզէնս նոցա, զերիվարս եւ զանիւսն։ Նաեւ ուր հատանէին զգերանդիքն զինաւ բռնութեամբ հատանէին եւ զզէնս եւ զմարմինս։ Նաեւ յայնժամ անհնարին խռովութեան ի բազում շեղջ շեղջ կուտելոյ ընդ միմեանս հարկանէին անիւքն, եւ Աբրադատէս անկանէր. եւ որ ընդ նմա իսկ մտեալ էին, անդէն առաքինացան եւ մեռան պատառ պատառ կոտորեալ։ Պարսիկքն որ զհետ երթեալ էին նոցա, յոր Աբրադատէս եւ որք ընդ նմայն էին դիմեցին, անդր անկան եւ խռովեալ կոտորէին զնոսա։

Ուր վատթարեցանն Եգիպտացիքն եւ բազումք իսկ էին, երթային դէղ ուղիղ առ Պարսիկսն. յայնժամ վայրի անհնարին պատերազմ էր տիգաց եւ գեղարդեանց եւ նետից եւ սուսերաց։ Բայց գլէին Եգիպտացիքն եւ բազմութեամբն եւ զինուքն, քանզի սաստիկ եւ երկայն գեղարդունք էին նոցա, զոր եւ ցայժմ իսկ ունին, եւ վահանք առաւել քան զզրահսն եւ ծածկէին զմարմինս, եւ առ մղել օգնական լինէին եւ զուսոց կան կախեալ։

Արդ զվահանսն առ միմեանս աղխեալ երթային եւ մղէին։ Իսկ Պարսիկքն չկարէին հարկանել ի դիմի, որպէս ի ծայրս ձեռացն տապարս ունիցին, այլ ոտն ոտն մեկնէին հարկանէին եւ հա-

բեւալք լինէին, մինչեւ հասին ի մեն-
քենայսն։ Բայց իբրեւ եկին անդր միա-
անգամ յաշտարակացն հարեալ լինէ-
ին Եգիպտացիքն. եւ որք յետ ամենե-
ցուն էին շրայլին փախչել ոչ աղեղնա-
ւորացն եւ ոչ ախտաւորաց, այլ զաւա-
ներան պողովատիկս կարկառեալ ասի-
պէսն նետաձիգ լինել։ Նոյն էր բազում
կատարած մարդկան, շաչիւն զինուց շա-
ռաչիւն նետից ասնաձայն վահանաւոր
վառեալոցն. եւ գոչիւն անհնարին կիսաց
որ զմիմեանս կարդային եւ կիսոց որ
քաջալերս տային, եւ այլոց որ զդիսն
կոչէին։

Յայնժամ վայրի Կիւրոս զհետ մը-
տեալ այնոցիկ որ հանդէպ իւր կային, ե-
կեալ հասանէր, իբրեւ ետես թէ Պար-
սիկք ի տեղւոջէն խաղացին, ի խոր խո-
ցէր. ի միտ առնոյր թէ չմարթի ուստեք
վաղվաղակի զթշնամիսն խափանել յեր-
թալոյ առնուլ յառաջ, եթէ ոչ յետուստ
կողմանէ պատիցին զնոքօք. պատուէր
տուեալ որոց ընդ իւրն էին զհետ գալ։
Իսկ Եգիպտացիքն իբրեւ զգացին, զա-
ղաղակ եդեալ գոչէին եթէ յետուստ
թշնամիք կան եւ դառնային ի կողման-
սն. յայնժամ վայրի խառն պատերազմէին
հեծեալք եւ հետեւակք։ Ընկաւ ձին
ընդ երիվարաւն Կիւրոսի, եւ իբրեւ կո-
խան լինէր, զէն վերացոյց հար զպորտ
երիվարի նորա. եւ երիվարն խոցեալ ի

դեղեւելն իւրում ընկենոյր զԿիւրոս։ Ընդ առնոյր ոք ի միտ, քանի լաւ իցէ սիրելի լինել իշխանին իշխանաւորացն. քանզի ամենեքին վաղվաղակի աղաղակեցին հասին կառուեցան, մղեալ եւ մղէին, խոցեալ եւ խոցէին. եւ վազեալ ուրուք յերիւարէն ի պատուաւորացն Կիւրոսի, հան զնա յիւր երիւարն։

Իբրեւ հեծաւ Կիւրոս, տեսանէր ամենայն ուստեք հարեալ զԵգիպտացիսն զի եւ Վշտասպաս հասեալ էր համադերձ հեծելովքն Պարսից, եւ Քրիսանտաս։ Այլ չետ նոցա այնուհետեւ մխել ի ճակատ Եգիպտացւոցն, այլ հրամայեաց արտաքուստ արտաքս նետս ընկենուլ։ Իբրեւ շրջեցաւ ի մեքենայսն կամեցաւ յաշտարակ ինչ ելանել դիտել եթէ գուցէ ուրեք այլ ինչ գունդ թշնամեաց եւ պատերազմիցի. եւ իբրեւ ել, ետես լցեալ զդաշտն երիւարօք եւ մարդկաւ եւ կառօք, փախուստիւք եւ պընդելովք զհետ նոցա. յաղթողքն եւ յաղթելովք. զի թշնամիքն փախստեայ դիմէին, եւ իւրքն յաղթէին։ Իսկ ի պարտելոցն ոչ ուրեք զոք այնուհետեւ կարէր տեսանել բաց յԵգիպտացւոցն. նոքա իբրեւ յանհնարս մտանէին շուրջ բակ առեալ մինչեւ ամենեւին զինուց իսկ երեւել, ընդ վահանօքն նստէին, եւ գործէին ինչ ոչ այնուհետեւ, եւ բազում վնաս եւ աղէտս կրէին։

Զարմացեալ Կիւրոսի ընդ նոսա, եւ ողորմեալ զի այնպիսի արք քաջ կորընչէին, ի բաց մերժեաց զամենեսեան որ շուրջանակի մարտընչէին, եւ չետ թոյլ այնուհետեւ ումեք մարտընչել. եւ քարոզ եւս առաքէ առ նոսա հարցանել. թէ արդեւք համօրէն կորընչել կամիցին վասն այնոցիկ որ նոցա մատն եղեն, եթէ փրկել քաջութեամբ. նոքա ետուն պատասխանի. իսկ զիա՞րդ ապրեցիմք մեք քաջ անուամբ: Ասէ Կիւրոս միւսանգամ. զի մեք զձեզ եւեթ տեսանեմք զի կայք կամիք մարտ եդեալ կռուել ընդ մեզ: Ասեն անտուսա Եգիպտացիքն. Զի՞նչ ինչ լաւութիւն գործեալ եւ ապրեցիմք. եւ Կիւրոս ասէ ցնոսա. Եթէ ոչ ուրուք ի նիզակակցաց ձերոց մատն եւ տուր լեալ ապրեցիք եւ զզէն եւ զզարդ զայն մեզ տայցէք, եւ բարեկամք լինիցիք որք կամին զի դուք ողջ իցէք, ուր մարթիցի սատակել իսկ զձեզ:

Զայս լուեալ հարցանէին. Եթէ բարեկամք լինիցիմք ձեր, եւ իւիք վարելոյ զմեզ արժանի առնիցէք: Ետ պատասխանի Կիւրոս. Բարիս գործելոյ եւ երախտիս գտանելոյ: Հարցանէին միւսանգամ Եգիպտացիքն. Զո՞ր երախտիս: Առ այն ասէ Կիւրոս. Վարձս տաց ձեզ աւելի քան որչափ այժմ առնուք, ցորքան ժամանակս պատե-

րազմն իցէ։ Իսկ խաղաղութեան լինե-
լոյ, այնմ որ կամիցի ի ձէնջ առ ի
մնալ, տաց վայրս եւ քաղաքս եւ կա-
նայս եւ գերդաստանս։ Տուեալ զայն
Եգիպտացւոցն, աղաչեցին Թողութիւն
առնել նոցա երթալոյ ի մարտ պատե-
րազմի ի վերայ Կրիւսոսի. եւ այնմ եւ-
եթ ասէին ներել, բայց զայլն ամենայն
յանձին կալան, ետուն հաւատս եւ ա-
ռին։ Եւ Եգիպտացիքն որ յայնժամ
մնացին, ցայժմ եւս կան հաւատարիմ
Թագաւորին։ Կիւրոս ետ նոցա քա-
ղաքս զվերնակողմանցն, եւ ցայժմ
քաղաքքն անուանեալ կոչին Եգիպ-
տացւոց, զԼարիսան եւ զԿիւղենէ առ
Կիւմեայ ծովեզերեայ, զոր եւ այժմ
նոքա ունին։ Զայս ամենայն իբրեւ
վճարեաց Կիւրոս ընդ խաւար երթեալ
ի Թիւրիբարիս բանակ հարկանէր։

Յայնմ մարտի Եգիպտացիք միայն ի
Թշնամեաց անտի մեծարոյ եղեն. եւ
յայնցանէ որ ընդ Կաւոսի էին Պարսից
այրուձին զօրագոյն երեւէր. որպէս զի
եւ այժմ կայ պահի սպառազինութիւ-
նքն զոր ի ժամանակին յայնմիկ կազ-
մեաց Կիւրոս հեծելոցն. հաճոյ Թուե-
ցան յոյժ եւ կառքն գերանդազէնք,
մինչ զի եւ այժմ դոն նոյնք այժմու
Թագաւորիս։ Բայց ուղտքն ահ ար-
կին միայն երիվարացն. այլ հեծեալքն
ի վերայ նոցա ոչ զոք կոտորեցին, եւ

ոչ ինքեանք ի հեծելոց անտի սատակեցան. զի ոչ մօտէր ի նոսա երիվար. եւ պիտանացու իսկ թուեցաւ լինել։ Բայց զի ոչ ոք քաջ եւ առաջինի կամի ուղտ սնուցանել, զի նովաւ երթայցէ, եւ ոչ կրթել եթէ պատերազմիցի ի նոցանէ. այնպէս առեալ միւսանգամ զերիվարեանց կերպարանսն կան ի մէջ բեռնակրացն։ Եւ որ զԿիւրոսիւն էին յառ ընթրեացն պահապանս կացուցեալ որպէս արժան էր, ի քուն լինէին։

## ԳԼՈՒԽ Բ

ԿԻՒՐՈՍ վաղվաղակի զօրգքն փախըստեայ ի Սարդիացւոց քաղաքն դիմէր. եւ այլ եւս ազգք ուր եւ հասանէին մեկնէին գիշերայն մօտագոյն ընդ ճանապարհ աշխարհին իւրեանց։ Իբրեւ տիւ լինէր, անդէն խաղայր գնայր Կիւրոս ի վերայ Սարդիացւոցն. իբրեւ եհաս ի պարիսպ անդր որ ի Սարդիացւոց աշխարհին, զմեքենայսն կանգնէր որպէս թէ զորմսն բախիցէ, եւ սանդուղս կազմէր։ Մինչ դեռ զայն գործէր, ընդ զօրագոյն կողմն Սարդիացւոց ամրին հանէր զՔաղդեացիսն եւ զՊարսիկս յորժամ գիշեր ի վերայ հասեալ կայր։ Եւ առաջնորդէր նոցա այր պարսիկ ծառայ լեալ ուրուք ի պահապանաց ի բարձրաւանդակի քաղա-

քին, եւ ուսեալ իջանել ի գետն եւ ելանել: Նա եւ իբրեւ յայտնի լինէր, եթէ առաւ ամուրն, ամենայն Գիւղացիքն փախստեայ գնային ի պարսպէ անտի, ուր եւ հասանէր իւրաքանչիւր: Կիւրոս եմուտ յաւուր յայնմիկ ի քաղաքն, եւ պատուէր ետ մի ումեք խաղալ ի գնդէ անտի:

Բայց Կրիւսոս արգելեալ փակեալ յարքունիսն առ Կիւրոս գոչէր. իսկ Կիւրոս թողեալ պահապանս Կրիւսոսի, ինքն երթայր յամուր անդր, եւ իբրեւ ետես զՊարսիկսն զի պահէին զամուրն որպէս արժան իսկ էր, եւ զՔաղդեացւոց զէնսն թափուրս, քանզի ի տանց յափշտակութիւնս դիմեցին, իսկ եւ իսկ կոչէր ի մի վայր զիշխանս նոցա ի բաց լինել վաղվաղակի ի զօրաց անտի: Ոի չկարեմ, ասէ, հանդարտել զի որք առանց կարգաց եղեն, առաւել ընչաւէտք լինիցին: Գիտասջիք, ասէ, զի պատրաստեալ էի ես զձեզ որ ընդ իս ի պատերազմ եկայք, երանելիս քան զամենայն Քաղդեացիսն առնել: Բայց այժմ, ասէ, մի ինչ զարմանայցէք եթէ ոք զօրագոյն քան զձեզ պատահիցէ ձեզ ի մեկնելն ձեր աստի:

Լուեալ զայն Քաղդեացւոցն աղաչէին եւ պաղատէին դադարել ի բարկութենէ անտի, եւ յանձն առնային զկարասին ամենեւին ի բաց տալ: Նա

նա ասէր. Թէ չեն ինչ այնր պէտք, այլ եթէ կամիք, ասէ, զի զիջանիցիմ ի սըրտմտութենէ աստի, տուք ի բաց զամենայն զոր առէք, այնոցիկ որ զբերդդ պահեն։ Զի եթէ զգայցեն այլ եւս զօրքն եթէ առաւել առնուն որ կան ի յարդարեալ կարգին, ամենայն ինչ ի դէպ ելանիցէ։ Նոյնպէս առնէին Քաղդեացիքն որպէս հրաման ետ Կիւրոս. եւ առնոյին հնազանդեալքն բազում ինչս։ Իսկ Կիւրոս բանակ հարեալ իւրոց զօրացն ուր պատեհ թուէր ի քաղաքի պատուէր տայր կալ զինուք եւ ճաշել։

Զայս ամենայն վճարեալ հրաման ետ ածել առ իւր զԿիւրոս։ Կրիւսոս իբրեւ ետես զԿիւրոս. Ողջ եր տէր, ասէ, զի զայդ անուն ետուն այսուհետեւ դէպքն քեզ ունել եւ ինձ յորջորջել։ Եւ դու, ասէ, ողջ լեր ով Կրիւսէ, քանզի երկոքեան մարդիկ եմք. կամի՞ս ով Կրիւսէ խրատ ինչ տալ ինձ։ Կամէի, ասէ, ով Կիւրոս բարութիւն ինչ գտանել քեզ, զի այն եւ ինձ օգուտ լինիցի։ Այսուհետեւ լուր, ասէ, ով Կրիւսէ, զի իմ տեսեալ զզօրս քո ի բազում աշխատութիւն եւ ի վիշտս, զի այժմ համարին թէ ունին զքաղաք մեծագանձ Ասիացւոց աշխարհին յետ Բաբիլոն քաղաքի, արժան համարին օգուտ ինչ գտանել զօրաց։ Վասնզի գիտեմ, ասէ, զի եթէ ոչ շահս ինչ առցեն զվաստակոցն, չկա-

րեմ զնոսա բազում ժամանակս ի հնազանդութեան ունել: Որդ չկամիմ թոյլ տալ նոցա յափշտակել զքաղաքն զի քաղաքն ի բաց ապականի. եւ գիտեմ թէ ի յափշտակութեանն յոռիքն առաւել մեծանան:

Զայն լուեալ Կրիւսոսի ասէր. Թոյլ տուր ինձ, ասէ, խօսել առ Լիւդացիսն առ որս ես կամիցիմ, եթէ շնորհեսցես ինձ յաղաչել իմում մի առնել յափշտակութիւն եւ մի թողուլ անհետ յաչաց կորընչել մանկտւոյ եւ կանանց. ես խոստանամ քեզ ընդ այնր թէ ի Լիւդացւոց կամաւ տացի քեզ ամենայն որ ինչ բարի եւ գեղեցիկ իցէ ի Սարդիացւոց աշխարհին. զի եթէ զայս լուիցեն, գիտեմ եթէ բերցեն զամենայն որ ինչ անդ գեղեցիկ ստացուած իցէ առն եւ կնոջ. եւ զնոյն օրինակ ի հերուն բազում եւ գեղեցիկ արարովք միւսանգամ լի իցէ քաղաքն. այլ եթէ յափշտակիցես, ապա եւ ճարտարաց արուեստքն յորոց ասեն թէ բարութեանցն աղբեւրք են, ապականեալ եղծանիցին: Մարթ է քեզ որ տեսանես զայն ամենայն, երթալ եւս եւ վասն յափշտակութեանն խորհուրդ առնուլ: Նախ զիմոց իսկ գանձուց առաքեա, եւ ասասցեն պահապանքն քո պահապանաց անտի իմոց:

Յանձն առ Կիւրոս այսպէս առնել որպէս խօսեցաւ Կրիւսոս: Բայց զայն,

ասէ, Կրիւսէ, պատմեա ինձ թէ զիա՞րդ ի գլուխ ելին որ ի Դեղփիս հրամանքն եղեն. զԱպողոնեայ ասեն թէ պաշտօն առնոյր ի քէն, եւ զամենայն ինչ առ նես նմին անսալով: Կամէի, ասէ, այսպիսի ինչ լինել ով Կիւրոս. բայց այժմ ամենեւին զնոցին հակառակն անդէն իսկ իսկզբանն գործեալ մատեայ առ Ապողոն: Եղէ Կիւրոս. Զիա՞րդ կամ որպէս, յայտ արա, զի ամենեւին իսկ նորանշան ինչ իրս պատմես:

Զի յառաջնում իսկ նուագին, ասէ, անփոյթ արարի հարցանել զդիսն եթէ զի՞նչ ինչ պիտոյ իցէ ինձ, եւ զհանդէս տեսի նորա եթէ կարիցէ ճշմարիտ խօսել: Եւ այն ոչ զի աստուած, ասէ, այլ մարդիկ լաւք եւ առաքինիք յորժամ գիտիցեն եթէ չթուին հաւատարիմք, չսիրեն զթերահաւատեալսն: Բայց իբրեւ ի միտ առի եթէ անպատեհ իրս գործեցի եւ ի Դեղփեաց հեռի էի առաքեցի զորդւոցն իմոց: Նա զառաջինն չետ ինձ պատասխանի: Իբրեւ բազում նուէրս ոսկիս եւ արծաթիս բազումս առաքեցի, եւ զոհս մատուցի, ապա հաշտարարի զնա, որպէս կարծէի. յայնժամ ետ ինձ պատասխանի յորժամ հարցի ցնա թէ զի՞նչ գործիցեմ զի մանկունք լինիցին իմ: Եւ ասէր. թէ Ծնիցին. եւ եղեն. քանզի եւ ոչ զայն ստեաց, բայց իբրեւ

ծնեան ոչ ինչ օգուտ եղեն։ Զի մին համր մնաց, եւ մեւսն ազնուագոյն եղեալ անդէն ի մատաղ հասակի սատակէր։ Եւ իբրեւ նեղեալ էի ընդ վիշտ մանկանցն, միւսանգամ յղեմ եւ հարցանեմ զդիսն եթէ զինչ գործեցից զի զմնացեալ կեանս հանիցեմ ի դիւրու. եւ նա ետ պատասխանի

## ԵԹԷ ԶՔՈ ԻՍԿ ԱՆՁՆ ԾԱՆԻՑԵՍ ՓԱՌԱՒՈՐ ԼԻՆԻՑԻՍ ԿՐԻՒՍԷ։

Իբրեւ լուայ զըղձութիւնն ուրախ եղէ. զի համարէի եթէ դիւրին ինչ հրամայեաց ինձ եւ զփառաւորութիւնն ետ. զի համարէին թէ յայլոց մարթի զկէսս ճանաչել եւ զկէսս ոչ. իսկ զանձն թէ ո՛ ոք է, ամենայն ումեք մարդոյ համարէի գիտել։ Եւ յետ այնր ժամանակի մինչ դեռ հանդարտեալ կայի, ոչ ինչ մեղ դնէի դիպաց պատահելոց յետ մահու մանկանն։ Բայց իբրեւ հաւանեցայ ասորեստանւոյն երթալ ի վերայ ձեր ի մարտ պատերազմի, յամենայն վիշտս երթայի, բայց պրծեալ ապրէի ոչ ինչ չարիս կրեալ. այլ եւ ոչ վասն այնր ամենայնի եպերեմ զդիսն։ Զի իբրեւ գիտացի զանձնէ թէ չեմ բաւական տալ մարտ պատերազմի ընդ ձեզ, անվնաս ելանէի աստուածովն եւ ես եւ որ ընդ իմն էին։ Իսկ այժմ միւսան-

դամ ի մօտաւոր մեծութենէ աստի
քայքայեալ, եւ յայնցանէ որ աղա-
չէինն զիս վերակացու լինել եւ ի պա-
տարագացն զոր տային ինձ եւ ի մար-
դկանէ որ ստկէին ինձ եւ ատէին, զի
եթէ ես կամիցիմ իշխել, ամենեքին
հնազանդ լինիցին ինձ, եւ մեծ քան
զամենայն մարդիկ լինիցիմ։ Յայսց բա-
նից հպարտացեալ, իբրեւ ընտրեցին զիս
թագաւորք որ շուրջանակի բնակեալ
էին ոստիկան պատերազմին, յանձն ա-
ռի զզօրավարութիւնն որպէս թէ բաւա-
կան իցեմ մեծ քան զամենեսին լի-
նել։ Ոչ ծանեայ զանձն զի համարէի
բաւական լինել պատերազմել ընդ
քեզ, նախ որ ի դիցն իսկ ծնեալ ես
եւ ապա ի թագաւորաց, եւ ապա յա-
ռաքինութիւն թեւակոխեալ։ Բայց
զիմոցն նախնեաց լսեմ թէ որ նախ թա-
գաւորեաց, թագաւոր էր եւ ազատ։
Արդ քանզի զայն անգիտացայ, յիրաւի
ասէ, զպատիժսն ունիմ։ Այլ այժմ,
ասէ, ո՛ Կիւրոս ճանաչեմ զանձն, դու
տակաւին ճշմարիտ համարիցիս զԱպո-
ղոնն, եթէ յաջողեալ լինիցիմ եթէ
զանձն ծանիցեմ։ Զքեզ յայն սակս
հարցանեմ զի թուիս ինձ ազնուագոյնս
նկատել զայն ի ժամանակիս յայսմիկ.
զի եւ առնել ձեռնհաս ես։

Եւ Կիւրոս ասէ. Խորհուրդ տուր
ինձ վասն սորին, ով Կրիսոսէ։ Զի իմ

զմտաւ ածեալ զառաջին փառաւորութիւն քո ողորմիմ քեզ, եւ տամ քեզ զկինդ զոր ունիս եւ զդստերսդ, զի լսեմ թէ են քո եւ բարեկամք եւ եւ պաշտօնեայք, եւ սեղան որպէս էր իսկ քո. զկռիւս եւ զպատերազմունս բառնամ ի քէն: Ասէ Կրիւսոս այսուհետեւ դու մի ինչ խորհեսցիս տալ ինձ պատասխանի վասն իմոյ փառաւորութեանն: Օրհնեմ ես քեզ, եթէ զայս ամենայն առնիցես դու ինձ զոր ասես, զոր այլք երանելի կեանս համարիցին, որոց եւ ես իսկ հաւանիմ, զնոյն կեանս եւ ես կեցցեմ: Եւ Կիւրոս ասէ. ո՞ է որ զայն երանելի կեանս ունիցի: Կին իմ, ասէ, Կիւրէ, քանզի նա բարութեանցն եւ փափկութեանցն եւ ուրախութեանց ամենայնի զնոյն հաղորդէր ինձ. իսկ հոգոցն թէ զիարդ այս ամենայն լինիցի եւ պատերազմի եւ կռուոյ չէր ինչ նորա հաղորդութիւն. եւ դու թուիս ինձ թէ այսպէս կազմիցես զիս, որպէս եւ զկինն զոր ես առաւել քան զամենայն մարդիկ սիրէի. որպէս զի այլ եւս գոհութեանց պարտապան թուիցիմ Ապողոնեայ: Լուեալ Կիւրոսի զբանս նորա ընդ մտադիւրութիւնն զարմացաւ. եւ ուր եւ գնայր Կիւրոս, բերէին եւ զնա զի պիտանի իմն հաշուէր զնա իւր, եւ զգուշաւոր եւս այնպէս համարէր. ապա եւ ննջեցին:

## ԳԼՈՒԽ Գ

Ի վաղիւ անդր կոչեցեալ Կիւրոսի զբարեկամս եւ զզօրավարս զօրացն, ոմանց ի նոցանէ հրաման տայր զգանձսն առնուլ, եւ ոմանց որ ինչ ինչս տայցէ նոցա Կրիւսոս, նախ զդիցն հանեալ, որչափ մոգքն հրամայեցին, եւ տալ զայլ կարասին առնուլ եւ յարկեղս եդեալ ի սայլսն լնուլ, եւ բերել զսայլսն յո եւ երթայցեն. զի յորժամ ժամանակ ի դէպ լինիցի առցեն իւրաքանչիւր զարժանն. եւ նոքա նոյնպէս առնէին: Կիւրոսի կոչեցեալ զոմանս ի սպասաւորացն որ անդ կային. Ասացէք ինձ, ասէ, դոդէք, տեսէ՞ս ոք ի ձէնջ զԱբրադատէս. քանզի զարմացեալ եմ, ասէ, զի որ յառաջին յաճախէր առ մեզ, այժմ ոչ ուրեք երեւի: Եւ պատասխանի ումն ի սպասաւորաց անտի, եթէ Տէր, չէ կենդանի, այլ ի ճակատուն մեռաւ, արկեալ ըզկառսն ի մէջ Եգիպտացւոցն. իսկ այլքն բաց յընկերաց նորա, խոտորեցան որպէս պատմեն, յորժամ զկարգս Եգիպտացւոցն տեսին. եւ այժմ եւս, ասէ, ասեն, թէ նորին կին հան ըզդիականն եւ եդեալ ի դեսպակ անդր որով ինքն գայր, եբեր զնա այսր ուրեմն առ Պակտողոն գետ. եւ զներքինեացն

եւ զծառայիցն նորա, ասեն, փարեալ ի վերայ բլրի իրիք դիակալ տապան վախճանելոյն, եւ զկնոջէն պատմեն թէ ի գետին նստիցի եւ զարդարիցէ զայրն զարդուքն զոր ունիցի եւ զգլուխըն ի ծնգացն վերայ ունիցի։

Զայս իբրեւ լուաւ Կիւրոս, հար ըն-կողս իւր եւ իսկ եւ իսկ վազեալ յերիվարն առեալ հազար հեծեալս երթայր ի կարասիսն։ Հրաման տայր Գադատայ եւ Գոբրիայ զոր ինչ կարիցեն առնուլ զարդ գեղեցիկ առն բարեկամի վախճանելոյ առեալ զհետ պնդեսցին։ Եւ որ ոք ունէր հօտս եւ անդեայս եւ երիվարս, ընդ իւր տանիցի, պատուիրէր նմա եւ այլ եւս բազում խաշինս բերել ուր եւ համարիցի զնա լեալ. զի զենցէ Աբրադատայ։ Իբրեւ ետես ըզ-կինն ի հող նստեալ եւ դիականն եդեալ կայր, արտասուեաց ընդ վիշտն եւ ասէ. Ահ առաքինի ոգի, գնացե՞ր թողեալ զմեզ. եւ բուռն եհար զաջոյ ձեռանէ նորա, եւ զայն սուսերաւ ի բաց հատեալ էր Եգիպտացւոցն։

Զոր տեսեալ Կիւրոսի առաւել եւս ի խոր խոցէր, եւ կինն ճիչ բարձեալ գուժէր, եւ առեալ ի Կիւրոսէ համբուրեաց զձեռնն, եւ միւսանգամ որչափ մարթ էր ի միմեանս յարէր եւ ասէր. Եւ այլ եւս անդամք նորա նոյնպէս են Կիւրոս, այլ զի՞ պիտոյ իցէ

քեզ տեսանել. զայս, ասէ, գիտեմ եթէ վասն իմ կրեաց զայնպիսի վիշտս, թերեւս եւ ոչ գուն ինչ եւ վասն քո ով Կիւրոս. զի ես յիմարս ստէպ քաջալերեցի զնա այսպէս իսկ առնել զի քեզ բարեկամ ընտիր երեւիցի. գիտեմ թէ ինքն չածէր ինչ զայն զմտաւ եթէ զի՞նչ գործ գործիցէ, այլ թէ զի՞նչ գործիցէ զի քեզ շնորհ առնիցէ: Արդ նա, ասէ, առանց պարսաւանաց վախճանեցաւ, եւ ես որ քաջալերս իսկ ետու նմա, նստիմ առ նմին կենդանի:

Կիւրոս վայր մի լռիկ արտասուս արկանէր, ապա բարբառէր. Սա, ով կին, գեղեցիկ վախճանի կալաւ, քանզի յաղթութեամբ վախճանեցաւ. բայց դու առեալ զսոսա յինէն զարդարեա զնա. եկեալ հասեալ էր Գոբրիաս եւ Գադատաս, բազում գեղեցիկ զարդ բերեալ. եւ ապա ասէ. Գիտասջիր թէ եւ ոչ յայլոց եւս պատուոց անմեծար լինիցի. այլ եւ բազումք յիշատակարան ըստ ձերում արժանի դրօշեսցեն եւ զենցեն ի վերայ նորա որպէս ի դէպ իցէ առն քաջի, եւ դու, ասէ, ոչ թափուր լինիցիս այլ ես քեզ վասն զգաստութեանդ եւ ամենայն քաջութեանդ մեծարանս եդից, եւ կացուցից զոք որ տարցի զքեզ ուր ուրեք դու կամիցիս. միայն, ասէ, յայտ արա առ ո՛ ոք ախորժիցես երթալ: Եւ Պանթիա ասէ. Քաջալե-

ըեաց, ասէ, ով Կիւրէ, ոչ թողուցից ի քէն թէ առ ո՞ կամիցիմ երթալ։

Իբրեւ զայս խօսեցաւ Կիւրոս ի բաց չոգաւ ողորմեալ ի վերայ կնոջն թէ յորմէ առնէ զրկեցաւ, եւ ի վերայ առնն թէ որպիսի կին եթող եւ ոչ տեսանիցէ. իսկ կինն հրամայեաց ներքինեացն ի բաց գնալ, մինչեւ, ասէ, ես աշխար եղեալ լայցեմ զնա որպէս կամիցիմ. եւ դայեկին ասէր թէ մնա, եւ պատուէր ես նմա թէ յորժամ մեռանիցի, զնա եւ զայլն միով հանդերձիւ պատիցէ։ Իբրեւ շատ աղաչեաց դայեակն մի առնել զայն, եւ ոչ ինչ օգուտ լինէր եւ դժկամակ լեալ տեսանէր, նստեալ զլալ հարկանէր։ Նա, քանզի զդաշոյնն յառաջագոյն պատրաստեալ էր, մըխեաց յանձն իւր, եւ զգլուխ իւր ի վերայ բարձից առնն եդեալ մեռանէր, եւ դայեակն սուգ առեալ զերկոսեան պատէր որպէս պատուէր առեալ էր Պանթիայ,

Կիւրոս իբրեւ զդայր զգործ կնոջն, զահի հարեալ չոգաւ եթէ կարիցէ օգնել ինչ։ Իսկ ներքինեացն տեսեալ զիրսն որ եղեն եւ երեք ներքինիք էին, հանեալ եւ նոցա եւ զդաշոյնսն ինքեանք անձանց առնէին, կացեալք ի տեղւոջն յորում հրամայեաց նոցա. եւ այժմ եւս ասեն թէ յիշատակարանն կայ կարկառ լեալ մինչեւ ցներքինիսն եւ ի վերայ վերնոյ արձանին առնն եւ

կնոջն անուանք դրոշմեալ կան ասորի գրով, եւ ի խոնարհ պատմին լեալ երիս արձանս եւ ի վերայ սեանցն գրեալ

## ՆԵՐՔԻՆԵԱՑ

Սիւրոս իբրեւ մօտ շոգաւ, զարմանայր ընդ կինն եւ աշխարեալ ի բաց գնայր, եւ հոգայր զնոցանէ որպէս ի դէպ էր, զի ամենեւին բարութեանց հասանիցեն, եւ շիրիմ բարձրաբերձ շինեցաւ, որպէս ասեն:

## ԳԼՈՒԽ Դ

ՆՊԱ ի մարտ պատերազմի ընդ միմեանս Կարխացիքն գրգռէին, զի բնակութիւնս յամուր տեղիս ունէին, եւ երկոքին կողմանքն կոչէին զՍիւրոս: Բայց Սիւրոս ինքն կայր միայն ի Մարդիացւոց աշխարհին, մեքենայս գործէր եւ խոյս, զի զչհնազանդելոցն զպարիսպըն խարխարեալ կործանեսցէ: Օրդուսիոս զայր պարսիկ ոչ անմիտ եւ ոչ անտեղեակ պատերազմի եւ ամենեւին իսկ առաքինի, առաքէ ի Կարխս տրեալ զօրս: Եւ Միղիկեցիք եւ Միպրացիք մոտադիւրագոյնս երթային ընդ նմա ի մարտ պատերազմի վասն որոյ ոչ առաջէր երբեք պարսիկ Կուստակալ Միղիկեցւոց եւ ոչ Միւպրացւոց, այլ բաւա-

կան լինէին բանակքն որ թագաւորէին. բայց առնոյր հարկ, եւ վասն զօրաց յորժամ պիտոյ լինէր, հրամայէր նոցա։

Եւ Ադուսեայ առեալ զզօրն ի Կարաստան հասանէր, եւ յերկոցունց կողմանց Կարիացւոցն գային հասանէին առ նա պատրաստեալք ընդունել ի պարիսպն առ չարւոյ իւրեանց հակառակորդացն։ Իսկ Ադուսիոս առ երկոսին կողմանսն զայս ինչ առնէր։ Արդար խօսիք, ասէ, ընդ որոց խօսէքն, պարտ է ասէ թագուցանել ձեզ ի հակառակորդաց թէ բարեկամք եղերուք, զի այնպէս յանպատրաստից ի վերայ անկանիցիք հակառակորդացն ձերոց. եւ աղաչէր զի հաւատք լինիցին, եւ Կարիացիք երդմնի լինէին առանց նենգութեան ընդունել զնոսա ի պարիսպն, եւ առ ի բարութիւն Կիւրոսի եւ Պարսից. եւ ես կամիմ, ասէ, երդնուլ առանց նենգութեան մտանել ի պարիսպսն եւ ի բարիս ընդունելեացն։

Իբրեւ զայս առնէր, ի նմին իսկ գիշերի ընդ երկոցունց դաշինս կռէր գաղտ յերկոցունց կողմանց, եւ ի նմին իսկ գիշերի մտանէր ի պարիսպն եւ առնոյր զամուրս երկոցունց. եւ ի լուսանալ աւուրն, նստեալ ի միջի զօրացն հանդերձ, կոչէր յերկոցունց կողմանց զաւագանս։ Նոցա հայեցեալ ընդ միմեանս,

զպյրոցան ի միտ առեալ եթէ երկոքին կողմանքն խաբեցան: Բայց Ադուսիոս խօսէր այսպէս: Ես ձեզ ով արք երդմնի եղէ առանց նենգութեան մտանել ի պարիսպն եւ յօգուտ ընդունելեացն. արդ եթէ սատակեմ զկողմն մի ի ձէնջ, համարեցիմ թէ առ չարւոյ Կարիացւոցն մտի: Ապա եթէ խաղաղութիւն առնիցեմ ձեզ, եւ ամրութիւն երկոցունց կողմանցդ զերկիր ի գործ արկանելոյ, համարիմ փառս ձերոյ օգտի եկեալ: Եւ արդ պարտ եւ պատշաճ է, յորէ աւուր յայսմանէ բարեկամութիւն ընդ միմեանս խառնել, եւ անկասկած զերկիր գործել, տալ որդեակս եւ առնուլ ի միմեանց. եթէ արտաքոյ քան զայսոսիկ զոկել ոք մտաբերիցէ, նոցա եւ մեք եւ Կիւրոս թշնամիք լինիցիմք:

Յայնմ հետէւ բաց էին դրունք պարըսպացն, խճողեալ էին ճանապարհք յերթելոց առ միմեանս, լի էին գեղքն սատարօք, առ հասարակ տօնս առնէին, խաղաղութեամբ եւ խնդութեամբ լի էր ամենայն երկիրն: Յայնմ վայրի գային հասանէին ի Կիւրոսէ հարցանել եթէ զօրաց ինչ պէտք իցեն կամ մեքենայից: Տայր պատասխանի Ադուսիոս եթէ զզօրսն որ աստ իցեն մարթի եւ այլ ուր ի գործ արկեալ վարել. եւ իբրեւ զայս ասէր զզօրսն հանէր եւ թողոյր պահապանս յամրոցսն: Բայց Կարիա-

ցիքն մատուցեալ աղաչէին կալ նմա անդէն, եւ իբրեւ ոչ կամեցաւ, առաքեցին առ Կիւրոս եւ աղաչէին առաքել նոցա զԱդուսիոս շահապ։

Իսկ Կիւրոս ի ժամանակին յայնմիկ առաքեալ էր զԱշտապէս զի առցէ զօր ի փռիւգաստան եւ յՀեղղեսպոնտոս։ Սակայն իբրեւ եկն Ադուսիոս, հրամայեաց նմա գնալ ուր Աշտապաս գնայցէ, զի առաւել հնազանդ լինիցին Աշտապայ յորժամ լսիցեն թէ այլ զօր մօտ հասեալ է։ Յոյնք որ զեզերբ ծովուն բնակէին բազում պատարագս տուեալ առ ի չընդունելոյ զխուժան ի պարիսպս, եւ յանձն առին հարկ հականել, եւ երթալ ի պատերազմ ուր Կիւրոս հրամայիցէ։ Իսկ Թագաւորն փռիւգացւոց կազմէր պատրաստէր զի կալցի զամուրսն եւ անսաստիցէ եւ այնպէս իսկ պատմէր։ Իբրեւ ի բաց կացին ի նմանէ հազարապետքն եւ լոկ մնաց, անկաւ ի ձեռն Աշտապայ, յանձն եղեալ Կիւրոսի։ Եւ Աշտապայ թողեալ յամուրսն ստուար պահապանս ի Պարսից մեկնեալ երթայր առեալ ընդ իւրսն բազում հեծեալս եւ տապարաւորս ի փռիւգացւոց անտի։ Բայց Կիւրոսի պատուէր տուեալ էր Ադուսեայ, զի յորժամ հասցէ առ Աշտապէս, զայնոսիկ որ ի փռիւգացւոց ընդ իւրեանս կամիցին ածել զինուք, եւ զայնոսիկ որ

մարտընչելն ցանկանայցեն, հանեալ ի նոցանէ զերիւարսն եւ զզէնս հրաման տալ պարսս առնուլ եւ գալ ստէպ զհետ:

Նա նոքա առնէին այնպէս: Կիւրոս խաղաց գնաց ի Սարդիացւոց կողմանց. Թողեալ բազում հետեւակ պահապանս ի Սարդիացւոց աշխարհին, առեալ եւ զԿրիւսոս, եւ բազում սայլս պէսպէս եւ ազգի ազգի ընչից. մատեաւ եւ Կրիւսոս գրեալ ճշդիւ գաակաւ որ ինչ կայրն յիւրաքանչիւր սայլի, եւ զգիրն մատուցեալ տայր ցԿիւրոս եւ ասէր. Զայդ առեալ, ասէ, ով Կիւրոս, գիտասցես թէ ո՛ ուղիղ աւանդեսցէ զոր բերէ եւ ո՛ ոչ: Կիւրոս ասէ. Դու բարւոք առնես ո՛ Կրիւսոս, զի տեսուչ լինիս. բայց նոքա տանին զկարասին որք արժանի իցեն ունելոյ զնոսա. որպէս զի թէ գողանան ինչ, զիւրեանց գողասցին. իբրեւ զայս ասէր, տայր զգիրն բարեկամացն եւ իշխանացն զի գիտասցեն թէ ո՞յք յոստիկանաց անտի ողջ աւանդեսցեն նոցա եւ ոյք ոչ:

Տանէր եւ ի Լիւդացւոց անտի զոր վառեալ տեսանէր զինուք եւ երիւարօք եւ կառօք, եւ զուն գործեալ առնել զամենայն որ ինչ համարէին թէ հաճոյ իցէ նմա, եւ զսոսա զինուք հանդերձ: Իսկ որք ակամայ զհետ եկեալ էին, զերիւարս նոցա Պարսից տայր, որք յառա-

Ջնուամն իսկ երթեալ էին ընդ նմա ի ճակատս, եւ զզէնսն այրէր եւ բռնադատէր զնոսա առնուլ պարսատիկս եւ գալ զհետ, եւ զամենեսին իսկ զանզէնսն յայնցանէ որ ձեռս ետուն ի նա ստիպէր տագնապէր պարսաւորս լինել, զմտաւ ածեալ թէ այն զէն ծառայութեան զէն է: Ոչ ի յորժամ խառն ընդ այլոց զօրութեանց պարսաւորք հասեալ կայցեն յոյժ օգուտ լինիցին: Նուինքեանք առանձինն եւ ոչ ամենեքին միանգամայն պարսաւորքն բնաւ զդէմ ունիցին սակաւաւորաց յարձակելոց զինու եւ զարդու:

Իբրեւ դիմեալ երթայր ի Բաբեղոն, վանէր վկանդէր զփռիւգացիսն որ ի մեծի աշխարհին փռիւգացւոց էին, վանէր եւ զԳամիրս, հնազանդէր եւ զԱրաբացիս: Յամենայն զինուց անտի սպառազէն վառէր հեծեալս ի Պարսից ոչ ինչ սակաւ ի չորից բիւրուց, եւ բազում երիվարս ի գերւոյ անտի տայր նիզակակցացն ամենեցուն, եւ գայր հասանէր յաշխարհն Բաբիղացւոց ածեալ բազում այրուձի, եւ աղեղնաւորս եւ տիգաւորս բազումս եւ պարսաւորս անթիւ անհամար:

# ԳԼՈՒԽ Ե

ԻԲՐԵՒ առ Բաբելովն քաղաքի էր, Կիւրոս, կարգէր կացուցանէր զամենայն զօրսն զքաղաքաւն. ապա ինքնին երթեալ շրջէր զքաղաքաւ բարեկամօք եւ նիզակակցացն աւագօք, եւ յորժամ հայեցեալ տեսանէր զպարիսպսն, պատրաստ լինէր ի բաց տանել ի քաղաքէ անտի զզօրսն։ Բայց մատուցեալ ոմն ի փախստէից անտի ասէր, թէ գուն գործեալ ի վերայ դիմիցեն յորժամ զզօրսն ի բաց տանիցիս։ Զի հայեցեալ ասէ, նոցա ի պարսպէ անտի, տկար եւ անզօր թուէր նոցա բանակս, եւ ընդայնր չեն ինչ զարմանք։ Քանզի յորժամ զյաղթ պարապաւ պատեցի ճակատն, հարկ է թէ ի տակաւ ինչ թանձրութիւն լինիցի։

Որդ լուեալ զայն Կիւրոսի, կացեալ ի մէջ զօրացն իւրայովքն հանդերձ, պատուէր տայր ծայր ի ծայր յերկոցունց կողմանց վառեալքն պարզիցեն զճակատն եւ մեկնել ի կողմն ուր բանակն կայցէ, մինչեւ յերկուց կողմանց ի միմեանս եւ ի միջավայրսն եկեալ հասանիցեն ծայրքն։ Իբրեւ զայն ձեւ օրինակի կատարէր. որ կայինն վաղվաղակի համարձակագոյնք լինէին, զի կրկնակի ի թանձրութիւն եղեն, եւ որ մեկնէին, ըստ

նմին օրինակի քաջալերեալք մեկնէին ։ Զի իսկ եւ իսկ որ կային ի նոցանէ երթային մօտ առ թշնամին, եւ յորժամ եկեալ յերկոցունց կողմանց զծայրսն ի միմեանս խառնէին, բակ առեալ կային պնդակազմ, կէսքն քակեալք եւ պառակտեալք անդէն ի միմեանց վասն այնոցիկ որ յառաջոյ արձանացեալք ի տեղւոջն կային, ի միմեանս եկեալ մօտէին վասն յետնոցն

Ի սփռել տարածանել այնպէս ճակատուն, հարկ էր առաջնոցն եւ վերջնոցն քաջս եւ առաքինիս լինել, եւ ի միջի անդ զվատսն եւ զապաժամանս կարգել ։ Նա յորժամ այնպէս կայցէ կարգն եւ առ պատերազմ կազմ գտանիցի եւ ոչ փախչել իսկ կարիցէ ։ Իսկ այրուձին եւ մերկքն ի թեւոց անտի, միշտ իսկ մօտ առ իշխանն, այնչափ զի թանձրանայր իսկ ճակատն կրկին ։ Նա ապա իբրեւ այնպէս խռնեալ կային, տուն տուն ի բաց մեկնէին մինչեւ չհառանէին նետքն ի պարապէ անտի ։ Իբրեւ ի նետիցն ապրեցան, դարձան. եւ զառաջինսն սակաւ ինչ քայլս յառաջ մատուցեալ, ընդ վահանօք մտանէին եւ կային մնայէին ի պարխապան եւ որչափ հեռանային, դոյնչափ խուն ինչ փոփոխէին ։ Իբրեւ թուեցաւ թէ յամրի են միադունդ երթեալ ի վրանան հառանէին ։

Իբրեւ բանակ հարին, ի մի վայր կոչէր Կիւրոս զաւագանին եւ խօսէր. Արք նիզակակիցք հայեցայք շուրջանակի ի քաղաքն, ոչ գիտեմ եթէ մարթիցի ոք զայնպիսի ամուր պարիսպս եւ բարձրաշէնս առնուլ ի մարտ մատուցեալ. բայց որչափ բազում իցեն մարդիկս որ կայցեն ի քաղաքի անդ, քանզի ոչ ելանեն պատերազմել, դոյնչափ վաղվաղակի սովով ըմբռնեսցուք զնոսա: Եթէ ոչ այլ ինչ պայման կարիցէք ասել, այսպէս պարտ է պատեալ պաշարել զաքան որպէս եւ տասցի իսկ:

Քրիսանտաս ասէ. Գետս, ասէ, այս ոչ ընդ մէջ քաղաքիդ հոսէ, որ աւելի քան զերկու վտաւան լայնութիւն է: Ասէ Գոբրիաս. Եւ խորութիւն այնչափ է, որչափ թէ երկու արք ի միմեանց վերայ կայցեն չկարիցեն կալ ի վերայ ջուրցն: Մինչ զի գետոյն եւս քաջ ամուր է քաղաքն քան եթէ պարըսպօքն: Եւ Կիւրոս ասէ. Զայս, ասէ, ով Քրիսանտաս թողցուք որ առաւել քան զմեր կարս իցէ. պարտ եւ պատշաճ է ձեզ վաղվաղակի չափել իւրաքանչիւր զանցնիւր բաժինն եւ փոս լայն եւ խոր փորել, զի սակաւաւոր պահապանաց պէտք լինիցին եւ ոչ բազմաց խափանել:

Ապա չափեալ շուրջանակի զպարսպապօքն, թողոյր ի գետոյ անտի վայրս

որչափ բաւական էր մեծամեծ մարտկո-
ցացն, փորէր սաստի եւ անտի պարսպին
փոս մեծ, եւ զհողն ընկենոյրն առ իւ-
րեանս, եւ նախ բրգունս ի վերայ գե-
տոյն կազմէր, արմաւենիս արկեալ զհի-
մունսն, զի ոչ փոքր քան զարտավար
բարձրութիւն էր արմաւենեացն, քան-
զի ամաւենիք եւս բարձրաբերձ քան
զորս բուսանին երկայնութեամբ։ Օք
արմաւենիք յորժամ ի ծանրութենէ
ճնշիցին, ի վեր կոյս կորացեալ գոգին
իբրեւ զէշս համետեալս։ Նա եւ յայն
սակս իսկ արկանէր զնոսա ի ներքոյ, զի
կարծեցուցանիցէ պատրաստ լինել պա-
շարել զքաղաքն. զի թէ եւ գետն դի-
մեսցէ ի փոսն մի քակեսցէ զաշտարակն։
Կանգնէր եւ այլ եւս բազում աշտա-
րակս ի վերայ կարկառին, զի բազում
պահապանաց տեղիք իցեն։

Նոքա զայն գործէին, եւ որք ի պա-
րըսպի անդ էին ծաղր առնէին զպաշար-
մամբն, որպէս թէ աւելի քան զքսան
ամաց համբարս ունիցին. զայս լուեալ
Կիւրոսի, զզօրսն յերկոտասան բաժինս
բաժանէր, զի մի մի ամիս ի տարւոջն
իւրաքանչիւր բաժինն պահեսցէ։ Իսկ
բաբելացւոց զայն լուեալ եւս առաւել
ծաղր առնէին, քանզի զմտաւ ածէին
եթէ փռիւգացիք եւ Լիւկիացիք եւ Ա-
րաբացիք եւ Գամիրք պահեսցեն զնո-
սա, զորոց զամենեցունց համարէին

մտադիւրութեամբ լինել ընդ Նոստեւ ոչ ընդ Պարսիկսն. եւ փոսք փորեալ եւ պեղեալ էին։ Իբրեւ ազդ եղեւ Կիւրոս թէ տօն է ի Բաբելոն, յորում ամենայն Բաբելոնացիքն զողջոյն իսկ ըզցայգն ուտեն եւ ըմպեն, անդէն ի նմին գիշերի վա՛ղվաղակի իբրեւ խաւար եղեւ, առեալ բազում մարդիկ, բանայր զփոսըն ի գետ անդր։ Իբրեւ այն եղեւ անցանէր ջուրն զցայգ ընդ փոսսն. իսկ ճանապարհ գետոյն գնացք մարդկան լինէր։

Իբրեւ եղեւ այնպէս գետն, պատուէր տայր Կիւրոս հազարապետացն Պարսից հետեւակաց եւ հեծելոց ընդ երկուս զհազարսն զատուցանել եւ առնա հասանել, եւ այլոց նիզակակցաց հրամայէր երթալ ստէպ զհետ նոցա ճակատեալ որպէս զառաջինսն. եւ նոքա վաղվաղակի հասանէին. նորա հանեալ անդէն ի ցամաք անդր գետոյն զպատուորսն եւ զհետեւակս եւ զհեծեալս, հրաման տայր դիտել եթէ գնացք իցեն հուն գետոյն. իբրեւ զրոյց ետուն եթէ գնացք են, յայնմ վայրի կոչեցեալ զզօրավարս հետեւակացն եւ հեծելոց խօսէր այսպէս։

Արք բարեկամք, գետդ ետ մեզ ճանապարհ ի քաղաք այդր, եւ մեք քաջալերեալ մտցուք, մի ինչ երկիցուք ի ներքս անդ, զմտաւ ածեալ եթէ նոքա

յորոց վերայ երթամք այնք են, յորոց մեք, յորժամ զօրաւիգն օգնականութեան անձանց ունէին եւ ամենեքին ակէին արթունք եւ զուարթունք եւ ապառազէն վառեալ ճակատեալ կային յաղթեցաք: Այժմ դիմեալ երթամք ի վերայ նոցա, ի ժամու յորում բազումք ի նոցանէ ի քուն կան եւ նիրհեն եւ շատք իսկ ի նոցանէ արբենան, եւ ամենեքին անկարգք առանց ճակատելոյ են: Եւ յորժամ զգայցեն զմեզ եթէ ի ներքս եմք, յայժ իսկ առաւել քան այժմ անպիտանք լինիցին ի սքանչանալոյ անտի: Ապա թէ զայս ոք ածիցէ զմտաւ, զումէ ասենն թէ ահագին իմն է այնոցիկ որ ի քաղաք ուրեք մտանիցեն, թէ մի ի վերայ տանեացն ելեալ աստի անտի նետս արձակիցեն այնու մանաւանդ քաջալերեցարուք. զի եթէ ելանիցեն ոմանք ի վերայ տապարանիցն, ունիմք մեք զօրաւիգն օգնականութեան զդիան Հեփեստոս. եւ դիւրին առ այրել են արտաքին հրապարակք դրանց նոցա, զի յարմաւենեաց գործեալ են դրունքն եւ ի նաւթի ծեփածոյ. եւ մեք բազում ջահս ունիմք որ վաղվաղակի իսկ բազում հուր լուցանեն, եւ յաճախ այրելիս եւ խծուծ, որ վաղ բազում բոց յորդեալ տաշարիցեն. որպէս զի հարկ իցէ կամ փախչել այնոցիկ որ ի վերայ տապարանիցն

իցեն կամ վաղվաղակի այրել։ Ողջ տուէք զէնս, առաջնորդեցից ձեզ աստուածովքն, եւ դուք ասէ, ով Գադատա եւ Գոմբրիա, զճանապարհսն ցուցէք, քանզի հմուտ էք. եւ յորժամ ի ներքս մտիցիմք, փութանակի տուրայք յարքունիսն։ Ասեն գոբրիանքն թէ չէ ինչ զարմանալի, զի եւ դրունք արքունի ապարանիցն բաց են, զի ամենայն քաղաք ի խրախուսութեան է ի գիշերիս յայսմիկ. բայց պահապանացն պատահիցեն առաջի դրանցն, քանզի հանապազ անդէն կարգեալ կան։ Ասէ Կիւրոս. Չէ պարտ դանդաղել, այլ երթալ, զի առանց պատրաստութեան ըմբռնիցեմք զարսն։

Իբրեւ այս ամենայն ճառեցաւ, յուղի անկեալ երթային, եւ ի պատահելոցն ոմանք հարեալ մեռանէին եւ ոմանք միւսանգամ փախստեայ ի ներքս դիմէին եւ այլոց բողոք բարձեալ գոչէին։ Իսկ գոմբրիանքն. ընդ նոսա աղաղակէին որպէս թէ եւ նոքա զեղխեալ իցեն եւ երթեալ հասանէին զարքունի ապարանօքն. եւ որք ընդ Գոմբրիայն եւ ընդ Գադատայն կարգեալ էին, գտին աղխեալ զդրունս ապարանիցն արքունի. իսկ որոց վասն պահապանացն հրաման տուեալ էր, հասանէին անկանէին ի վերայ պահապանացն որոց սաստիկ արբեալ էր, եւ

վաղվաղակի իբրեւ թշնամիք պատահէին նոցա։ Իբրեւ գոչիւն եւ սանձաձայն լինէր, եւ աղմուկն ի ներքս լսելի լինէր, հրաման տայր թագաւորն անսանել թէ զի՞նչ իրք իցեն, եւ բացեալ ոմանց զդրունսն ընթացեալ երթային արտաքս։

Իսկ գնդապետեանքն իբրեւ տեսին բաց զդրունսն, ի ներքս մխեցան, եւ զհետ մտեալ նոցա մինչ դեռ միւսանգամ ի ներքս դիմէին եւ հարկանէին եւ հատանէին ի թագաւոր անդր. գտանէին զնա յոտն կացեալ եւ ունէր ի ձեռին իւրում զդաշոյնն մերկացեալ. զնա բազումք որ ընդ Գադատայ եւ ընդ Գովբրիայ էին ձերբակալ առնէին. եւ որ ընդ նմայն էին սատակէին, ոմն ընդդէմ դառնայր, ոմն փախուցեալ ելանէր եւ այլ ոմն ապրէր որով իւիք կարող էր։ Կիւրոս զգունդս հեծելոցն ի ճանապարհսն առաքէր եւ պատուէր տայր զի զորս արտաքոյ ըմբռնիցեն, սպանանիցեն. եւ որ գիտիցեն ասորերէն, պատուէր տացեն որոց յապարանսն իցեն ի ներքս մնալ։ Իսկ եթէ արտաքոյ ոք ըմբռնիցի, մեռցի։ Նոքա առնէին այնպէս։ Գային հասանէին Գադատաս եւ Գովբրիաս, եւ նախ դիցն երկիր պագանէին, զի առին զքէն վրիժու պղծագործ թագաւորին, եւ ապա փարէին զոտիւք եւ զձեռօք Կիւ-

րոսի, ի խնդութենէ զարտասուս հա-
րեալ, եւ ուրախ լինէին:

Իբրեւ տիւ եղեւ, եւ զգացին որ ի միջնաբերդին էին թէ առաւ քաղաքն եւ մեռաւ Թագաւորն, զամուրսն ի ձեռս տային: Կիւրոս առնոյր անդէն զմիջնաբերդն եւ առաքէր ի նոսա պահապանս, եւ թոյլ տայր զդիակունսն օծանել որոց վայել իսկ էր. եւ քարոզացն հրաման տայր քարոզ կարդալ ամենայն Բաբիղացւոց զզէնսն ի բաց տալ. իսկ ուր գտանիցին զէնք ի տունս տունս, ամենեքին որ յապարանս անդ իցեն մեռանիցին: Եւ նոքա բերէին տային. Կիւրոս դնէր զնոսա յամուրսն զի պատրաստ կայցեն եթէ պիտոյ ինչ երբեք լինիցին:

Յորժամ այդ ամենայն ի գլուխ ելանէր, նախ զմոգսն կոչէր, քանզի քաղաքն առաւ, եւ հրամայէր նուէր դիցն եւ մեհեանս ընտրել. եւ յայնմ հետէ տայր նոցա եւ ապարանս, զորս եւ կըցորդս իսկ համարէր իրացն վճարելոց: Այնպէս բաշխէր զի որ ընտիրն էր, այն լաւացն տացի. եւ եթէ համարեացի ոք թէ սակաւ ինչ առ, հրամայեաց գալ եւ յայտ առնել: Պատուէր տայր Բաբիղացւոց զերկիր ի գործ արկանել եւ զհարկսն տալ, եւ պաշտօն հարկանել այնոցիկ որոց եղեւ յանձն իւրաքանչիւր ոք ի նոցանէ: Իսկ զՊարսիկսն

եւ ցնոսա որ կցորդն էին եւ ի նիզակակցաց անտի որ կամիցին միայլ առ նա, պատուէր տայր իբրեւ տեարս ընդ այնոսիկ զորս ըմբռնեցին, խօսել:

Յայնժամ հետէ ցանկայր Կիւրոս, զի եւ ինքն կազմիցէ որպէս վայել իցէ առն թագաւորի. հաճոյ թուեցաւ նմա զայն բարեկամացն խորհրդով առնել, զի մի նախանձ անկանիցի, եւ տեսոյ երեւիցի եւ մեծապայծառ եւ լուսաւոր: Որդ այսպիսի ինչ հայթայթանօք հնարէր. ընդ առաւօտն կացեալ ի տեղւոջ ուրնմայն պատեհ թուէր, ընդունէր զնա որ կամէր խօսել ինչ ընդ նոսա եւ պատասխանի տուեալ արձակէր: Մարդիկն իբրեւ գիտացին եթէ ընդունի, եկեալ հեղեալ զեղեալ ամբոխն զմիմեամբք ելանէր վասն մօտագոյնս մատչելոյ, եւ բազում աղմուկ եւ կռիւ էր, եւ սպասաւորքն որչափ ձեռնհաս էին ընտրէին եւ ապա թոյլ տային:

Երբեմն յորժամ ումն ի բարեկամաց անտի զամբոխն ի բաց մղեալ՝ երեւէր, կարկառեալ Կիւրոսի զձեռնն, առ ինքն առնոյր զնոսա եւ խօսէր այսպէս. Արք բարեկամք, դադարեցէք բաւեցէք, մինչեւ զամբոխն պարզեսցուք, եւ ապա հանդարտութեամբ ժողովեսցիմք: Այլ-ին միայն բարեկամքն եւ ամբոխն եւս քան զեւս խռնէր, մինչեւ ճեպեաց երեկոյն մինչ չեւ պարապեալ նոցա ժա-

զովել առ բարեկամսն: Ապա ասէ Կիւրոս. Ապաքէն ժամ է, ասէ, ով արք, այժմ ի միմեանց մեկնելոյ, վաղիւ վաղորդայն եկայք, զի եւ ես կամիմ խօսել ինչ ընդ ձեզ, զայն լուեալ բարեկամացն ուրախութեամբ ճեմեալ երթային, տուեալ այժմ պատժոց յամենայն կարեւորն պիտոյից եւ ապա այնպէս ննջեցին:

Նոյն ի վաղիւ անդր եկեալ հասեալ կային ի նոյն տեղի, եւ եւս աւելի բազմամբոխ ժողովք մարդկան բակ առեալ կային որ կամէին մերձենալ եւ կանխադոյն քան զբարեկամսն հասեալ էին: Կիւրոսի կարգեալ կացուցեալ շուրջ զիւրեւ շուրջանակի ի սուսերաւորացն Պարսից, դուլ եւ պատուէր տայր մի ումեք հուպ լինել, բայց բարեկամացն եւ իշխանացն Պարսից եւ Նիզակակցացն: Իբրեւ նոքա ի մի վայր եկին, խօսէր ընդ նոսա այսպէս:

Արք բարեկամք եւ Նիզակակիցք, չկարեմք մեղադիր ինչ դիցն լինել, թէ զոր ինչ խնդրեցաք, մինչեւ ցայժմ չհանին զայն ի գլուխ: Այլ եթէ այսպիսի ինչ իցէ զմեծամեծսն վճարել, որպէս զի չիցէ մարթ ոչ զանձամբ պարապել եւ ոչ ընդ բարեկամաց ուրախ լինել, եւ ես հրաման տամ ընդ այնպիսի փառաւորութիւն ուրախ լինել: Զի երէկ, ասէ, ի միտ առէք, զի վա-

զօրդայն սկիզբն արարեալ լինելոյ մատուցելոցն, ոչ համդեայք յառաջ քան զերեկոյն, եւ այժմ տեսանեմք զնոսա եւ զայլս եւս բազումս յերեկի եկելոցն զի մեզ աշխատութիւն հասուցանեն։ Արդ եթէ ի վայր ոք քան զնոսա զանձն ունիցի, համարիմ եթէ տակաւ ինչ ձեզ ընդ իս հաղորդութիւն լինիցի եւ փոքր ինչ իմ ընդ ձեզ աղերս. բայց զիմն ես ճարտար գիտեմ եթէ չէք իմ ընդ ձեզ այնուհետեւ հաղորդութիւն։ Նուս, ասէ, եւ այլ ինչ ծաղու իրս ածեմ զմտաւ. զի ես ընդ ձեզ որպէս ի դէպ իցէ այնպիսի միտս ունիմ։ Յայնցանէ որ շուրջն կան կամ զմի ոք ճանաչեմ կամ ոչ զոք. եւ նոքա ամենեքին այնպէս պատրաստեալ են, զի եթէ յաղթեսցեն ձեզ մղելով, յառաջագոյն իսկ քան զձեզ զոր ինչ կամինն, վճարիցեն առ իս. բայց ես աժան համարէի, եթէ կամիցի խնդրել ոք ինչ յինէն, պաշտօն առնել ձեզ իմոց բարեկամացս աղաչեցեալ վասն նուաճութեան։ Արդ թերեւս ասիցէ ոք, թէ հիմ իսկզբանէ զայն ոչ կաղմէի, այլ ցուցանէի զանձն ի միջի։ Օք գիտէ եթէ այնպիսի իսկ են պատերազմացն իրք, զի չիցէ արժան յեանել իշխանին ոչ առ գիտել զոր պարտն իցէ գիտել, եւ ոչ ի գործել զոր ինչ դիպող իցէ գործել։ Նու եթէ անդր

երեւեսցին զօրավարքն, եւ այսպէս համարէի եթէ զբազում իւիք զոր պարտ իցէ վճարել, զանց առնիցեն: Նոյյ այժմ քանզի աշխատութեան պատերազմին հանգեաւ, այսպէս թուի ինձ թէ եւ անձն իմ արժան համարի հանգըստեան ինչ հասանել: Արդ քանզի վարանեալ կամ թէ զի՞նչ ինչ հատանիցէ առնել, զի ի հանդստեան իցեմք եւ մեք եւ այլքն որոց պարտ իցէ մեզ տածիչս լինել, խրատ տացէ զինչ դք օգուտ համարիցի:

Կիւրոս զայս ձեւ օրինակի խօսէր. յետ նորա յոտն կացեալ Արտաւազայ որ ասացն երբեմն թէ համազգի իցէ, եւ ասէ. Բարւոք գործ գործեցեր, ասէ, ո Կիւրոս, եւ սկիզբն արար բանիցն: Զի ես, մինչ դու համօրէն մատաղ էիր հասակաւ, ցանկացայ բարեկամ լինել, եւ իբրեւ տեսի զքեզ ոչ ինչ կարօտեալ իւիք, տաղտկայի մօտչել առ քեզ. իսկ իբրեւ ինեւ կարօտեալ դիպեցար փութով յօժարութեամբ պատմել Մարաց զբանս Կիւաքսարեայ, զմտաւ ածի եթէ այնու յօժարութեամբ օգնական քեզ լինիցիմ, ընտանի լինիցիմ քո, եւ համարձակ իցէ ինձ խօսել ընդ քեզ որչափ ժամանակս եւ կամիցիմ եւ զայն ամենայն վճարեցի, մինչեւ եւ քո իսկ յարգեալ դովել: Յետ այնորիկ Վրկանացիքն զա-

ռաջինն մեր բարեկամք եղեն մինչ չգոյր զօրաւիգն օգնականութեան, որպէս զի միայն ոչ յանձինս ըստանձնեալ շրջեցուցանէաք առ զութն: Եւ յետ այնորիկ իբրեւ առաւ բանակ Թըրնամեացն, չգոյր քեզ պարապ զինեւ գալ, եւ ես ներէի քեզ: Ապա Գաբրիաս բարեկամ եղեւ մեր եւ ես ուրախ լինէի եւ ապա Գադատաս, եւ դժուարին էր այնուհետեւ գալ խօսել ընդ քեզ: Բայց իբրեւ Մարք եւ Կադուսիացիք զօրաւիգն օգնականութեան եղեն յիրաւի իսկ պարտ եւ պատշած էր պաշտօն հարկանել եւ ողջքել զնոսա. քանզի եւ նոքա ի քո սպասաւորութեան կային: Իբրեւ եկաք միւսանգամ ուստի ելեալն էաք տեսեալ զքեզ զի զերիվարօք եւ զկառօք եւ զմնքենայիւք էիր, համարէի թէ յորժամ յայնմ ամենայնէ զատարկացիս, ապա զմեզ գայցես: Բայց իբրեւ անդէն զուժկան հասանէր գոյժ տալ թէ ամենայն մարդիկ ի մեր վերայ գումարեցան, ի միտ առի թէ այն եւս մեծ է: Գիտէի թէ յորժամ այն ամենայն բարւոք ի գլուխ ելանիցէ, բազում իմ եւ քո հաղորդութիւն լինիցի: Այժմ յաղթեցաք մեծի պատերազմին եւ զՍարդիկացիս եւ զԿրիսոս ընդ ձեռամբ նուաճեալ ունիմք եւ զԲաբիղոն առաք եւ զամե-

նոյն վանեալ վտանգեցաք։ Բայց ի Մ՚ինձր երդուեալ է իմ, երէկ եթէ ոչ ընդ բազմաց ոգորէի, չկարէի իսկ մատչել առ քեզ։ Բայց իբրեւ դու ընկալար զնա, եւ հրամայեցեր կալ մնալ առ քեզ, ընդ քեզ անսուաղ եւ առանց ջրոյ զօրն ողջոյն կայի։ Այժմ եթէ մարթ ինչ իցէ թէ որ ընտրելքս իցեմք, բազում մասն ընդ քեզ ունիցիմք, բարւոք է. ապա թէ ոչ՝ խօսեցայց ես առ ի քէն, թէ ամենեքին մեկնեալ ի բաց գնայցեն ի քէն, բաց ի մէնջ որ իսկզբանէ բարեկամք իցեմք։

Յայնժամ ծիծաղեցաւ Կիւրոս եւ այլք եւս բազումք։ Յարեաւ Քրիսանտաս պարսիկ եւ ասէր այսպէս. Յառաջին ով Կիւրոս, անդէն յիրաւի եւ յարժանի յերեւելւոջ զանձն ցուցանէիր վասն որոց ասացերդ. զի չէր ինչ քեզ պիտոյ ողոքել զմեզ, քանզի մեք եւ վասն մերոց իսկ անձանց գայաք. եւ պիտոյ էր ամենեւին բազմութիւն ստանալ զի յանձին ունիցին յօժարութեամբ վաստակել եւ վշտանալ ընդ քեզ։ Այլ այժմ քանզի ոչ զայն եւեթ ունիս, այլ եւ զայլս եւս մարթես ստանալ, զորս ի դէպ համարիցիս ստանալ. արժան է զի ապարանք լինիցին քո։ Զոր վայելչութիւն իշխանութեան վայելիցես, եթէ միայն անմասն իցես ի մերմէ դաւառէ, քան զոր որբագոյն առ-

խարհ ի մարդիկ չիք եւ ոչ հեշտ, եւ ոչ քան զնոյն ընտանեգոյն երկիր գոյ: Նա՛ մեզ իսկ, ասէ չիցէ ի դէպ ամաչել, եթէ զքեզ տեսանիցեմք արտաքոյ ժուժկալ եղեալ եւ մեք յիւրաքանչիւր տունս գնայցեմք եւ առաւել քան զքեզ թըւիցիմք. իբրեւ զայս խօսեցաւ Քրիսանտաս, բազումք յանձն առնոյին ըստ բանիցն այնոցիկ հաճեալք եւ հաւանեալք:

Ապա զայս մտանէ յարքունիսն, եւ զՍարդիացւոց կարասին անդէն որոց բերեալն էր, տային: Իբրեւ եմուտ Կիւրոս նախ Եստեայ զոհս մատուցանէր եւ ապա Արամազդայ թագաւորի, եւ որ այլում ումեք դից մոգքն պատուիրէին: Զայս արարեալ, ապա զայլ եւս իրս սկսաւ յարդարել: Զմտաւ ածեալ եթէ ձեռնամուխ լինի բազում մարդկան իշխել, եւ կամի բնակել ի մեծի եւ ի հոյակապ քաղաքի քան զամենայն քաղաքս, եւ թէ այնպիսի քաղաքք զի քան զայն քաղաք թշնամի մարդոյ չիք. զայս ածեալ զմտաւ գիտաց թէ անձնապահաց պէտք իցեն: Քանզի գիտէր թէ ոչ ուրեք մարդիկ առաւել դիւրին առ ըմբռնել են, քան ի կերակուրս եւ յըմպելիս եւ ի լուանալն եւ յընկողմանելն եւ ի քունն լինել. գիտէր տեսանէր թէ կարիցէ զոմանս ի հաւատարմացն զիւրեւ ածել:

Զմտաւ ած թէ չիք ոք հաւատարիմ այլ որ զայլ ոք քաջ սիրիցէ քան զայն որ պահպանութեան կարօտ իցէ։ Որդ զայնցանէ որ որդեակս ունէին կամ կանայս կամ դուստս, գիտաց եթէ ի բնէ իսկ բռնադատին առաւել սիրել զնոսա։ Նա զի ետես զներքինիսն յայնմ ամենայնէ անկեալ, զմտաւ ած թէ առաւել իմն համարիցին նոքա զնոսա որք կարողքն իցեն մեծարանս առնել եւ ձեռնտու լինել եթէ զրկեալ իւիք իցեն եւ պատիւս եւ մեծարանս նոցա շնորհել. եւ ոչ կարծէր իսկ զումեք թէ անցուցանիցէ զնովաւ երախտիս առնելով նոցա։ Յանդերձ սոքիմբք, քանզի անմեծարքեն ներքինիքն առ յայլոց մարդկանէ, եւ յայն սակս իսկ տեառն օգնականութեամբ կարօտ են։ Քանզի չիք իսկ ոք որ արժան համարիցի ամենայնիւ քան զներքինին առաւելուլ թէ ոչ այլ ինչ ազնիւ գործ վճարիցէ։ Թէ հաւատարիմ տեառնն իցէ չէ արգել ներքինւոյ յառաջութիւն հասանել։

Իսկ զոր կարծիցէ ոք թէ ներքինիքն անզօրք են, նա չգրէր զայն ինչ, եւ նշանակ ընծայանայր նմա եւ յայլոց եւս անասնոցն, զի ամեհի երիվարք մալեալք ցածնուն ի քացինելոյն եւ ի խայտալոյ, բայց քաջք են եւ պատերազմօղք. եւ ցուլք յորժամ մալիցին ի մեծամտելոյ եւ յանսաստն դազա-

նութեանէ զիջեալ ցածնութն, բայց յուժգնութեանէ չանկանելն եւ ի գործօնն լինելոյ: եւ շունք ըստ նմին օրինակի գադարեն զտեարսն թողուլ յորժամ մալլեցեն, եւ առ պահպանութիւն եւ յորսրս չառնելն ապաժամանք։ Նոյնգունակ զգօնագոյնք լինիցին եթէ յայնմ ցանկութեանէ անկանիցին, բայց ոչ դանդաղեալք ի հրամանսն եւ ոչ դոյզն հեծեալք են, եւ ոչ դոյզն աղեղնաւորք, եւ ոչ դոյզն մեծարեալք պատուով։

Եւ գուշակաւորք ի պատերազմունս լինին եւ յորսս, եթէ ունին հակառակութիւն յանձինս. իսկ զհաւատարիմս լինելոյ ի տերանցն մեռանել բազում անգամ զհանդէս ցուցին. զի ոչ ինչ գործ հաւատարիմ եցոյց ի տերանցն վիշտս քան զներքինիսն։ Եւ եթէ նուազեալ ի մարմնոյ զօրութեանէ կարծիցեն, երկաթն ի պատերազմի զանզօրս հզօրացն հանդոյնս կատարէ։ Զայս ածեալ զմտաւ սկիզբն ի դռնապանացն առնէր եւ զամենայն պաշտօնեայսն որ զանձամբ էին առնէր ներքինիս։

Զմտաւ ածեալ թէ չէ բաւական այն պահպանութիւն առ բազմամբոխ ժողովս թշնամեացն, դիտէր տեսանէր զոմանս հաւատարմագոյն քան զայլսն զի կացուցանիցէ պահապանս զարքունեքըն։ Որդ քանզի գիտէր թէ որ ի Պարսից աշխարհին են, չարաչար կեանս կե-

ան առ աղքատութեան տառապանաց, եւ աշխատութեամբ վասն ինքնագործոն լինելոյ, զմտաւ ած եթէ նոքա առաւել կամիցին կալ առ իւր: Արդ առանու նա ի նոցանէ բեւր տիգաւոր որ շուրջ զցայգ եւ զցերեկ պահէին յարքունիսն յորժամ ի ներքս դադարեալ կայր. եւ յորժամ ելանիցէ ուրեք, աստի եւ անտի կարգեալ տողեալ երթայցեն: Խորհեցաւ թէ ողջոյն իսկ Բաբեղացւոց աշխարհին պարտ է բազում պահապանս կացուցանել, թէպէտ եւ ինքն անդէն դիպիցի, թէպէտ եւ դէմ եդեալ առաջադէմ ի տար աշխարհ երթայցէ. կացոյց եւ ի Բաբեղոնի պահապանս բազումս. եւ վասն նոցա Բաբիղացւոցն հրամայէր տալ, զի կամէր իմն զնոսա թէ առանց պատճառանաց իցեն, զի յանարգութիւն հասեալ հպատակագոյնք լինիցին:

Պահն որ զնովաւ էր եւ որ ի Բաբիղացւոց աշխարհին կացուցաւ, ցայժմ նոյնպէս կայ պահի: Զմտաւ ածեալ թէ զիարդ եւ որգունակ կայցէ ի հաստի ամենայն իշխանութիւնն, եւ այլ եւս ի նոյն հաստատութիւն յաւելցի, խորհեցաւ թէ վարձկանքն այնուքիկ ոչ եթէ այնչափ ազնուագոյնք են քան զամենայն հնազանդեալսն, որչափ նուազագոյնք իցեն: Գիտաց թէ զքաջսն առ իւր պարտ է ունել որ տայցեն նմա իշ-

խել աստուածովքն, եւ թէ պարտիկ է հոգալ թէ մի յառաքինութեան հրահանգաց հանգիցեն։ Նաեւ զի մի հրաման տալ կարծեցուցանիցէ, այլ զի ինքեանք յանձանց իսկ իմացեալ թէ նոյն լաւ է, այնպէս կանխեալք զառաքինութենէ փոյթ յանձին ունիցին, ժողովէր զպատուականսն եւ զամենեսին որ առաջքն էին եւ պիտանացուք թըւէին կցորդս վաստակոցն եւ բարութեանցն լինելոյ։ Նաեւ իբրեւ ժողովեցան խօսէր այսպէս զայն ձեւ օրինակի բանից։

Արք բարեկամք եւ պատերազմակիցք, բազմապատիկ գոհութիւն դիցն, զի ետուն մեզ որոց արժանին համարեաք։ Քանզի ունիմք այժմ երկիր բազում եւ առատ, եւ են որ ի գործ արկեալ զերկիր լինիցին մեզ համբարակք. ունիմք եւ ապարանս եւ ի նոսին կազմածս եւ ոչ ոք ի ձէնջ որ զայն ամենայն ունիցի համարիցի զօտարին ունել. քանզի օրէնք յաւիտենականք են յամենայն մարդիկ, թէ յորժամ քաղաք թշնամեաց առցի, առնողացն են եւ մարմինք որ ի քաղաքի անդ իցեն եւ ինչք. եւ արդ ոչ ապիրատութեամբ ունիցիք զոր ինչ ունիցիքն, այլ մարդասիրութեամբ ոչ հանէք եթէ թողէք ինչ ունել նոցա։

Բայց՝վասն իրացն որ յետ այսորիկ իցեն, ես այսպէս ածեմ զմտաւ եթէ

յուղութիւն եւ յանպիտանութիւն զառածանիցեմք եւ ի չարաց մարդոց անձրնդիւրութիւն, որ համարեցին թէ վաստակելն թշուառութիւն է, եւ զանվաստակ կեանս կեալ՝ դիւրութիւն, վաղվաղակի անարգք եւ անպիտանք անձանց լինիցիմք, եւ երագ երագ յամենայն իսկ ի բարութեանց անկանիցիմք։ Վասնզի չէ բաւական արս առաքինիս լինել, առ առաքինիս լինելոյ մինչեւ ցվախճան, եթէ ոչ իսպառ ըզ զառաքինութեանն փոյթ առնիցէ։ Նոյն զօր օրինակ այլ եւս ճարտարացն արուեստքն եթէ անփոյթ առնիցին փոքրագոյնք լինիցին, եւ քաջ մարմինք, յորժամ ի դիւրութիւն ըզ հատանիցի, յառանան. ըստ նմին օրինակի եւ ցածութիւն եւ ժուժկալութիւն եւ ուժգնութիւն, յորժամ զհրահանգս ըզ նոցա յանձնէ մերժիցէ, այնուհետեւ միւսանգամ յոռութիւն եւ յանշահութիւն կործանիցի։

Նաեւ արդ պարտ եւ պատշաճ է եւ ոչ ի մշտաւոր հեշտականութիւնն ընթանալ խառն ի խնուն։ Վասնզի մեծ իմն գործ համարիմ իշխանութիւն մի յօրինել, եւ եւս իմն մեծ, պահել զիշխանութիւնն. զի առնուլն բազում անգամ եւ այնմ որ ի վերն եկեալ յանդգնիցի, դէպ լինի. բայց զառեալն ունել յակատանի, ոչ այնուհետեւ առանց

զգաստութեան եւ ոչ տանանց ժուժկալութեան եւ ոչ տանանց բազում հոգաբարձութեան լինիցի։ Եւ մեզ որ զայս ամենայն գիտեմք, այժմիկ պարտ եւ պատշաճ է եւս առաւել յառաջինութիւն թեւակոխել, քան մինչ չեւ մեր առացեալ զշնորհութիւնն. ի մտ առեալ թէ յորժամ բազում ինչ ոք ունիցի, առաւել չարակնիցեն եւ նենգիցեն եւ թշնամիք լինիցին, մանաւանդ եթէ ի չկամելոցն զարարոյն եւ զաղատաւորութիւնն ունիցի, որպէս մեքն ունիմք։

Որդ զշիցն այսպէս պարտ է համարել թէ ընդ մեզ իսկ են, զի ոչ եթէ նենգելով յանիրաւի ինչ ունիցիմք, այլ յորժամ մեզ նենգութիւն լինէր, վրէժ խնդրեցաք. բայց յետ այսորիկ մեր գործ է լաւութիւնս ցուցանել. այն իսկ է զի ազնուագոյնք քան զիշխանաւորսն լինիցիմք եւ արժանի իշխանութեանն համարիցիմք։ Եւ որդ տոթոյ եւ ցրտոյ եւ կերակրոց եւ ըմպելեաց եւ վաստակոց եւ քնոյ հարկ է հաղորդս առնել զնոսա. բայց յորժամ հաղորդակիցս զնոսա առնիցեմք, պարտ է փութալ նոցիմբք նախ ազնուագոյնս քան զնոսա երեւել. իսկ պատերազմի խելամտութեան եւ կրթութեան ամենեւին չառնել զնոսա հաղորդս, զոր մեզ մշակս եւ հարկատուս կամիմք առ-

նալ, այլ պարտ եւ պատշաճ է նմին իսկ հրահանգօք գրել զնոսա, ի միտ առեալ եթէ զսոսա ազատութեան եւ փառաւորութեան գործիս մարդկան դիքն եդուն։ Եւ զոր օրինակ զզէնսն հանաք ի նոցանէ, այսպէս մեզ պարտ եւ պատշաճ է մի երբէք ի զինուց դատարկանալ. զմտաւ ածեալ եթէ որ միշտն մօտ իցեն զինուց, նոցին հուպ իցէ զոր ինչ կամիցին։

Ապեթէ այսպիսի ինչ ածիցէ ոք զմտաւ եթէ զի՞նչ շահ եղեւ մեզ վճարել զամենայն որ ինչ ցանկայաք, եթէ տակաւին պարտ իցէ ժուժկալ լինել ի քաղցնուլ եւ ի ծարաւել եւ ի հոգալ եւ ի վաստակել։ Զայն պարտ է ի միտ առնուլ թէ այնչափ առաւել ուրախ առնեն բարութիւնքն, որչափ առաւել վաստակեալ ոք ի բարութիւնսն հասանիցէ. զի աշխատութիւնք քաղցրացն խորտիկք են։ Եւ առանց կարօտութեամբ հասանելոյ իմիք, ոչ ինչ այնպէս բազմապատիկ յարդարիցի մինչեւ հեշտ եւ քաղցր լինել։ Որոց առաւել իմն ցանկանան մարդիկ, զայն մեզ դիքն պատրաստեցին, այլ զի հեշտականք նոյնք թուիցին, ինքն իսկ ոք հեշտական անձին կազմիցէ. այնպիսի այր այնչափ առաւել իցէ քան զկարօտեալսն կենօք որչափ քաղցեալ ոք քաղցրը՞ կերակուր գտանիցէ, եւ յորժամ

ծարաւի իցէ յանոյշ ըմպելիս վայելիցէ, եւ կարօտ լեալ հանգստեան, քաղցր է քուն լինիցի։ Վասն այսր ամենայնի ասեմ թէ այժմիկ պարտ եւ պատշաճ է ի լաւութիւն յօժարել, զի ի բարութիւնսն ուրախութեամբ վայելիցեմք, եւ զի ի դժընդակ չարեացն որ քան զընաւ դաժանագոյն իցէ անփորձ իցեմք։ Վասնզի ոչ եթէ չառնուլն ինչ զբարիսն այնպէս դժընդակ իցէ, որպէս յետ առնլոյն անկանել, տրտմութեան է։

Նա եւ զայն եւս ածէք զմտաւ թէ զոր պատճառս եւ բարուրս ունիցիմք զի անպիտանք քան զառաջինն յօժարիցեմք լինել. որդեւք զի իշխեմքն. այլ չէ ի դէպ իշխանին ի վայր քան զիշխանաւորսն լինել. այլ զի այժմիկ փառաւորագոյնք թուիմք քան յառաջին, վասն այնորիկ ինչ ասիցէ ոք համարձակեցուցանել փառաւորութեան զվատութիւնն։ Այլ քանզի ծառայս ստացաք, տանջեցուք զնոսա եթէ յառաւթիւն հարեալ հատանիցեն. եւ զի՞նչ ի դէպ իցէ, զի որ ինքն չար իցէ, յառութեան վասն կամ դիւրութեան զայլս տանջիցէ։

Այսուհետեւ եւ զայս զմտաւ ածիցէք, եթէ պատրաստեցաք զբազում մնուցանել եւ զմերոց տանց պահապանս եւ զանձանց։ Զիարդ չիցեն քարուա-

կանք, եթէ զայլս սպասաւորս փրկութեան եւ կենաց համարիցիմք, եւ մեք անձանց չլինիցիմք սպասաւորք։ Պարտ եւ պատշաճ է ի միտ առնուլ եթէ այլ ինչ այնպէս պահպանութիւն չիք, որպէս ինքնին իսկ անձամբ ումեք ընտիր լինել, զի այնմ պարտ է առ երի իսկ ընթանալ։ Նոյն այնմ որ լոկ յառաքինութենէ իցէ չէ ի դէպ այլում իմիք բարւոյ լինել։

Իսկ արդ զի՞նչ պարտ իցէ առնել եւ ո՞ւր յառաքինութիւն թեւակոխել եւ յորո՞ւմ վայրի ընդ հրահանգս ելանել. ոչ ինչ նոր ասիցեմ ով արք, այլ զոր օրինակ ի Պարսս յիշխանացն վանան պատուականքն կան, այնպէս պարտ է եւ ձեզ ամենեցուն հանդիսապատուացս որ աստ իցէք, որ ինչ անդէն կըրթութիւն իցէ ի նոյնս կրթել, եւ ձեզ մօտ կալ եւ տեսանել զիս եւ ի միտ առնուլ եթէ փութով եւ հոգաբարձութեամբ վճարիցեմ զոր ինչ պարտն իցէ վճարել։ Եւ ես ձեզ միտ եդեալ նայիցիմ, եւ զորս տեսանիցեմ ի լաւութիւնս կրթեալ, զնոսա շուք եդեալ մեծարիցեմ. եւ զմանկտի, եթէ լինիցին մեր, աստէն խրատեսցուք։ Զի եւ մեք ազնուագոյնք լինիցիմք եթէ կամիցիմք մանկտւոյ ազնուագոյն առակ օրինակի զանձինս ընծայեցուցանել։ Եւ այնուհետեւ մանկտին եւ ոչ

թէ կամիցին, դիւրաւ կարիցեն յաղթա-
նալ, յորժամ ոչ մի ինչ աղտեղի տե-
սանիցեն եւ ոչ լսիցեն ի բարուց հրա-
հանգման ցանգորդեալք ։



# ՔՍԵՆՈՓՈՆՏԵԱՅ ԿԻՒՐՈՍԻ ԽՐԱՏՈՒ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԸՆԴՊՐՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ Ա

ԿԻՒՐՈՍ *զայս ձեւ օրինակ խօսէր. յետ նորա յարեաւ եկաց Քրիւսանտաս եւ ասէ այսպէս. Բազում անգամ ով արք, եւ այլովք բազմօք ի միտ առի եթէ իշխան առատ չէ ինչ ընդհատ ի հօրէ բարւոյ. զի հարք խնամակալ լինին որդւոց թէ մի բարութիւնք պակասեսցեն ի նոցանէ։ Թուի ինձ թէ մեզ խրատ տայցէ Կիւրոս որովք քաջ փառաւորեալք զկեանս անցուցանիցեմք։ Զորմէ ինձ թուի թէ պիտոյ է յայս առաւել առնել. յայդ իսկ փութամ զի զայնոսիկ որ չիցեն ակահ ուսուցանիցեմ։ Զմտաւ ածէք թէ ո՛ր քաղաք թշնամեաց յանհնազանդից առաւ, եւ ո՛ր աշխարհ յանհաւատից պահեցաւ, եւ ո՛ր բանակ անապատելոցն յաղթութեան եհաս, եւ զիա՛րդ աւելագոյն ի պարտութիւն մատնիցին ի պատերազ-*

մունս մարդիկ, բայց յորժամ սկիզբն առնիցեն իւրաքանչիւր զանձին փրկութիւն խորհել: Զի՞նչ այլ ինչ լաւութիւն վճարիցի յայնցանէ որ չհնազանդիցին լաւագունացն. ո՞ր քաղաքք օրինօք շինեցան, կամ ո՞ր տունք ապրեցան, ո՞րպէս նաւք ուրեք երթեալ հասանիցեն: Եւ մեք զոր ինչ բարութիւսըն այժմ ունիմք ի՞ւ իւիք այլով առաւել վճարեցաք, բայց իշխանին հնազանդ լինելով: Զի վաղն այնորիկ իսկ զցայգ եւ զցերեկ արագ արագ յո պարտն էր, հասաք, եւ յորժամ միանգամայն զհետ խաղացեալ երթայաք իշխանին, առանց ի դիմի հարկանելոյ էաք, ի ճակատելն ոչ մի ինչ թերակատար թողաք: Այսուհետեւ եթէ իշխանութեան հնազանդ լինել մեծ իմն օգուտ իցէ առ արութիւն վճարելոյ, գիտասջիք թէ դոյն իսկ եւ ի պահպանութիւն այնր ամենայնի որում պահպանութիւնն պիտոյ իցէ, առաւել օգուտ է:

Յառաջագոյն բազումք էին որ իշխէին մեզ, եւ մեք ումեք ոչ իշխէաք. բայց այժմ այնպէս հանդերձեցարուք ամենեքեան որ աստ կայք, զի իշխէք ոմանք բազմաց եւ ոմանք սակաւուց: Զոր օրինակ արժան համարիցիք արել որոց ընդ ձեւք իցեն, նոյնպէս եւ մեք հնազանդեսցուք որոց ի դէպ իցէ

հնազանդ լինել։ Որչափ ինչ պարտ է մեզ ի ծառայից ընդհատ լինել, որչափ զի ծառայք յակամայ կամս տերանց արքանեկութիւն հարկանիցեն։ Իսկ մեք քանզի համարիմք եթէ ազատք իցեմք, պարտ եւ պատշած է կամակար առնել որ ինչ մեծարոյն իցէ։ Այլ գտանիցէք, ասէ, զի քաղաք առանց միահեծան իշխանութեան, չինիցի. բայց որ իշխանացն կամիցի հնազանդ լինել, թէ եւ բռնադատիցի ի բռնաթենէ բռնազբօսիկ ինչ իրաց, չապացէ ի թշնամիս ձեռն։ Որդ հասեալ կամք, որպէս պատուէր տայ Կիւրոս ի վանս յայս, կրթեսցուք ամենայնիւ որովք մարթեմքն գրաւել զայն որ ինչ պարտն իցէ. տայցեմք զանձինս Կիւրոսի ի գործ արկեալ վարել յինչ պարտն իցէ։ Քանզի եւ զայն պատշած է գիտել թէ չմարթի Կիւրոս գտանել ինչ զոր յիւր օգուտ արկանիցէ ի կիր, եւ ոչ ի մեր շահ. քանզի նոյն շահք մեր առաջի կան եւ նոյն թշնամիք։

Իբրեւ զայս խօսեցաւ Քրիսանտաս, ապա այլ եւս բազումք յարեան ի Պարսից եւ ի նիզակակցացն, զնոյն խօսել։ Այլ հաճոյ թուեցաւ պատուականացն ցանգ ի դրունսն լինել, եւ մատուցանել զանձինս ի կիր արկանել յինչ կամ իցէ, մինչեւ արձակիցէ Կիւրոս։ Որպէս ի ժամանակին հաճոյ թուեցաւ, բաց

նմին օրինակի եւ ցայժմ առնեն որ յԱսիացւոց աշխարհին ընդ Թագաւորաւն են, զի ի պաշտաման կան դրանց իշխանացն: Եւ որպէս ի ճառելս յայս առաջեալ ցուցանիցի, Կիւրոս կազմեաց պատրաստեցաւ իւր եւ Պարսից պահել զիշխանութիւնն, զնոյն օրէնս եւ որ յետ նորա Թագաւորք կացին մի ըստ միոջէ, մինչեւ ցայժմ պահեն: Եւ այս այնպէս որպէս եւ յայլ եւս իրս. յորժամ որ գլխաւորն իցէ ազնուագոյն իցէ, յատակ մտօք օրէնքն ի գլուխ ելանիցեն. այլ յորժամ տպաժաման գլխաւորն իցէ, անզգամութեամբ: Նանուհետեւ կանխէին ի դրունս Կիւրոսի պատուականքն երիւարօք եւ գեղարդեամբք. այսպէս հաճոյ թուեցաւ ամենայն քաջացն, յայնցանէ որ ընդ նմա իսկ մտանեալ մկանդեցին զիշխանութիւնն:

Այլոց եւս իրաց հոգաբարձուս կացուցանէր Կիւրոս. եւ էին նորա հասից ընդունելիք եւ ծախից բաշխիչք եւ գործոց ոստիկանք եւ պահապանք արարոց եւ ռոճկաց յանձանձիչք. եւ երիւարաց եւ պատուականաց գարմանիչս կացուցանէր, զորոց համարէրն եթէ ազնուագոյն մատուցանիցեն նմա զճարակաւորսն ի գործ արկեալ վարել. իսկ զորս ուրախութեան եւ փառաւորութեան պահապանս համարէր

ինքն իսկ դէտ ակն ունէր նոցա, զի ազնուագոյնք լինիցին, եւ ոչ զայնր հոգաբարձութիւն այլոց հրամայէր, այլ իւր իսկ զայն՝ գործ հաշուէր: Վասնզի հմուտ էր եթէ երբեք ուրեք պատերազմի պէտք լինիցին, ի նոցունց հատանէր առնուլ զիւրեւ, որոց մեծամեծ տագնապք հասեալ իցեն, եւ ըզզօրագլուխս հետեւակաց եւ հեծելոց ի նոցանէ կամէր կացուցանել: Նա եւ եթէ զօրավարք ուրեք պիտոյ լինէին առանց իւր, գիտէր թէ ի նոցունց իսկ արժան է առաքել:

Նա եւ քաղաքաց եւս եւ ողջոյն իսկ ազգաց պահապանս եւ նախարարս կամէր զոմանս ի նոցանէ կարգել, եւ ի նոցունց զոմանս հրեշտակագնացս առաքել. զոր մեծ իսկ իրս համարէր առհասանելոյ առանց պատերազմի այնմ ամենայնի որ ինչ պիտոյն իցէ: Զմտածէր թէ յորժամ չիցեն նոյնպիսիք որպիսիս պարտ իցէ լինել այնոցիկ յորոց ձեռն բազում մեծամեծ գործք եւ արուութիւնք կատարելոց իցեն, այնուհետեւ ամենայն ինչ որ իւր իցէ չարաչար ի գլուխ ելանիցէ: Ապա եթէ այնպիսիք իցեն որպիսիս պատշաճ իցէ գտանել. ամենայն իմիք համարէր ի դէպ վճարել. Արդ զայս ի միտ առեալ, նմին գարմանոյ պատկառ կայր: Զնոյն հրահանգս առաքինութեանն

եւ անձինն իսկ պատշաճ համարէր. քանզի չհամարէր արժան, զի որ ինքն չիցէ այնպիսի որպիսի ի դէպ իցէ լինել, զայլս ի գործս բարութեան յորդորիցէ: Իբրեւ զայս խորհէր, զմտաւ ածէր եթէ նախ պարապութեան պէտք են, եթէ զլաւութեանց կամիցի փոյթ յանձին ունել: Զհասից եւ զմտից անփոյթ առնել չհամարէր ի դէպ, զմտաւ ածեալ եթէ հարկ լինիցի բազում ծախս ծախել ի մեծայաղթ իշխանութեանն:

Դարձեալ, քանզի բազում արարք էին, գիտէր եթէ ցանգ զնոցանց զմտաւ ածել չտայ պարապել եւ զամենեցունցն կենաց փոյթ յանձին ունել: Վասն այնորիկ զմտաւ ածէր թէ զերդ տեսչութիւնքն բարիոք մատակարարեսցին եւ առնիցի պարապութիւն, միտ եդեալ նայէր ընդ զօրականացն կարգս: Քանզի բազում անգամ տասնապետք զտասանց հոգայցեն եւ զօրագլուխք զտասնապետացն, եւ հազարապետքն զզօրագլխացն եւ բիւրապետք զհազարապետացն, եւ այնպէս ոչ իցէ որ առանց խնամակալութեան լինիցի, եւ ոչ թէ բնաւ իսկ ամենեւին բազում բեւրք մարդկան իցեն: Յորժամ զօրավար այր կամիցի ի կիր զզօրն արկանել, շատ եւ բաւական է եթէ բիւրապետացն հրաման տայցէ:

Ըստանոցին օրինակի նոյնպէս եւ զատն խնամակալութեան իւր բովանդակեաց Կիւրոս. մինչ զի յորժամ ընդ սակաւուց խօսէր Կիւրոս, ոչ մի ինչ ի սան իւրաց անխնամ մնայր։ Եւ այնուհետեւ ունէր պարապ առաւել քան զայլ ոք որ զատն միոջ եւ զնաւուս միոջ հոգաբարձութիւն յանձին ունիցի։ Նոյնպէս կարգեալ եւ հաստատեալ զիւրս ամենայն, ուսուցանէր եւ որոց զիւրեանն էին նովին կարգաւ վարել։ Զպարապութիւնն այնպէս պատրաստէր անձին եւ որոց շուրջ զիւրեւ էին։

Սկիզբն առնէր այնուհետեւ զեւր զաւօղն կարգել յօրինել թէ որպիսիս պարտ իցեն լինել։ Որ բաւական էին այլոց վաստակովք կերակրել եւ ոչ դային ի դրունս զնոսա խնդրէր, զի որ գան չար ինչ գործ չառնուն յանձն գործել վասն առ իշխանին կալոյ, եւ վասն գիտակ լինելոյ թէ յակն անկանին ազնուագունացն որ ինչ եւ գործիցեն։ Իսկ որք ոչն դային կամ անխտանութեամբ իւիք կամ ապիրատութեամբ կամ անփոյթ առնելով համարէր հեռացեալ զնոսա։ Արդ զայս զմտաւ ածեալ, բռնադատէր այնպիսեացն գալ։ Զի ումեմն յառաւել բարեկամաց անտի իւրոց հրամայէր՝ զնոցայն որ ոչ յաճախէր առնուլ, եւ ասել թէ զիւրն առնու։ Իբրեւ այն լինէր,

իսկ եւ իսկ վաղվաղակի գայթին հատա-
նէին զըկեալքն որպէս թէ խուեցան :

Բայց Կիւրոս բազում ժամանակս չպարապէր այնպիսեաց լսել. եւ յորժամ լսէրն նոցա, բազում ժամանակս ի ձիգ արկանէր զիրաւունս դատաստանացն. զայս առնէր զի կամէր ընդելուզանել զնոսա գալ եւ պաշտօն հարկանել, եւ ոչ թշնամութեամբ որպէս պատիժս պատուհասից ի վերայ ածելով այնպէս բռնադատէր գալ: Մի պայման վարդապետութեան գալոյ՝ այս էր նորա. եւ միւս եւս պայման զդիւրինսն եւ զշահաւորսն հրամայել եկելոցն. եւ այլ եւս դարձեալ մի ինչ երբեք մեկնելոցն տալ բաժինս: Իսկ որ մեծ եւս օրինակ բռնադատելոյ էր, եթէ չանսայր ոք իմիք, հանեալ ի նմանէ զոր ինչ ունէրն, այլում տայր զումէ կարծէր թէ մարթի ի դէպ ժամու հասանել, եւ այնպէս փոխանակ անպիտանութեանն բարեկամ պիտանի լինէր նմա: Յուզէ եւ այժմու թագաւորս եթէ չիցէ ուրուք եկեալ յայնցանէ որոց անկ իցէ գալ:

Այսպէս գնայր Կիւրոս ընդ չեկելոցն: Իսկ զայնցանէ որ զանձինս մատուցանիցեն այսպէս իսկ համարէր, յաճախագոյն ի գործս լաւութեան յորդորել, եթէ ինքն որ նոցա թագաւորն էր, ջանայր զանձն իշխանաւորացն ա-

ռաւել քան զամենեսեան վառեալ ի զարդ առաքինութեանն ցուցանէր։ Վասնզի ի միտ առնոյր թէ եւ ի ձեռն օրինացն գրելոց ազնուագոյնք լինիցին մարդիկ, բայց զլաւ թագաւոր՝ հայեցող օրէնս մարդկան համարէր, զի եւ հրամանս տալ կարող է եւ զատահակեալսն տեսանել եւ լկել։ Այսպէս ածեալ զմտաւ, նախ զդիցն իսկ ցուցանէր զանձն ծգունս յանձն առեալ ի ժամանակին յայնմիկ, քանզի փառաւորագոյն էր։ Նա յայնմ ժամանակի զառաջինն կարգեցան կացին մոգքն հնչել նուագել դիցն ընդ առաւօտն, եւ զոհս որ ըստ օրէ մատուցանել որոց դիցն մոգքն պատուէր տայցեն։ Որ յայնժամ հաստատեցաւ եկաց եւ ցայժմ եւս կայ պահի յայնմանէ որ մի ըստ միոջէ ցանգ թագաւոր կայցէ։ Արդ այսու ամենայնի նմանօղ լինէին նմա եւ այլք Պարսիկք, զի համարէին թէ փառաւոր լիցին թէ դիցն պաշտօն հարկանիցեն, զոր օրինակ որ փառաւորն քան զամենեսին էր եւ իշխէր. եւ համարէին եթէ Կիւրոսի հաճոյ լինիցին թէ զայն առնիցեն։

Իսկ Կիւրոս զդիւցապաշտութիւն այնոցիկ որ ընդ իւրն էին եւ անձին շահ հաշուէր, մտախորհ եղեալ զոր օրինակ որ ընդ դիւցապաշտացն մանաւանդ կամիցին նաւարկել՝ եւ ոչ ընդ այնոսիկ որոց ինչ ամպարշտեալ իցէ։

Եւ հանդերձ նորիմբք զմտաւ ածէր, եթէ ամենայն հաղորդակիցքն դիւրապաշտք իցեն, դուն ուրեք ունիցին յանձին վնաս ինչ միմեանց կամ նմին առնել, քանզի բարերար եւ երախտաւոր հաղորդակցացն համարիցի: Նոյոյն արարեալ եւ զայն թէ մեծ իմն համարիցի չլինել զրկօղ ոչ բարեկամի եւ ոչ նիզակակցի, այլ սաստկութեամբ ընդ իրաւունսն հայեցեալ կամէր եւ զայլոցն յանպատեհ շահից մերժել, եւ իրաւամբք եւ արդարութեամբ կամել մեծանալ. եւ համարէր ամենեցուն ակն ածել եւ պատկառել, եթէ ինքն իսկ յայտնապէս յամենեցունց այնպէս ակն ածիցէ, զի ոչ խօսիցի կամ գործիցէ ինչ աղտեղի:

Եւ զի այս այսպէս է եւ անտի յայտ լինէր, զի ոչ եթէ զայր թագաւոր, այլ եւ յորոց ոչն երկնչին առաւել ի պատկառելն նոցա ակն ածիցեն մարդիկ, քան ի չպատկառելն: Եւ ի կանաց որ հայինն, ակն ածեն յորժամ զզգայցեն զնոցանէ թէ ամաչեն: Պարձեալ համարէր աւելագոյն հաստատուն լինել հնազանդութեան ի նոսա որ զիւրեւն էին, եթէ զհնազանդելոյն առանց բարբանաց յայտ յանդիման մեծամեծար մեծարիցէ առաւել քան զայնոսիկ, որ զմեծավաստակ առաքինութիւնն թուիցին ընծայեցուցանել:

Ոչ ըստ այնմ զոր գրեալ էր նոյնպէս եւ ի գլուխ հանեալ վճարէր։

Այս եւ զիւր ցածութիւնն յայտ արարեալ ի նոյն զամենեսին կրթէր։ Զի թէ որում համարձակ իցէ ծածուկ կալ զնա տեսանիցեն զգաստացեալ, եւ առաւել անառակքն ոչ ինչ գործ ծանականաց յայտնի յանձինս ունիցին գործել։ Իսկ զամօթխածութիւն եւ զցածութիւն այնու ընտրէր, զի ամօթլեածքն ի յայտնի ինչ ծանականաց խորշեցին, իսկ ցածունքն եւ յանկայտիցն։ Այնպէս եւ ի ժուժկալութեան վարժս համարէր առաւել կրթել, եթէ ինքնին իսկ ի գլխովին ցուցանէր զանձն ոչ յանկարծադէպ ցանկութեամբքն ձգեալ ի լաւացն, այլ կամեցեալ նախ ի ճգունս մտանել հանդերձ պատշաճութեամբ յառաջ քան զխրախութիւնսն։ Արդ քանզի այսպիսի ոք էր, ի դրունս բազում յօրինուածութիւն յառութեանցն տանէր. անդի տալոյ ազնուազունացն, եւ բազում ակնածութիւն եւ ցածութիւն առ միմեանս. եւ գտանէիր անդ ոչ զոք ցասուցեալ աղաղակաւ, եւ ոչ ուրախ եղեալ եւ ծանակ կայցէ ծաղու եւ քրքջիցէ. այլ յորժամ նշմարիցես զնոսա, համարիցիս որդարեւ զբարւոք կեանս կեցեալ։ Զայս ինչ ի դրունսն տանէին եւ զայնս ուսանէին։

Բայց վասն պատերազմացն կրթութեան յորսս հանէր զայնոսիկ որոց պատշաճ համարէր ի նոյնս թեւակոխել: Զի զորսան ամենեւին իսկ քաջ կրթութիւն պատերազմացն համարէր, եւ առոյգ հրահանգս առնելոյ: Զի նոյն եւ ի պէսպէս տեղիս ուսուցանէ հեծանել վասն զերեսս փախստէից զհետ արշաւելոյ, եւ յերիւարաց անտի գործոնս եւ ժիրս կազմէ վասն պարծանաց եւ ցանկութեամբ ըմբռնելոյ: Նաստէն իսկ մանաւանդ ընդելուզանէր զհաղորդակիցսն հանդարտել տանել ժուժկալութեամբ եւ երկոց եւ վաստակոց, ցրտահար եւ խորշակաց լինել քաղցնուլ եւ ծարաւել: Նա եւ այժմ եւս թագաւորն եւ այլք որ զթագաւորաւն են, առնեն:

Որդ զի այսպէս համարէր թէ չէ անկ ումեք իշխանութիւն, որ քան զիշխանաւորսն չիցէ ազնուագոյն, ամենեցուն իսկ յայտ յայժմու բանիցս ասացելոց է, եւ զի այսպէս զորս զիւրեւն էին, կրթելով, առաւել եւս ինքն ժուժկալութեան ճգնաւնս ցուցանէր եւ ճարտարութիւնս պատերազմի եւ կրթութիւնս: Զի եւ զայլսն յորս տանէր յորժամ ոչ հարկ ինչ ի վերայ կայր ի տան մնալոյ: Բայց ինքն եւ յորժամ հարկ դոյր ի տան կալոյ, որսայր զգազանսն որ ի բուրաստանսն պար-

րէին. եւ ոչ ինքն երբեք յառաջ քան զՔրմնեալն ընտրիս ուսեր, եւ ոչ երիւարացն առանց ի հրահանգման կրթելոյ, խաբ արկանէր: Ի նոյն որաս հրաւիրէր զիշխանսն որ շուրջ զիւրեւ էին. քանզի ինքն կարի ընտիր էր ամենայն գործովք քաջութեան, նոյնպէս եւ որ զնովաւն կային վասն հանապազն կրթելոյ: Այսպիսի ինչ առակ օրինակի զանձն ընծայեցուցանէր: Հանդերձ ազքիմէք եւ այլոց ոմանց զօրս ամելագոյն տեսանէր լաւութեանց զհետ մըտեալ, զնոսա մեծապարգեւ մեծապատիւ մեծարէր, իշխանութիւնս եւ բարձս շնորհէր, որպէս զի ամենեցուն նախանձուկս արկանիցէ զի իւրաքանչիւր ոք քաջ երեւիցի Պիւրոսի:

Մեզ թուի ի միտ առնուլ զՊիւրոսէ եթէ ոչ այնու եւեթ պատշաճ համարէր իշխանաւորացն ընդ հատ յիշխանաւորացն լինել զի ազնուագոյնք քան զնոսա իցեն, այլ եւ պատրել եւս պատշաճ համարէր զնոսա: Վասն այնորիկ յորժամ յօժարեաց զմարականն պատմութեան ագանել, եւ զհաղորդակիցսն հաւանեցոյց զնոյն արկանել. զի թուեցաւ նմա թէ այն պատմութեան ծածկիցէ, եթէ պակաս ինչ ոք ի մարմնի ունիցի, եւ գեղեցիկս եւ անդամայաղթս ցուցանիցէ: Զի այնպիսի օգս ունին, յորս մարթիցի թագչել եթէ արկա-

նիցի ինչ ի նեղըս առ ի մեծամեծս քան որչափ իցեն կարծեցուցանելոյ։ Թողզյր եւ ծարիր յաչս առմանալ, զի գեղեցիկք եւ ծաւիք երեւիցին աչօք քան որչափ իցենն, եւ զի գունաւորք երեւիցին քան զբնութիւնն։ Արթեայ եւ մի յայտ թքանել եւ մի զերեսս դարձուցանել տեսանել ինչ, որպէս թէ ոչ զարմանայցեն ընդ իրս ինչ։ Բայց զայսմ ամենայնէ համարէրնը- պատ լինել ինչ առ ի չերեւելոյ որ- համարհ այնոցիկ որ ընդ իշխանու- թեամբ իցեն։

Որոց միանգամ պարտ էր իբրեւ իշ- խանս լինել, այսպէս կրթութեամբ յարդարէր եւ լուսաւոր վերակացու- թեամբն։ Իսկ զորս ի ծառայութիւն պատրաստէր, զնոսա չյորդորէր ի վար- ժելս ինչ ազատացն աշխատութեանց, եւ ոչ յանձանձէր զէն սաստանալ։ Բայց հոգայր թէ մի անսուաղ եւ առանց ջրոյ երբէք իցեն վասն ազատացն կըր- թութեան։ Զի եւ յորժամ հալա- ծիցեն զգազանսն հեծելովք ի դաշտս հրամայէր նոցա հաց տանել յորսն. իսկ յազատացն ոչ ումեք։ Եւ յորժամ դէպ լինէր ճանապարհ գնալ, ածէր զնոսա առ ջուրս որպէս զգրաստսն. եւ յորժամ ժամ լինէր ճաշու, մնայր նոցա մինչեւ ուտիցեն ինչ, զի մի նքթիցեն։ Մինչ զի եւ նոքին զնա, որպէս եւ

տաւաղքն, հայր կոչէին, զի հոգ ի մտի ունէր զնոցանէ, որպէս միշտ իսկ եւ հանապազ տուանց ինչ ընդ բանս ածելոյ ծառայք կայցեն։

Համօրէն իսկ Պարսից տէրութեան այնպէս ամրութիւն յարդարէր. եւ անձինն յաճախագոյն քաջալերս մատուցանէր թէ ի վանելոյ անտի եւ ի կործանելոյ չհասանիցէ վիշտս ինչ վշտանալ։ Վասնզի անզօրս համարէր զնոսա եւ անկարգս տեսանէր, եւ հանդերձ նոքիմբք ոչ ոք ի նոցանէ մերձենայր առ նա ոչ զցայգ եւ ոչ զցերեկ։ Իսկ զոր քաջս համարէր, եւ վառեալս եւ զումարեալս տեսանէր, գիտէր թէ ոմանք ի նոցանէ հեծելոյ զօրավարք եղեն, եւ ոմանք հետեւակաց առաջնորդք կացին։ Նայց զբազմաց ի նոցանէ զգայր թէ ունին հոգս ի մտի որպէս թէ բաւական իցեն իշխել. եւ նոքին մօտ երթային առ պահապանս նորա եւ ի նոցանէ բազումք բազում անգամ մատչէին առ Կիւրոս. քանզի հարկ ի վերայ կայր թէ եւ զնոսա արկանիցէ ի կիր. արդ ի նոցունց տագնապ էր վիշտս ինչ կրել նմա բազում օրինակօք։ Այնուհետեւ զմտաւ ածեալ թէ զիարդ լինիցի նմա ապրել ի վշտացն. իսկ չհանելն ի նոցանէ զզէնսն եւ անզօրս առնել չհամարէր օգուտ, եւ առանց իրաւանց համարէր եւ քակումն

իշխանութեան. դարձեալ չթողուլ զնոսա մերձենալ եւ յայտնի իսկ թերահաւատել ի նոցանէ, սկիզբն համարէր պատերազմի։ Բայց մի ինչ փոխանակ ընդ այնր ամենայնի խորհեցաւ առ իւր ամրութիւնն ի դէպ եւ վայելուչ, եթէ մարթիցի զքաջսն իւր բարեկամս առնել առաւել քան միմեանց։

## ԳԼՈՒԽ Բ

Արդ թէ զիա՛րդ սիրելի եղեւ, զայն ջանասցուք պատմել։ Քանզի նախ միշտ իսկ յամենայն ժամանակի մարդասիրութիւն ցուցանէր որչափ ինչ կարող էր։ Զմտաւ ածեալ թէ զոր օրինակ չէ դիւրին զայնոսիկ որ ատելութեան կարծիս տայցեն սիրել եւ միտս բարիս ընդ չարիմացացն ունել, նոյնպէս եւ որ ճանաչիցին եթէ սիրեն եւ բարւոք միտս ունին, չէ մարթ եթէ ատելի լինիցին այնոցիկ որ համարին եթէ սիրեցեալ են։ Մինչ չէրն ձեռնհաս ընչիւք երախտաւոր լինել, խնամակալ լինելով որոց ընդ իւրն էին, եւ ճգամբք եւ ուրախակից բարութեանցն լինելով եւ ծանրացեալ նեղեալ ընդ վիշտսն, ջանայր զնոցա գութս որսալ։

Իսկ իբրեւ եհաս նմա եւ ընչիւք բարերարութիւն ցուցանել. նախ, քանզի չիք ինչ բարերարութիւն մարդկան առ

միմեանս քաղցրաքան զկերակրոց եւ ըմպելեաց բաշխողս։ Զայսածեալ զմըտաւ, նախ վասն իւրոյ իսկ սեղանոյ Հրաման տայր, զի որովք խորտովք ինքն կերակրիցի, զհանգոյնս նոցին միշտ առնմա յօրինեալ դնել զի տայցէ բազում մարդկան. եւ որ ինչ յօրինեալ կայր, այն ամենայն, բաց յորոց ինքն եւ բազմականակիցքն ուտէին, տայր հանապազ այնոցիկ ի բարեկամացն որոց կամէր յիշատակս ցուցանել, կամ գութ եւ խնամ։ Առաքէր եւ ցայնոսիկ զորս ազնուագոյնս համարէր ի պահպանութիւնս կամ ի սպասաւորութիւնս կամ յայլ եւս ինչ իրս եւ յարութիւնս։ Զի զայն իմն յայտ առնէր, եթէ որ ի շնորհս ինչ կամիցի առնել ոչ ծածկիցի։

Պատուէր եւ զիւր եւս սեպհականսն ի սեղանոյ անտի, յորժամ յարգէրն զոք, եւ զամենայն կերակուր զիւրոցն սեպհականացն առ իւրում սեղանոյն յօրինէր, զի համարէր իբրեւ զմանկունս զիւրեւ ածել։ Եւ եթէ կամէր ոմանց ի բարեկամացն ի բազմաց պաշտօն առնուլ եւ նոցա առաքէր ի սեղանոյ անտի իւրմէ։ Քանզի եւ այժմ իսկ որոց տեսանեն առաքեալ ի սեղանոյ թագաւորին, նոցա առաւել ի սպասու կան ամենեքեան։ Զի համարին եթէ նոքա պատուականք իցեն եւ բաւական իցեն ընդունել եթէ խնդրիցեն ինչ։

Ու եթէ վասն նոցին եւեթ որ տառա-
ցանն, ուրախ առնեն խորտիկքն առա-
քեալք յարքայէ, այլ արդարեւ բա-
զում անուշութիւնս ունիցին որ ի սե-
ղանոյ թագաւորին առաքիցին:

Ընդ այնր եւս չեն ինչ զարմանք.
զի որպէս այլ ճարտարութիւնք ի քա-
ղաքս մեծամեծս հոյակապք են. եւ խոր-
տիկքն արքայի ազնուագոյն կազմին.
զի ի փոքր քաղաքսն նոքին դահոյ
կազմիցեն եւ դուռն եւ արօր եւ սեղան.
բազում անգամ եւ նոյն զտուն լինիցի,
եւ յաջողեալ համարիցի եթէ եւ այն-
պէս գտանիցէ զոմանս որ տայցեն նմին
գործս, որ բաւական լինիցին զնա սնու-
ցանելոյ: Արդ չիք հնար մարդոյ որ զբա-
զում արուեստս ճարտարացն գործիցէ,
զբնաւ գեղեցիկ գործիցէ: Իսկ ի քա-
ղաքս մեծամեծս, վասն բազմաց իւրա-
քանչիւր ումեք կարօտելոց բաւական է
իւրաքանչիւր մի արուեստ առ ի սնանել:
Կա ուանիկ բազում անգամ եւ մին
բովանդակ, զի ումն առնի օգս գործիցէ,
եւ միւսն կանանց կաւշիկս: Դու է որ ի
կաւշիկսն եւեթ կարելոյ կերակրիցի, եւ
ումն հերձլոյն: Մին զգարեգօտսն միայն
հատանելով, եւ միւսն ոչ մի ինչ յայն-
ցանէ առնիցէ, այլ զայս առ միմեանս
դնիցէ: Արդ հարկ է թէ որ զատակաւին
ինչ գործովք գայցէ, տագնապիցի զնոյն
ազնուագոյն գործել:

Նոյն անցք եւ ընդ կերակուրսն անցա-
նեն։ Զի որ ինքն անկողինս արկանի-
ցէ, տեղան յարդարիցէ, աղայցէ, աղ-
դի ազդի խորտիկս գործիցէ, ինձ թուի
թէ հարկ է այնպիսումն զամենայն խառն
ի խուռն որպէս ինչ դիպիցի, առնել։
Իսկ ուր միումն գործ իցէ միս եփել եւ
միւսումն խորովել, եւ այլում ձուկն
եփել եւ այլում հաց գործել, բայց ոչ
պէսպէս ազդի ազդի, այլ շատ եւ բաւա-
կան իցէ եթէ զմի կերպարանս բա-
րւոք ցուցանիցէ. այնուհետեւ հարկ է
զի այնպէս առնիցեն որ յայժ իսկ ընտիր
իցեն։ Նոյնպէս կարգեալ զպաս կե-
րակրոցն անցանէր զանցանէր զամենե-
քումբք։

Եւ զի այլովք եւս ամենեքումբք
պաշտօն առնելով գլէր, զայն այժմիկ
պատմեսցուք։ Զի թէպէտ եւ առա-
ւել էր քան զամենայն մարդ բազում հա-
սրն առնելով, եւս առաւել առաւե-
լոյր այնու զի՛ բազում պարգեւս մարդ-
կան բաշխէր։ Նոյն սկիզբն առնէր
Կիւրոս, եւ տակաւին կայ բաւէ
ցայժմ ի թագաւորսն պարգեւացն ա-
ռատութիւն։ Քանզի ո՞յր բարեկամք
ընչաւէտք որպէս զՊարսից թագաւորին.
ո՞ դք զարդարիցէ՝ զիւրսն պատմուճանօք
գեղեցիկ քան զթագաւորն։ Եւ ո՞յր
այնպիսի պարգեւք իցեն որպէս ինչ
են պարգեւք թագաւորին, ապարան-

ջանք եւ քայլք եւ երիվարք ոսկե-
սանձք. քանզի չէ իշխանութիւն զայն
ունել ուրուք չիցէ տուեալ թագաւո-
րին։ Զումէ՞ պատմեցաւ եթէ զոր-
գեւացն յաճախութեամբ զեւր իսկ անձն
ետ ընտրել փոխանակ ընդ եղբարց եւ
ընդ հարց եւ ընդ որդւոց։ Ո՞ այլ ոք
մարթաց զթշնամեաց հեռացելոց բա-
զում ամաց ճանապարհաւ վրէժ խըն-
դրել, որպէս Պարսից թագաւորն։ Ո՞
այլ ոք վանեալ վկանդեալ զիշխանու-
թիւնն յիշխանաւորացն հայր անուա-
նեալ վախճանէր, բայց Կիւրոս։ Եւ
այն անուն յայտ է թէ երախտաւորի
յորջորջումն է եւ ոչ այնր որ հանիցէ
ինչ յումեքէ։

Ի միտ առնումք թէ զանուանեալ
աչօ եւ ականջս թագաւորի, ոչ եթէ
այլով ինչ իւիք ստացաւ, բայց պար-
գեւօքն եւ պատուոցն մեծարանօք։ Զի
զնոսա որք պատմէին զոր ինչ ի դէպ
էր նմա գիտել, մեծամեծան պարգեւե-
լով, զբազում մարդիկ յորդորէր յա-
կանջալուրս լսել եւ ականատես լինել
այնմ զոր ինչ արժան էր պատմել թա-
գաւորին. եւ այնուհետեւ բազում աչք
համարեցան արքայի եւ բազում ականջք։
Ապա թէ համարիցի ոք թէ մի ակն
ընտիր է թագաւորի, անուղղայս ածի-
ցէ զմտաւ. զի մին սակաւ ինչ հասանի-
ցէ տեսանել եւ լսել. եւ այլոցն իբրեւ

հրաման լինէր անփոյթ առնել եթէ մի-
ում ումեք այն հրամայեալ էր։ Նա եւ
զորմէ գիտասցեն թէ ակն է նա թա-
գաւորին, ի միտ առցեն եթէ պարտ
է եւ ի նմանէ զգոյշ լինել։ Բայց չէ
այնպէս, այլ ամենայն ումեք, որ առիցէ
լսել ինչ կամ տեսանել արժանի հո-
գաբարձութեան լսէ թագաւորն։ Վասն
այնորիկ բազում ականջք են թա-
գաւորի, եւ բազում աչք հաշուին, եւ
ամենայն ուրեք երկընչին խօսել զան-
դէպսն թագաւորին, որպէս թէ նմա
լու ի լու խօսեսցին, եւ զանգիտեն
զանպատշաճսն առնել, որպէս թէ նա
առընթեր կայցէ. եւ չիշխէր ոք ինչ
չար խօսել զԿիւրոսէ իբրեւ առաջի ա-
չաց թագաւորին որ հանապազ մօտի-
ցեն. ամենեքին այսպիսի միտս ունէին։
Այլ թէ զի՞նչ պատճառք իցեն այնպի-
սի միտս ունելոյ մարդկան առ նա, ոչ
այլ ինչ գիտեմ, բայց զի մեծամեծս ընդ-
մանուենցն շնորհէր։

Ընդ անցուցանելոյ զամենեքումբք
պարգեւացն յաճախութեամբ, յոր-
ժամ ընչաւէտագոյնն էր, չեն ինչ զար-
մանք. բայց պաշտամամբքն եւ դար-
մանովք գերիվերոյ բարեկամացն լինել
առն թագաւորի, այն զարմանալի է։
Ասեն թէ ոչ յիմեքէ յորժամ պարտէրն,
յամօթ լինէր որպէս ի բարեկամացն
ապառուէ։ Եւ բանք եւս յիշատակին

թէ ասէր նա այսպէս, եթէ Քաջ հովուի եւ քաջ թագաւորի գործք համագոյն միմեանց իցեն. զի պարտ է, ասէ, հովուի խաշանցն դիւրութիւն առնել, եւ ապա ի կեր արկանել զնոսա. զի այն իսկ է խաշանցն յաջողութիւն: Նոյնգունակ եւ թագաւոր յորժամ բարեզէն եւ երջանիկ զքաղաքս եւ զմարդիկ առնիցէ, պարտ է նոքօք վարել: Արդ եթէ այնպիսի միտս ունէր ոչ ինչ են զարմանք եթէ ի վէգ եկեալ հակառակէր ամենայն մարդկան զերիվերոյ խնամակալութեամբ լինել:

Նաեւ գեղեցիկ ինչ առակ օրինակի, ասեն, յայտ արարեալ Կիւրոսի՝ Կրիւսոսի, յորժամ միտս դնէր նմա թէ բազմութիւն տալով աղքատ եւ տառապեալ լինիցիս, ուր մարթ իցէ քեզ միոյ միայնոյ առն բազում գանձս ակւոյ մթերեալ դնել զեմեղ: Նաեւ զԿրիւսոսէ, ասեն, հարցեալ. Ո՞րչափ կարծիցես թէ էին իմ գանձք, եթէ ժողովէի ոսկի որպէս դուն խրատ տաս, յորմէ հետէ եմ յիշխանութեան աստ յայսմիկ: Կրիւսոս ասէ, Բազում ինչ յաճախութիւն: Նաեւ Կիւրոս ասէ, Դուն առ առաքեա այր մի ընդ Վշտասպայ յոր դու առաւել հաւատաս. եւ դու Վշտասպա, ասէ, երթ առ բարեկամս, դու ցնոսա թէ պիտոյ է ինձ ոսկի առ գործ ինչ, քանզի արդարեւ պիտոյ է,

հրամանն տուր նոցա, թէ որչափ իւրաքանչիւր ոք ձեռնհաս իցէ, բերցէ ինձ ինչս, եւ գրել կնքել եւ տալ զհրովարտակն ցպաշտօնեայն Կրիւսոսի զի տարցի։

Եւ զայս զոր ասացն գրեալ կնքեալ տայր ձեռն ի ձեռն ցՎշտասպա տանել առ բարեկամսն. եւ առ ամենեսին գրէր եւ զՎշտասպա իբրեւ զիւր բարեկամ ընդունել։ Իբրեւ շոգաւ եբեր սպասաւորն Կրիւսոսի զթուղթսն, տայ Վշտասպա. Արքայ Կիւրոս, պարտ է եւ զիս մեծատուն հաշուել, քանզի բազում պարգեւօք եկի վասն թղթոցն քոց։ Կիւրոս ասէ. Այս մի գանձ է մեր Կրիւսէ. դու զայլոցն ածջիր ըզմտաւ, եւ ի միտ առ թէ որչափ գանձք պատրաստական կայցեն եթէ պէտք ինչ լինիցին ի կիր արկանելոյ։ Ասեն մատախորհ լեալ Կրիւսեայ բազմապատիկ գտանել քան զայն զոր ասացն լինել ի գանձոն Կիւրոսի եթէ ժողովեսցէ։ Իբրեւ այս այսպէս յայտնի լինէր, պատմեն թէ սկսաւ խօսել Կիւրոս։

Տեսանե՞ս, ասէ, Կրիւսէ, թէ դոն եւ իմ գանձք, այլ դու հրամայես ինձ զգանձսն առ իս ժողովել եւ նոքօք ատելի եւ նախանձելի լինել եւ պահապանս վարձու ի վերայ կացուցանել եւ նոցա հաւատալ։ Բայց ես զբարեկամս մեծատունս առնելով, զնոսա համա-

ըրիմ զանձս եւ իմ եւ ձերոցն բարու-
թեանցն հաւատարիմ պահապանս. քան
եթէ պահապանս վարձկանս կացու-
ցանիցեմ։ Ասացից եւ այլ եւս ինչ
քեզ, Ով Կիւրոսէ, զոր դիքն արկին ի
միտս մարդկան եւ արարին զմի օրինակ
զամենեսին աղքատս եւ տնանկս, այնմ
եւ ոչ ես մարթիցեմ զերիվերայ լի-
նել, եւ ես ոչ յագիմ կարասւով, որ-
պէս եւ այլքն։ Բայց այնու թուիմ
ընդհատ ի բազմաց, զի ոմանք, յոր-
ժամ աւելի քան զբաւականն ստանայ-
ցեն զկէսսն ի նոցանէ փորեալ թաղու-
ցանեն, զկէսսն ցեցակեր մեցամէջս առ-
նիցեն. եւ զկէսսն համարելովն եւ չա-
փելով եւ կշռելով եւ թօթափելով
եւ պահելով զբօսեալ են։ Սակայն եւ
յորժամ ի ներքս ունիցին ոչ կերիցեն
առաւել զոր կարիցենն հանդարտել,
քանզի պայթին պարպատին, եւ ոչ
հանդերձ զանձամբ արկանիցեն առաւել
քան զոր մարթիցենն տանել. քանզի
հեղձնուլն մղձկին այլ զաւելորդ ինչսն
զբօսանս ունին։ Բայց ես դիցն ա-
բանեկութիւն հարկանեմ եւ ցանգ ա-
ռաւել եւս խնդրեմ։ Նաեւ յորժամ
ստանայցեմ, զոր ինչ աւելի քան զբ-
բաւականն տեսանիցեմ, նոքիմբք զկա-
րօտութիւնս բարեկամաց լնում եւ մե-
ծացուցանելովն զմարդիկ եւ երախ-
տաւորն լինելով գութ խնամ անկանի-

ցի նոցա ընդ իս. եւ ի նոցունց շահի-
ցիմ ամրութիւն եւ փառաւորութիւն.
եւ ոչ ցեցակեր փտտոտակեր լինիցի եւ
ոչ յորդեալ ապականիցի եւ փառաւո-
րութիւնն որչափ յաճախագոյն լինիցի,
դոյնչափ եւ մեծապայծառ եւ գեղե-
ցիկ եւ առ կրել թեթեւագոյն լինիցի,
բազում անգամ եւ զկրելեան իւր թե-
թեւագոյնս ցուցանիցէ: Բայց զի եւ
զայս ի միտ առցես, ասէ, թէ ես ոչ
զայնոսիկ որ զբազումսն ունիցին եւ բա-
զում ինչ պահիցեն երանեալ եւ երջա-
նիկ համարիմ. զի թէ այնպէս ինչ էր,
ապա որ պարապացն պահ ունիցին բա-
րեշէնք եւ երջանիկք իցեն, զի զամե-
նայն ինչ որ ի քաղաքսն են, պահեն.
այլ որ բազում արարս կարիցէ ստա-
նալ իրաւամբք եւ արդարութեամբ,
եւ բազում ինչ ի կիր արկանել պատ-
շաճութեամբ, զնա ես յաջողեալ հա-
մարիմ եւ ընչիւքն: Եւ յայտ էր թէ
ըստ բանիցն զոր խօսէր նոյնպէս եւ
վճարէր:

Հանդերձ ասքիմբք նայէր ընդ բա-
զումս ի մարդկանէ, զի յորժամ ա-
ւաղջքն իցեն, կազմ եւ պատրաստ լի-
նին զի զպէտսն կարեւորս ունիցին եւ
կարգեն դնեն զպիտոյսն ի կերակուր
աղջոցն: Բայց զայնմանէ չանեանէր
հոգ յանձին կալեալ թէ յորժամ խօ-
թանայցեն, առ ընթեր կայցեն պատ-

շած դարմանքն։ Արդ հաճոյ թուե-
ցաւ նմա եւ ի սոյնս աշխատս լինել,
բժիշկս ճարտարս առ ինքն ժողովէր,
եւ որ ինչ միանգամ գործի պիտանացու
ոք ասիցէ նմին կամ դեղ կամ կերա-
կուր կամ ըմպելի, ոչ ինչ էր յայնցանէ
զոր ոչ պատրաստեալ գանձէր առ ինքն,
եւ յորժամ հիւանդանայր ոք յայնցանէ
որոց ի դէպ էր պաշտօն առնել, այցե-
լու լինէր եւ տայր զամենայն որ ինչ
պիտոյ լինէր, եւ բժշկացն շնորհակալ
լինէր, յորժամ բուժէր ոք զոք։ Զայս
եւ այսպիսի ինչ բազում հնարս հնա-
րէր առ ճոխանալոյ առ նոքօք յորոց
սիրելն կամէր։

Քանզի մրցութեան հրահանգս պա-
տուիրէր եւ վարձս առաջի դնէր եւ
կամէր նախանձուկս արկանել վասն բա-
րեաց գործոց, այն ամենայնի գովու-
թիւնք էին Կիւրոսի այնու՝ զի փոյթ ի մտի
ունէր, թէ զիարդ յառաքինութիւն
թեւակոխիցի։ Բայց քաջացն գաւա-
ռածքն կագս եւ հակառակութիւն ի
միմեանս արկանէին։ Եւ հանդերձ նա-
քիմքք, իբրեւ օրէնս հաստատէր Կիւրոս
թէ յորժամ պէտք ինչ ընտրութեան
լինիցին, թէպէտ ի դատաստանս թէ-
պէտ ի մրցութիւնս, որոց ընտրու-
թեան պէտք իցեն միաբան առ դա-
տաւորսն երթայցեն։ Արդ յայտ է թէ
երկոքին ախոյեանքն դէտակն ունիցին

դատաւորացն եւ առաւել բարեկամն դատաւորաց։ Նա որ ոչն յաղթեաց, ընդ յաղթօղսն խանդայցէ, եւ զայնոսիկ որ ոչ զինքն ընտրեցին, ատիցէ։ Պարձեալ եւ որ յաղթիցեն՝ իրաւամբք համարիցի յաղթել, որպէս ոչ ուրեք պարտապան իցէ շնորհակալ լինել։ Նա որ կամիցին զմիմեամբք ելանել ի բարեկամութեանն Կիւրոսի, որպէս այլքն ի քաղաքս, նոյնպէս եւ նոքա միմեանց չարակնիցեն։ Որպէս զի բազումք զմիմեանց կամիցին վատաբանդիս լինել, քան եթէ միմեանց լինել գործակից ի բարիս։ Այս ամենայն յայտ առնիցէ՝ թէ հայթայթանօք հնարէր, թէ լաւքն ամենեքին զնա քաջ սիրիցեն քան զմիմեանս։

## ԳԼՈՒԽ Գ

ԱՅԺՄ պատմեսցուք թէ զիարդ զառաջինն չուեաց Կիւրոս յարքունեացն։ Քանզի եւ չուոյ մեծապայծառ փառաւորութիւն, մի ինչ արուեստ թուի յարուեստիցն մեքենայաւորութեան, չերեւելոյ արհամարհ իշխանութեանն։ Նախ իսկ յառաջ քան զչուն կոչեցեալ առ իւր զիշխանսն Պարսից եւ այլոց ազգաց, տայր նոցա զմարական պատմուճանսն, եւ յայնժամ նախ մարական հանդերձ ագան Պարսիկք, եւ ի

տալն առեր ցնոսա եթէ կամիմ երթալ ի մեհեանս որ ընտրեցան դիցն, եւ զոհս ընդ նոսա մատուցանել։ Արդ եկայք, ասէ, ի դրունս, զարդարեալ գովելին պատմուճանօք յառաջ քան զծագել արեգական, եւ կարգեալ կացէք առ իս որպէս պատուէր տայցէ ձեզ Փերաւղաս Պարսիկ։ Եւ յորժամ ես երթայցեմ, ասէ, զհետ գայցէք ի տեղւոջ յորում ասացաւն ձեզ։ Ապա թէ ումեք ի ձէնջ թուիցի այլազգ եւս գեղեցիկ քան զայն լինել, յորժամ միւսանգամ երթայցեմք, ասասցէ ինձ։ Զի որպէս զիարդ գեղեցիկ եւ վայելուչ թուիցի ձեզ, նոյնպէս պարտ է զբնաւ կարգել եւ յօրինել։

Իսկ իբրեւ տայր ազնուականացն զգեղեցիկ գեղեցիկ պատմուճանսն, հանէր եւ այլ եւս մարական պատմուճանս. քանզի բազում պատմուճան պատրաստեալ ունէր. ոչ ինչ անխնայեալ ոչ ի ծիրանի եւ ոչ ի շիկակարմիրն եւ ոչ յորդան կարմիր եւ ոչ ի ձորձն կերպասս։ Բաշխեալ ի նոցանէ միում միում ի զօրավարացն, հրաման տայր նոցա նոքօք զարդարել զիւրեանց բարեկամսն, որպէս եսս, ասէ, զարդարեմ զձեզ։ Եւ ոմն ի մօտակայացն հարցանէր. Դու, ասէ, ե՞րբ զարդարիցիս. եւ տայր պատասխանի. ո՞չ այժմ,

ասէ, ձեզ ընդ զարդ եկեալ թուիցիմ. զի զարդարեմս զձեզ։ Եթէ կարիցեմ, ասէ, ձեզ բարեկամաց բարի առնել, զոր պատմուճան եւ ունիցիմ, նովին գեղեցիկ երեւիցիմ։

Նոքա երթեալ կոչէին զբարեկամս եւ զարդարէին պատմուճանօքն։ Իսկ Կիւրոս քանզի գիտէր թէ Փերաւղաս որ ի ռամկէ անտի էր, հանճարեղ է եւ իմաստուն եւ ազնուական, եւ թէ չառնէր անփոյթ՝ առնել նմա շնորհս, որ երբեմն եւ վասն զիւրաքանչիւր ոք ըստ արժանաւորութեանն պատուելոյ խրատ տայր, զնա կոչեալ, խորհուրդ առնոյր ընդ նմա թէ զիա՞րդ լաւիմացացն վայելուչ ցուցանիցէ զչուն եւ թշնամեացն ահագին։ Եւ իբրեւ զմտաւ ածին եւ իրքն հաճոյ թուէին, հրաման տայր Փերաւղայ հոգալ, զի այնպէս լինիցի վաղիւ չուն, որպէս հաճոյ թուեցաւ։ Եւ, ասէ, պատուէր ետու ամենեցուն՝ քեզ հնազանդ լինել վասն կարգի չուոյդ։ Բայց զի յօժարագոյնս լուիցեն քեզ, յորժամ պատուէր տայցես, առ տար, ասէ, զպարեգօտսդ զայդոսիկ առաջնորդաց տիգաւորացն։ Եւ զտառատտոկս զայդոսիկ զհեծելոց՝ առաջնորդի հեծելոյն տուր, եւ առաջնորդաց կառաց զայլ պարեգօտս։

Եւ նա առեալ տանէր, իսկ առաջնորդքն իբրեւ տեսին ասեն. Մեծ ես դու

չէր համարձակ կէս սպիտակ ագանել. եւ զբարձիւքն արկանել բեհեզեղէնս նարօտուք եւ ձորձ համակ ծիրանի. եւ ունէր ապարանջ զխուրիւն եւ նորին համազգիք զնոյն նշանակ ունէին, եւ զդոյն ցայժմ ունին, եւ ձեռքն արտաքոյ քան զթեզանիսն էին, եւ գնայր առ նմին կառավար յաղթանդամ, այլ փոքր էր քան զնա կամ զի արդարեւ մեծ էր եւ կամ այլազգ ինչ, բայց Կիւրոս կարի իսկ յաղթ երեւէր։ Եւ ամենեքին իբրեւ տեսանէին, երկիր պագանէին, կամ զի հրաման առեալ էր ոմանց սկիզբն առնել երկրպագութեանն կամ սքանչացեալք ընդ կազմութիւնն, եւ վասն մեծ եւ գեղեցիկ երեւելոյ Կիւրոսի։ Եւ յառաջն ոչ ոք ի Պարսից երկիր պագանէր Կիւրոսի։

Իբրեւ խաղային կառքն Կիւրոսի, երթային եւ չորեքհազար տիգաւորքն, եւ առ նոքօք զհետ գային երկու հազարքն աստի անտի կառացն. զհետ գային որ շուրջ զնովաւ իշխանքն էին երիվարօք, զարդարեալք նիզակօք իբրեւ զերեքհարիւր։ Եւ գային երիվարք որ սնեալ էին Կիւրոսի ոսկեսանձք ծածկեալք ի գաւազանաձեւ ձորձոյ իբրեւ զերկերիւր։ Եւ յետ նոցա երկու հազար տիգաւորք։ Յետ նոցա բեւր հեծեալք ամենայն ուրեք

հարեւր՝ հարեւր կարգեալ կային. եւ առաջնորդք նոցա Քրիւսանտաս: Յետ այնորիկ այլ եւս բեւր հեծեալք Պարսից նոյնպէս կարգեալք, եւ առաջնորդք նոցա Վշտասպէս եւ յետ նոցա այլ բիւրաւորք ըստ նմին օրինակի. եւ առաջնորդք նոցա Դատամաս, եւ յետ նոցա այլք, եւ Գադատաս առաջնորդք նոցա: Յետ նոցա Մարք հեծեալք, յետ նոցա Հայք, յետոյ Վրկանացիք եւ յետ նոցա Կադուսիացիք եւ յետ նոցա Սակք. եւ յետ հեծելոցն կառք չորք չորք կարգեալք, եւ առաջնորդք նոցա Արտաբատէս պարսիկ:

Իսկ յերթալն նորա բազում մարդիկ զհետ անկեալ երթային արտաքոյ դրաւշուցն, եւ խնդրէին ամենեքին իրս ինչ ի Կիւրոսէ: Առաքեալ առ նոսա զոմանս յիշխանաց անտի որք յերկոցունց կողմանց կառացն երիս երիս զհետ գային նորա վասն զրոյց իսկ տալոյ, հրաման տայր ասել ցնոսա, եթէ խնդրիցէ ոք ինչ ի նմանէ, պատմեսցէ միում ումեք յիշխանացն զոր ինչ ոք կամիցի, եւ նոքա, ասէ, ասասցեն ցիս: Երթեալքն անդէն իսկ եւ իսկ առ հեծեալսն գային, եւ խորհուրդ առնոյին թէ առ ո՛ երթիցէ իւրաքանչիւր ոք ի նոցանէ: Իսկ Կիւրոս ի բարեկամաց. անտի զորս միանգամ կամէր առաւել պաշտօն առնուլ ի

մարդկանէ, զնոսա յղեալ, զոմն առ ինքն կոչէր զիւրաքանչիւր մի ըստ միոջէ, խօսէր ընդ նոսա այսպէս. Եթէ ոք ասասցէ ինչ ձեզ, յայնցանէ որ զհետ մեր գան, որ ոչինչ խօսել թուիցի, մի ունկն դնիցէք նմա. իսկ որ իրաւացիս խնդրիցէ պատմեցէք ինձ զի հասարակ խորհուրդ ի մէջ առեալ վճարեսցուք:

Այլք յորժամ կոչեցեալ լինէին, ունկնդիր եղեալ տագնապաւ հրամանէին մեծացուցեալ զիշխանութիւնն Կիւրոսի, եւ յայտ արարեալ եթէ միտադրյնս հնազանդ լինիցին: Դայփառնէս ումն անուն էր խիստ բարբայիւք, համարէր եթէ ոչ վաղվաղակի հնազանդիցի, ազատ թուիցի: Զգացեալ զայն Կիւրոսի մինչ չեւ մատուցեալ նորա եւ խօսեցեալ ընդ նմա, յղեալ զոմն յիշխանաց անտի, հրամայէր ասել ցնա, եթէ չես ինչ այսուհետեւ պիտոյ, եւ այնուհետեւ ոչ կոչէր: Իսկ որ յետոյն քան զնա կոչեցաւ յառաջեաց վաղագոյն քան զնա. եւ Կիւրոս ետ նմա պարգեւս երիվար մի յեկելոցն զհետ, եւ հրամայեաց միում ումեք յիշխանացն ածել զնա յա եւ կամիցի: Եւ որոց տեսինն մեծարոյ իմն նոյն թուեցաւ. եւ առաւել բազումք ի մարդկանէ պաշտէին զնա:

Իբրեւ գային հասանէին ի մեհեանն, զոհս Արամազդայ մատուցանէին եւ

զցուլսն առնէին ողջակէզս, ապա եւ արեգական երիվարս ողջակէզս առնէին. յետ այնորիկ եւ հողոյ զենեալ, որպէս մոգուցն հրաման տուեալ էր, առնէին, ապա դիւցազանց որ զԱսորւոց աշխարհն ունէին: Եւ յետ այնր ամենայնի, քանզի գեղեցիկ էր վայրն, սկսան ի դրանց անտի տագնապաւ զերիվարսն արշաւեցուցանել: Արդ ինքն ընդ Պարսից ընթացեալ յաղթէր. քանզի յաճախագոյն ի ձիոցն հրահանգս կրթեալ էր: Իսկ ի Մարաց անտի յաղթէր Արտաբատէս, քանզի երիվար տուեալ էր նմա Կիւրոս. եւ յԱսորեաց՝ վերակացուն. եւ ի Հայոց՝ Տիգրանէս. ի Վրկանացւոց՝ որդի հազարապետին: Իսկ ի Շակաց այր մի զօրական եթող երիվարաւն զայլ երիվարսն մօտ ի կէս արշաւանին:

Յայնժամ վայրի եհարց, ասեն, Կիւրոս ցպատանեակն, եթէ փոխանակիցէ՞ զթագաւորութիւն ընդ երիվարին. եւ նորա պատասխանի տուեալ թէ Զառնուլ յանձն զթագաւորութիւնն, բայց կամէի շնորհս յառնէ բարւոյ գտանել: Եւ Կիւրոս ասէ. Եւ ես կամիմ ցուցանել քեզ զտեղին, յոր եթէ արկանիցես ինչ խառն ի խուռն, ոչ վրիպիցիս յառնէ բարւոյ: Ասէ շակացին. Նաւ իսկ ցոյց ինձ, զի ամբարձեալ արկանիցեմ զկոշտն: Կիւրոս ցուցանէր նմա,

ուր էին բազմամբոխ բարեկամացն, եւ նա զկողմն ընկեց եւ երթեալ պատահէր փերաւղայ, զի պատմէր ինչ յայնժամ փերաւղաս հրամայեալ ի Կիւրոսէ: Եւ իբրեւ հարաւ եւ ոչ դարձաւ յետս, այլ երթայր յոր հրաման առեալ էր երթալոյ. ի վեր հայեցեալ շակացւոյն հարցանէր, թէ ո՞ւմ դիպեցաւ: Այ ումեք՝, ասէ, ի մօտակացացն: Ասէ պատանեակն. բայց ո՞չ ի հեռացելոց անտի: Ասէ Կիւրոս, նմա պատահեցար, որ առ կառօքն արշաւեցուցանէր զերիվարն: Իսկ զիա՞րդ, ասէ, ոչ դարձաւ յետս: Եւ Կիւրոս ասէ, քանզի շամշեալ ոմն է, որպէս երեւի իսկ:

Լուեալ պատանեկին, երթայր տեսանել թէ ո՛ էր, եւ գտանէ զփերաւղաս որոյ փոշւով եւ արեամբ եւ ապաժուժաւ լի մօրուքն էին: Քանզի հատեալ հոսէր յըռընգացն արիւնն եւ իբրեւ մերձ լինէր, հարցանէր զնա թէ հատա՞ւ, եւ նա ետ պատասխանի, թէ Ո՞րպէս տեսանես: Տամ քեզ, ասէ, զերիվարս զայս: Եւ նա հարցանէր թէ ընդ է՞ր իրիք. ապա պատմէր շակացին զիրսն, եւ գլուխ իսկ ամենայնի ասէր, թուի ինձ թէ ոչ վրիպեցայ յառնել բարւոյ: Եւ փերաւղաս ասէ. եթէ ցածուն միտս ունէիր ապա մեծամեծս քան զայս տայիր: Բայց այժմ եւ ես յանձն առնում: Եւ գիտն, ասէ, յաղօթս կամ,

որք ետուն ինձ հարկանել ի քէն, տայ-ցեն ինձ, շստորջանալ քեզ վասն այսր պարգեւիդ. եւ այժմ երթ, ասէ, երիւա-րաւ իմով, եւ վաղվաղակի եկից առ քեզ. Նոքա այնպէս ի միմեանց մեկնե-ցան:

Իսկ ի Կադուսիացւոց Ռաթոնիկէս յաղթեաց: Արձակէր եւ կառս մի ըստ միոջէ, եւ որոց յաղթիցեն՝ տայր զուա-րակս, զի զենեալ կերիցեն, եւ ըմպեսցին: Արդ ինքն առնոյր զզուարակն յաղ-թութեան պարգեւ, եւ զիւր մասն ըմպելեացն տայր փերաւղայ, քանզի հաճոյ թուեցաւ նմա կարգ չուոյն յար-քունի ապարանից անտի: Որպէս յայն-ժամ առ Կիւրոսիւ կարգեցաւ չուն, նոյնպէս է եւ այժմ չու թագաւորին, բայց նուէրք ոչ գոն, յորժամ ոչ զոհի-ցէ: Իբրեւ այն ամենայն յանգ ելանէր, դարձին հասանէին միւսանգամ ի քա-ղաքն, եւ որոց ապարանք տուեալ էին, ի տունս մեկնէին, եւ որոց չէր տուեալ ի բանակն:

Կոչեցեալ փերաւղայ զշակացին որ զերիւարն իսկ ետ նմա, ասպնջական լինէր, եւ բազում ինչ տայր առատու-թեամբ, եւ յորժամ ընթրէինն, զըմ-պելիսն զոր առ ի Կիւրոսէ, լնոյր եւ մա-տուցանէր նմա: Շակացւոյն տեսեալ զգահոյսն գեղեցիկս եւ բազում գեղե-ցիկ կազմած եւ գերդաստանս բազումս.

նայցեմ. չգիտեմ, ասէ, եթէ ուտեմ եւ ըմպեմ եւ ննջեմ, ոչ եթէ այժմ քաղցրագոյն քան երբեմն յորժամ աղքատն էի եւ տառապեալ: Նաև քանզի ամենայն այդ յաճախեաց, այնչափ ինչ շահիմ, զի պարտ իցէ առաւելագոյն պահ ունել, եւ այլոց աւելի բաշխել տալ, եւ զբազմաց հոգ ի միտ ունել, եւ զբազում իւրք զբօսնուլ: Քանզի բազում ծառայք հաց խնդրեն յինէն, եւ յոլովք գինի, եւ բազմազոյնք ձորձ, եւ ոմանք բժշկաց կարօտանան: Նաև դայ բերէ ոմն կամ զգազանաբերկան ի խաշանցն, կամ յանդուղոյ զգարաշահս անկեալն ի վախէ կամ թէ ախտ ցաւոց յանասունսն անկանիցի: Մինչ զի թըւի ինձ թէ այժմ վասն բազումն ունելոյ առաւել տրտմիցիմ, քան եթէ յառաջին վասն սակաւիկ ինչ ունելոյ:

Ասէ շականցին. Այլ յորժամ աղքին իցեն տեսեալ զբազումն, բազմապատիկ քան զիս ուրախ առնիցեն: Փերաւզաս ասէ. Ոչ այնպէս հեշտական իցէ զինչսն ունել, որպէս տրտմութեան իցէ յընչիցն անկանել. ի միտ ածցես եթէ ճշմարիտ խօսիմ, զի ի մեծատանց ոչ ոք տագնապի առ հեշտականութեանն ունել. իսկ յայնցանէ որ անկանիցին յիմեքէ զոք տեսանիցես եթէ կարիցէ ի քուն լինել ի տրտմութենէ անտի: Ասէ շականցին. Եւ ոչ յայն-

ցանէ որ առնուն ինչ տեսանիցես զդը առ խնդութեան ննջելոյ։ Ոչ այդ, ասէ, ճշմարտութեամբ ասես, զի եթէ ունելն ինչ այնպէս, որպէս զառնուլն քաղցր էր, յոյժ իսկ ընդհատ յաղքատաց էին փառաւորութեամբ մեծատունքն. եւ հարկ է, ասէ, զի որ բազումս ունիցի, շատ ծախիցէ եւ ի դիս եւ ի բարեկամս եւ ի հիւրս։ Արդ որ ուժգին ոք ուրախ ընդ ինչս լինիցի, գիտասջիր թէ եւ ի ծախելն յոյժ տրտմիցի։

Ասէ Սակաս. Ես չեմ յայնցանէ, այլ եւ զայն փառաւորութիւն համարիմ բազում ինչ ունել եւ բազում ինչ ծախել։ Ասէ Փերաւլաս. Ո՞չ ապաքէն վաղվաղակի երեւելի եղեր եւ զիս փառաւոր արարեր. զայս ամենայն, ասէ, առ եւ ստացիր, եւ արկ որպէս զկարդ կամիս ի կիր։ Դու զիս իբրեւ զհիւր կերակրեսցես եւս նուազագոյն քան զհիւր. Ոչ ի շատ իցէ ինձ թէ զոր ինչ դու ունիցիս, նոցին հաղորդ իցեմ։ Ասէ Սակաս. Խաղ ուրեմն առնես։ Փերաւլաս երդմնի լեալ ասէ. Թէ Ոչ ընդ խաղ խօսիմ. եւ այլ եւս ինչ խնդրեսցից քեզ ի Կիւրոսէ, մի կալ ի պաշտամանէ ի դրունս Կիւրոսի եւ ոչ երթալ ի մարտ պատերազմի։ Այլ դու մեծատուն ի տան կայցես, եւ ես զայն ամենայն վճարեսցից ընդ քո եւ ընդ իմ. եւ եթէ բարութիւնս ինչ առնում վասն Կիւ-

րոսի սպաս հարկանելոյ կամ ի պատերազմէ իմիքէ, բերից առ քեզ զի եւս բազմաց իշխեսցես։ Միայն փարատեա յինէն զհոգս. զի պարապ առից յայսմ ամենայնէ, թողի ինձ թէ եւ ինձ եւ Ալիւրոսի բազում իւիք պիտանի լինիցիս։

Իբրեւ այս բանք այսպէս ճառէին, նա փառաւոր զանձն համարէր զի բազում ընչից իշխէր, եւ սա դարձեալ երանելի լեալ կարծէր, թէ ունիցի յանձանձիչ որ տայցէ նմա պարապել եւ վճարել որ ինչ հեշտական իցէ։ Նուէին փերրաւղայ բարք ընկերաւէրք, եւ ոչ մի ինչ նմա այնպէս քաղցր եւ հեշտ եւ շահաւոր թուէր, որպէս մարդկան ի սպասու կալ. զի քան զբնաւ իսկ զանասունս ազնուագոյն զմարդն համարէր եւ վայելուչ, զի տեսանէր թէ որք դըրուատ յումեքէ գտանիցեն, յօժարագոյնս զնոսա փոխարէն յարգեալ գովիցեն, եւ որք շնորհս ինչ գտանիցեն, փութայցեն ընդ այնր շնորհել, եւ թէ զորոց գիտիցեն բարւոք միտս ունել, ընդ նոցա բարեմիտս իցեն. եւ զորոց գիտիցեն թէ սիրեն զնոսա, չկարիցեն ատել զնոսա. գիտէր թէ հարց եւ մարց առաւել քան զամենայն գազանս կամիցին սպասաւորութիւն հարկանել, եւ յորժամ կենդանի իցեն եւ յորժամ վախճանիցին. իսկ այլ եւս անասունք դժգոհք քան զմարդիկ են։

տալն առէր ցնոսա եթէ կամիմ երթալ ի մեհեանս որ ընտրեցան դիցն, եւ զոհս ընդ նոսա մատուցանել։ Արդ եկայք, ասէ, ի դրունս, զարդարեալ գովլին պատմուճանօք յառաջ քան զծագել արեգական, եւ կարգեալ կայցէք առ իս որպէս պատուէր տայցէ ձեզ Փերաւլաս Պարսիկ։ Եւ յորժամ ես երթայցեմ, ասէ, զհետ գայցէք ի տեղւոջ յորում առացաւն ձեզ։ Ապա թէ ումեք ի ձէնջ թուիցի այլազգ եւս գեղեցիկ քան զայն լինել, յորժամ միւանգամ երթայցեմք, ասասցէ ինձ։ Զի որպէս զիարդ գեղեցիկ եւ վայելուչ թուիցի ձեզ, նոյնպէս պարտ է զբնաւ կարգել եւ յօրինել։

Իսկ իբրեւ տայր ազնուականացն զգեղեցիկ գեղեցիկ պատմուճանսն, հանէր եւ այլ եւս մարական պատմուճանս. քանզի բազում պատմուճան պատրաստեալ ունէր. ոչ ինչ անխնայեալ ոչ ի ծիրանի եւ ոչ ի շիկակարմիրն եւ ոչ յորդան կարմիր եւ ոչ ի ձորձն կերպասս։ Բաշխեալ ի նոցանէ միում միում ի զօրավարացն, հրաման տայր նոցա նոքօք զարդարել զիւրեանց բարեկամսն, որպէս ես, ասէ, զարդարեմ զձեզ։ Եւ ոմն ի մօտակայացն հարցանէր. Դու, ասէ, Ե՞րբ զարդարիցիս. եւ տայր պատասխանի. Ո՞չ այժմ,

ասէ, ձեզ ընդ զարդ եկեալ թուեցիմ. զի զարդարեմս զձեզ: Եթէ կարիցեմ, ասէ, ձեզ բարեկամացդ բարի առնել, զոր պատմուճան եւ ունիցիմ, նովին գեղեցիկ երեւիցիմ:

Նոքա երթեալ կոչէին զբարեկամս եւ զարդարէին պատմուճանօքն: Իսկ Կիւրոս քանզի գիտէր թէ Փերաւղաս որ ի ռամկէ անտի էր, հանճարեղ է եւ իմաստուն եւ ազնուական, եւ թէ չառնէր անփոյթ՝ առնել նմա շնորհս, որ երբեմն եւ վասն զիւրաքանչիւր ոք ըստ արժանաւորութեանն պատուելոյ խրատ տայր, զնա կոչեալ, խորհուրդ առնոյր ընդ նմա թէ զիա՞րդ լաւիմացացն վայելուչ ցուցանիցէ զչուն եւ թշնամեացն ահագին: Եւ իբրեւ զմտաւ ածին եւ իւրքն հաճոյ թուէին, հրաման տայր Փերաւղայ հոգալ, զի այնպէս լինիցի վաղիւ չուն, որպէս հաճոյ թուեցաւ: Եւ, ասէ, պատուէր ետու ամենեցուն՝ քեզ հնազանդ լինել վասն կարգի չուոյդ: Բայց զի յօժարագոյնս լուիցեն քեզ, յորժամ պատուէր տայցես, առ տար, ասէ, զպարեգօտսդ զայդոսիկ առաջնորդաց տիգաւորացն: Եւ զտառատոկս զայդոսիկ զհեծելոց՝ առաջնորդի հեծելոցն տուր, եւ առաջնորդաց կառաց զայլ պարեգօտս:

Եւ նա առեալ տանէր, իսկ առաջնորդքն իբրեւ տեսին ասեն. Մ՛եծ ես դու

փերաւլաս, քանզի եւ մեզ հրամայեա-
ցես զոր ինչ պարտ իցէ առնել։ Ոչ, ա-
սէ, փերաւլաս, ոչ միայն ոչ երբեք այլ
եւ բեռինս եւս կրիցեմ։ Այժմ բերեմ
երկուս տաւատոկս զմին քեզ եւ զմին
այլում. բայց դու զոր ի նոցանէ կամի-
ցիս, առ. ապա որ զձորձն առնայր, զնա-
խանձն մոռացեալ, խորհուրդ առնէր
ընդ նմա թէ զոր առնուցու. նա խրա-
տայր թէ որ ազնուագոյն իցէ եւ ա-
սէր. Եթէ ամբաստան լինիցիս զինէն,
եթէ յընտիր արարի քեզ, միւսան-
գամ յորժամ սպասաւոր լինիցիմ,
այլազգ սպասաւորիցեմ։ Փերաւլաս
տուեալ այնպէս, որպէս հրամանն ա-
ռեալ էր, անդէն հոգայր զչուայն, զի
ամենեւին գեղեցիկ եւ վայելուչ լինիցի։
Իբրեւ եկն օր վաղուին ամենայն ինչ
յարդարեալ կայր. յառաջ քան զծա-
գել տուընջեանն, կարգեալ տողեալ
կային աստի եւ անտի ճանապարհին,
որպէս եւ այժմ կան ընդ որ կայս
թագաւորին գնալոց իցէ. եւ ի ներքս
չէ մարթ ումեք մտանել ի չպա-
տուաւորացն։ Խարազանաւորք կային
որ հարկանէին եթէ ամբոխ ինչ ոք
կացուցանէր. բայց նախ չորեքհա-
զարք տիգաւորաց կային առաջին դրանցն
չորք չորք, եւ երկու հազարք աստի
եւ անտի դրացն. հասեալ կայ-
ին ամենայն այրուձին իջեալ յե-

ըիւարուց անտի հանեալ զձեռս ի զըրա-
տիցն, որպէս եւ ցայժմ հանեն յոր-
ժամ թագաւորն նայիցի։ Այլն յաջ-
մէ ճանապարհացն Պարսիկքն եւ այլ
եւս նիզակակիցք ի ձախմէ, այնպէս եւ
կառացն կէս յայսմ կողմանէ, եւ կէս
յայնմ։

Իբրեւ բացան դրունք արքունի ա-
պարանիցն, նախ երթային Արամազ-
դայ ցուլք գեղեցիկք չորք չորք. եւ ո-
րոց միանգամ յայլոց եւս դից մոգքն
պատուիրեցին։ Զի այսպէս համարին
Պարսիկք թէ պարտ է մանաւանդ վասն
դիցն զճարտարապետս արուեստիցն ի
գործ արկեալ վարել, քան վասն
այլոց ինչ իրաց։ Յետ զուարակացն
ձիք երթային պատարագք արեգական։
Յետ նոցա կառք սպիտակք ոսկովք
լծովք, պսակաւորք մեհենական Արա-
մազդայ։

Յետ այնորիկ կառք արեգական սպի-
տակ եւ նոյն պսակեալ որպէս զառա-
ջինն, յետ նորա այլ եւս երրորդ
կառք խաղային, եւ երիվարքն ծած-
կեալ յորդան կարմիր, եւ զհետ գային
արք որ հուր առաջի նորա ի վերայ
յաղթ կրականի տանէին։

Յետ նոցա ինքն իսկ գլխովին Կիւ-
րոս յայտնէր ի դրանցն անտի կառօք,
ունէր խոյր ի գլուխ ուղղորդ եւ պարե-
գօտ ծիրանի կէս սպիտակ, եւ այլում

չէր համարձակ կէս ապիտակ ագանել. եւ զգարձիւքն արկանել ընհեզեղէնս նարօտուք եւ ձորձ համակ ծիրանի. եւ ունէր ապարաւշ զխուրիւն եւ նորին համազգիք զնոյն նշանակ ունէին, եւ զդոյն ցայժմ ունին, եւ ձեռքն արտաքոյ քան զթեզանիսն էին, եւ զնայ առ նմին կառավար յաղթանդամ, այլ փոքր էր քան զնա կամ զի որդարեւ մեծ էր եւ կամ այլազգ' ինչ, բայց Կիւրոս կարի իսկ յաղթ երեւէր։ Եւ ամենեքին իբրեւ տեսանէին, երկիր պագանէին, կամ զի հրաման առեալ էր ոմանց սկիզբն առնել երկրպագութեանն կամ սքանչացեալք ընդ կազմութիւնն, եւ վասն մեծ եւ գեղեցիկ երեւելոյ Կիւրոսի։ Եւ յառաջն ոչ ոք ի Պարսից երկիր պագանէր Կիւրոսի։

Իբրեւ խաղային կառքն Կիւրոսի, երթային եւ չորեքհազար տիգաւորքն, եւ առ նոքօք զհետ գային երկու հազարքն աստի անտի կառացն. զհետ գային որ շուրջ զնովաւ իշխանքն էին երիվարօք, զարդարեալք նիզակօք իբրեւ զերեքհարիւր։ Եւ գային երիվարք որ սնեալ էին Կիւրոսի ոսկեսանձք ծածկեալք ի գաւազանաձեւ ձորձոյ իբրեւ զերկերիւր։ Եւ յետ նոցա երկու հազար տիգաւորք։ Յետ նոցա բեւր հեծեալք ամենայն ուրեք

հարեւր՝ հարեւր կարգեալ կային. եւ առաջնորդէր նոցա Կրիւսանտոս։ Յետ այնորիկ այլ եւս բեւր հեծեալք Պարսից նոյնպէս կարգեալք, եւ առաջնորդէր նոցա Արշամպէս եւ յետ նոցա այլ բիւրաւորք ըստ նմին օրինակի. եւ առաջնորդէր նոցա Դատամաս, եւ յետ նոցա այլք, եւ Գադատաս առաջնորդէր նոցա։ Յետ նոցա Մարք հեծեալք, յետ նոցա Հայք, յետոյ Վրկանացիք եւ յետ նոցա Կադուսիացիք եւ յետ նոցա Շակք. եւ յետ հեծելոցն կառք չորք չորք կարգեալք, եւ առաջնորդէր նոցա Արտաբատէս պարսիկ։

Եւ յերթալն նորա բազում մարդիկ զհետ անկեալ երթային արտաքոյ դրաւշուցն, եւ խնդրէին ամենեքին իրս ինչ ի Կիւրոսէ։ Նա առաքեալ առ նոսա զոմանս յիշխանաց անտի որք յերկոցունց կողմանց կառացն երիս երիս զհետ գային նորա վասն զրոյց իսկ տալոյ, հրաման տայր ասել ցնոսա, եթէ խնդրիցէ ոք ինչ ի նմանէ, պատմեսցէ միում ումեք յիշխանացն զոր ինչ ոք կամիցի, եւ նոքա, ասէ, ասասցեն ցիս։ Երթեալքն անդէն իսկ եւ իսկ առ հեծեալսն գային, եւ խորհուրդ առնոյին թէ առ ո՞ երթիցէ իւրաքանչիւր ոք ի նոցանէ. Իսկ Կիւրոս ի բարեկամաց. անտի զորս միանգամ կամէր առաւել պաշտօն առնուլ ի

մարդկանէ, զնոսա յղեալ, զոմն առ ինքն կոչէր զիւրաքանչիւր մի ըստ միոջէ, խօսէր ընդ նոսա այսպէս. Եթէ ոք աստացէ ինչ ձեզ, յայնցանէ որ զհետ մեր գան, որ ոչինչ խօսել թուիցի, մի ունկն դնիցէք նմա. իսկ որ իրաւացիս խնդրիցէ պատմեցէք ինձ զի հասարակ խորհուրդ ի մէջ առեալ վճարեսցուք։

Նմա յորժամ կոչեցեալ լինէին, ունկնդիր եղեալ տագնապաւ հասանէին մեծացուցեալ զիշխանութիւնն Կիւրոսի, եւ յայտ արարեալ եթէ միտադրյնս հնազանդ լինիցին։ Գաղիփառնէս ոմն անուն էր խիստ բարոյիւք, համարէր եթէ ոչ վաղվաղակի հնազանդիցի, ազատ թուիցի։ Զգացեալ զայն Կիւրոսի մինչ չեւ մատուցեալ նորա եւ խօսեցեալ ընդ նմա, յղեալ զոմն յիշխանաց անտի, հրամայէր ասել ցնա, եթէ չես ինչ այսուհետեւ պիտոյ, եւ այնուհետեւ ոչ կոչէր։ Իսկ որ յետոյն քան զնա կոչեցաւ յառաջեաց վաղագոյն քան զնա. եւ Կիւրոս ետ նմա պարգեւս երիվար մի յեկելոցն զհետ, եւ հրամայեաց միում ումեք յիշխանացն տանել զնա յո եւ կամիցի։ Եւ որոց տեսինն մեծարոյ իմն նոյն թուեցաւ. եւ առաւել բազումք ի մարդկանէ պաշտէին զնա։

Իբրեւ գային հասանէին ի մեհեանն, զոհս Արամազդայ մատուցանէին եւ

զցուլսն առնէին ողջակէզս, ապա եւ արեգական երիւարս ողջակէզս առնէին. յետ այնորիկ եւ հողոյ զենեալ, որպէս մոգուցն հրամանն տուեալ էր, առնէին, ապա դիւցազանց որ զԱսորւոց աշխարհն ունէին: Եւ յետ այնր ամենայնի, քանզի գեղեցիկ էր վայրն, սկսան ի դրանց անտի տագնապաւ զերիւարսն արշաւեցուցանել: Արդ ինքն ընդ Պարսից ընթացեալ յաղթէր. քանզի յաճախագոյն ի ձիոցն հրահանգս կրթեալ էր: Իսկ ի Մարաց անտի յաղթէր Արտաբազոս, քանզի երիւար տուեալ էր նմա Կիւրոս. եւ յԱսորեաց՝ վերակացուն. եւ ի Հայոց՝ Տիգրանէս. ի Վրկանացւոց՝ որդի հազարապետին: Իսկ ի Շակաց այր մի զօրական եթող երիւարաւն զայլ երիւարսն մօտ ի կէս արշաւանին:

Յայնմ վայրի եհարց, ասեն, Կիւրոս ցպատանեակն, եթէ փոխանակիցէ՞ զթագաւորութիւն ընդ երիւարին. եւ նորա պատասխանի տուեալ թէ Չառնուի յանձն զթագաւորութիւնն, բայց կամէի շնորհս յառնէ բարւոյ գտանել: Եւ Կիւրոս ասէ. Եւ ես կամիմ ցուցանել քեզ զտեղին, յոր եթէ արկանիցես ինչ խառն ի խուռն, ոչ վրիպիցիս յառնէ բարւոյ: Ասէ շակացին. Անաւ իսկ ցոյց ինձ, զի ամբարձեալ արկանիցեմ զկոշտն: Կիւրոս ցուցանէր նմա,

ուր էին բազմամբոխ բարեկամացն, եւ նա զկոշտն ընկէց եւ երթեալ պատահէր փերաւղայ, զի պատմէր ինչ յայնժամ փերաւղաս հրամայեալ ի Կիւրոսէ։ Եւ իբրեւ հարաւ եւ ոչ դարձաւ յետս, այլ երթայր յոր հրամանն առեալ էր երթալոյ. ի վեր հայեցեալ շականցեայն հարցանէր, թէ ո՞ւմ դիպեցաւ։ Ումե՞ք, ասէ, ի մօտակացացն։ Ասէ պատանեակն. բայց ո՞չ ի հեռացելոց անտի։ Ասէ Կիւրոս, նմա պատահեցաւ, որ առ կառօքն արշաւեցուցանէր զերիվարն։ Իսկ զի՞արդ, ասէ, ոչ դարձաւ յետս։ Եւ Կիւրոս ասէ, քանզի շամշեալ ոմն է, որպէս երեւի իսկ։

Լուեալ պատանեկին, երթայր տեսանել թէ ո՛ էր, եւ գտանէ զփերաւղաս որոյ փոշւով եւ արեամբ եւ ապաժուժաւ լի մօրուքն էին։ Քանզի հատեալ հոսէր յորդնգացն արիւնն եւ իբրեւ մերձ լինէր, հարցանէր զնա թէ հատա՞ւ, եւ նա ետ պատասխանի, թէ Ո՞րպէս տեսանես։ Տամ քեզ, ասէ, զերիվարս զայս։ Եւ նա հարցանէր թէ ընդ է՞ր իրիք. ապա պատմէր շակացին զիրսն, եւ գլուխ իսկ ամենայնի ասէր, թուի ինձ թէ ոչ վրիպեցայ յառնէ բարւոյ։ Եւ փերաւղաս ասէ. եթէ ցածուն միտս ունէիր ապա մեծամեծս քան զայս տայիր։ Բայց այժմ եւ ես յանձն անում։ Եւ գիցն, ասէ, յաղօթս կամ,

որք ետուն ինձ հարկանել ի քէն, տայցեն ինձ, չատրջանալ քեզ վասն այսր պարգեւիդ. եւ այժմ երթ, ասէ, երիվարաւ իմով, եւ փաղփաղակի եկից առ քեզ. Նորքա այնպէս ի միմեանց մեկնեցան:

Իսկ ի կաղուսիացւոց Սաթոնիկէս յաղթեաց: Արձակէր եւ կառս մի ըստ միոջէ, եւ որոց յաղթիցեն՝ տայր զուարակս, զի զենեալ կերիցեն, եւ ըմպելիս: Արդ ինքն առնոյր զզուարակն յաղթութեան պարգեւ, եւ զիւր մասն ըմպելեացն տայր փերաւղայ, քանզի հաճոյ թուեցաւ նմա կարգ չուոյն յարքունի ապարանից անտի: Որպէս յայնժամ առ Կիւրոսիւ կարգեցաւ չուն, նոյնպէս է եւ այժմ չու թագաւորին, բայց նուէրք ոչ գոն, յորժամ ոչ զոհիցէ: Իբրեւ այն ամենայն յանգ ելանէր, դարձին հասանէին միւսանգամ ի քաղաքն, եւ որոց ապարանք տուեալ էին, ի տունս մեկնէին, եւ որոց չէր տուեալ ի բանակն:

Կոչեցեալ փերաւղայ զՍակացին որ զերիվարն իսկ ետ նմա, տապնջական լինէր, եւ բազում ինչ տայր առատութեամբ, եւ յորժամ ընթրէինն, զըմպելիսն զոր առ ի Կիւրոսէ, ընդ իւր եւ մատուցանէր նմա: Սակացւոյն տեսեալ զփահղյան գեղեցիկս եւ բազում գեղեցիկ կազմած եւ դերդաստանս բազումս.

Ասա դու ցիս, ասէ, ո՛ Փերաւղա, միթէ եւ ի քոյ աշխարհին ի մեծատանց ուք էիր. եւ Փերաւղաս ասէ. Յորո՞ց մեծատանց, յայտ է թէ յայնցանէ որ ի ձեռացն արուեստէ կեան: Զի զիս հայրն իմ խրատեաց խրատ մանկաւոյ, ինքնին զոյզն ինչ գործել եւ սնուցանել: Եւ յորժամ մանկիկն եղէ, քանզի չկարէր սնուցանել զդատարկս, տարաւ զիս յագարակ եւ պատուէր ետ գործել: Անդ ես կերակրէի զնա մինչ եւ կենդանի էր. եւ փորէի եւ սերմանէի զփոքրիկ ագարակիկն, բայց չէր ագարակն յոռի, այլ քան զամենայն անդս եւ ագարակս արդար. զի զսերմն զոր ընդունէր, բարւոք եւ արդարութեամբ տայր. բայց տոկոսիս ոչ ինչ այնպէս բազում. երբեմն առ ազնուականութեանն երկպատիկ տայր զոր առնոյրն: Արդ ես յաշխարհին այսպիսի կեանս կէի. իսկ այժմ զայս ամենայն զոր տեսանես, Կիւրոս ետ ինձ:

Ասէ Սակացին. Երանելի ես դու այլովք ամենեքումբք, եւ այնու զի յաղքատութենէ մեծատուն եղեր: Զի թուի ինձ թէ վասն այնորիկ հեշտականագոյն իցէ քեզ մեծանալ, զի յորժամ աղքատն էիր ընչիւք, մեծացար: Եւ Փերաւղաս ասէ. Մի՛թէ այնպէս ինչ կարծիցես, եթէ այնչափ հեշտ կեանս կեցեմ, որչափ աւելի արարս ստա-

նայցեմ. չգիտես, ասէ, եթէ ուտեմ եւ ըմպեմ եւ ննջեմ, ոչ եթէ այժմ քաղցրագոյն քան երբեմն յորժամ աղքատն էի եւ տառապեալ: Նաեւ քանզի ամենայն այդ յաճախեաց, այնչափ ինչ շահիմ, զի պարտ իցէ առաւելագոյն պահ ունել, եւ այլոց աւելի բաշխել տալ, եւ զբազմաց հոգ ի միտ ունել, եւ զբազում իւիք զբօսնուլ: Վասնզի բազում ծառայք հաց խնդրեն յինէն, եւ յոլովք զինի, եւ բազմագոյնք ձորձ, եւ ոմանք բժշկաց կարօտանան: Նաեւ գայ բերէ ումն կամ զգազանաբեկան ի խաշանցն, կամ յանդուոյ զգարահաս անկեալն ի վախէ կամ թէ ախտ ցաւոց յանասունսն անկանիցի: Մինչ զի թըւի ինձ թէ այժմ վասն բազումն ունելոյ առաւել տրտմիցիմ, քան եթէ յառաջին վասն սակաւիկ ինչ ունելոյ:

Ասէ շակացին. Այլ յորժամ աղջին իցեն տեսեալ զբազումսն, բազմապատիկ քան զիս ուրախ առնիցեն: Փեբաւղոս ասէ. Ոչ այնպէս հեշտական իցէ զինչսն ունել, որպէս տրտմութեան իցէ յինչիցն անկանել. ի միտ առցես եթէ ճշմարիտ խօսիմ, զի ի մեծատանց ոչ ոք տագնապի առ հեշտականութեանն աքնել. իսկ յայնցանէ որ անկանիցին յինչքէ զոք տեսանիցես եթէ կարիցէ ի քուն լինել ի տրտմութենէ անտի: Ասէ շակացին. Եւ ոչ յայն-

ցանէ որ տանուն ինչ տեսանիցես զղջ առ խնդութեան ննջեալ։ Զայդ, ասէ, ճշմարտութեամբ ասես, զի եթէ ունելն ինչ այնպէս, որպէս զտանուն քաղցր էր, յոյժ իսկ ընդհատ յաղքատաց էին փառաւորութեամբ մեծատունքն. եւ հարկ է, ասէ, զի որ բազումս ունիցի, շատ ծախիցէ եւ ի դիս եւ ի բարեկամս եւ ի հիւրս։ Արդ որ ուժգին ոք ուրախ ընդ ինչս լինիցի, գիտասջիր թէ եւ ի ծախելն յոյժ տրտմիցի

Ասէ Սակաս. Ես չեմ յայնցանէ, այլ եւ զայն փառաւորութիւն համարիմ բազում ինչ ունել եւ բազում ինչ ծախել։ Ասէ Փերաւղաս. Ո՞չ ապաքէն վաղվաղակի երեւելի եղեր եւ զիս փառաւոր արարեր. զայս ամենայն, ասէ, առ եւ ստացիր, եւ արկ որպէս զիարդ կամիս ի կիր։ Եւ զիս իբրեւ զհիւր կերակրեա եւս նուազագոյն քան զհիւր Զի շատ իցէ ինձ թէ զոր ինչ դու ունիցիս, նոցին հաղորդ իցեմ։ Ասէ Սակաս. Խաղ ուրեմն առնես։ Փերաւղոյ երդմնի լեալ ասէ. թէ Ոչ ընդ խաղ խօսիմ. եւ այլ եւս ինչ խնդրեցից քեզ ի Կիւրոսէ, մի կալ ի պաշտամանէ ի դրունս Կիւրոսի եւ ոչ երթալ ի պատերազմի։ Այլ դու մեծատուն ի տան կայցես, եւ ես զայն ամենայն վճարեցից ընդ քո եւ ընդ իմ. եւ եթէ բարութիւնս ինչ առնում վասն Կիւ-

բոտի ապա հարկանելոյ կամ ի պատերազմէ իմիքէ, բերից առ քեզ զի եւս բազմաց իշխեսցես: Մ՚իայն փարատեա յինէն զհոգս. զի պարապ առից յայսմ ամենայնէ, թուի ինձ թէ եւ ինձ եւ Կիւրոսի բազում իւիք պիտանի լինիցիս:

Իբրեւ այս բանք այսպէս ճառէին, Նա փառաւոր զանձն համարէր զի բազում ընչից իշխէր, եւ սա դարձեալ երանելի լեալ կարծէր, թէ ունիցի յանձանձիչ որ տայցէ նմա պարապել եւ վճարել որ ինչ հեշտական իցէ: Եւ էին Փերաւղայ բարք ընկերասէրք, եւ ոչ մի ինչ նմա այնպէս քաղցր եւ հեշտ եւ շահաւոր թուէր, որպէս մարդկան ի սպասու կալ. զի քան զբնաւ իսկ զանասունս ազնուագոյն զմարդն համարէր եւ վայելուչ, զի տեսանէր թէ որք դըրուատ յումեքէ գտանիցեն, յօժարագոյնս զնոսա փոխարէն յարգեալ գովիցեն, եւ որք շնորհս ինչ գտանիցեն, փութայցեն ընդ այնր շնորհել, եւ թէ զորոց գիտիցեն բարւոք միտս ունել, ընդ նոցա բարեմիտս իցեն. եւ զորոց գիտիցեն թէ սիրեն զնոսա, չկարիցեն ատել զնոսա. գիտէր թէ հարց եւ մարց առաւել քան զամենայն զազանս կամիցին սպասաւորութիւն հարկանել, եւ յորժամ կենդանի իցեն եւ յորժամ վախճանիցին. իսկ այլ եւս անասունք գժգոհք քան զմարդիկ են:

Վասն այնորիկ առաւելագոյն ուրախ լինէր Փերաւղաս, զի համարձակ իցէ նմա զերծեալ ի հոգոց այլոց արտաքոցն, զբարեկամօքն գալ: Ուրախ լինէր եւ Շակաս, զի յորժամ բազում ինչ ունէր, բազում ինչ արկանելոց էր ի կիր: Սիրէր Շակաս զՓերաւղաս, զի ցանգ բերէր ինչ. եւ նա զՇակաս, զի կամեցաւ զամենայն առնուլ, եւ մինչ զբազմաց հոգացեալ ոչ ինչ անպարապութիւն նմա մատուցանէր: Եւ ողջա ըստ այնմ օրինակի կային:

## ԳԼՈՒԽ Դ

ԻԲՐԵՒ զզոհսն մատոյց Կիւրոս, առնէր հացկերոյթ յաղթութեանն, կոչէր ի բարեկամաց անտի որ առաւել կամէին ընդ նորա մեծանալ, եւ մտադիւրութեամբ մեծարանս գնէին: Կոչէր ընդ նոսա եւ զԱրտաւազ մար եւ զՏիգրանէս հայ եւ զՎրկանացի հազարապետն եւ զԳոբրիաս: Իսկ Գադատաս իշխան էր իշխանաց նորա, եւ որպէս նոյն յօրինեալ էր, կարգեալ կայր ի ներքս ամենայն հացն: Եւ մինչ դեռ ուտէին ընդ նմա ոմանք, Գադատաս ոչ բազմէր, այլ հոգայր. բայց յորժամ չէին անդ նոքա, ուտէր ընդ նմա, քանզի ուրախ լինէր յորժամ կայրն ընդ նմա

Նա ընդ այնր մեծամեծար մեծարէր ի Պիւռոսէ, եւ վասն Պիւռոսի եւ յայլոց եւս:

Իբրեւ եկին կոչնականքն յընթրիսն, ոչ եթէ ուր դէպ լինէր բազմեցուցանէր զնոսա. այլ զոր ոք առաւելն իմն պատուէր ի ծախմէ, զի այն դիւրին իմն առնենգել է քան զայլն. եւ զերկրորդն յաջմէ, եւ զերրորդն դարձեալ ընդ ահեկէ, եւ զչորրորդն յաջմէ, եւ եթէ բազումք եւս իցեն, զնոյն ձեւ օրինակի կարգէր: Նաեւ ի դէպ իսկ թուէր նմա յայտ առնել, թէ որպէս զիւրաքանչիւր ոք ի նոցանէ պատուիցէ: Զի ուր համարիցին մարդիկ թէ որ ազնուագոյնն իցէ ոչ յարգիցի եւ ոչ հատուցումն առնուցու. անդ ոչ ինչ ընդ հակառակս եւ լեալ ի կռիւ ինչ ընդ միմեանս կայցեն: Իսկ ուր առաւելեալ ազնուագոյն երեւիցի, անդէն ամենեցուն իսկ յօժարագոյնս զուպարանք կայցեն:

Միւռոս այսպէս ճշգրիտ ցուցանէր զհարստացեալսն առ իւր իսկ եւ իսկ ի բարձիցն սկիզբն տարարեալ եւ յառընթեր կալոյ: Բայց ոչ անմահս զկարգեալ բարձն հաստատէր, այլ օրէնս կարգէր լաւութեանցն գործովք զմիմեամբք սոսխել ի պատուական աթոռն. եւ եթէ ի վատութիւն ոք հատանիցի, յանարգութիւն իջանել: Նա զյառաջադէմն ի բարձի, որոյ ոչ առաւել լաւ-

ութիւնք էին առնօթ համարէր առ իւր երեւել։ Այս ամենայն որ առ Կիւրոսիւ եղեւ, լսեմք թէ տակաւին եւ ցայժմ բաւիցէ։

Նա իբրեւ բազմէին, ոչ զարմանալի ինչ թուէր Գոբրիայ յաճախութիւն ամենայնի առ առն միում որ բազմացիչխէր. այլ այն թէ Կիւրոս որ այնպէս մեծամեծս վճարեաց, եթէ քաղցր ինչ առնոյր, ոչ ինքն միայն համօրէն սպառէր, այլ զմօտակայսն աղաչէր նմին հաղորդ լինել, բազում անգամ տեսանէր զի եւ բացական բարեկամացն զայն որով ուրախն լեալ էր, առաքէր։ Որպէս զի յորժամ ուտէինն եւ ամենայն ինչ առատ էր, եւ առաքէր Կիւրոս ի սեղանոյ անտի, ասէ Գոբրիաս. Նա ով Կիւրոս, յառաջագոյն համարէի թէ այնու առաւել ընտիր քան զամենայն մարդիկ իցես զի գոռ պատերազմօղ իցես։ Բայց այժմ իմ ի դիմն երդուեալ է, թէ թուի ինձ բայ մարդասիրութեամբ քան զօրավարութեամբ ազնուագոյն իցես։ Ասէ Կիւրոս. Նա հեշտական է մարդասիրութեան գործս ցուցանել քան զզօրավարութեան։ Ասէ Գոբրիաս. Զիա՞րդ։ Զի նոքօք, ասէ, զմարդիկ հասանէ չարչարել, եւ սոքօք բարիս մարդկան առնել։

Ապա իբրեւ ընդ գինիս մտին, հարցանէր Վշտասպաս զԿիւրոս. Միթէ

ծանրացեալ նեղիցի՞ս ընդ իս, ասէ, եթէ հարցից զքեզ զոր կամիմն գիտել ի քէն։ Սմին հակառակ, ասէ, ծանրանամ եթէ ազդ լինիցի ինչ թէ լուռ լինիս հարցանել զոր կամիցիս ինչ։ Ասէ դու եկ առ ցիս, ասէ, ե՞րբ կոչեցեր դու զիս եւ ոչ եկի։ Գովեմ զքեզ։ Ի հնազանդելն դանդաղագո՞յն հնազանդեցայ։ Եւ ոչ այնպէս։ Եւ զհրամայեալ ինչ ո՞չ վճարեցի։ Չեմ, ասէ, մեղադիր։ Եւ զոր վճարէի, է՞ր ինչ երբեք ուրեք զոր իմ չիցէ ի գլուխ հանեալ փութով յօժարութեամբ եւ քո առաքեալ իցէ զիս։ Ասէ Կիւրոս. զայդ ամենեւին իսկ ոչ։ Իսկ ընդէ՞ր, ասէ, ով Կիւրէ, Քրիստանտաս շրջեաց զմիտս քո, զի ի պատուական աթոռ ի վերոյ քան զիս բազմեցի։ Ասէ Կիւրոս. Եթէ ասիցե՞մ։ Ասէ Կշտասպաս. Ասա։ Բայց դու, ասէ, նեղիցի՞ս յորժամ զճշմարիտն լսիցես։ Ուրախ լինիմ, ասէ, եթէ տեսանիցեմ թէ ոչ զլացեալ զրկիմ։

Այս Քրիստանտաս, ասէ, նախ ոչ կոչոյ անսայր բաւէր, այլ մինչ չեւ իսկ կոչեցեալ գայր հասանէր մերոյն վասն։ Եւ յետ այնորիկ ոչ միայն զհրամայեալն, այլ եւ զոր ինչ ինքն ի միտ անոյր թէ բարւոք է առնել մեզ, զայն յանձնէ վճարէր։ Եւ յորժամ ասել ինչ ցնիզակակիցս հասանէր, զոր ինչ

համարէրն եթէ վայելիցէ ինձ ասել, թելադիր լինէր ինձ. եւ եթէ ազդ լինէր նմա զինէն թէ կամիցիմ եթէ նիզակակիցք գիտասցեն եւ ինքնին ամաչիցեմ զանձնէ ասել, այնպէս զնոցունց խօսէր, որպէս թէ զիւր իսկ խորհուրդս յայտ կամիցի առնել: Զինչ արդեւ իցէ ի դոսա թէ քան զիս ազնուագոյն իցէ նա ինձ. եւ զանձնէ, ասէ, ցանդ թէ ամենայն որ ինչ դոյ, այն շատ եւ բաւական է. բայց հանապազ զմտաւ ածէ եթէ զինչ շահ յաւելցի ինձ: Ընդ բարութիւնս իմ եւս քաջ քան զիս յաւրանայ եւ ուրախ առնի: Իստասպաս ասէ. Երդնում յՀերա, ով Կիւրոս, զի ուրախ լինիմ զի հարցի զայդ քեզ: Ասէ Կիւրոս. Զմէ՞: Զի եւ ես ջանացայց զդոյն առնել: Մ՛իուան եւեթ, ասէ, տգէտ եմ, թէ զի՞րդ յայտ երեւեցիմ եթէ խնդամ ընդ բարութիւնս քո. միթէ ծափ զծափի հականե՞լ կամ ծիծաղե՞լ պարտ իցէ, կամ զի՞նչ գործել: Արտաւազ ասէ. Կաքաւել պարտ է ըստ Պարսից օրինակին: Յետ այնորիկ ծիծաղեցան:

Իբրեւ խրախութիւնն յերկարէր, հարցանէր Կիւրոս ցԳոբրիաս. Աղէ եւ ասա դու ցիս, ասէ, ով Գոբրիա, այժմիկ յօժարիցես առ մեում ի սոցանէ զդուստրդ, քան յորժամ զառաջինն եկիր առ մեզ: Ասէ Գոբրիաս. Միթէ

եւ ես առնիցե՞մ զճշմարիտն ։ Ասէ Կիւրոս ․ Ասա քանզի չիք ինչ հարցուած որ տուութեան կարօտանայցէ ։ Այսուհետեւ, ասէ, գիտասջիր եթէ առաւել եւս յօժարութեամբ կամիմ ։ Ասէ Կիւրոս ․ Թէ կարիցես ասել եթէ ընդէ՞ր ։ Այո՛ ասէ ։ Ասա ։ Զի յայնժամ, ասէ, տեսանէի զնոսա զի աշխատութեանց եւ վշտաց յօժարագոյնս տանէին, եւ այժմիկ տեսանեմ զի ցածուն միտք զբարութիւնն կրեն ։ Թուի ինձ, ով Կիւրոս եթէ եւս իմն դժուարին է գտանել այր մի որ առաքինի ի բարութիւնն իցէ, քան եթէ ի վիշտսն կրել ։ Զի նոքա զբաղցումն ի խայտառակսն ածիցեն, եւ սոքա զամենեսին ի զգաստութիւն ։

Եւ Կիւրոս ասէ ․ Լուա՞ր Վշտասպա զԳոբրիայ բանսն ։ Այո՛, ասէ, եւ եթէ բազում ինչ այսպիսիս յաճախիցէ խօսել, նոքիմբք մանաւանդ զիս ընկալուչ դստերն առնուցու քան եթէ բազում ըմպելիս ցուցանիցէ ։ Ասէ Գովբրիաս ․ Են իմ բազում բանք այսպիսի ի մատենի գրեալ, զայն ամենայն տաց քեզ թէ զդուստրն իմ կին առնիցես ․ Եւ զնըւագսն, ասէ, քանզի չուսնիս յանձին, ոչ գիտեմ թէ Քրիսանթայ տաց, քանզի եւ զբարձդ ի քէն յափշտակեաց ։ Կիւրոս ասէ ․ Վշտասպա եւ այլք ամենեքին որ աստ կայք, դուք թէ ինձ ազդ-

առնիցէք յորժամ ոք ի ձէնջ կին մատ-
բերիցէ առնել, ի միտ առեալ գիտա-
ցէ որպէս եւ ես ձեզ գործակից լինի-
ցիմ։

Եւ Գոբրիաս ասէ. եթէ զդուստրն
ոք կամիցի տալ, ցո՞ ոք պարտ իցէ ասել։
Ասէ Կիւրոս. Ցիս. զի բնաւ այնմ ա-
րուեստի, ասէ, անհնարին խելամուտ
եմ։ Ասէ Քրիւսանտաս. Որո՞ւմ ա-
րուեստի։ Գիտել թէ որ հարսանիք
իւրաքանչիւր ումեք պատշաճ իցեն։
Քրիւսանտաս ասէ. Աղէ ասա, որպի-
սի՞ ինչ ոք կին ինձ պատշաճ համարիցիս։
Նախ, ասէ, զփոքր, քանզի եւ դու
իսկ փոքր ես, եւ եթէ յաղթանդամ կին
առնիցես եթէ երբեք յորժամ կայցէ
ուղղորդ չկարիցես հասանել։

Յետ այնորիկ մատուցանէր Տիգրա-
նայ զարդս եւ պատուիրէր տալ կնոջն,
զի քաջութեամբ ընդ առնն եկն ի պա-
տերազմ։ Իսկ Արտաւազդայ բաժակ ոս-
կի տայր, եւ վրկանացւոյն երիվար եւ
այլ եւս ինչ բազում եւ գեղեցիկ. եւ
քեզ ասէ, Գոբրիա, տաց այր մի դս-
տերն քում։ Ասէ Վշտասպաս. զիս
տայցես, զի եւ զմատեանսն առից։
Ասէ Կիւրոս զո՞ն քո ինչք արժանի
աղջկանն։ Են իմ, ասէ, բազում գան-
ձուց մթերք։ Ասէ Կիւրոս. Իսկ ո՞ւր
իցէ քո այն գոյացութիւնն։ Ընդ, ա-
սէ, ուր եւ դու նստիս եւ բարեկամ իմ

եռ: Ասէ Գորգիաս. Տաս է ինձ. եւ փաղփաղակն ձգեալ զայն ձեռն, առեր ասէ, Կիւրոս, զի ես առնում յանձն:

Կիւրոսի առեալ զայն ձեռն Կշտասպայ տայր ցԳորգիաս. եւ նա ընկալաւ: Ապա բազում գեղեցիկ գեղեցիկ պարգեւս տայր Կշտասպայ, զի առաքիցէ օրիորդին, եւ համբուրեաց զՔրիւսանտաս ի մատչելն: Եւ Արտաբազ ասէ. Ո՞չ ի միոջէ ոսկւոյ ինձ զբաժակն ետուր Կիւրոս, եւ Քրիւսանտայ զպարգեւն: Եւ քեզ ասէ, տաց: Նա հարցանէր թէ երբ: Յերեսներորդում, ասէ, ամի. եւ դու այսպէս իսկ հաստատեալ կայցես թէ ես ցայնժամ կացից մեռցից եւ ոչ մեռայց: Եւ այնպէս արձակեցաւ յայնժամ ժողովն: Նոքա իբրեւ յոտն կացին, յարեաւ եւ Կիւրոս եւ երթայր յուղարկաւոր մինչեւ ցդուրսն:

Ի վաղիւ անդր զնիզակակիցսն որք կամէինն, ի տունս առաքէր, բայց միայն որք առ նմա իսկ կամէին բնակել: Եւ տայր նոցա երկիր եւ ապարանս, եւ ցայժմ նոցին մնացելոց զաւակն ունի. եւ մեծ մասն ի նոցանէ ի Մարաց եւ ի Վրկանացւոց է: Իսկ հեռացելոցն բազում ինչ պարգեւէր, եւ զիշխանսն եւ զզօրականս առանց տրտնջելոյ արձակէր յիւրմէ: Ապա տայր եւ զօրացն որ զիւրեւ էին ինչս, որչափ ի Սարդիացւոցն առ: Իսկ բիւրապետացն եւ իւրոց սպա-

տաւորացն տայր զընտիր ընտիր իրաց ըստ իւրաքանչիւր արժանաւորութեանըն, եւ զայլն ամենայն բաշխէր. եւ տուեալ զբաժինսն իւրաքանչիւր ամեք ի բիւրապետացն եւ յանձանձիչս կացուցանէր զնոսա բաժանել որպէս եւ նայն բաժանեաց նոցա: Նաեւ զայլ եւս զանձան ըստ իւրաքանչիւր արժանի տային. ապարապետան փորձեալ զիշխանսն որ ընդ իւրեւ իցեն, եւ վեցապետքն քննեալ զիւրեանց զօրականսն: Նաեւ այնպէս ամենեքին առնոյին զադար մասնն:

Իբրեւ զատուցան տաքն, կէսք այսպիսի ինչ զԿիւրոսէ խօսէին, թէ ինքն բազում ինչ ունի, զի իւրաքանչիւր ամեք ի մէնջ այսչափ ինչ տայ. եւ կէսք ի նոցանէ ասէին. Զի՞նչ ինչ բազում ունիցի. ո՛չ այն բարք են Կիւրոսի բնաւ ինչս իսկ ժողովել, այլ տալով մանաւանդ քան ստանալով ուրախ առնի: Իբրեւ բանքս ի Կիւրոս հասանէին, եւ կարծիքն որ զնմանէ կարծէին, զբարեկամսն ի մի՛ վայր գումարէր եւ զամենայն աւագսն, եւ խօսէր այսպիսի ինչ օրինակ:

Արք բարեկամք, տեսի մարդիկ, որ այսպէս կամէին կարծեցուցանել թէ առաւել ունիցին քան զոր ունիցինն, զի համարէին թէ այնպէս առաւել երեւիցին: Բայց ինձ թուի, ասէ, թէ

Նոքա յետս ընդդէմ իմն այնր զոր կամինն՝ ուշ եղեալ երթայցեն: Զի որ բազումն ունել կարծեցուցանեն, եւ ոչ արժանի ըստ գոյաւորութեանն օգուտ բարեկամացն գործիցեն, թուի ինձ թէ անաղաղաւարկ միտս ունիցին: Իցեն, ասէ, որք կամիցին թագուցանել թէ որչափ ինչ ունիցին, եւ նոքա չարաբարոյ եւ վնասիչ բարեկամացն թուիցին: Զի առա չդիտել ընչիցն բազում անգամ աղաչեցեալ ոչ խոստանան բարեկամք ընկերացն իւրեանց, այլ պատրեն: Նայց ինձ միամտութեան թուի, թէ զիւր զօրութիւն որ յայտ անիցէ, եւ ըստ նմին ի լաւութեան ճգունս յորդորիցի: Այսուհետեւ եւ ես, ասէ, ինչ զոր մարթիցի ուսանել յիմոց արարոց ասաւ, զայն ցուցից ձեզ, եւ զոր չիցէ հնար ուսանելոյ, պատմեցից:

Զայս ասէր, եւ բազում գեղեցիկ ստացուածս ցուցանէր, եւ զմթերսն զոր չէր դիւրին տեսանել պատմէր, եւ ի կատարած ասէր այսպէս. Արժան է զայս ամենայն, ոչ իմ ինչ մանաւանդ համարել քան եթէ ձեր: Վասնզի ես զայս ամենայն մթերեմ, իբր ոչ եթէ զի ես ինչ ծախիցեմ եւ ոչ զի ես մաշիցեմ, նա եւ կարիցեմ իսկ ոչ, այլ զի հանապազ յորժամ լաւութիւն ինչ որք ի ձէնջ վճարիցէ, տաց. եւ եթէ կարօտ որք ի ձէնջ իւիք իցէ, եկեսցէ առ իս

եւ առցէ որ ինչ պիտոյն իցէ ։ Զայսդոյն օրինակի բանքն ճառեցան ։

## ԳԼՈՒԽ Ե

ԻԲՐԵՒ եւս թէ քաջ կարգեցան հաստատեցան իրք Բաբելոնացւոց աշխարհին կամէր ի բաց գնալ. կազմէր պատրաստէր ի Պարսս երթալ, եւ այլոց հրաման տայր ։ Իբրեւ բաւական զամենայն զպէտսն պատրաստէր չու առնէր խաղայր գնայր ։ Բայց եւ զայս պատմեսցուք թէ զիարդ բազում ամբոխ էր եւ յօրինեալ կարգօք կազմէր եւ միւսանգամ զկահ եւ զկազմած ժողովէր, եւ փաղփաղակի զետեղէր ուր պիտոյ էր ։ Վրանօքն յորում վայրի բանակ հարկանէր թագաւորն, ամենեքին որ զթագաւորաւն էին, զիւրաքանչիւր խորանսն առեալ բանակէին եւ ամարայնի եւ ձմերայնի ։

Իսկ եւ իսկ այսպիսի ինչ օրէնս կարգէր Կիւրոս ընդ արեւելակողմն զվրանն կանգնել. առաջս կարգէր հրամանաւ նախ՝ թէ պարտ է սպասաւորաց արքունական խորանին ի բացեայ բնակել. յետ այնորիկ զաջակողմն յայտ առնէր, եւ ամճաբերացն զահեակն, երիվարաց զաջն, եւ այլոց գրաստուց զձախ. եւ զայլն եւս ամենայն կարգէր եւ յօրինէր, առ ի գիտելոյ իւրաքանչիւր զիւր տեղի եւ չափովք եւ վայրօք ։

Յորժամ զկահ եւ զկազմած ժողովիցեն, կարգեն դնեն իւրաքանչիւր զկազմածսն, որոց հրամայեալ իցէ ի կիր արկանել. եւ ոմանք ի գրաստուց վերայ դնեն: Որպէս զի ամենեքին որ զկահօն տանիցին, երթայցեն յոր կարգեալ իցեն, տանել. եւ ամենեքին դնիցեն յիւրեանց գրաստուց վերայ: Այնպէս նոյն մի ժամ բաւական է ամբառնալոյ միում խորանի եւ բազում վրանաց: Նաեւ վասն հանդերձանացն նոյնպէս է. եւ վասն պատրաստելոյ զամենայն պաշարս ի ժամու, որպէս հրաման տուեալ իցէ իւրաքանչիւր ումեք տանել. Նմին իրի իսկ նոյն ժամանակ շատ եւ բաւական է միում եւ բազմաց գործել: Նաեւ զոր օրինակ պաշարացն պաշտօնեայք իւրաքանչիւր զպատշաճ վայրսըն ունէին, նոյնպէս եւ վառելոցն ի բանակին պատեհ իւրաքանչիւր զինուց զարդուց տեղիքն էին, եւ թէ ո՛ր այն տեղիքն իցեն գիտէին, եւ ամենեքին առանց այսր անդր հարկանելոյ յանցնիւր տեղիս երթային:

Քանզի լաւ եւ բարւոք համարէր Կիւրոս զի եւ ի տան յարդարումն լինիցի. որպէս զի թէ ուրուք պիտոյ ինչ լինիցի, յայտ իցէ թէ ուր երթայցէ առնուլ: Բայց եւս առաւել գեղեցիկ համարէր զզօրականաց գնդի յօրինուածս, զի որչափ երագագոյնք իցեն ժամք

դիպօղք գործոյ պատերազմի, դոյնչափ եւս մեծ սխալ լինիցի յայնցանէ, որ ի նոսին յետնեալ գտանիցին։ Իսկ ի նոցանէ որ ի ժամու հասանիցեն, բազում գործս մեծամեծս ի նոցունց վճարեալ ի պատերազմունս տեսանէր. վասն այնորիկ առաւել փոյթ յանձին ունէր զյօրինուածոց։

Նա ինքն իսկ նախ զանձն կացուցանէր ի մէջ զօրականացն բանակի, որպէս թէ այն տեղի ամուր իցէ։ Նա առա զհաւատարիմսն որպէս սովորն էր, շուրջ զիւրեւ գումարէր։ Ընդ նոսա բակ առեալ կային այրուձին եւ կառավարքն, քանզի եւ նոցա ամուր տեղիս պիտոյ համարէր, զի ոչ մի զէն ունին որով կռուիցին յորժամ բանակիցեն, այլ բազում ժամանակ պիտոյ իցէ առ սպառազինութիւն, եթէ կամիցին ելանել վասն իրիք օգտի։ Ընդ աջմէ եւ ընդ ահեկէ նորա եւ հեծելազօրուն շերտաւորացն տեղի էր. եւ յառաջոյ աղեղնաւորաց, եւ յետուստ նորա հեծելոցն։

Զվառեալսն եւ զայնոսիկ որ զյաղթ սուսերան ունէին, ամենեւին շուրջանակի իբրեւ պարիսպ ունէր, զի եթէ պիտոյ ինչ լինիցի կազմել հեծելոցն, մնացականքն առաջի կայցեն եւ տայցեն զգուշութեամբ վառել։ Ննջէին ի գընդի անդ վառեալքն եւ շերտաւորքն եւ

աղեղնաւորքն, զի եւ ի գիշերաց, եթէ պէտք իմն լինիցին, իբրեւ զվառեալսն կազմ եւ պատրաստ իցեն յարձակելոցն ի դիմի հարկանել. Նոյնպէս եւ աղեղնաւորքն եւ շերտաւորքն անդր քան զվառեալսն, եւ եթէ մօտ գայցեն ոմանք, պատրաստութեամբ հարկանիցեն ի դիմի եւ նետալից առնիցեն։ Ունէին եւ գրաւչս ամենայն իշխանք ի վերայ վրանացն։

Իսկ սպասաւորքն, որպէս ի քաղաքս քաղաքս, որ զգաստադոյնքն իցեն դիտեն զբազմաց ապարանս, մանաւանդ զաւագացն. Նոյնպէս եւ ի բանակս տեղեաց զօրավարացն հմուտ էին Կիւրոսի սպասաւորքն, եւ զդրաւչս ճանաչէին թէ որ գրաւչ իցէ իւրաքանչիւր։ Որպէս զի եթէ կամէր զոք Կիւրոս, ոչ եթէ երթային խնդրէին, այլ ի կարճոյ ընթանային առ իւրաքանչիւր ոք ի նոյցանէ։ Եւ վասն ցեղընտիր ի միմեանց զատանելոյ, առաւել եւս յայտնի լինէր եթէ ոք բարւոք կարգեալ կայր, եւ եթէ ոչ ի գլուխ հանէր ոք զհրամանն։ Եւ յորժամ այսպէսն կայցեն, համարէր այսպէս թէ գիշերի ոք եւ կամ ցերեկ ի վերայ դիմիցէ, իբրեւ ի դարան ի զօրսն անկանիցին որ դիմիցենն։

Եւ ճակատու կարգս ոչ զայն եւեթ համարէր, եթէ ձգել երկայնել ոք դիւրաւ զճակատն կարիցէ կամ թանձրա-

ցուցանել կամ ի թեւէ ի ճակատու կացուցանել, կամ յերեւել թշնամեացն կամ յաջմէ կամ յահեկէ կամ յետուստ կողմանէ, դէպ ուղիղ պարգել. այլ եւ ցրուել եւս յորժամ պիտոյ իցէ, կարգս ճակատու համարէր, եւ կարգել կացուցանել զիւրաքանչիւր մասն, ուր առաւել օգուտ լինիցի, եւ փաղփաղել ուր ճեպելն պարտ իցէ. զայս ամենայն եւ զայսպիսի առն զօրավարի համարէր, եւ զայնմ ամենայնէ զմի օրինակ փոյթ յանձին ունէր. եւ ի ճանապարհան հանապազ ըստ դիպացն պատահելոց կարգեալ գնայր. իսկ ի բանակելն բազում անգամ դադարէր ըստ այնմ օրինակի որպէս կանխագոյն ճառեցաւ։

Եւ իբրեւ երթեալ հասանէին ի Մարաստան, խոտորեցաւ Կիւրոս առ Կիաքսարէս. իբրեւ ողջոյն ետուն միմեանց, նախ ասէ Կիւրոս ցԿիաքսարէս, եթէ ընտրեալ է նմա տուն ի Բաբելոնի եւ տաճար, զի յորժամ անդր երթայցես իբրեւ ի քո ապարանս իջանիցես. եւ ապա բազում պատարագս տայր նմա եւ յաճախ բարութիւնս. եւ Կիաքսարէս ընկալաւ զնոսա եւ առաքէր առ նա զդուստրն, որ պսակ ոսկի եւ ապարանջանս բերէր եւ քայլս եւ մարական պատմուճան գեղեցիկ անհնարին, եւ աղջիկն պսակէր զԿիւրոս։

Կիաքսարէս ասէ. Տամ եւ զդա քեզ կնութեան որ իմ դուստր է, եւ քո հայրն՝ կին արար զիմոյ հօրս դուստրն՝ յորմէ դու իսկ ծնար։ Եւ սա է, որում դու բազում անգամ, յորժամ մանուկն էիր եւ առ մեզ էիր, սնուցիչ լինէիր։ Եւ յորժամ հարցանէր ոք զնա թէ ո՞ւմ առն լինիցիս, ասէր թէ Կիւրոսի։ Տամ նմա թախանձս զընաւ իսկ զՄարաստան քանզի չիք իմ արու մանուկ ճշմարիտ։ Նա զայս ինչ խօսեցաւ, եւ Կիւրոս տայր անդէն պատասխանի, Զազգդ գովեմ եւ զաղջիկն եւ զպատարագսն, բայց կամիմ, ասէ, հօրս եւ մօրս կամօք յանձն առնուլ քեզ զայդ, այսպէս խօսեցաւ Կիւրոս, սակայն զամենայն ինչ պարգեւէր աղջկանն զոր ինչ հաճոյն համարէր Կիաքսարայ. զայս իբրեւ արար, յուղի անկեալ երթայր ի Պարսից աշխարհն։

Իբրեւ գայր հասանէր ի սահմանակողմն Պարսից աշխարհին, թող զզօրս իւր, եւ ինքն բարեկամօքն հանդերձ երթայր ի քաղաքն բերեալ նուէրս, մինչ զի բաւական իցեն ամենայն Պարսից յազել եւ ուտել։ Եւ բերէր պատարագս որ հօրն եւ մօրն վայել էին եւ այլոց բարեկամացն, եւ որ իշխանացն վայել էին եւ ծերոցն եւ ամենեցուն հանդիսապատուացն։ Տայր եւ ամենեցուն Պարսից զոր ինչ եւ այժմ տայցեն յորժամ

թագաւոր այր ի Պարսս հասանիցէ։ Նոյնպէս ժողովէր Կամբիւսէս զծերսն Պարսից եւ զիշխանս տանուտերաց. կոչէր եւ զԿիւրոս եւ խօսէր այսպիսի ինչ։

Արք պարսիկք եւ դու Կիւրէ, նմանագոյնս ընդ ձեզ երկոցունցդ մտադիւրութեամբ եմ. քանզի ձեզ թագաւորեմ, եւ դու Կիւրոս, որդեակ իմ ես։ Եւ արդ իրաւունս համարիմ թէ զոր երկոցունց կողմանց բարութիւնս կարծիցեմ զայն ի մէջ բերեալ ասիցեմ։ Զի յանցեալ ժամանակին, դուք զԿիւրոս մեծացուցէք, տուեալ զօրս, եւ նմին զօրավար զԿիւրոս կացուցեալ։ Եւ Կիւրոսի զօրավար լեալ զօրացն աստուածովքն, փառաւորս զձեզ ով Պարսիկք յամենայն մարդիկ արար, եւ պատուականս ի բնաւ յասիացւոց աշխարհին. եւ յերթելոցն ընդ նմա ի պատերազմ զքաջսն մեծացոյց, եւ բազմաց վարձս եւ կերակուր պատրաստեաց։ Եւ հաստատեաց կացոյց Պարսից այրուձի եւ արար հաղորդութիւն Պարսից ընդ դաշտաց։ Արդ եթէ այսուհետեւ այսպիսի միտս ունիցիք, բազում բարութեանց պատճառք միմեանց լինիցիք։ Ապա եթէ կամ դու Կիւրոս վերացեալ բարձրացեալ ի մօտաւոր դիպաց աստի, ձեռն արկանիցես եւ Պարսից իշխել ժլատութեամբ եւ այլոցն, կամ դուք ով քաղաքացիք նախանձ բերեալ ընդ զօրու-

թիւննորա, ջանայցէք քակել զնա յիշխանութենէ, դիտաջիք եթէ արդել եւ խափան միմեանց բազում բարութեանց լինիցիք։

Եւ արդ զի մի այն լինիցի, այլ բարութիւնքն, հաճոյ թուի ինձ, ասէ, ձեզ առհասարակ զոհս մատուցանել, եւ զդիւան վկայս կացուցեալ դաշինս ընդ միմեանս կռել, քեզ Կիւրոս, եթէ ուրուք զօր ի վերայ գումարեալ խաղայցէ ի մարտ պատերազմի ի վերայ Պարսից աշխարհիս կամ զօրէնսն քակել ջանայցէ, ամենայն զօրութեամբ օգնական լինել, եւ ձեզ Կիւրոսի որ ինչ հրամայիցէ։ Եւ մինչ դեռ ես կենդանի իցեմ, իմ լինիցի ի Պարսս թագաւորութիւնն։ Բայց յորժամ ես վախճանեցայց, յայտ է եթէ Կիւրոսի լինիցի, եթէ կեցցէ։ Եւ յորժամ նա ի Պարսս եկեալ հասանիցէ, սուրբ եղիջիք թէ նա փոխանակ ձեր զենցէ պատարագս, զոր ես այժմ յաղեմ։ Իսկ եթէ ի սոր աշխարհ. երթայցէ, բարւոք առնիցէք եթէ յազգէ անտի, որ ձեզ ազնուագոյն թուի, նա կատարեսցէ զձօնիս դիցն։

Իբրեւ զայս խօսեցաւ Կամբիւսէս, հաճոյ թուեցաւ Կիւրոսի եւ աւագացն Պարսից. ուխտս հաստատէին դաշինս կռէին եւ զդիւան վկայս կոչէին. եւ ցայժմ զնոյն կատարեն առ միմեանս Պարսիկք

եւ թագաւորն։ Իբրեւ այս ամենայն վճարէր, ի բաց գնայր Կիւրոս. եւ ի գնալն իբրեւ եհաս ի Մարս, որպէս հաճոյ թուեցաւ հօրն եւ մօրն, կին առաւ զդուստրն Կիաքսարայ։ Զորմէ եւ այժմ համբաւ է թէ ամենեւին գեղեցիկ էր. բայց ոմանք ի պատմագրաց ասեն թէ զմօրն քոյր կին արար, այլ բնաւ ի պառաւութեան լեալ էր աղջիկն։ Եւ յետ հարսանեացն, անդէն վաղվաղակի առեալ չու անէր։

## ԳԼՈՒԽ Զ

ՅՈՐԺԱՄ էին ի Բաբելոնի, հաճոյ թուեցաւ նախարարս յազգն վանեալ առաքել։ Բայց զպահապանսն որ յամուրսն էին եւ զհազարապետս պահապանաց աշխարհին չկամէր թէ այլում ումեք քան զինքն հնազանդեսցին։ Զայսմ ամենայնէ հոգայր, զմտածեալ զի եթէ ի նախարարացն ոք ամեծութեան եւ բազմամբոխ յաճախութեան մարդկան անգոսնիցէ, եւ չհնազանդել մտաբերիցէ, իսկ եւ իսկ հակառակորդս յաշխարհին ունիցի։ Արդ իբրեւ զայս կամէր առնել, խորհեցաւ կոչել միանգամայն նախ զաւագանին, եւ պատմել զի գիտասցեն թէ վասն որոյ երթայցեն որ երթայցենն։ Վասն զի համարեցաւ թէ այնպէս դիւրագոյն

համբերիցեն։ Բայց յորժամ կայցէ ոք իշխան, եւ ապա չլինիցի նմա այն, դժկամակ լինիցի զմտաւ ածեալ եթէ վասն թերահաւատելոյ ի նա այն եղեւ։

Վասն այնորիկ ժողովեալ խօսէր ընդ նոսա այսպէս. Մեք բարեկամք, են մեր ի քաղաքն վանեալս վկանդեալս պահապանք եւ պէտք պահապանաց զորս երբեմն թողաք. յորժամ ի բաց գնայի հրաման ետու նոցա, մի յայլ ինչ գործ մտել, բայց զպարիսպն պահել։ Արդ չմերժեմ զնոսա յիշխանութենէ անտի, զի բարւոք պահեցին որ ինչ հրամայեցաւն։ Բայց հաճոյ թուի ինձ այլ եւս կուսակալս առաքել որ բնակչացն իշխեսցեն, եւ զհարկ աշխարհին առեալ, տայցեն պահապանացն զվարձսն, եւ որ ինչ պիտոյ իցէ յայն ծախեսցեն։ Եւ կամիմ զի որոց անդն իցեն ի ձէնջ, եւ որոց եւս գործ ի ձեռն տամ առաքեալ ի գործ ինչ յազգսն յայնոսիկ, զատանիցին վայրք եւ տունք անդէն, զի անդէն հարկս հարկանիցեն նոցա, եւ յորժամ երթայցեն անդր, կարիցեն ի տունս ագանել։

Զայս ասէր, եւ տայր բազմաց ի բարեկամաց անտի յամենայն քաղաքսն վանեալս տունս եւ հնազանդեալս. եւ ցայժմ եւս նոցին որդւոց եւ թոռանց եւ թոռին թոռանց այնոցիկ որ յայն-

ժամն առին, են վայրքն յայլ եւ յայլ երկրի, եւ ինքեանք առ Թագաւորին բնակեն: Պարտ եւ պատշաճ է, ասէ, նախարարացն երթեալ ի դրունս յայնոսիկ, այնպէս նայել ընդ մեզ, զի որ ինչ յիւրաքանչիւր երկրի գեղեցիկ եւ բարի իցէ, յուշ լինիցի նոցա եւ եւ այսր առաքել, զի որ աստ իցեմք վայելիցեմք ի բարութիւնսն որ ամենայն ուրեք իցեն. քանզի եթէ եւ վիշտք ինչ ուրեք իցեն, մեզ հասանիցէ պաշտպանել:

Զայս ասացեալ ապա զբանսն հանգուցանէր: Նա յետոյ զորս ծանեաւ ի բարեկամաց անտի, եթէ ցանկան երթալ ըստ բանիցն ասացելոց, ընտրեալ ի նոցանէ զպիտանագոյնսն, առաքէր կուսակալս. յաշխարհն Արաբացւոց զՄեգաբիւզոս եւ ի Գամիրս զԱրտաբատաս, եւ յաշխարհն Փռիւգացւոց ի մեծն զԱրտակամաս, ի Լիւդիացւոց եւ Յոնիացւոց զՔրիւսանթաս, եւ ի Կարիա զԱդուսիոս, որպէս խնդրեցին. իսկ ի Փռիւգաստան որ կայ առ Հելլեսպոնտոս ծովու, եւ յԵւողիդա զՓառնուքոս: Բայց Կիլիկեցւոց աշխարհին եւ Կիպրացւոց եւ Պափլագոնացւոց ոչ առաքէր շահապ պարսիկ, քանզի կամակար եկին ընդ նմա ի պատերազմ ի վերայ Բաբելոնացւոց քաղաքին. բայց հարկս եւ նոցա հրամայէր հարկանել:

Եւ որպէս յայնժամ կարգեաց Վիւբոս, ըստ նմին օրինակի զոն եւ այժմ ի միջնաբերդին պահապանք Թագաւորին, եւ հազարապետք պահապանացն ի Թագաւորէ անտի կարգեալ կան, եւ գրեալ են մի ըստ միոջէ ի Թագաւորէն: Պատուէր տայր նախարարացն առաքելոց, զի որչափ մարթիցի, զոր ինչ տեսանիցեն եթէ նոյն առնիցէ, ամենայնի նմանօղ լինիցին, զառաջինն հեծելազօրս կացուցանել ի Պարսից եւ ի նիզակակցաց անտի երթելոց զհետ նոցա եւ կառավարս եւս: Իսկ որ երկիր եւ տաճար ատանուցուն, ատիպել զնոսա յորսս երթալ եւ զցածութենէ փոյթ յանձին կալեալ, մատուցանել զանձինս նախարարին ի կիր արկանել եթէ պէտք ինչ իցեն: Խրատել զմանկունսն ծնեալս յորսս, որպէս եւ առ նմա իսկ: Եւ ինքն նախարարքն հանիցէ յորս զայնոսիկ որ ի դրունսն իցեն, եւ կրթել զանձն եւ զիւրսն ի մարտ պատերազմի:

Որ ըք, ասէ, ըստ համօրէն զօրութեանն, բազում կառս եւ բազում քաջ երիվարս ինձ ցուցանիցէ, զնա եւս իբրեւ առաքինի նիզակակից եւ որպէս բարւոք պահապան Պարսից եւ իմոյ իշխանութեանս, մեծարեցի: Նիցին եւ առ ձեզ աթոռք, որպէս ենն առ իս, եւ քաջքն նախամեծար պա-

տուեալք. եւ սեղան, որպէս եւ ինձ որ կերակրիցէ նախ զընտանեակն, եւ յետ այնորիկ բաւական իցէ բարեկամաց բաշխել տալ, եւ մեծարել զայն որ լաւութիւն ինչ օր ըստ օրէ գործիցէ։ Ստացարուք եւ դրախտս եւ երէ սնուցէք, եւ մի դուք երբեք առանց աշխատութեան հաց առաջի դնիցէք, եւ մի երիվարաց առանց ի հանդիսի անցանելոյ խոտ արկանիցէք։ Վասնզի մի եմ չկարեմ ես մարդկեղէն զօրութեամբ զամենեցուն ձեր բարիս հոգալ, այլ պարտ եւ պատշաճ է ինձ որ քաջս իցեմ, ընդ քաջացն որ առ իս իցեն, ձեզ օգնական լինել. եւ դուք նոյն օրինակ որ քաջքդ իցէք, ընդ որոց առ ձեզդ իցեն, ինձ թիկունք օգնականութեան լինիցիք։ Սամէի թէ եւ զայս ածէիք զմտաւ եթէ յայսմ ամենայնէ զոր այժմիկ ձեզ հրամայեմ, ոչ ինչ ծառայից պատուիրեմ. եւ զոր ձեզդ ասեմ թէ պարտ է առնել եւ ես փութամ զամենայն առնել, որպէս ես ձեզ հրաման տամ նմանօղ ինձ լինել, նոյնպէս եւ դուք այնոցիկ որ ըստ ձէնջ ունիցին իշխանութիւն, ուսուցէք՝ ձեզ նմանօղ նախանձաւոր լինել։ ,

Զայս յայնժամ Կիւրոս կարգեաց եւ ցայժմ տակաւին նովին օրինակաւ ամենայն պահպանութիւնք որ ընդ թագաւորաւն իցեն, նոյնպէս պահին,

եւ դրունք իշխանացն զնոյն օրինակ պաշտօն առնուն. եւ ամենայն առունք մեծամեծք եւ փոքունք նոյնպէս բնակեալ են. եւ ամենայն քաղաք ի դրացեացն աթոռովք նախամեծար պատուին, եւ համօրէն ճանապարհք ըստ նմին օրինակի կարգեալ յարդարին, եւ ամենեւին բովանդակեալ ի գլուխ ելանեն բազում գործք առկաւ վերակացուօք: Նաեւ զայս ասացեալ թէ որպէս պարտ իցէ առնել իւրաքանչիւր ումեք, եւ յաւելեալ իւրաքանչիւր զօրս, արձակէր. եւ պատուէր տայր ամենեցուն կազմ եւ պատրաստ լինել զի ի գալ ամին միւսոյ պատերազմ լինիցի եւ հանդէս համարոյ արանց եւ զինուց եւ երիվարաց եւ կառաց:

Ի միտ առաք եւ զայս եթէ Կիւրոս այնմ արար սկիզբն, որպէս ասեն, եւ ցայժմ տեւեալ բաւէ: Զի եթայ այր ասպատակաւ ամի ամի զօրօք որ եթէ ի նախարարաց անտի ոք օգնականութեամբ կարօտ իցէ, օգնական լինիցի. եւ եթէ անդոսնեալ ամբարտաւանիցէ, ի կարգ ածիցէ. եւ եթէ կամ անփոյթ ոք առնիցէ զհարկան հարկանել, կամ բնակչացն պահ ունել, կամ զի երկիրն արդիւնս ծնուցանիցէ, կամ թէ մի ինչ ի հրամայելոցն թողուցու, զայն ամենայն յարդարիցէ. եւ եթէ չիցէ ինքն ձեռնհաս ազդ ա-

րառցէ թագաւորին: Նա եւ նորա լուեալ խորհուրդ առցէ վասն անսաստատելոյն. եւ որ բազում անգամ առիցեն եթէ արքայորդի իշխանէ, եթէ թագաւորի եղբայր իշխանէ, եթէ այն թագաւորի իշխանէ, եւ երբեմն չերեւիցին, նոքա յայնցանէ են. որ ապստամբական արշաւքն: Զի իւրաքանչիւր ոք ի նոցանէ դառնայ այսօրէն յորժամ արքայ հրաման տայցէ:

Ասաց եւ զայլ ինչ հնարս նորա առ ի մեծութիւն իշխանութեան իւրոյ, որով փաղփաղակի ազդ լինիցի նմա զամենեւին հեռաւորացն թէ զինչ լինիցի: Քանզի զմտաւ ածեալ թէ որչափ ճանապարհ հարկանիցէ երիվար եթէ զցերեկ գնայցէ, եւ ըստ նմին անձրդետութեան ապաստանս գործէր, եւ երիվարս ի նոսին կացուցանէր եւ նոցին խնամակալս. եւ այր մի ի վերայ իւրաքանչիւր տեղեացն կարգէր, որ բաւական իցէ առնուլ զբերեալ գիրսն, եւ առնուլ զերիվարսն վաստակեալս եւ զայլ երիվարս նորոգ առաքել: Եւ երբեք զի եւ ոչ զցայգ, ասեն, դադարիցեն գնալ, այլ ցայգութեան պատգամաւորին փոխանակել ցերեկութեանն. եւ յորժամ այն, ասեն, այնպէս լինիցի, ոմանք փութագոյն քան զկռունկս զայն ճանապարհ ի գլուխ հանիցեն. ապա թէ զայն ասեն, բայց թէ քան զմար-

դկան հետիոտիւք գնացս արագագոյն է, այն յայտ է. քանզի եւ այս բարւոք է զինաւ վաղվաղակի զգալ եւ արագ արագ հոգալ:

Իբրեւ այն ամենայն անցանէր, զզօրսն ի Բաբելոն գումարէր, եւ լեալ, ասեն, նորա երկոտասան բեւրս հեծելազօրու. եւ երկու հազար կառս գերանդաղէնս, եւ վեց հարեւր բեւրս հետեւակաց: Իբրեւ այն ամենայն համագերձեցաւ կազմեցաւ, դիմեալ երթայր ասպատակաւ յորում, ասեն, վանեալ վկանդեալ զամենայն ազգս որ ի մտիցն Ասորւոց բնակեն մինչեւ ցծովն կարմիր: Եւ յետ այնորիկ, ասեն, որ յԵգիպտոս ասպատակն է՝ եղեւ, եւ վկանդէր աշխարհն Եգիպտացւոց: Եւ յայնմ հետէ իւր իշխանութեան սահմանս անջրպետ արկեալ որոշէր, յարեւելից կուսէ ծովն կարմիր, ի հարաւոյ Եւքսինոս ծով, եւ յարեւմտից Կիպրացւոց եւ Եգիպտացւոց աշխարհն, եւ առ հիւսիսի երկիրն Եթովպացւոց: Եւ ի ծագաց անտի կողմանցն այնոցիկ կէսք վասն տօթոյն դժուարին առ բնակութիւն են, եւ կէսք վասն սառամանեացն, եւ կէսք վասն ջուրցն եւ այլք առ անջրդութեանն:

Ինքն քանզի ի նոցա միջի էր, ի ժամանակս ձմերայնոյն կայր ի Բաբիլոնի եւթն ամիս, զի մարմանդ տեղիքն

էին, եւ գարնայնի զերիս ամիսս ի Շուշ քաղաքի, եւ ի ժամանակս ամառնայնույն զերկուս ամիսս յԵկբատանացւոց աշխարհին: Եւ քանզի այնպէս, ասեն, առնէր, ցանգ կայր ի ժամանակս գարնայնոյն: Եւ այսպիսի իսկ միտս ընդ նա մարդիկն ունէին, զի ամենայն ազգ նուազութիւն իմն իւր համարէր, եթէ չառաքէր Կիւրոսի որ ինչ գեղեցիկ ինչ յաշխարհին բուսանէր կամ սնանէր կամ ի ճարտարացն գործէր. Նոյնպէս եւ ամենայն քաղաք եւ ամենայն ոք առանձինն մեծատուն լինել կարծէր եթէ շնորհէր ինչ Կիւրոսի. քանզի եւ Կիւրոս առեալ յիւրաքանչիւր ումեքէ զայս զոր առատութեամբ իսկ ունէին որ տային, եւ ընդ այնր տայր զայն որով անօսրացեալ գիտէր զնոսա:

## ԳԼՈՒԽ Է

Եւ ապա իբրեւ յառաջադէմ ժամանակն լինէր, եւ Կիւրոս ծերացեալ հասանէր ի Պարս եւթներորդ անգամ յետ իշխանութեանն. եւ հայր նորա եւ մայր կանխագոյն իսկ, որպէս ի դէպ էր, վախճանեալ էին: Կիւրոս զոհս ի մեհեանսն ըստ օրինացն մատուցանէր, եւ առաջնորդէր պարուցն Պարսից ըստ հայրենի կարգացն, եւ ամենեցուն տայր պարգեւս որպէս սովորն էր: Ի քուն

եղեալ յարքունիսն այսպիսի ինչ երազ տեսանէր. թուէր ինձ նմա այսպէս, թէ մատուցեալ ոմն աղջնուազոյն քան զմարդկեղէն կարգս, ասէ. Պատրաստեաց Կիւրոս զի առ դիսն երթաս: Զայն երազ տեսեալ զարթեաւ, եւ գրեթէ կարծէր տեսանել եթէ կենաց վախճան եկեալ հասեալ կայ: Անդէն իսկ եւ իսկ վաղվաղակի առեալ նուէրս զոհս զաւառականն Արամազդայ մատուցանէր եւ արեգական եւ այլոց եւս դիցն ի վերայ բարձաւանդակացն, որպէս Պարսիկքն մատուցանեն զոհս, եւ մատուցեալ կայր յաղօթս ձեւ զայս օրինակ. Արամազդ հայրենի, եւ արեգակնդ եւ ամենայն իսկ համօրէն դիք, ընկալարուք զզոհս եւ զնուէրս բազմաց եւ գեղեցիկ իրացս այսոցիկ եւ արուութեանց, եւ զգոհութիւնս զի գուշակեցէք դուք ինձ նուիրօք եւ նշանօք երկնից եւ հմայիւք եւ համբաւուք զոր ինչ պարտն էր առնել եւ որ ինչ չէր պատշաճ: Յաճախագոյն գոհութիւն ձեզ, զի եւ ես ծանեայց զձեր խնամակալութիւն, ոչ երբեք ուրեք ընդ փառաւորութիւնս ի վեր քան զմարդ մեծամտեալ հպարտացայ: Խնդրեմ եւ ի ձէնջ տալ եւ այժմ. որդւոց իմոց եւ կնոջ եւ բարեկամաց եւ ազգի իմում փառաւորութիւն, եւ ինձ որպիսի ինչ կեանս ետուք, նոյնպէս եւ վախճան շնորհել:

Զայս արարեալ ապա գայր յապարանսն եւ կամէր հանգչել եւ անդէն ընկողմանէր։ Իբրեւ ժամն հասանէր, որ կարգեալ կային մատուցեալ հրամայէին լուանալ։ Եւ նա ասէր թէ հանգչիմ ուրախութեամբ։ Իսկ որ կարգեալն էին յորժամ ժամ իսկ էր, ընթրիս առաջի յօրինեալ դնէին, բայց անձն նորա ոչ մերձեցաւ ի խորտիկսն, եւ թուէր նմա ծարաւի լինել եւ որք յօժարութեամբ։ Իբրեւ ի վաղիւ անդր նոյն անցք ընդ նա անցանէին եւ յերրորդումն աւուր, կոչէր զորդիսն, որք զհետ եկեալ դիպեցան նորա եւ ի Պարս էին. կոչէր եւ զբարեկամսն եւ զիշխանս Պարսից. եւ իբրեւ ամենեքին հասեալ կային, սկիզբն առնէր բանից այսպիսի ինչ օրինակ։

Որդեակք իմ եւ ամենայն բարեկամք որ այսր հասեալ կայք, ինձ կենաց կատարած եկեալ հասեալ կայ. ի բազում ինչ իրաց զայդ հաւաստեաւ եւ ճշգրիտ գիտեմ։ Բայց ձեզ, յորժամ վախճանեցայց, պարտ եւ պատշաճ է իբրեւ զփառաւորէ ումեքէ զինէն խօսել եւ գործել զամենայն։ Զի եւ յորժամ մանուկն էի, որ ինչ ի մանկութեան լաւութիւնքն համարեցին թուի ինձ թէ շահեցայ. եւ իբրեւ ի չափ հասի, զայն որ յերիտասարդսն էր. եւ յորժամ եղէ այր կատարեալ զայն որ յարանս էր։

Նաեւ ի յառաջադէմն լինել ժամանակացն ցանդ իսկ եւ հանապազ աճեցեալ եւ զարգացեալ տեսանէին զզօրութիւն իմ։ Որպէս զի չզգայի իսկ երբեք եթէ ծերութիւն իմ քան զերիտասարդութիւն ակարագոյն իցէ, եւ չգիտեմ թէ ձեռն արկի եւ ցանկացայ իմիք եւ ոչ հասի. եւ զբարեկամս տեսի ինեւ փառաւորեալս եւ զթշնամիս ընդ ինեւ ի ծառայութիւն վտարանդեալ, եւ զազգ իմ եւ զտոհմ որ յառաջագոյն արհամարհն էր յԱսիացւոց աշխարհիս, այժմ թողում նախամեծար մեծարեալ. եւ յորոց ստացայն չգիտեմ ինչ զոր իմ չիցէ պահեալ։ Թէպէտ եւ յանցեալ ժամանակի անդ զամենայն վճարէի այնպէս որպէս իմ միտք կամէին, բայց ահն որ խուճապէր թէ մի դուցէ յառ յապա ժամանակին տեսանիցեմ կամ լուիցեմ կամ կրիցեմ ինչ դժընդակս, չտայր ամենեւին մեծամտել եւ ոչ տարածանել զանձն եւ ուրախ լինել։ Բայց այժմ եթէ վախճանեցայց, թողում զձեզ, որդեակք, կենդանիս, զձեզ ետուն ինձ դիքն ծնանել, թողում զազգ եւ զտոհմ եւ զբարեկամս ի փառաւորութեան։ Զիա՞րդ եւ ես ոչ յիրաւի երանելի համարիցիմ, եւ մշտնջենաւոր ժամանակաց հասանիցեմ յիշատակի։

Նաեւ պարտ եւ պատշաճ է զարքայութիւնն յայտնագոյն իսկ. թողուլ.

զի մի յորժամ երկմտութեամբ իցէ, աշխատութիւն ձեզ հասուցանիցէ։ Բայց ես այժմ մի օրինակ զերկոսին զձեզ սիրեմ որդեակք. իսկ զխորհել եւ առաջնորդել յոր ինչ ի դէպ թուիցի, զայն նմա որ անդրանիկն իցէ, հրամայեմ, որ եւ բազում իրաց հմուտ է, որպէս ի դէպ իսկ իցէ։ Խրատեցայ եւ ես նոյնպէս յաշխարհէ աստի իմէ եւ ձեր, տեղի տալ երիցագունաց, ոչ միայն եղբայր եղբօր, այլ եւ քաղաքացեաց ի ճանապարհի եւ ի նստել եւ ի խօսել։ Եւ զձեզ, որդեակք, ի սկզբանէ նոյնպէս խրատեցի, զծերսն նախ մեծարել, եւ քան զմանկագոյնսն նախամեծար լինել։ Արդ ինձ իբրեւ թէ զհին ինչ եւ զսովորական եւ զօրինաւոր խօսիցիմ, այնպէս անսացէք։ Եւ դու Կամբիւսէ, կալ զթագաւորութիւնն, զի դիքն տան եւ ես տամ որչափ ինչ յինէն կուսէ իցէ։ Եւ քեզ տամ Տանաւոքսարէ լինել շահապ նախարարապետ Մարաց եւ Հայոց եւ երրորդ Կադուսիացւոց. զայս տամ քեզ, եւ համարիմ զմեծ եւս իշխանութիւն եւ զանուն թագաւորութեան երիցուն թողուլ, բայց քեզ զանտրտմութեան փառաւորութիւն։ Քանզի որում մարդկեղէն ուրախութեան կարօտ իցես ես ոչ նշմարեմ, ամենայն որ ինչ կարծի թէ ուրախ զմարդիկ առնիցէ, անդ կայ։

Իսկ ցանկալն վճարել որ ինչ դժուարին առ վճարել իցէ, եւ զբազմաց իրաց հոգալ եւ չկարել ունել հանդարտութիւն, խոթեալ ի հակառակութենէ անտի եւ ի նախանձաւորն լինելոյ իմոց գործոց, եւ նենգ գործել եւ նենգել. հարկ է թէ այս ամենայն զնա չար տագնապիցէ որ թագաւորելոցն իցէ եւ ոչ զքեզ. գիտասջիր զի նոքին չտան պարապութիւն ուրախ լինելոյ։

Որդ դու զայդ ի միտ առ կամբիւսէս, թէ ոչ այս ոսկի գաւազան է, որ ողջ զթագաւորութիւնն պահիցէ. բարեկամք հաւատարիմք ճշմարիտ եւ անսխալ գաւազան թագաւորաց։ Մի համարիր, թէ ի բնէ իսկ ծնանիցին մարդիկ հաւատարիմ, զի եթէ այնպէս ինչ էր, նոքին եւ ամենեցուն հաւատարիմք երեւէին, զոր օրինակ եւ այլ ինչ եւս ամենայն որ ի բնէ ծնանիցին ամենեցուն նոյնք երեւիցին, այլ պարտ է իւրաքանչիւր ումեք իւրում անձինն հաւատարիմս յարդարել։ Բայց ոչ ումեք դոյ բռնութեամբ ստանալ զնոսա, այլ մանաւանդ բարերարութեամբ։ Որդ եթէ եւ զայլս ոմանս ջանայցես պահապանս թագաւորութեան կացուցանել, մի ուստեք նախ առնիցես սկիզբն, այլ որ աստատին իսկ ի միոջէ տեղւոյ ծնեալ իցէ. եւ արք քաղաքացիք քան զօտարոտինսն ընտանեգոյնք եւ հացա-

կիցք լինիցին։ Որ ի նմին զաւակէ ծընեալ իցեն եւ ի նմին մօրէ սնեալ, եւ ի նմին տան աճեցեալ եւ զարգացեալ, եւ ի նոցին ծնողաց սիրեցեալ, եւ զնոյն մայր եւ զնոյն հայր կարդայցեն, զեարդ չիցեն նոքին քան զամենեսին ընտանեգոյնք։

Նա եւ արդ զոր ինչ բարութիւնս գիցն շնորհեալ իցէ առ ընտանութիւն եղբարց մի ընդունայնս առնիցէք, այլ ի նոցունց իսկ վերայ անդէն շինեսջէք զայլ եւս սիրոյն արդիւնս. եւ այնպէս միշտ իսկ առանց զմիմեանմբք անցուցանելոյ իցեն գուլթք ձեր. անձին խնամ ունիցի որ զեղբօրէ հոգայցէ. քանզի ո՞ւմ ումեք վայլում եղբայր մեծացեալ այնպէս օգուտ իցէ, որպէս եղբօր. եւ ո՞ այլ ոք մեծարիցէ այնպէս զայր մեծազօր, իբրեւ զեղբայր. եւ զո՞ ոք երկընչիցի զրկել ոք յորժամ մեծ իցէ եղբայրն, որպէս զեղբայր։ Մի ոք վաղվաղակի քան զքեզ ունկնդիր լինիցի նմա եւ մի յօժարագոյնս քան զքեզ հասանիցէ. քանզի ոչ ումեք առաւել ընտանի իցեն բարիք եւ չարիք նորա քան քեզ։ Նա եւ զայս ած զմտաւ թէ ում շնորհես եւ յումէ՞ ակն ունիս հասանել եւս մեծամեծաց թէ ոչ ի սմանէ. եւ ում օգնական եղեալ պատերազմակից զօրաւոր զնա առցես փոխարէն։ Ո՞ ոք չիրել առաւել ամօթոյ իցէ քան զեղբայր.

զո՞ ոք քան զամենեսին նախամեծար առնել լաւ իցէ, բայց զեղբայր։ Եթէ միայն եղբայր, ով Կամբիւսէ, առաջին իցէ առ եղբօր, ոչ ինչ հասանիցէ առ յայլոց նախանձ կամ թշնամութիւն, բայց, որդեակք, զմիմեանս պատուեցէք եթէ այն կամ իցէ ձեր եւ ինձ շնորհել ինչ։

Քանզի ոչ եթէ կարծիցէք այնմ իմն խելամուտ հաստատութեամբ լինել եթէ ես այսուհետեւ ոչ ինչ լինիցիմ, յորժամ ի մարդկեղէն կենաց աստի վճարիցիմ. քանզի եւ ոչ այժմ զիմ միտս տեսանէիք, այլ ի գործոյ անտի զոր գործէի, նոքիմբք առնոյիք ի միտ թէ է։ Տակաւին չառէ՞ք ի միտ թէ զրկելոցն ոգիքն՝ որպիսի՛ ինչ ահ. եւ երկեւղ ի ծանրագործ սպանօղսն արկանիցեն, եւ զո՞րնենգագործս ի վերայ պըղծոցն արձակիցեն։ Համարիցի՞ք եթէ մարթ իցէ տեւել մնալ պատուոց մեռելոցն, եթէ չէին ինչ իրիք տէարք նոցա ոգիքն։ Ոչ, որդեակ, ես ոչ երբէք ուրեք յանձն առի, եթէ ոգիքն մինչ դեռ ի մահկանացու մարմնի իցեն, կեցցեն, եւ յորժամ ի մարմնոյ զերծանիցին, մեռանիցին։ Քանզի տեսանեմ թէ եւ մահկանացու մարմինք որչափ ինչ ժամանակս ոգիքն ի նոսին իցեն, կենդանի երեւիցին. եւ ոչ զայն առի յանձն թէ անիմաստ ոգիքն լինի-

ցին յորժամ յանիմաստ մարմնոյ զատի մեկուսի լինիցին։ Այլ յորժամ ան-խառն եւ պարզ եւ յստակ եւ սուրբ միտքն ընտրիցին, յայնժամ ապա ի դէպ է թէ իմաստնագոյնք լինիցին։ Իսկ ի մարդոյն քակել, յայտ է թէ իւրաքան-չիւր մասն յիւր համացեղսն գնայ բաց յոգւոցն, զի ոգիքն եւեթ ոչ յորժամ մօտ իցեն եւ ոչ յորժամ հեռի, երեւե-ցին։ Մտաւ ածէք, ասէ, թէ եւս դրացի մարդկօրէն մահու քան զքուն չիք. բայց մարդոյ ոգին յայնժամ աս-տուածեղէն երեւի եւ ի նմին ժամանա-կի ի հանդերձելոց անտի կանխաւ տեսա-նէ ինչ. քանզի յայնժամ որպէս նման իսկ է, առաւել յազատութիւն ելանէ։

Թէ այս այսպէս իցէ, որպէս ինձ թուի, եւ ոգիքն զմարմին թողուն, պատ-կառեալ յոգւոյ աստի իմէ արարէք զոր ինչ աղաչեմս։ Ապա թէ չիցէ այնպէս, այլ ոգիքն որ ի մարմնի կայցեն ընդ նմին մեռանիցին, սակայն ի դիցն որ միշտ իսկ են եւ զբնաւ նշմարեն եւ ամե-նայնի ձեռնհաս են, որք եւ զբնաւ իսկ զկարգ անխախտ եւ անծերական եւ անսխալ ունին, եւ անճառ եւ ան-պատում ի գեղեցկութենէ եւ ի մեծու-թենէ, ի նոցանէ երկուցեալ մի՛ ինչ ամպարիշտ մի ինչ անսուրբ գործիցէք եւ խորհիցիք։ Բայց յետ դիցն ի համ-օրէն իսկ մարդկան ազգէ որ հանապազ

ծնանիցի, ակն ածէք։ Վասնզի ոչ եթէ թանձրամած խաւարաւ ծածկեն զձեզ դիքն, այլ հարկ է յայտ յանդիման ամենեցուն ցանդ կենդանի լինել մերոցն գործոցն. որք եթէ որբագոյնք եւ արտաքոյ քան զապիրատութիւն երեւիցին, հզօրս զձեզ յամենայն մարդկան միջի ցուցանիցեն։ Նա եթէ անիրաւ ինչ ի վերայ միմեանց խորհիցիք, չհամարիցիք յամենայն մարդկանէ այնուհետեւ արժանի հաւատարմութեան։ Վասնզի ոչ ոք այնուհետեւ կարիցէ հաւատալ ձեզ, եւ ոչ թէ ամենեւին յօժարիցի եւս, յորժամ ասասնիցէ զըրկեալ զայն որում անկ իցէ աւելագոյն գութ եւ խնամ։

Նու արդ շատ է զի ուսուցի զձեզ թէ որդունակ պարտ եւ պատշաճ իցէ առ միմեանս լինել. սակայն թէ ոչ՝ ի նախնեաց անտի ուսարուք, քանզի այն վարդապետութիւն ազնուագոյն է. քանզի բազում հարք եւ մարք կացին մնացին սիրելիք որդւոց եւ շատք եւս սիրելիք եղբարց. իսկ ոմանք ի նոցանէ եւ զնոցին հակառակն միմեանց գործեցին։ Նու արդ որոց միանգամ համարիցիք լեալ նպաստաւորս, զնոսին ընտրեալ եւ ընդ նոյնս յօժարեալ, խորհուրդ ուղղութեան խորհիցիք։ Թերեւս զայսմ ամենայնէ շատ եւ բաւական իցէ։ Բայց զիմ դին, որդեակք

յորժամ վախճանիցիմ մի՛ յոսկւոջ դնի-
ցէք եւ մի՛ յարծաթ եւ մի՛ յայլում ի-
միք, այլ վաղվաղակի իսկ տուք հողոյ.
քանզի զինչ քան զայն երանելի կայցէ,
քան ընդ հողոյ խառնել, որ զամենայն
գեղեցկութիւն եւ զբոլոր բարութիւն
բուսուցանէ եւ պարարէ: Նաեւ ես մար-
դասէր իսկ եղէ, եւ այժմ յօժարու-
թեամբ կամիմ հաղորդել այնմ որ բա-
րերար եւ երախտագործ մարդկան իցէ:
Այլ թուի, ասէ, ինձ թէ ոգիքս նը-
ւազեն ուստի ամենեւին տանէ սկիզբն
պակասելոյ որպէս յայտ իսկ է: Եթէ
ոք ի ձէնջ կամիցի մերձենալ յաջ իմ.
կամ զաջս իմ, մինչ դեռ կենդանի
իցեմ կամիցի տեսանել, մատիցէ: Իսկ
յորժամ ծածկիցիմ ես, խնդրեմ ի
ձէնջ, որդեակք, մի՛ ոք այնուհետեւ
տեսանիցէ զմարմին իմ, եւ ոչ դուք
իսկ զլխովին: Բայց զամենայն Պար-
սիկս եւ զնիզակակիցս կոչեցէք առ ի-
մոյ յիշատակի, ուրախակից ինձ լինել,
զի յամրի լինիցիմ առ ի չկարելոյ այ-
սուհետեւ կրել ինչ վիշտս, թէպէտ
ընդ աստուածեղինին իցեմ, թէպէտ
ոչ ինչ իցեմ: Նաեւ որք գայցեն բարի
առնիցէք նոցա որչափ արժանի առն
փառաւորի համարիցիք եւ յուղարկե-
ցէք. եւ զլուխ իսկ ամենայնի զայս,
ասէ, յիշեցէք զինէն, թէ յորժամ
բարեկամաց երախտաւորք լինիցիք եւ

զթշնամիս կարիցէք պատժել: Ողջ լե-
րուք որդեակք իմ սիրելիք, եւ մօր ձե-
րում պատմեցէք իբրեւ յինէն եւ ա-
մենայն բարեկամք որ մօտ էք եւ որ հե-
ռի, ողջ լիջիք. իբրեւ զայս ասէր,
տայր ամենեցուն զաջն. ծածկեալ եւ
այնպէս վախճանէր:

## ԳԼՈՒԽ Ը

Օյ գեղեցիկ եւ յաղթ քան զամե-
նայն թագաւորութիւն Մակեդոնացւոց աշ-
խարհին Կիւրոսի արքայութիւնն եղեւ,
ինքն իսկ ի մօտոյ վկայէ անձինն: Ո-
րոշէր սահմանօք յարեւելից ի կարմիր
ծովէ եւ ի հարաւոյ Եւքսինոս ծովու,
եւ յարեւմտից Կիւպրացւոց եւ Եգի-
պտացւոց աշխարհաւն, եւ ի հիւսիսոյ ի
կողմանցն Եթովպացւոց: Թէպէտ եւ
այսչափ թագաւորութիւն էր միոյ կա-
մօք Կիւրոսի վարէր. եւ նա զորս ընդ
իւրեւն էին իբրեւ զիւրուրոյն որդիս
մեծարէր եւ ողոքէր. որ ընդ իշխանու-
թեամբն էին Կիւրոսի իբրեւ զհօր պաշ-
տօն հարկանէին: Բայց իբրեւ Կիւրոս
վախճանէր, անդէն իսկ եւ իսկ վաղվա-
ղակի նոքին իսկ որդիքն ի ճակատա
գրգռէին, եւ վաղվաղակի կապարճս
դարձուցանէին յետս կայրին յապստամ-
բութիւն քաղաքի եւ ազգք եւ ազինք,
եւ ամենայն ինչ ի յոռութիւն զառա-

ծանէր։ Բայց զի ճշմարիտ իսկ խօսիմ, յաստուածականացն իսկ առնիցեմ ընկիզըն յանդիման կացուցանել։

Քանզի գիտեմ եթէ յառաջագոյն թագաւորն եւ որ ընդ նովաւ էին, եւ նոցին, որ զյետին իսկ չարիսն գործէին, եթէ երդմնի եւ դաշնաւոր լեալ էին, զերդմունսն պահէին, եւ եթէ աջ արւեալ էին, հաստատուն պահէին։ Նա եւ եթէ այնպիսիք չէին, եւ այնպիսի կարծիս տային. ոչ ոք յանձն առնոյր հաւատալ նոցա, զոր օրինակ եւ ոչ այժմ հաւատայ ոք այսուհետեւ, քանզի յայտնի եղեւ ամպարշտութիւն նոցա։ Նոյնպէս եւ ոչ յայնժամ հաւատացին զօրավարքն զօրացն որ ընդ Կիւրոսի իսկ արշաւեալ երթային։ Բայց այժմ առաջին կարգաց նոցա հաւատացեալ ետուն ի ձեռս զանձինս եւ ածեալ առ թագաւոր անդր գլխատեցան։ Նա եւ բազումք իսկ ի խուժադուժ բարբարոսաց անտի որ ընդ նմա գնացին զօրաժողով ի մարտ պատերազմի, այլք այլովք ինչ իրօք պատրեալ կորեան։

Բայց այժմ կարի եւս իմն գժնդակագոյնք են. քանզի յառաջն եթէ ի վիշտս ոք վասն թագաւորի մտանէր, կամ քաղաք մի կամ ազգ մի ընդ ձեռամբ նուաճէր կամ թէ այլ ինչ բաւութիւն վճարէր, նոքա էին որ մեծարեալ լինէին։ Իսկ այժմ թէ ոք, որպէս

Միթրիդատեան որ հօրն Միրոբարզանեայ մատն եղեւ, եւ որպէս Դեւամիթրեան որ զկին եւ զորդիս եւ զբարեկամացն մանկունս պատանդս առ եգիպտացւոյն եթող, եւ զմեծամեծ երդմամբք անց եւ թագաւորին կարծեցաւ օգուտ ինչ առնել. նոքին իցեն որ մեծամեծարն մեծարիցին պատուովք։ Ընդ այն հայհոյեցեալ ամենեցուն որ յառիացւոց աշխարհին էին, յամպարշտութիւն եւ յապիրատութիւն զառածան. զի որպիսիք ոք վերակացուքն լինիցին, նոյնպիսիք բազում անգամ եւ որ ընդ նոքօք իցեն, լինիցին. եւ ապիրատագոյնք քան զառաջինն այժմ եղեն։

Իսկ յինչսն քան զնոյն եւս ապիրատագոյնք. քանզի ոչ եթէ որոց բազում ինչ յանցուցեալ իցէ, այլ որոց չիցէ զոք զրկեալ, զնոսա ըմբռնեալ շտապ տագնապի ի վերայ հասուցանեն յանիրաւի ինչս տուժել. որպէս զի որ բազում ինչսն ունիցին ոչ ինչ ընդհատ ի զրկողաց երկնչիցին։ Եւ ոչ ընդ հզօրագունացն յանձն առնուն կռուել, եւ ոչ համարձակին գումարել ի պատերազմ արքունի։ Վասն այնորիկ իսկ որ տացէ ոք ընդ նոսա ճակատս, համարձակ իցէ ամենեցուն անդէն ի նոցին աշխարհին զհարդուածէտ ըստ իւրեանց հեշտի շրջել առանց մարտից պատե-

բազմաց վասն նոցին ի դիւանս ամպարշտելոյ եւ զմարդիկ զրկելոյ։ Նմանապէս ամենեւին իսկ վատթարագոյն այժմ միտք են նոցա քան յառաջն։

Նա զի ոչ զմարմնոցն կրթութենէ փոյթ յանձին ունիցին որպէս զառաջինն, զայն պատմեցից։ Վասնզի օրէնք էին նոցա մի թքանել եւ մի ի վեր փրխել. եւ յայտ է եթէ ոչ վասն ի խոնաւ անդր մարմնոյն խնայելոյ օրէնքն կային, այլ կամէին թէ աշխատութեամբք եւ քրտամբք պնդակազմիցեն մարմինքն. բայց այժմ կայ պահէ չթքանելն եւ չփոխել ի վեր, իսկ զվաստակելոյ ոչ ուրեք դոյ խնամ։ Նաեւ օրէնք էին նոցա յառաջագոյն մի անգամ հաց ուտել. զի զօրն ողջոյն ի կիր արկանիցեն ի գործս եւ ի վաստակել. իսկ այժմ կայ մնայ միանգամն ուտել. բայց սկիզբն առնեն հացին յայնժամ յորժամ ճաշիցեն որք ընդ այգն ճաշեն, եւ մինչեւ ցայն վայր ուտեն եւ ըմպեն, յորժամ սովորն իցեն ննջել որ անագանն ննջիցեն։

Նաեւ օրէնք էին նոցա մի դաշխուրանս ի գինըմպելիս մուծանել. յայտ է եթէ համարէին իմն թէ շատն չըմպել չտայ մարմնոցն եւ մտացն սխալել։ Բայց այժմ չմուծանելն կայ, իսկ ըմպել այնչափ ըմպեն, զի փոխանակ ընդ մուծանելոյն ինքեանք ի բաց հանիցեն,

յորժամ ոչ եւս այնուհետեւ կարիցեն ուղղորդ եղանել: Այլ եւ այն իմն գուա-ռական էր նոցա, զմիջոցաւ ճանապարհի ոչ ուտել եւ ոչ ըմպել, եւ ոչ երեւել իսկ յայտնի թէ առնիցեն ի պիտոյից անտի ինչ: Նա եւ այժմ եւս ի նոցունց կարծեն զանձինս. բայց այնչափ կարճ ճանապարհ առնեն, զի չեն ինչ զարմանք կարծել ի կարեւոր պիտոյից:

Այլ եւ յորսս յառաջագոյն այնչափ եղանէին, մինչ զի բաւական լինէին որսքըն նոցա եւ երիւարացն ի հրահանգս կրթութեան: Բայց իբրեւ Արտաշէս արքայ եւ որք ընդ նմայն էին ի գինւոյն պարտութիւն մատնէին, այնուհետեւ ոչ նոյնպէս ինքեանք եղանէին, եւ ոչ զայլս հանէին յորս: Եւ որք աշխատասէրք լեալք եւ հանդերձ հեծելովք որ զկուրեամբք էին որս առնէին յայս յանդիման խանտային ընդ նոսա եւ իբրեւ ազնուագոյնս քան զանձինս առէին զնոսա: Այլ զմանկտին ի դրունս խորտել, այն ցայժմ կայ պահի. բայց զձիոցն հրահանգս ուսանել չիք ի միջի, վասն չերթալոյ անդր ուր երեւեալք փառաւոր եւ քաջանուն լինիցին: Եւ զի մանկտին լուեալ անդ յառաջագոյն զդատաստանան իրաւամբք դատեալ, իրաւունս եւ արդարութիւն ուսանել, եւ այն ամենեւին իսկ փոփոխեցաւ:

Վասնզի քաջիկ իսկ տեսանեն եթէ յաղթեն որ առաւելն տան։ Այլ եւ զբուսոց երկրի զզօրութիւն մանկանին յառաջագոյն ուսանէին զի յօգտութիւնս վարիցեն եւ ի վնասակարացն մերժիցին։ Բայց այժմ զնոյնս ուսանին զի աւելագոյն վնաս գործիցեն։ Արդ ոչ ուրեք յաճախագոյն մեռանիցին եւ ապականիցին ի դեղոց բայց անդ։

Այլ եւ այժմ կարի գիրգք եւ բարեկեցիկք են, քան առ Կիւրոսիւ, քանզի ի ժամանակին յայն Պարսից խրատու եւ ժուժկալութեամբ վարէին. բայց Մարաց պատմուճանաւ եւ փառաւորութեամբն։ Իսկ այժմ զՊարսից ճգունան նշմարեն ի միջոյ բարձեալ, զՄարաց թուլամորթ անառակութիւն պահեալ։ Յայտ կամիմ առնել զգիրգութիւնս նոցա։ Վասնզի նախ չէ բաւական նոցա զգահոյսն փափուկս տարածանել, այլ եւ զմահճացն ոտսն ի վերայ տախտակամած յատակացն դնիցեն, որպէս զի մի ի յատակսն յենուցու, այլ տեղի տայցեն յատակքն. եւ որ ինչ եփիցի վասն սեղանոյ, որչափ յառաջագոյն գտեալ իցէ ոչ մի ինչ ի նոցանէ մերժեն, այլ եւ ցանգ իսկ եւ միշտ նորոգ հայթայթանս հնարին. նոյնգունակ եւ խորտիկքն. քանզի եւ նորագործս երկոցունցն ստանան։

Նաեւ ձմերայնի ոչ միայն զգլուխ եւ զմարմին եւ զոտս բաւական էցէ նոցա ծածկել, այլ եւ ի ծայրս ձեռացն ձերէս թաւս ունիցին։ Նաեւ ամարայնի չէցեն շատ նոցա ոչ ծառոցն ստուերքն եւ ոչ քարանցն հովանիք. այլ ի նոսին այլ եւս հովանոցակս անձանց հնարին մարդիկ. եւ տաշտս եւ բաժակ թէ շատ ունիցին, նովին իմն փառաւորք երեւիցին. իսկ եթէ յայտնի իսկ յապիրատութենէ հնարեալ իցեն, զայն ինչ չհամարիցին ամօթ։ Վասնզի յայժ իսկ ստուարացան ի նոսա ապիրատութիւն եւ զաւշաքաղութիւն։ Այլ յառաջին եւ այն իմն գաւառական էր նոցա թէ յորժամ հետախուզնայցեն մի յանկն անկանիցին, ոչ վասն այլ ինչ իրաց, բայց զի քաջ հեծեալք լինիցին։ Իսկ այժմ յոլովագոյն կազմած ի վերայ երիվարացն ունիցին քան ի վերայ մահճաց։ Վասնզի ոչ եթէ զերիվարաց ինչ փոյթ է նոցա որպէս ի փափուկն նստելոյ։

Ո՛չ խորդ չիցէ յիրաւի թէ այժմ ամենեքին ի պատերազմունսն վատթարագոյնք քան զառաջինսն իցեն, որոց յանցեալ ժամանակն թուի ինձ թէ գաւառական օրէնք էին, զի որք երկիր ունէին, յերկրէ անտի տայցեն հեծեալս, եւ որք երթայցեն իսկ ի պատերազմ եւ որք պահպանիցենն, եթէ հասանիցէ տալ մարտ պատերազմի ի

վերայ աշխարհին, վարձկանք լինիցին։ Բայց այժմ դռնապանս եւ հացարարս եւ ամճաբերս եւ տակառապետս համարին, եւ որ սեղան առաջի յօրինիցեն եւ բառնայցեն եւ ննջեցուցանիցեն եւ զարթուցանիցեն եւ զարդարիչս՝ որ օծանիցեն եւ կոկեալ ողորկիցեն, եւ այլ եւս բազում ինչ նստեալ համարին։ Զսոսա զամենեսին արարին հեծեալս հարուստքն զի առցեն իւրեանց վարձ։ Արդ բազմամբոխ բազմութիւն ի նոցանէ երեւիցի, բայց չէք ի նոցանէ օգուտ ի պատերազմի եւ ոչ մի. եւ յայտ նոքին իսկ արդիւնք իրացն առնիցեն։ Քանզի յաշխարհի անդ նոցա դիւրագոյն թշնամիքն շրջին քան բարեկամք նոցա։

Զի եւ Կիւրոս զբաւ տանէր ի հեռաստանէ նետիւք կռուելոյ եւ տգացեալ զբահս նոցա եւ երիվարաց նոցա, եւ մի մի ասպար իւրաքանչիւր ումեք տուեալ ի ձեռս, անդէն ի մօտոյ մարտ եդեալ կռուէր։ Իսկ այժմ ոչ ի հեռաստանէ մարտնչին եւ ոչ առ միմեանս եկեալ կռուին։ Ունել ումին հետեւակքն սուսեր եւ գանակ եւ սակուր որպէս առ Կիւրոսիւ յորժամ տայցեն պատերազմ, բայց ձեռնամուխ լինել եւ ոչ սոքա ումին յանձին. եւ ոչ գերանդազէն կառօքն այսուհետեւ վարին յայն՝ վասն որոյ գործեացն զնոսա Կիւ-

րոս. քանզի կառավարք էին նոցա մեծացեալ պատուոյն մեծարանօք եւ քաջք եւ առաքինիք որ յարձակեալ անկանիցին ի մէջ զինուց եւ սպառազինաց։

Իսկ այժմուքս եւ ճանաչեն իսկ ոչ զայնոսիկ որ ի վերայ կառացն իցեն. համարին յանձինս իւրեանց թէ չկրթեալք հանգոյն կրթելոցն լինիցին։ Եւ ոմանք յարձակին մինչ չեւ ի թշնամիսն հասեալ, կէսք կամաւ իսկ դիմեն եւ կէսք ի բաց սրանան։ Որպէս զի յորժամ առանց կառավարաց լուծքն իցեն բազում անգամ վիշտս բարեկամացն եւ ոչ թշնամեացն հասուցանիցեն։ Բայց քանզի եւ ինքեանք գիտեն թէ որպիսի ինչ կար պատերազմի իցէ նոցա, տեղի տան. եւ ոչ ոք այսուհետեւ առանց Յունաց ի մարտ պատերազմի գրգռի, ոչ յորժամ միմեանց ճակատ տայցեն, եւ ոչ յորժամ Յոյնք զօրաժողով ընդ նոսա մարտ եդեալ կռուիցեն. նա աւանիկ եւ ընդ Յոյնս իսկ ընդ Յունաց կամին տալ պատերազմ։

Թուի ինձ թէ զոր ինչ ի մտին եդի, հանի իսկ ի գլուխ։ Քանզի զՊարսից եւ զայնցանէ որ ընդ նոսա իցեն, խոստացայ յայտ առնել թէ առ դիս անպաշտագոյնք են եւ առ ազգակիցսն պղծագոյնք եւ առ այլսն անիրաւք, եւ ի պատերազմ այժմ ապաժամանք քան

յառաջն։ Ապա եթէ զնոցին ինչ զհրակառական որք ածիցեն զմտաւ, մի եղեալ նայիցի ընդ գործս իսկ նոցա և դատանէ թէ նոքին իսկ վկայք իմոց բանից լինիցին։



